ՇԱՐ ՀԱՅ ՊԱՏՄԱԳՐԱՑ·

# ՍՏԵՓԱՆՆՈՍ

# ՕՐԲԷԼԵԱՆ

ՄԵՏՐԱՊՕԼԻՏ ՍԻՒՆԵԱՑ·

Հատոր Բ։

1859 ՓԱՐԻԶ ՌՅԸ։

# ՊԱՏՄՈՒԹԻՒՆ

## ՆԱՀԱՆԳԻՆ ՍԻՍԱԿԱՆ

*ԱՐԱՐԵԱԼ*

**ՍՏԵՓԱՆՆՈՍԻ ՕՐԲԷԼԵԱՆ ԱՐՔ ԵՊԻՍԿՈՊՈՍԻ ՍԻՒՆԵԱՑ**

*ի լոյս ընծայեաց հանդերձ ծանօթութեամբք*

**Կարապետ Վարդապետ Շահնազարեանց՝ միաբան սրբոյ Էջմիածնի ։**

**Ի կաթողիկոսութեան ամենայն Հայոց Տեառն եւ Տեառն ՄԱՏԹԷՈՍԻ Ա.**



Ի ԳՈՐԾԱՏԱՆ Կ. Վ. ՇԱՀՆԱԶԱՐԵԱՆՑ ։

# ՑԱՆԿ ԳԼԽՈՑ ԳՐՈՑՍ

## Ստեփաննոսի Օրբէլեան :



Երես :


ԾԱ. Վասն ժառանգութեանցն որ տուաւ ի սուրբ եկեղեցին Տաթեւոյ ի ձեռն Տեառն Յակոբայ եպիսկոպոսի. . . . . . . . 9

ԾԲ. Ապստամբութիւնն Յակոբայ. եւ կատարած կենաց նորա. եւ գալն Անանիայի՝ Հայոց կաթողիկոսին, երիցս անգամ ի Սիւնիս. եւ ձեռնադրել զՎահան եպիսկոպոս. եւ հնազանդել ընդ նմին եւ զԱղուանս. . . . . 17

ԾԳ. Վասն Տեառն Վահանայ. եւ կատարածի կենաց նորա. . . . . . . . . . . 30

ԾԴ. Եպիսկոպոսք Սիւնեաց որ կարգեցան զկնի Տեառն Վահանայ. . . . . . . 33

ԾԵ. Համառօտ գրոյցք. եւ կարգ իշխանացն Սիւնեաց. եւ թագաւորել նոցին ի վերջին ժամանակս. . . . . . . . . . . . . 39

ԾԶ. Վասն եպիսկոպոսութեան Տեառն Յովհաննիսի եւ գործոց նորին. . . . . 46

երես ։

ԾԷ. Տրջաբերական Տեառն Սարգսի՝ Հա-յոց կաթողիկոսի, Սիւնեաց բոլոր վիճակին. . 52

ԾԸ. Գալն Իսմայէլացւոց. եւ կործանելն զեկեղեցին եւ այրելն զվանսն Տաթեւոյ. եւ նորոգ շինութիւն եկեղեցեացն և վանացն ի Տէր Յովհաննիսէ. . . . . . . . . . 55

ԾԹ. Վասն թագաւորացն Սիւնեաց. . 61

Կ. Վասն եպիսկոպոսին Սիւնեաց Տեառն Գրիգորի որ զկնի Տեառն Յովհաննիսի. եւ գործոց նորին. . . . . . . . . . . 65

ԿԱ. Պատճառ աւերման Կապանին եւ առման բերդիցն. եւ բնաջինջ սպառումն թագաւորութեանն Բաղաց. եւ վախճան կատարածի Սիսական ազգին. . . . . . 76

ԿԲ. Վանորայք և ուխտք եկեղեցեաց թէ քանի՛ էին յայսմ աշխարհի. . . . . . . 82

ԿԳ. Եպիսկոպոսք որք կարգեցան զկնի Տեառն Գրիգորի. . . . . . . . . . 85

ԿԴ. Սկիզբն եւ պատճառ շինութեան եւ նախապատիւ գահերիցութեան սուրբ և գե-րահռչակ և փառաւոր ուխտին և աշխարհա-ղէտ խմբարանին Նորավանից. . . . . . 91

ԿԵ. Վասն շինութեան եկեղեցւոյն Նո-րավանից և հոգեցատուր ժառանգութեանց նորա. և այլ շինութեանց և արդեանց որ եղև ի Լիպարտէն և յիշխանացն Օրբէլեանց. . 99

ԿԶ. Վասն մեծի նախարարութեանն Օրբէլեանց եթէ ուստի՛ էին և ո՛րպէս. և վասն

Երես ։

գալոյ նոցա յաշխարհս յայս. և վասն բաղում բանից եւ գործոց գրոյցք յոլովք. . . . . 113

ԿԷ. Վասն յիշատակի և միաբանութեան աստուածապսակ Թագաւորին Հայոց Լևոնի ի սուրբ, երկնահանգէտ աթոռն Սիւնեաց ի Տաթև որ ի ձեռն Տեառն Հայրապետին՝ Սիւնեաց եպիսկոպոսի. . . . . . . . 180

ԿԸ. Վասն կաթողիկոսութեան Հայոց որ զկնի Տեառն Յակոբայ. եւ ազգի ազգի պատահմանց նոցա եւ գերութեանց. եւ Հռոմկլային եւ մայրաքաղաքացն Փռանկաց որ ի ծովեզերին. . . . . . . . . . . 183

ԿԹ. Թուղթ վասն հաւատոյ եւ կարգաց եկեղեցւոյ յարևելեան աշխարհէս առ կաթողիկոսն Հայոց Տէր Գրիգոր, գրեալ ձեռամբ Տեառն Ստեփաննոսի՝ Սիւնեաց եպիսկոպոսի. ընդ նմին և դաւանութիւն ուղղափառ հաւատոյ սրբոյն Գրիգորի Սքանչելագործի, եւ Աթանասի Աղեքսանդրացւոյ. . . . 197

Հ. Վասն աշխարհական արքայիցն որ եղեն զկնի ղան Արղունին. եւ վասն ամենայն անցից նոցա.. . . . . . . . . . . 215

ՀԱ. Վասն յետին վերջակալութեան մերոյ նուաստութեանս որ կարգեցաք յեպիսկոպոսութիւն Սիւնեաց. եւ որ ինչ գրոյցք առ մեօք.. . . . . . . . . . . . 226

ՀԲ. Եպիսկոպոսք Սիւնեաց. ամք եւ

Երես ։

Թիւք նորին. առաջին եպիսկոպոս ձեռնադրեալ ի սրբոյն Գրիգորէ. . . . . . . . . 246

ՀԳ. Յիշատակարան մատենիս Նորին Ստեփաննոսի. . . . . . . . . . . . 253

ՀԴ. Սիւնեաց երկոտասան գաւառաց հարկ եկեղեցւոյ ըստ հին սահմանին... . . . 260

ՀԵ. Տարակարգութիւն եպիսկոպոսաց Սիւնեաց արարեալ ի միաբանից Տաթեւոյ վանաց. . . . . . . . . . . . . . . 274

Ծանօթութիւնք.. . . . . . . . . . . 295



# ՍՏԵՓԱՆՆՈՍԻ
# ՕՐԲԷԼԵԱՆ

## ՊԱՏՄՈՒԹԻՒՆ ՍԻՒՆԵԱՑ։



ԾԱ. — *Վասն ժառանգութեանցն որ տուաւ ի սուրբ եկեղեցին Տաթեւոյ ի ձեռն Տեառն Յակոբայ եպիսկոպոսի ։*

*Ըստ ժամանակի ինչ համնդիպման հասին աստուածային եւ բարեպաշտօն իշխանն Սմբատ՝ որդի Աշոտոյ, թոռն Վասակայ, ի սուրբ աթոռն. Եւ աղօթեալ առաջի սուրբ խաչին՝ կամեցան յիշատակ անմահ եւ անջինջ հաստատել իւրեանց հոգեացն. եւ ետուն ի սուրբ եկեղեցին հոգեպատուր ժառանգութիւն զիւրեանց հայրենի եւ սեպհական գիւղն ըզ Կոտկոյս որ ի Գեղաքունւոյ գաւառին. եւ անխախտ*

վճռաւ աւանդեցին ի ձեռն Տեառն Յակոբայ, որ ունէր օրինակ զայս ։

« Յանուն Աստուծոյ կամ եղև ինձ Սմբատայ իշխանի՝ որդւոյ Աշոտի, Թոռին Վասակայ, աստուածապահ տէրանց Սիւնի, տալ զԿոտկոյս գիւղ ի Գեղամայ գաւառին, զիմ հայրենի բաժինն իւր ամէն սահմանօքն շրջակայ, ի Սիւնեաց եպիսկոպոսն ի Տէր Յակոբ, ի մեր սուրբ խաչն եւ ի լուսաճեմ եւ յաստուածաբնակ սուրբ եկեղեցին վասն հոգեաց մերոց ։ Արդ՝ չկայ այլ ուրուք իշխանութիւն, ոչ մեր եւ ոչ զաւակաց մերոց եւ այլ ումեք իշխել ի վերայ գեղոյս այս, եւ կամ հանել զտեղիս զայս ի սուրբ խաչէս և ի սուրբ աթոռոյս ․ ապա թէ ոք ընդհակառակն ելանիցէ՝ այնպիսին դատապարտեա՛լ լիցի յԱստուծոյ ամենակալէն ․ եւ բաժին նորա ընդ Յուդայի և ընդ այլ խաչահանուացն, եւ դատին մի՛ յաղթեսցէ, զիւրն մի՛ ժառանգեսցէ, այլ որդւովք իւրովք ելցէ՛ ի խաւարն արտաքին ։ Եւ արդ դուք էք իշխան Տէր Յակոբ՝ Սիւնեաց եպիսկոպոս, եւ այլ հայրապետք որ զկնի ձեր յաջորդին ի սուրբ յաթոռդ յայսմհետէ մինչև յաւիտեանս ժամանակաց ։ Եւ մեր մեղուցեալ հոգիք ձեզ յա՛նձն եղիցին եւ սուրբ խաչիդ, հաստատ է կամուն Աստուծոյ » ։ Գրեցի զայս վճիռ ես Սմբատ իմով ձեռամբս, եւ կնքեցի իմով սովորական մատանեաւս, եղի ի վերայ

եւ զտիրական մատանիս Տեառն Յակոբայ ի Թուականիս Հայոց 369 ։ Եւ Տէր Յակոբ հաստատեցի իմով ձեռամբս զվճիռս զայս . եւ վկայ եմ հոգեյատուր պատգամաց տեառն Սմբատայ՝ որդւոյ Աշոտի Սիւնեաց տեառն, որ երետ գիւղ սեպհական գիւղն զԿատկոյս ի սուրբ եկեղեցիս . եւ մի ոք իշխեսցէ հակառակ կալ այսմ այժմ և կամ յետ ժամանակաց ։ ապա թէ յանդգնի՝ նզովեալ լիցի յԱստուծոյ և յամենայն սրբոց և ի սուրբ հայրապետացն և ի մէնջ . և դատապարտեալ գտցի առաջի ահեղ ատենին Քրիստոսի . եւ բաժին նորա ընդ անհաւատս լիցի յանշէջ գեհենին ։ Եւ որ զկնի մեր կարգիք յաթոռս պաքտական էք անմոռաց կատարել զյիշատակ տեառն Սըմբատայ եւ հայցել թողութիւն մեղաց նորա . եւ ամ յամէ մին քառասունս առնել նմա ։ Գրեցաւ այս վճիռ իմով ձեռամբս եւ կնքեցաւ իմով սովորական մատանեաւ ի կամս Աստուծոյ ։

Դարձեալ յետ ժամանակաց ինչ եկն Փիլիպպէ իշխանն ի սուրբ յաթոռն առ Տէր Յակոբ ։ Այս Փիլիպպէ որդի էր Վասակայ՝ թոռն մեծ Փիլիպպէի, որ զջուրն վաճառեաց Տեառն Յակոբայ ։ Եւ յիշեալ նորա զունայնութիւն վայրկենի կենացս՝ կարգէ ինքեան յիշատակ եւ քառասունս, եւ ընծայէ երկու գիւղ ի սուրբ Գրիգորն զոր մեծ Փիլիպպէին էր շինեալ ի Համբանդ գաւառի, զԱղուերծ եւ զՑուրա֊

կանխոռ. և գրէ ինքեան արձան անջինջ և անմահ յիշատակի յ392 Թուականին. եւ էր այսպէս ։

« Անուամբն Աստուծոյ, ի ժամանակս աստուածապատիւ եւ հոգևոր Տեառն Յակոբայ՝ Սիւնեաց եպիսկոպոսի, ես տէր Փիլիպպէ՝ որդի Վասակայ, որդւոյ աստուածապահ տեառն Փիլիպպէի՝ Սիւնեաց տեառն, իմացայ եւ ծանեայ զի վաղն Թառամելոց է ամենայն մարդ իբրև զխոտ, եւ Թօթափելոց է ամենայն փառք մարդոյ իբրև զծաղիկ խոտոյ. եւ սարսափմամբ սասանեալ գողայ անձն իմ եթէ ուր փրկեցայց ։ Ապա յոյս եդեալ յայս աստուածարեան ուխտս. ստացայ զսուրբ խաչս յիշատակ հոգւոյ իմոյ, եւ ընծայեցի լիապատուղ հաւատով յիմ հայրաշ հայրենեացն զՅուբականխոռ, զոր գնեալ էի ի յԱրտաւազդայ՝ Սա՛կռի որդւոյ, և զմիւս չէնն զԱղուերծ զոր գնեալ էի ի Խոտանանեցեացն ի յԱբլաչարայ որդեացն և ի Վահանկայ որդւոյն և յեղբօրորդւոյն. յաղագս իմ սուրբ եկեղեցւոյդ ապսպարեցի ի Տէր Յակոբ՝ Սիւնեաց եպիսկոպոս, և ի սուրբ մայրաքաղաք եկեղեցիդ Տաթևոյ, ի սուրբ Գրիգորդ զոր իմ պապուն տէր Փիլիպպէի շինեալդ է, եւ ի մեր սուրբ նշանդ ի փրկութիւն հոգւոյ իմոյ եւ ի Թողութիւն մեղաց իմոց ։ Եւ ետու իւր սահմանօքդ բոլոր՝ լերամբ եւ դաշտովք, հողով եւ ջրով, այգօք եւ ընկուզօք, ջրաղացովք եւ ամենայն մտիւք ։ Եւ արդ՝ յայսմ֊

հետէ իշխանութիւն ունիք դուք ուտել եւ վայելել զայդ տեղերդ, վաճառել եւ գրաւական տալ մինչեւ յաւիտեանս ժամանակաց, եւ ազատ են դոքա յամենայն արքունի հարկաց ։ Եւ եթէ այլ ոք հակառակի այսմ եւ կամ խանգարել եւ խափանել ջանայ՝ եթէ ի մերոց եւ կամ յայլ ազգաց, ի սուրբ Երրորդութենէն և յամենայն սրբոց նզովեալ եղիցի, ընդ Յուդայի և Արիոսի դատեսցի, և յերից սուրբ ժողովոցն ընդ կապանօք լիցի. եւ թէ ի տաճիկ ազգութիւն հատանի եւ յափշտակել ջանայ՝ յԱստուծոյ եւ յիւր փեղամբարէն ապիզար եղիցի, եւ բիւր 1,000 նալաթ եղիցի. եւ ի վերջին աւուր դատաստանին յիւր դաղողէն սեւերես լինի ։ Եւ արդ՝ հայցեմ ի ձէնջ սուրբ հարք՝ զիմ Փիլիպպէի զյիշատակս կատարել ամ յամէ. եւ յիմ եկեղեցիդ ի սուրբ Գրիգորդ ի Վարդէվառի աւուրսն մի քառասունք առնեն անխափան. գրեցաք եւ կնքեցաք մեքով մատանեաւս ի կամս Աստուծոյ յ392 թուականիս Հայոց »։

Էր եւ հանդէպ վանիցն տեղի մի ապստամբանոց, որ Տամալէկս կոչէին. և բազում և մեծամեծ վիշտս եւ նեղութիւնս հասուցեալ էին վանիցն, զոր Տէր Յովհաննէս, թէ և բազում անգամ ջանայր, ոչ կարաց հալածել զընակիչսն եւ սեպհականել զտեղին ։ Ապա ի ժամանակս աստուածապաշտ եւ հոգեւոր

Տեառն Յակոբայ եկն մեծ տիկինն Սոփիա՝ կին Սըմբատայ, յերկրպագութիւն սուրբ խաչին. եւ լուեալ զվշտալից դառնութիւն եղբարցն ի Նոյանէ՝ զոր գործեալ ի վերայ եւ հազիւ ուրեմն ածեալ ընդ բուամբ դտեղին ընդ գնոյ հազար դահեկանի. և տայ ի ձեռն Տեառն Յակոբայ և բառնայ զայն խաչ ի Նոյանէ. և այնուհետև լինէին յապահով: Եւ հրամայէ եպիսկոպոսին շինել ի նմա եկեղեցի և բնակեցուցանել անապատաւորս. եւ գրել արձան անիծից զի մի եւս բնակեցուսցեն ի նմա աշխարհականք, զոր եւ փոքր ընդ փոքր կատարեալ երջանիկ եպիսկոպոսին, գրէ արձան վճռի զայս օրինակ. «Այս իմ ձեռին գիր է Տէր Յակոբայ՝ Սիւնեաց եպիսկոպոսի. բազում ջանիւ եւ աշխատութեամբ թափեցի զՏամալեկս որ բազում նեղութիւն էին հասուցեալ տանս. և Տեառն Յովհաննիսի ջանացեալ էր և չէր կարացեալ թափել: Արդ՝ հնազանդեալ մեր հրամանացս տէր Սմբատ եւ Սոփիա տիկին՝ առին ընդ գնոյ 1000 դահեկանի, եւ ետուն ի սուրբ նշանս. եւ հոգւով եւ մարմնով զինքեանս մեզ յանձնեցին: Եւ մեք առաք եւ եկեղեցի շինեցաք, եւ միայնարան հաստատեցաք: Արդ՝ զայս տեղս որ մեր մեծ ջանիւ թափեալս եմք եւ զհայրենատէրսն հանեալ, և անապատ հաստատեալ, եւ մտածէ ոք զսա ի հայրենատէրսն տալ կամ կանամբի մարդ ի սմա բնակեցուցանել կամ մին ծառոյ

և մին թփոյ տէր առնել. Նզովեալ եղիցի ի միաբանական սուրբ Երրորդութենէն եւ ի սրբոյ հրեշտակաց և յ318 հայրապետացն, ի սուրբ Նշանէս եւ ի մէնջ ի մահ և ի կեանս. և բաժին նորա ընդ Յուդայի եղիցի. եւ չարաչար ցաւօք զիւր աւուրսն մի հասարակեսցէ, ճարակ լիցի անշէջ հրոյ գեհենոյն, և մի գտցէ ողորմութիւն ի Քրիստոսէ Աստուծոյ մերոյ»։

Դարձեալ էր գիւղ մի ի Գեղամ գաւառի ի Սոդից սահմանին, Վաղաւեր անուն, զոր տուեալ էր վաղ ժամանակօք Տիգրան՝ մեծ նահապետ ի Սիսական տոհմէ, ի սուրբ եկեղեցին Տաթևոյ։ Աստանօր վաճառէ և փոխանակէ Տէր Յակոբ տեառն Ջագկայ՝ իշխանի Սիւնեաց՝ որդւոյն Ջևանշէրի վասն հեռաւորութեան. և առնու զՏաշտակերտ գիւղ հաստատուն եւ անխախտ վճռաւ որ ունէր օրինակ զայս. «կամաւն Աստուծոյ ես Տէր Յակոբ՝ Սիւնեաց եպիսկոպոս, արարի փոխանակս ընդ աստուածապահ տեառն Ջագկայ՝ Սիւնեաց իշխանի, տուաք զՎաղաւեր գիւղ, զոր յիշեալ տեառն Տիգրանայ իւր հոգւոյն ընծայեալ էր ի սուրբ Նշանս, և առաք զՏաշտակերտ գիւղ իւր ամենայն սահմանօքն բոլորովին։ Եւ հաստատեցաք յամէն տարի քսան օր պատարագ անխափան մինչ ի գալուստն Քրիստոսի. և զԵրանի ում թողութիւն սաղմոսն երգել ի նմին աւուրսն։ Եւ թէ ոք յետ մեր՝ յիշխանաց կամ յառաջնորդաց

հակառակ կայ այսմ, եւ զայս տեղիս յափշտակել խորհի, նզովս չարաչար ընկալցի՛ յԱստուծոյ եւ յամենայն սրբոց, և յայսմ աթոռոյս և յամենայն առաքելական եկեղեցեաց եւ ի սուրբ հայրապետաց որոչեալ եւ անիծեալ լիցի, եւ Տիգրանայ մեղացն պարտապան եղիցի . ի Թուին Հայոց 374 հաստատ է կամաւն Աստուծոյ »։

Եւ ես Զագիկ իշխան իմ կամօք արարի զայս վաճառս, և փոխեցի զՏաշտակերտ ընդ Վաղաւերոյ, եւ իմ ձեռօքս հաստատեցի զվերագրեալ վճիռդ ։ Եթէ ոք խափանէ՛ զնոյն նզովսն ժառանգեսցէ՛ որ կայ ի դմա ։ Եւ մեք Զեանշէր եւ Վասակ՝ որդիք տեառն Զագկայ վկայ եմք այս արարուածիս . եւ ես Կարիճ իշխան վկայ եմ այս վերագրելոյս ։ Գրեցաւ գիրս եւ կնքեցաւ հայրապետական մատանեաւս Տեառն Յակոբայ . եղաք և մեք ի վերայ զմեր կնիքս ։ Ահա՛ զայս ամենայն հոգացեալ եւ պայծառապէս չքեղացուցեալ զանազան զոյիւք եւ ստացուածովք . այլ և յոլովս ստանայ ընդ գնոյ արծաթոյ ագարակս եւ անդս, հողս եւ մարգս եւ այգիս . նա եւ բազում տուրս յիշխանաց եւ յազգատաց, զոր թէ ընդ գրով էաք արկեալ՝ բազում տաղտկութիւն լինէր լսողաց և ծախուծն անհուն հիւթոյ ։ Բայց մեք ընտրեալ և փոքր ի շատէ կարգեցաք աստ զլոյծ պիտանին ։ Բայց աւա՛ղ իմում բանիս, որ այժմ ոչ կարեմ

բարեբոյս բանիւք բովանդակել զլրումն կենաց այս֊պիսւոյ անհամեմատ և աստուածավայելուչ, քաղցր և արքայաշուք առնս երջանկի և բարեբաստի ։ Այլ հարկիմ զզանազան և զվայրենաբարոյ բանից բուռն հարկանել ։



ԾԲ. — Ապստամբութիւն Յակոբայ. եւ կատարած կենաց նորա. եւ գալն Անանիայի՝ Հայոց կաթողի֊կոսին, երիցս անգամ ի Սիւնիս. և ձեռնադրել զՎա֊հան եպիսկոպոս. եւ հնազանդել ընդ նմին եւ զԱղ֊վանս ։

Էր կաթողիկոս յԱղվանս Սահակ անուն, որ հո֊գեւորական սիրոյ կապակցութեամբ յարակցեալ էր Տեառն Յակոբայ. և էին միմեանց համախոհ և յոյժ մերձաւոր ։ Եւ յետ Սահակայ առաջնորդէր Գագիկ՝ եղբայր նորին. եւ սա առաւել համարձակեալ էր ի սէր միաբանութեան ընդ Յակոբայ՝ Սիւնեաց եպիս֊կոպոսի ։ Եւ զի կաթողիկոսքն Հայոց հեռացեալ էին յայնմ ժամանակի զի վասն հանապազորդեան հինահարութեանցն Իսմայէլացւոց թողեալ էին զա֊թոռն որ ի Դվին և շրջէին այսր և անդր ընդ թագա֊ւորացն Հայոց ։ Երբեմն բնակէին առ Գագկայ թա֊

Հատ. Բ ։ 3

գաւառին ի Վասպուրական աշխարհի, ի վանս Ձորոյ, ուր կայր սեղանն եւ աթոռն եւ գաւազան սրբոյն Գրիգորի. երբեմն բնակէին ի Շիրակ գաւառի առ Շիրակվանին ի վանսն Արգինայի. և այսպէս տարաբերեալք մնէին (1) ։ Եւ զի վախճանեալ էր կաթողիկոսն Հայոց Տէր Թէոդորոս. եւ յաջորդեալ էր ի տեղին Անանիա Մոկացին յ390 թուականին ։ Եւ այս Յակոբ վասն հեռաւորութեան ոչ կարէր ամ յամէ երթալ առ կաթողիկոսն Հայոց եւ առնուլ մեռոն. ապա հարկ եղև խնդրել զմեռոն ի կաթողիկոսէն Աղվանից ։ Եւ այս լինէր նմա մեծ գայթակղութիւն և անկանգնելի գլորումն զի սխալեաց ըստ դիւրախաբ բնութեանս մարդկային, ըստ ասխյն Սաղոմոնի թէ գոյ և քուն իմաստնոյն ։

Եւ զայս արար անձնահաճ կամօք. քանզի էր այր անձնեայ եւ սէգ, բարձրայօն եւ մեծաբարոյ, բնութեամբ աղատ և բանիւ ճոխ, հանճարով պայծառ և շրթամբք յոյժ քաղցր. սակս որոյ ինքեան հաւանեալ հպարտացաւ սակաւիկ մի ։ Իսկ կաթողիկոսն Անանիա կոչէր նուիրակօք զՅակոբ և զՍահակ. և նոքա յիւրաքանչիւր յաթոռոյն ոչ շարժեցան. այլ բաղբաղեցին զգնալն ։ Եւ զի լուեալ էր կաթողիկոսին զընտանի մերձաւորութիւն նոցա առ միմեանս եւ զխնդիր մեռոնին յԱղվանից և զայն ևս թէ բազում ամք են Յակոբայ զի ոչ եկն ի սուրբ Գրիգորի յա-

թոռն . ապա այնուհետեւ ի նախանձ ահագին դրդըուեալ, եւ սաստիկ ցասմամբ շարժեալ եկն ի խնդիր Յակոբայ զի կամ հնազանդեսցէ և ըստ կամի արասցէ, եւ կամ մեծագոյն պատիժս ընկալցի : Եւ անտի դէմ եդեալ երթիցէ յԱղվանս եւ զայն ևս հնազանդել . քանզի արքեպիսկոպոսքն Աղվանից ի Հայոց կաթողիկոսացն առնուին ձեռնադրութիւն . եւ սակաւ մի աւօք յառաջ քան զայս յետս էին կացեալ ի վախճանէն Գէորգեայ կաթողիկոսին մինչ ի ժամանակս այս Անանիայի, յաւուրս հինգ կաթողիկոսաց՝ Մաշտոցի և Յովհաննիսի, Ստեփաննոսի և Եղիսէի եւ Թէոդորոսի :

Ապա եկեալ, հասեալ յաշխարհս Սիսական, ընդառաջ ելանեն նմա իշխանքն Սիւնեաց աստուածապահ տէր Սմբատ եւ Ջեւանշէր որ ի Բաղս . եւ բերեալ յեպիսկոպոսարանն Տաթև հանգուցին մեծաշուք պատուով . եկն ապա եպիսկոպոսն Յակոբ . եւ անկաւ առաջի նորա եւ զմեղայ խոստովանէր « ո՞վ մեծապատիւ Տէր կաթողիկոս՝ որովհետեւ աստուածաբար ի մեզ խոնարհեցար եւ զմեր յանդըգնութիւնս անտես արարեր . հնազանդիմք ձեզ և սուրբ աթոռոյն Գրիգորի լուսաւորչին իբրև Աստուծոյ, մեղաք յերկինս եւ առաջի քո . եւ դու ներելով թո՛ղ մեզ զյանցանս մեր » : Տեսեալ զայն կաթողիկոսին եւ մեծապէս օրհնէր զնա եւ շնորհակալէր եւ

կամէր երթալ յԱղվանս. ապա գուժկան հասանէր ի թագաւորէն Աբասայ վասն փոխման թագուհւոյն. եւ դարձուցանէր զնա յայնմ յառաջարկութեանց ։ Վասն որոյ մեծամեծ պարգեւօք եւ առատաձեռն ընծայիւք յուղարկեցաւ յաթոռն իւր ի Սմբատ իշխանէ եւ ի Յակոբայ եպիսկոպոսէ ։

Իսկ ամենաչարն, որ հանապազ խանդայ ընդ բարին և գրգռէ զմարդիկ ի խռովարար չարութիւն, ոչ ետ թոյլ այսմ արարուածոյ. այլ մտեալ ի սիրտ չար եւ նախանձոտ արանց, սկսան քսել վերստին զՅակոբ առ կաթողիկոսն, եթէ կրկին ապստամբեաց ի ձէնջ. եւ նա չտայ թոյլ հնազանդել Աղվանից ընդ ձեռամբ քով. եւ զԽոսրով՝ Անձեւացեաց եպիսկոպոսն նա չեղեաց թղթով ի ձէնջ. նաեւ հերձուածս եւս յօդէին եթէ քօղարկեալ ունի եւ զՔաղկեդոնին. եւ այնպէս խռովութիւն եւ պատերազմ մեծ զարթուցին ի մէջ եկեղեցւոյ ։ Զոր և ես իսկ զրպարտանք համարիմ զայսպիսի բանս եւ ոչ ճշմարտութիւն զրաղատ եպիսկոպոսին Յակոբայ, զի զինչ փառք էր եւ պարծանք նմա թողուլ զմեծ աթոռն սրբոյն Գրիգորի լուսաւորչին եւ ծառայել իւրում ծառայակցին որք եւ անկատար եւ թերի ունէին զօծումն շնորհին ։ բայց թողցուք զայս քննել արդարադատին Աստուծոյ ։

Ապա կաթողիկոսն Աղվանից Սահակ մեռանի,

և յաջորդէ ի տեղին հարազատ նորին Գագիկ նովին անկատար օծմամբ. զոր և լուեալ Տեառն Անանիայի՝ գրէ թուղթ առ իշխանն Աղվանից ըստ իւրում իմաստայեղց բանից, և հրամայէ ի բաց կալ յանուանեալ և ի նանրախառն կաթողիկոսէն Գագկայ: Որք եւ տարարին իսկ. եւ ոչ ոք հաւանեցաւ նմա, բայց միայն մի յիշխանացն Սենեքերիմ անուն: Իսկ այլքն միաբան առաքեն զոմն մի Յոնան անուն առ կաթողիկոսն Հայոց զի ձեռնադրեսցէ նոցա արքեպիսկոպոս, զոր եւ ընկալեալ սիրով եւ պատուով Տեառն Անանիայի՝ ձեռնադրեալ առաքէ յԱղվանս: Իսկ ապա մինչ այս լինէր, ըստ նախանձու հակառակութեան ոմանց, սկսան բարդել բանս բամբասանաց ի վերայ Յոնանու ունայն. եւ ոչ սակաւ լինէր խռովութիւն ի մէջ երկոցունցն Գագկայ եւ Յոնանու, եւ երկոքինքն խռովեալք լինէին:

Լուեալ զայս ամենայն Անանիայի՝ վարանեալ տարակուսէր ի մտի իւրում վասն գունակ գունակ բաժանմանց եւ ապստամբութեանց եկեղեցւոյ. եւ ժողովեալ բազմութիւն եպիսկոպոսաց եւ գլխաւոր հարց՝ խաչընդոտս նահատակութեամբ գայ ի խնդիր օծեալ եւ պառակտեալ անդամոց եկեղեցւոյ, եւ դէմ եդեալ երթայր յԱղվանս: Եւ հասեալ ի գաւառն Խաչենոյ՝ ընդ առաջ ելանէր նմա իշխանն Գրիգոր. եւ տարեալ իջուցանէ ի տան իւրում: Եւ

ժողովէ զամենայն իշխանս աշխարհիս եւ զեպիսկոպոսունս և զվանականս ի տեղին որ Արդախն կոչի. գան եւ Գագիկն եւ Յօնանն ։ Խնդրէր ապա կաթողիկոսն Անանիա զպատմութիւնն Աղվանից զի գիտասցեն զորպիսութիւնն Աղվանից աթոռակալացն. և նոքա թաքուցեալ ամենևին ոչ ցուցանէին ։ Ապա ըստ վերին խնամոցն, ի գիշերի պաշտամանն ընէ եկեղեցապանն Գանձասարու գիրք մի որպէս թէ Յովհաննու Ոսկեբերանի է. եւ մեծարեն զկաթողիկոսն յընթեռնուլ. զոր եւ բացեալ եգիտ զոր խնդրէրն, զի էր պատմութիւնն Աղվանից. եւ էր ի նմա գրեալ ամենայն ճշդիւ զի առաջին եպիսկոպոսն յԱղվանս ի սրբոյն Գրիգորոյ՝ Հայոց լուսաւորչէն, լինէր ձեռնադրեալ ի խնդրոյ Ուռնայրի՝ Արքային Աղվանից. և կացեալ ի հնազանդութեան Հայոց աթոռակալացն զամս 440, ի Հայոց առին ձեռնադրութիւն Աղվանից կաթողիկոսքն, զի Հայոցն պատրիարք էր. և Աղվանիցն՝ արք եպիսկոպոս. և այս ի ժամանակս քսան և հինգ կաթողիկոսաց Հայոց մինչ ի Տէր Աբրահամ ։ Ապա մինչ աղմուկ լինէր ի մէջ աշխարհիս. եւ Յովհան ոմն ի բաժնին Յունաց հակառակաթոռ էր նստեալ, և վասն ինն դասուցն ի Յունաց խնդիր լինէր առ Հայս. եւ Կիւրիոն՝ Վրաց կաթողիկոս, վասն փառամոլ ախտի ի բաց եկաց ի Հայոց եւ քաղկեդոնիկ եղեւ ։ Այնուհետեւ բաժանեալ ի

բայց եկաց Աղվանիցն պատճառելով եւ նա պատճառս ինչ ։

Իսկ ի վախճանելն Աբրահամու եւ Յովհաննու նստի պատրիարք Հայոց Կոմիտաս. վախճանի եւ Աղվանիցն. ապա դարձեալ հնազանդին Աղվանք Հայոց եւ խնդրեն կաթողիկոս ի Կոմիտասայ զոր եւ ձեռնադրեացն իսկ յերկրորդ ամի հայրապետութեան նորա ։ Եւ այսպէս կացեալ ի հնազանդութեան զամս 85, ի ժամանակս եօթն կաթողիկոսաց Հայոց մինչ ի Տէր Եղիա ։ Ապա յաւուրս սորա էր կին մի ի տիկնութենէ Աղվանից Սպրամ անուն, առնէ իւր մերձաւոր և սիրող մի՝ Բակուր անուն, և խոստանայ նմա տալ պատիւ կաթողիկոսութեան. եւ ոչ իշխեաց առնուլ ի Հայս զի մի խռովեսցեն. առնէ ժողով ի Պարտաւ եւ տայ ձեռնադրել զնա կաթողիկոս. որ եւ անուանեցաւ Ներսէս, եւ ունէր ի ծածուկ զՔաղկեդոնին ։ Վասն որոյ երթեալ Եղիայի կաթողիկոսի յԱղվանս արքունի հրամանաւ, եւ կալեալ զտիկինն եւ զԲակուրն, մերկացուցանէ եւ կապէ ընդ միմեանս եւ հեծուցեալ յէշ շրջեցուցանէ ընդ փողոցս Պարտաւայ. վասն որոյ անաւագ լեալ Բակուր. աւուրս ութ մեռանի ։

Իսկ կաթողիկոսն Եղիա ձեռնադրէ նոյա արքեպիսկոպոս, եւ առնու երդումն եւ դաշինս եւ ձեռնարկ գրոյ մեծամեծ նզովիւք յիշխանաց եւ յեպիս֊

կոպոսաց և ի գլխաւոր վանականաց և յաւագ տանուտերաց աշխարհին Աղվանից զի մի՛ այլ ևս հետևեսցեն և յետս կացցեն յաթոռակալաց սրբոյն Գրիգորի. և ինքն գնաց յաշխարհն Հայոց: Եւ այս այսպէս եկաց միաբանութեամբ զամս 137 յաւուրս չորեքտասան կաթողիկոսաց Հայոց մինչ ի Տէր Գէորգ Գառնեցին: Ապա ի գալն Բուղայի ամիրայի ի Հայս, եւ ի գերելն զՏէր Գէորգ կաթողիկոս եղև դառն և ազգի ազգի պղտորումն յաշխարհիս Հայոց եւ Աղվանից. եւ փախեաւ դրան եպիսկոպոսն Տեառն Գէորգեայ եւ եկն յԱղվանս Յովնան անուն: Եւ եղև վախճանել արքեպիսկոպոսին Աղվանից. եւ կաթողիկոսն էր ի գերութեան: Ապա միաբանութիւն համարելով նմա՝ ժողովեալ ձեռնադրեն զդրան եպիսկոպոսն զՅովնան կաթողիկոս Աղվանից: Իսկ ի դարձին Գէորգեայ ի գերութենէ ի ձեռն Համամայ՝ թագաւորի Աղվանից, տեսանէ զՅովնան՝ նոյին արքեպիսկոպոս, և հրամայէ կողոպտել ի բաց զզգեստ և զձև կաթողիկոսութեանն. վասն որոյ առաջի անկեալ Համամայ հայցէր զներումն:

Լուեալ ապա նմա վասն մեծի երախտեացն, և կըրկին ձեռնադրէ զՅովնանն արքեպիսկոպոս Աղվանից. և թողեալ անդէն գնաց յիւր սեպհական աթոռն: Իսկ ի վախճանելն Գէորգեայ, վասն դառն և ազգի ազգի անցից աշխարհիս յԻսմայէլականացն, ոչ կարացին

հաստանել առ հայրապետքն Հայոց յԱղվանից. նմանապէս եւ անփոյթ լինէր ի Հայոց կաթողիկոսացն. զի ամենայն որք միայն զանձին հնարս հայթայթէր զերծման յխամայէլական սրոյն: Ձեռնադրեն ապա կաթողիկոս Աղվանից յետ Յօհաննու զնորին հարազատն Սիմէոն անուն, ապա զԴաւիթ, ապա զՍահակ, ապա զԳագիկս զոյս, որ լինէր ամք 69 ինքնաձեռն և անձնիշխան թերակատար օծման նոցա: Ահա զայս ամենայն ընթերցեալ եւ իմացեալ եւ ծանուցեալ կաթողիկոսին Անանիայի, և այսու բանիւք սա լուեցուցեալ զզրաբան բերանս խոտորախօս արանց. և պապանձեցուցեալ զլեզու փառորսակ և անձնահաճ մարդկան՝ յամօթ արար զամենեսեան: Եւ ծանեան իշխանքն զհաստատութիւն իւրին, եւ ամենայնիւ հաւանեալ հնազանդեցան նմա: Իսկ նորա քննեալ զարժանն, նախ՝ ելոյծ ի պատուոյն զՅօնան իւր ձեռնադրեալն վասն բամբասանացն զոր յօդեալ էին, եւ ապա զԳագիկն: Բայց Գրիգոր իշխանն մեծաւ մաղթանօք հայցէր զԳագիկ կրկին ձեռնադրել, զոր ոչ պատշաճ համարեալ ուղղադատ և ճշմարտաբըննին հայրապետին. զի կրկին ծնեալն վիժեալ լինի. և կրկին պսակեալն՝ անվաւեր կոչեսցի:

Ապա հայցեցին դառնալ անդրէն ի Հայս. եւ մեք (ասեն) աստէն ընտրեսցուք պատշաճագոյն այր եւ առաքեսցուք առ ձեզ զի ի քէն ձեռնադրեսցի առաջ-

նորդ մեզ ։ Հաւատացեալ ապա Հայրապետին՝ ել ի տանէն Աղվանից եւ եկն ի տունն Միսական ի բնակութիւնս սուրբ Հայրապետանոցին ի Տաթեւ ։ Զոր եւ լուեալ եպիսկոպոսին Յակոբայ՝ գնաց յամուրն Բաղաց թաքուցանելով զերեսս իւր, ըստ այնմ թէ փախիր եւ թաքիր առ ժամանակ մի մինչեւ անցանէ բարկութիւն Տեառն ։ Քանզի գիտէր զանիրաւաբարձ բարդումն այնպէս բասրանացն որ զօղեալ էին ի վերայ ինքեան, իբր զերկաթ ընդ փայտի, կամ զանդիկ ընդ ոսկւոյ ։ Իսկ իբրեւ ետես զայն Տէրն Անանիա՝ բազում աւուրս օթեալ անդր. եւ յոլով թղթովք և պատգամաւորօք հայցէր ի դուրս զՅակոբ ի ձեռայն Ջևանշիրի. եւ ոչ տայր ի դուրս ։ Ապա ոչ կարացեալ տևել ի տեղւոջն զի ձմեռնային էր ժամանակն. սաստիկ ցասմամբ բարկացեալ սուրբ կաթողիկոսին աւերեաց զտեղին և քանդեաց և չարաչար նզովիւք կապեալ կաշկանդեալ խառնեաց ի տոռունս կապանաց զիշխանն եւ զեպիսկոպոսն. եւ անց, գնաց յիւր աթոռն ։

Եւ ապա անդէն կալով՝ միշտ թղթագնացութեամբ ոչ կարաց հաւանեցուցանել գալ ի ծառայութիւն ինքեան Գագկայ Աղվանեցւոյ. վասն որոյ միայն աղօթիւք խնդրէր յԱստուծոյ զելս իրին ։ Եւ այս լինէր ի թուականին Հայոց 398. իսկ ի 407 թուականին Հայոց, իբր վերին ակնարկմամբն, վախճա-

նեալ լինին երկոքինքն՝ Յակոբ՝ Միւնեաց մետրապօլիտ եւ գլուխ ամենայն եպիսկոպոսաց Հայոց, եւ Գագիկ՝ Աղվանից արքեպիսկոպոս, որ և յետ դառնալոյն Անանիայի եւ սա ապստամբեաց անզգամաբար եւ ստեաց յի՛ւր ուխտէն ։ Վասն որոյ գուժկան հասեալ առ կաթողիկոսն ազդէր նմա. զոր և համարեալ նորա զայն ի սադրելոյ աղօթիցն իւրոյ լեալ՝ գոհանայր մեծապէս զՏեառնէ. եւ ոչ պատշաճ համարեցաւ զառ ի յիւրմէ աւերեալ աթոռն առաքելական խափանել ի հայրապետական գլխոյն ։ Այլ յուղի անկեալ գայր ի Սիսական աշխարհս յանդրնակ տեղի եպիսկոպոսարանին Միւնեաց. եւ հրաման տայր ժողովել կրօնաւորացն եւ շինել զտեղին, եւ ինքն գնայր ի Կապան քաղաք ։ Ընդ որում առաջ ելեալ բանադրեալ իշխանն Ջևանշէր՝ մեծաւ զղջմամբ զմեղաց խոստովանէր. նմանապէս եւ եկեալ գահերէց իշխանն Միւնեաց Վասակ՝ որդի Սմբատայ՝ որդւոյ Աշոտոյ. և նա զեղեցիկ խոստովանութեամբ զմեղաց կարդացեալ՝ ի միասին զթողութիւն յանցանացն (զորին). և տարեալ մեծապէս չքով հանդուցին յարքունական գահոյս ի Կապան քաղաքի ։

Եւ ժողովեալ զամենայն արս քաջակրօն և ճգնազգեաց վանականաց՝ խնդրէին վերստին առաջնորդ ինքեանց, որոց լուեալ կացոյց յեպիսկոպոսութեան Միւնեաց զՎահան՝ որդի Ջևանշիրի, որ էր առաջնորդ

մեծի ուխտին Վահանու վանից ։ Առնու ձեռնարկ
եւ վճիռ պայմանի ի Վահանայ եւ յիշխանացն զի
այլ ոչ եւս շեղեալ հեստեսցեն ի սուրբ Գրիգորի
աթոռոյն և ոչ արասցեն ընտանութիւն ընդ Աղվա-
նից արքեպիսկոպոսացն . զի մի ծնանիցի սոյնդու-
նակ գայթակղութիւն . եւ գյետկար մեծապայման
վճռին փակեցին ահագին եւ սոսկալի նզովիւք զի մի
ոք իշխեսցէ յեպիսկոպոսաց զՅակոբայն գործել կամ
խոսկալ կամ խորհիլ ոճիրս . եւ յիշխանաց զի մի ոք
իշխեսցէ այնպիսւոյն թեկն ածել եւ օգնական կամ
ջատագով լինել. և թէ յանդգնի ոք յեպիսկոպոսաց՝
փութապէս ի ձեռս տայցեն կաթողիկոսին Հայոց .
և մի լիցին դարան և ասպնջական նմա.։ Եւ կնքեալ
զայս վճիռ իւրեանց մատանեաւ՝ ետուն ի ձեռս կա-
թողիկոսին զորս աւելորդ համարեցաք գրել. զի կան
լիով գրեալքն ի գիրս Թղթոյն, զոր ժողովեալ է սոյն
Անանիա, որ Հաւատոյ նամակ անուանի ։ Բայց էառ
առ ժամայն զպատիւն ի տանէն Սիւնեաց, այսինքն
զխաչն որ զառաջեաւ տանէին, և զգաւազանն բազ-
մածախ եւ մեծագին եւ զբազմականն ոսկեթել զորս
ընդ ինքեանց շրջեցուցանէին, զսահմանեալսն առա-
ջին Թագաւորացն և հայրապետացն Հայոց ։ Եւ բար-
ձեալ լինէր այս և պակասեալ մինչ ի Տէր Յովհաննէս՝
Սիւնեաց եպիսկոպոս, և ի Տէր Սարգիս՝ Հայոց կա-
թողիկոս ։

Իսկ ի ձեռնադրութեանն Տէր Յովհաննիսի վերըստին եղև նորոգեալ ամենայն պատիւ և իշխանութիւն Սիւնեաց աթոռակալացն ի Տէր Սարգսէ՝ Հայոց կաթողիկոսէ, զոր յիւրում տեղւոջ ասացից ։ Իսկ ապա յետ այսր իրագործութեան գնայ կաթողիկոսն յԱղվանս ի հաստատել զնոցայն աթոռակալութիւն. զկնի որոյ և գուժկան հասանի ի Թագաւորէն Վասպուրականի և Արծրունի Գրիգոր կոչեցեալ եթէ վախճանեալ՝ Մնայ դին նորա քեզ. եւ դարձուցանեն անդրէն ։

Լուեալ ապա զայն տէրանցն Աղվանից՝ Իշխանկայ և Սենեքերիմայ և միւս Սենեքերիմայ՝ որդւոյ Գրիգորոյ, զոր կանխաւ յիշեցաք, և Ջևանշիրի և Գուրգենայ. եւ մեծաւ զղջմամբ զմեղայ կարդացեալ՝ առաքեն առ նա զԴաւիթ կրօնաւոր որ ի Խոտակերաց վանից, ձեռնադրել ինքեանց առաջնորդ. զոր և ընկալեալ Տեառն Անանիայի մեծաշուք պատուով ձեռնադրէ, և փարթամ ընծայիւք և առատատուր պարգևօք յուղարկէ անդրէն յաշխարհն Աղվանից ։ Վասն որոյ գոհութիւնս եւ փառս վերառաքեցաւ յամենայն լեզուաց բարերարին Աստուծոյ որ այսպէս խափանեաց զմեծ պատերազմն եկեղեցւոյ, և արար խաղաղութիւն կեղեքեալ եւ տառապեալ ազգիս Հայոց. եւ զպատուական անդամն եկեղեցւոյ որ օձտեալ էին՝ վերստին միացոյց ի գլուխն գովելի ի

մեծ պատրիարքսն Հայոց, որ սրբոյն Գրիգորի են աթոռակալք ։

Եւ արդ՝ յետ այսց պատերազմաց եթէ ոք խորհի կամ մտաբերէ ընդ այն կորստական շաւիղս ընթանալ եւ ի բաց կալ ի Հայոց կաթողիկոսացն, կամ Սիւնեաց եպիսկոպոս կամ Աղուանից արքեպիսկոպոս, զինչ եւ իցէ պատճառաւ բաց ի հոգեւոր վնասուց, եթէ հերձուած ինչ կամ անպատշաճ նորաձեւութիւն երեւեսցի, այնպիսին ի սուրբ Երրորդութենէն նզովեալ լիցի, մասն եւ բաժին նորա ընդ հերձուածողսն եւ ընդ ուրացողս եղիցի․ եւ ընդ սատանայի դատապարտեսցի ։ Ապա եթէ վնաս ինչ խնասցեն ի հաւատս կամ յեկեղեցի․ եւ ճշմարտութ ուղղեսցեն ի վերայ կաթողիկոսացն Հայոց․ եւ կամ այլ արատ ինչ մեծագոյն և վնասակարութիւն, որ բազմաց խռովման եւ կորստեան պատճառ լինին, ինքեանք գիտասցեն զարժանն մինչեւ ուղղեսցի թիւրութիւնն և մաքրեսցի ամենեւին ։



## ԾԳ. — Վասն Տեառն Վահանայ․ և կատարածի կենաց նորա ։

Ձեռնադրեալ Տեառն Անանիայի զՎահան ի վանսն Յովհաննու եպիսկոպոսի Սիւնեաց, էր եւ ի

հրամանս նորա մեծ եպիսկոպոսապետն Տաթեւ, որ և սակաւ մի անդ բնակէր և զայլ աւուրսն յիւր սեպհական տանն ։ Եւ վասն աւերման տեղւոյն բազում պայծառութիւնք չիջեալ մնէին եւ բազում բարեկարգութիւնք խափանեալ ի բազում աւուրս. եւ յոլով ժառանգութիւնք պակասեալ և յափշտակեալ յեկեղեցւոյն՝ ի մեծ մայրաքաղաքէն Տաթեւոյ, զոր և առ սակաւ սակաւ անդրէն դարձուցանէին իշխանքն ի ժամանակս (ժամանակս) ։ Որպէս և աստուածասէր տէր Սմբատ՝ Սիւնեաց իշխան, որդի Սահակայ՝ որդւոյ Աշոտոյ եւ եղբայր մեծ Սմբատայ, դարձոյց անդրէն զգիւղսն Ծածարդ և զՀաժիս ի սուրբ եկեղեցին ի ձեռն Տեառն Վահանայ. եւ գրէ զվճիռ պայմանին իւրով ձեռամբն այսպէս ։

« Յանուն Աստուծոյ վասն արարեալ հաստատութեան առաւել առաջին գրոյն որ մեր հարցն տուեալ էին աստուածապատիւ եւ հոգեւոր եպիսկոպոսացս Սիւնեաց, ես Սմբատ՝ որդի տեառն Սահակայ, ետու զՀաժիս եւ զԾածարդ որ սակաւ մի յափշտակեալ էին ի տանէս, յաստուածապատիւ եւ հոգեւոր Տէրս Վահան և յաստուածարեալ, ի լուսաճեմ եկեղեցիս Տաթեւոյ յայս պայմանիս որ զառաջնոյն յիշատակն նորոգեմ. եւ զիս ես յիշեն ի սուրբ եւ ի մաքրափայլ յաղօթս իւրեանց և մեր մեղացն թողութիւն խնդրեն ։ Եւ յետ մեր մի՛ ոք այլ յանդգնեսցէ յափշտակել

զստսա ի տանէն, մի ի մերոց եւ մի յօտարաց. եւ թէ յանդգնի՝ յԱստուծոյ ամենակալ բերանէն ընդ սատանայի և ընդ օձին Նզովեա՛լ եղիցին. և մասն և բաժին ընդ Յուդայի՛ և Կայենի՛ և Արիոսի՛ եղիցի »: Գրեցաք եւ կնքեցաք մերով մատանեաւս ի թուականիս 412: Իսկ Վահան կեցեալ յեպիսկոպոսութեանն ամս 6. ապա հասանէ վախճան կաթողիկոսին Հայոց Տեառն Անանիայի. փոխեն զնա ի հանգիստ ի վանսն Արգինայի. և թագաւորն Աշոտ՝ որդին Սմբատայ, առնէ ժողով եպիսկոպոսաց եւ հարց· սրբոց ի թագաւորանիստն Շիրակվան. կոչէ և զՎահան ի Սիւնեաց. և հրամայէ ընտրել զմի ոք յեպիսկոպոսացն եւ կացուցանել յաթոռ հայրապետութեան Հայոց:

Ապա ամենայն ժողովոյն ընտրեալ զՎահան վասն առաւել սրբութեանն և իմաստութեանն՝ դնեն ձեռն ի վերայ բազմութիւն եպիսկոպոսացն եւ օծանեն զնա կաթողիկոս Հայոց. որ և կեցեալ ամ մի՝ սկսաւ պատկերս բերել ի Վրաց և դնէր ի վերայ սեղանոյն. և հրամայէր յամենայն եկեղեցիս զնոյն առնել, ըստ Հոռոմոց սահմանին կանոնիւք (2) զարդարել և առանց կանոնի ոչ առնել պատարագ: Վասն որոյ կարծիս իմն առեալ ամենեցունց եթէ դաշնագիր է ընդ Յոյնս. եւ կամի սպրդել յեկեղեցի զաղանդ նոցին, բողոք բարձին առ թագաւորն. և նա հրաման տայր ժողո-

վոյ յԱնի քաղաքի զի քննեսցեն զարժանն ։ Իմացեալ զայն Վահանայ ոչ եկաց ի ժողովն․ այլ եւ, գնաց յաշխարհն Վասպուրական, առ Համազասպ՝ որդի Գագկայ Թագաւորի․ եւ հաւանեցոյց զնա ինքեան, եւ զրպարտեալ ասէ զինքն ի նախանձաւոր արանց․ և բնակեցաւ ի վանսն որ կոչի Ջորոյ վանք ։

Իսկ նոքա որ յԱնի ժողովեցան, իբրև գիտացին զերթն նորա․ ապա հրամանաւ Աշոտոյ Թագաւորի կարգեցին ի տեղի նորա զայլ ոմն կաթողիկոս եւ լուծին զՎահան ։ Եւ այսպէս կեցեալ քաւրէշ ի տեղի քաւրէշի՝ Ստեփաննոս յԱնի, եւ Վահան ի Վասպուրական զամս երկու․ և լցին նզովիւք զմիջոց աշխարհիս մինչև վերին ակնարկմամբն ի միում աւուր երկոքինքն բարձան ի միասին․ եւ Վահան եդաւ անդէն ի վանսն Ջորոյ, առ դրան եկեղեցւոյն ընդ այլ կաթողիկոսունքն որք կային անդ ։ Իսկ յաթոռն Հայոց զարժանաժառանգ այրն զՏէր Խաչիկ՝ հարազատ արեան տեառն Անանիայի, նստուցին հայրապետ ։



## ԾԴ․ — Եպիսկոպոսք Սիւնեաց որ կարգեցան զկնի Տեառն Վահանայ ։

Յետ Վահանայ նստուցանեն ի տեղին եպիսկոպոս զայրի երէց մի Աշոտ անուն վասն առաւել ճգնու-

թեանն եւ խոնհմութեանն. զի էր սիրեցեալ յաչս իշխանայն եւ երեւելի ամենայն գաւառին, զոր եւ ձեռնադրեաց նոյն Վահան կաթողիկոս ։ Եւ ունէր այս Աշոտ եպիսկոպոս որդի մի Յովհաննէս անուն զոր սնուցանէր մեծաւ զգուշութեամբ ։ Եւ հաստա֊ ցեալ յարբունս այրութեան հասակին, պարկեշտ եւ սրբակրօն, պատշաճագեղ եւ հանճարեղ. զոր եւ ետուն ձեռնադրել եպիսկոպոս Սիւնեաց ։ Եւ հայրն նորին Տէր Աշոտ կալեալ զաթոռն ամս 17՝ յանձն արար որդւոյն իւրոյ Տեառն Յովհաննիսի. եւ ինքն աղօթից պարապեաց ։ Իսկ Յովհաննիսի կացեալ ամս վեց և կէս՝ վախճանի, և բռնադատեալ զհայրն նորին զԱշոտ կացուցանեն ի նոյն աթոռ, որ եւ կե֊ ցեալ ամս հինգ և կէս՝ վախճանի ։ Զկնի սորա զՏէր Սամուէլ՝ այր հեզ եւ բարի որ եւ եկաց ամս հինգ եւ փոխեցաւ մահուամբ ։

Ապա ընտրեն զայր մի լաւ և յոյժ պիտանի սնեալ սրբութեամբ և կուսութեամբ Յակոբ անուն, և կա֊ ցուցանեն զնա յաստիճան եպիսկոպոսութեան Սիւ֊ նեաց ։ Յաւուրս սորա վախճանի Սմբատ՝ Սիւնեաց տէր, որդի Սահակայ, եւ դնի ի հանգիստ յեպիսկո֊ պոսարանին Տաթեւ ։ Այս Սմբատ թագ կապեալ ինքեան թագաւորեաց. եւ բարեպաշտ կին սորա սուրբ թագուհին Շահանդուխտ և որդիք իւր Վասակ և Սեւադայ ետուն ի սուրբ եկեղեցին 6000 դրամ և

զգիւղն Տեղ որ ի Համբանդ գաւառի, զոր իւր իսկ Ծահանդխտոյ ի կորդոյ շինեալ էր, վասն հոգւոյ բարեպաշտ եւ աստուածասէր Թագաւորին Սմբատայ ։ Եւ մեծամեծ նզովիւք գրեցին զվճիռն զի մի իշխեսցէ ոք խախտել, որ է այսպէս ։

« Յանուն Աստուծոյ կամ եղև ինձ Ծահանդխտոյ՝ դստեր Սևադայի, տալ ի Համբանդ գաւառի զանուանեալ շէնդ զՏեղ իւր ամենայն բոլոր սահմանովքն, լերամբ և դաշտիւ և այլ մտիւք, զոր իմ Թագաւորին Սմբատայ ինձ տուեալ էր, և իմ ի կորդոյ շէն դրեալ. եւ ես յետ ելից երանելի Թագաւորին իմոյ յաստեացս՝ իւր հոգւոյն ի Տաթև ի սուրբ մայրաքաղաքն եւ ի սուրբ Նշանն ետու ի ձեռն Տեառն Յակոբայ՝ Սիւնեաց եպիսկոպոսի. եւ յայսմհետէ անիշխան եմք ես և իմ որդիքս Վասակ և Սևադայ, զի ի ձեռն Աստուծոյ եմ տուեալ և ի սուրբ Նշանս. եւ պարտական են յամենայն տարի իմ Թագաւորի հոգւոյն զՎարդավառին քառասունսն պատարագ առնել եւ յամենայն օր զԵրանի ում Թողութիւն սաղմոսն ասել ի նոյն քառասունսն ։ Արդ՝ սուրբ հայրապետք՝ որ յաթոռդ յաջորդիք, պարտական էք զայդ անխափան կատարել, եւ զշէնդ ազատ յամենայն հարկաց ուտել. Աստուած ընդունելի արասցէ ։ Արդ՝ թէ ոք ի մեր զաւակաց կամ յայլ օտարաց կամ յաւագաց, ինչ եւ իցէ պատճառաւ, զկնի մեր

անցման զայդ չէնոդ զՏեղ հանել խորհի ի Տաճարս և կամ հակառակ կալ մեր հոգւոյս և կամ չար և կամ այլ ինչ արքունի հարկ ի վերայ դնել, այնպիսին զիւրն մի վայելեսցէ, եւ ամենայն չարագործաց մե֊ ղացն պարտական եղիցի, ընդ Յուդայի եւ ընդ Պի֊ ղատոսի դատեսցի․ ընդ Նեռին անիծեսցի, յանշէջ հուրն տանջեսցի, եւ յ318 հայրապետացն նզովեալ եղիցի ։ Եւ (եթէ) տաճիկ աւազութիւն լինի․ եւ յափշտակել ջանայ, յիւր հաւատէն եւ յիւր փեղամ֊ բարէն, որ յառաջին մարդէն մինչ ի յետինն լեալ են և լինին, նաղաք եղիցին․ երկինքն նմա հուր ցօղեսցէ, և երկիրս նմա փուշ և տատասկ բուսուսցէ, և անունն նորա և որդւոց և սիրողաց իւրոց կորիցէ և ջնջեսցի յերկրէ․ եւ յիշատակ նորա այլ մի ևս երևեսցի ։

Եւ վասն առաւել հաստատութեան գրեցի իմ ձեռօքս զայս վճիռս ես Վասակ՝ որդի Սմբատայ թագաւորի, հրամանաւ իմ մօրս »․ Աստուած շնոր֊ հաւո՛ր արասցէ․ ի թուին Հայոց 447․ եւ կնքեցաւ մերով մատանեաւս ։ Այս պատուէր հրամանի է իմ Յակոբայ ի տունդ Սիւնեաց առ նախագահ աթոռըդ և՛ լուսաճեմ տաճարդ Տաթևոյ յոր յոյս եդ երանելի թագաւորն մեր՝ զի պարտիք անխափան կատարել զեղեալ յիշատակս եւ քառասունս նորա որ վասն շինոյն Տեղայ․ որում և մեք վկայեալ մերով ձեռա֊ գրովս՝ կապեցաք անլուծանելի կապանօք զհակա֊

ռակողմն այսմ, եւ կնքեցաք մերով մատանեաւս ի կամս Աստուծոյ ։ Շնորհիւն Աստուծոյ եւ ես Գրի֊գոր՝ Սիւնեաց եպիսկոպոս, հաստատեցի զայս վճիռ որ վասն Տեղոյ չինոյն էր տուեալ սուրբ Թագուհւոյն Տաճանդխտոյ ի սուրբ եկեղեցիս եւ որդւոց իւրոց յաղագս խաղաղարար և փայելուչ Թագաւորին իւր֊եանց Սմբատայ. զի մի՛ ոք իշխեսցէ խափանել ի սուրբ աթոռոյս. և որ հակառակի, ընդ Սիմոնի կախարդին գիշամահ սատակեսցի. եւ յԱստուծոյ եւ յամենայն սրբոց նզովեալ եղիցի. եւ գլիշատակ նորա որ կար֊գեալ են ի տօնս անխափան կատարեսցեն ։

Եւ արդ այս Յակոբ կեցեալ ամս սակաւ վախ֊ճանի. զսա կարծեմ սպանեալ դաւաճանութեամբ Յուրացեայն ի վերայ խոռոյն Յուրայ. ուր կայ գե֊րեզման նորին, յորում բժշկութիւնք լինին ։ Յետ Յակոբայ յաջորդի ի տեղին Գրիգոր որ էր ամե֊նայնիւ պայծառացեալ ըստ ներքին մարդոյն և ըստ արտաքին. սա և բազում արար գործ երևելի ի տան հայրապետանոցին, եւ քակեաց զանիծարնակ քարն Յուրայ եւ բնաջինջ յատակեաց. սա էառ հօգեցա֊տուր ի Փարաջոյ՝ Ջագիկ իշխանի որդւոյ, զԲոլորա֊քարն իւր ամեն սահմանովն բաց ի Նորեաց վանից բաժնոյն, զոր յետոյ էառ միւս Տէր Գրիգորն ի Գլենէ՝ Խաղբակայ որդւոյն. եւ է վճիռն Փարաջոյ այսպէս ։

« Յանուն Աստուծոյ այս իմ՝ ձեռին գիր է Փարաջոյ՝ որդւոյ Զագկայ իշխանի, որ կարդացաք զառաջնոյ գիրն եւ վերստին հաստատեցաք զԹոլորաքարն իւր սահմանօքն որ էր իմ սեպհական ժառանգութիւն, ի Տաթեւոյ սուրբ եկեղեցիքս և ի Տէր Գրիգոր. զի յառաջին նոցա հաստատած հայրենիք էր. և սակաւ ժամանակօք հեռացեալ էր վասն խանգարման եպիսկոպոսացն. մեք վերստին հաստատեցաք զնոյն այգւով և ծառով և տնկով, հողով և ջրով ի Տաթեւոյ սուրբ մայրաքաղաքս, ի սուրբ նշանս եւ ի սուրբ առաքեալս ի ձեռն Տեառն Գրիգորի՝ Սիւնեաց եպիսկոպոսի: Եւ ետու զայս իմ կամաւորութեամբ, ոչ ի հարկէ, ոչ յաւագաց բռնութենէ, ոչ յարբելութենէ. այլ երկուցեալ յառաջին հայրապետացն եւ իշխանացն ի սոսկալի նզովիցն՝ ետու իմ սրտի սիրով վասն իմ հոգւոյս փրկութեան. և դուք աստուածաբեալ տեարք եւ սուրբ ժողովք՝ զիմ՝ անտէր եւ զմեղուցեալ ոգիս մի՛ մոռանայք, այլ յիշման և աղօթից արժանի արարէք: Եւ թէ ոք այս տրոցս խափանման կամ խանգարման պատճառ լինի և զիմ հոգիս զրկէ, եւ ոչ պատկառի յառաջնոյն նզովից եւ ի մեր՝ նզովեալ լիցի նա յամենասուրբ Երրորդութենէն եւ ամօթալից եղցէ՛ յիւրում դատաստանէն. եւ մասն զՅուդային առցէ »: Եւ վասն հաստատութեան սորա եդաք ի վերայ զմատանի աստուածապատկ Թագա֊

ւորին Վասակայ և զսուրբ հայրապետիս մերոյ զՏէր Գրիգորի ։

Յետ այսր եւ կեցեալ Տեառն Գրիգորոյ սակաւ ժամանակս՝ փոխի յաստեացս . եւ յաջորդի ի տեղին բազմերջանիկ եւ յոգներանեան այրն Աստուծոյ, կրկին լուսաւորիչն եւ երկրորդ նորոգողն նուազեալ տանն այնմ եւ բոլոր աշխարհիս Սիսական Տէր Յովհաննէս, որ եկաց բազում աշխատութեամբ եւ երեւելի փառօք ի սուրբ աթոռն աւելի քան զ50 ամ, յարենատու ազգակցութենէ անտի Տեառն Սարգսի՝ Հայոց կաթողիկոսի . զորոյ զգործս և զբանս յիւրում տեղւոջ ասասցից . բայց այժմ պա՛րտ վարկանիմ դառնալ անդրէն եւ սակաւ մի ցուցանել եւ զիշխանացն հանգամանս ։



**ԾԵ. — Համառօտ զրոյց . եւ կարգ իշխանացն Սիւնեաց . և թագաւորել նոցին ի վերջին ժամանակս ։**

Առաջին սկիզբն Սիւնեաց իշխանացն, զորս ըստ կարգի ծանեաք եւ եդաք ի մատենիս, յԱնդոկայ սկսաք մինչ ի վերջինն Քուրդոյ, և ապա անծանօթ մնացաք երկուց կամ երից իշխանաց . իսկ դարձեալ եղեն գահակալ իշխանք Սիւնի, առաջին՝ Վասակ

որ էր մեծ նահապետ Սիւնեաց. եւ ապա երկու որ֊
դիք նորա Փիլիպպէ եւ Սահակ եւ միւս իշխանն
Գրիգոր ի նոյն ցեղէ, որ ունէր մասնաւոր ժառան֊
գութիւն ի սեպհական հայրենեացն ։ Եւ զի ի ցեղէ
հայկական յոլովք էին զարմք եւ ազինք. բայց մեղ
փոյթ գլխաւոր գահակալ իշխանացն միայն էր.
վասն որոյ եւ տարժանեալ գտաք եւ կարգեցաք
աստէն ։

Յետ Վասակայ բաժանեն զհայրենի ժառանգու֊
թիւն իւրեանց երկու որդիքն՝ Փիլիպպէ եւ Սահակ.
եւ լինի Փիլիպպէ գահերէց իշխան Սիւնեաց. եւ
առնու Սահակ բաժին զգաւառն Գեղամայ բոլոր ։
Մեռանի Փիլիպպէ և թողու երիս որդիս՝ զԲաբգէն,
զՎասակ եւ զԱշոտ ։ Յետ սակաւուց մեռանի եւ
Սահակ ի պատերազմի Հաւլ ամիրային յեզր Հու֊
րազդան գետոյն մերձ Կաւակերտոյ աւանին. և թո֊
ղու ժառանգ ինքեան զԳրիգոր՝ որդի իւր Սուփան
կոչեալ ։ Իսկ յետ աւուրց վասն դոյզն պատճառի ի
վերայ հայրենեացն՝ պատերազմին ընդ իրեարս Բաբ֊
գէն՝ երէց որդի Փիլիպպէի, եւ Գրիգոր՝ որդին Սա֊
հակայ. և հարստեալ Բաբգէնի զԳրիգոր զխաթա֊
ւալ կացուցանէ. վասն որոյ եւ զկայենին ժառան֊
գելով բաժին, եւ նա փութապէս ջնջի ի կենաց
թողլով որդի մի Վահան անուն ։ Եւ Փիլիպպէ
պայազատէ զտէրութիւնն. իսկ Գրիգոր թողեալ

երկուս որդիս զՎասակ, որ Գարուն կոչիւր՝, և զՀրահատ ։ Բայց էին և նորա երկու եղբարք՝ Հրահատ և Գագիկ ։ Պայազատէ զտէրութիւն նորա Վասակ Գարուն, որ և փեսայացաւ Աշոտոյ Բագրատունւոյ որ առաջ և թագաւորեաց Հայոց. և առ կին զդուստր նորա զՄարիամ ։ Իսկ Փիլիպպէի վախճանեալ՝ թողու ժառանգ զԲաբգէն որ և մեռաւ, և զՎասակ որ և Իշխանիկ կոչիւր, և Աշոտ ։ Մեռանի և Վասակ. և պայազատէ զտէրութիւն նորա Աշոտ՝ եղբայր իւր ։ Սա կեցեալ բազում աւուրս՝ մեռանի և թողու չորս որդիս՝ զՍմբատ, զՍահակ, զԲաբգէն, զՎասակ. և բաժանեալ զժառանգութիւնս իւրեանց՝ առնու Սմբատ զՎայոց ձոր բոլոր և զՇահապունեան որ է Ճահուկ գաւառ ։ Իսկ Սահակ և այլքն՝ զՍիւնիս և զԲաղս և զայլսն ։ Եւ ապա էր մեծ Վասակայ որդի մի Փիլիպպէ անուն, որ ունէր զՇնհէր և զՀամբանդ ։

Մեռանի եւ Վասակ Գարուն՝ որդի Գրիգոր Սուփանայ և թողու երիս որդիս՝ զԳրիգոր որ և Սուփան կոչեցաւ, և զՍահակ և զՎասակ. և պայազատէ զտէրութիւն նորա Գրիգոր Սուփան որ և աստուածային իմն տեսչութեամբ պարապէր շինութեան եկեղեցեաց և հոգեւոր գործոյ ։ Իսկ Սմբատայ եղբայրն կրսեր Վասակ մեռանի ի պատերազմին Գողթան ամիրային առ ամրոցին Երնջակայ. և

ինքն Սմբատ առեալ զգահերէց իշխանութիւնն՝ բազում ցուցեալ գործ գովելի հոգեւոր և մարմնական վախճանի և թողու ժառանգ իւրոյ պայազատ տէրութեան զորդի իւր Վասակ ։ Իսկ Սահակայ՝ եղբօր Սմբատայ, էր որդի Սմբատ անուն. մեռանի Սահակ և առնու զիշխանութիւնն իւր Սմբատ՝ որդի իւր ։ Էր և ի Բաղս իշխան մի ի սոյն ցեղէ Ջեւանշէր անուն՝ որդի Ջագկայ իշխանին ։ Իսկ Գրիգոր Սուփանյետ բազում քաջութեանց և երեւելի գործոց մեռանի դեղակուր ի Նորայ. և պայազատէ զտէրութիւն նորա Վասակ՝ եղբայր իւր ։ Մեռանէր և Սահակն. և դնէր ի դրան Նորատուսայ եկեղեցւոյն ։ Իսկ Վասակ՝ որդի Սմբատայ, յետ բազում իշխանութեանց և գովելի գործոց մեռանի. և տիրէր համագունդ աշխարհիս Սիսական Սմբատ՝ որդին Սահակայ, գահերէց իշխանութեամբ ։

Այժմ լո՛ւր ինձ եւ պատմեսցից քեզ ո՞վ պատուական ընթերցող՝ զպանծալի բանից լուրս. զի սեռս Սիսակայ որ ի Հայկայ, երբեմն խառնեալ էր ընդ թագաւորական ցեղն Արշակունի եւ Պահլաւկաց, և երբեմն ընդ Խազրայ թագաւորութեանն, եւ հուսկ յետոյ՝ ընդ Բագրատունիսն, բայց երբէք ոչ ըմբոստացան ի հայրենի տէրութեանցն ։ Իսկ յետ յոլով ժամանակաց մինչ դուռն բացին նախ՝ Արծրունիքն, եւ թագ կապեցին ընդդէմ Սմբատայ՝ Հայոց թա-

գաւորի, Թագ կապեայ եւ Ատր-Ներսէհ Վրաց բդեաշխն. Թագ կապեայ եւ Աղվանին Համամ: Մեծարէ Ափշինն զՎասակ Սիւնի Թագ կապեաւ. և նա ոչ կամեցաւ ապստամբական անուն ժառանգել: Ապա ի նուազել տէրութեանն Բագրատունեայ, և ի զօրանալ ձեռինն իմայէլականի՝ հատեալ, բարժանեալ եղեն ամենայն գահք գլխաւոր նախարարացն Վասպուրականին եւ Վրային եւ Աղվանին եւ Ջորոյգետայիքն որ Կիւրիկեանքն կոչին, նաեւ Կարուցն եւ Վանանդայն որ Բասեանք կոչի:

Ապա Սմբատ՝ որդի Սահակայ՝ որդւոյ Աշոտոյ, որ ունէր կին զդուստր Սեւադայի՝ մեծ եւ փառաւորեալ իշխանին Աղվանից, Շահանդուխտ անուն. եւ տուեալ էր զԹոռն իւր՝ զդուստր Վասակայ, որդւոյ ի։քոյ որ զկնի իւր Թագաւորեայ, զԿատրամիդէ կին Գագկայ Թագաւորի՝ որդւոյ Աշոտոյ, որ եւ շինեայ զսխրատեսիլն եւ զհրաշաձեւ եկեղեցին ի յԱնի զմեծ կաթողիկէն, յարեալ իմեծ, Աթաբակն որ էր ի Թավրէժ յԱտրպատական աշխարհի, նաեւ յՌնայ ամիրայն, որ իշխէր և դյանն Դարբանդու, եւս եւ Աղվանից տէրանցն, որք վասն առաւել սիրոյ ծանուցանեն մեծի սուլտանին Խորասանու, եւ հրաման առեալ ի նմանէ Թագ կապեն զեղեցկահասակ եւ վայելչադիտակ առնն հայկազնոյ Սմբատայ՝ (3) Սիւնեայ տեառն: Եւ զի յայնմ ժամանակի

Բագրատունիքն իշխէին միայն Շիրակայ և Այրարատու մինչ ի Գեղամ և մինչ ի յՈւխտիսն և մինչ ի Կարին եւ մինչ ի Վասպուրականի սահմանն եւ մինչ ի Ջորոյ գետն և մինչ ի Գարդման. և Սիւնիք կտրեալ էր ի նոցանէ. վասն որոյ ոչ ինչ բռնական մեղս համարեցաւ Սմբատ. զի թէ Բագրատունիքն (որք) գերութեամբ իմն ածեալ էին ի Հրաչէէ՝ այնմ արժանի գտան, ապա քանի՞ եւս առաւել սոցա անկ էր որ ի Հայկայ երեւելի հարազատութեամբ որդիք զհարս փոխանակելով՝ բնիկ տէրութեամբ եկեալ, հասեալ էին մինչեւ ցայժմ։ Արդ՝ թագ կապեալ Սմբատայ ճոխ եւ երեւելի փառօք յարդարէր զարքայութիւնն ըստ օրինի ինքնակալ թագաւորաց։ Եւ յետ բազում ճոխութեանց եւ երեւելի արքունական գործոց վախճանի, եւ դնի դին նորա ի մեծ սրբարանին և յաստուածաբնակ աթոռին Տաթեւոյ, բազում և աշխարհագումար հանդիսիւ։

Եւ պայազատէ զտէրութիւն նորա մանուկ որդին իւր Վասակ, որ և սա մեծահանդէս ժողովով և ազատակոյտ բազմութեամբ օծանի թագաւոր Սիւնեաց եւ Բաղաց ձեռամբ Տեառն Գրիգորի՝ Սիւնեաց եպիսկոպոսի։ Եւ զեղբայր իւր զՍեւադայ կացուցանէ իշխան իշխանաց ազատակոյտ զօրաց իւրոց։ Բայց մայր սոյին երանելի թագուհին Շահանդուխտ կայր կենդանի։ Ապա սա շարժեալ աստուածային իմն ակ-

Նարկմամբ շինէ զգեղեցկայարմար եւ զվայելչադիտակ վանսն Վաղատնոյ որ էր ի վաղուց հետէ տեղի ուխտական արանց, զի եկեղեցի մի էր անդ ի հին ժամանակաց յանուն սրբոյն Գրիգորի լուսաւորչին, զոր եւ կարծեմք նորին հիմնարկեալ, եւ յետոյ շինեալ ի Ստեփաննոսէ հօրէ և ի սուրբ ճգնաւորէ. և առնէր բժշկութիւն խածելոց ի թիւնաւոր օձից, որպէս Փարբեցին (4) որ զկատաղի շան անբժշկելի բուժէ ի մարդոյ եւ յանասնոց: Զաորայս եւ այժմ ճակ տեսանեմք անպատմելի հրաշս. զի զհարեալսն ի թիւնաւորաց եւ զխեւացեալսն եւ զուռուցիկսն մերձ ի պայթել, հանեն ի բարձրաւանդակ լերինսն և ցուցանեն զվանսն. և կամ սակաւ մի հող յեկեղեցւոյն հասուցանեն, առ ժամայն լուծումն առնէ մակարդեալ թիւնիցն, և փութապէս բժշկէ:

Վասն որոյ շինեալ մեծ բարեպաշտուհւոյն Շահանդխտոյ կոփածոյ քարամբք եկեղեցի յանուն սրբոյ Նախավկային Ստեփաննոսի ի 449 թուականին Հայոց. և կարգէ ի նմա տուն կրօնաւորաց և բազմամբոխ պաշտօնէից: Շինէ և տուն աղօթից կրաշագոյն վիմօք ի դրան եկեղեցւոյն, և համբարանոցս և գործատունս. և շուրջ պարսպէ զվանքն. և որոշէ նմա անդաստանս ի Վաղատնոյ և տայ զԳոմեր ագարակ ի վանսն. և պայծառապէս զարդարէ զեկեղեցին զանազան զարդուք: Եւ ինքն վախճանեալ դնի ի

դրան այնր սրբարանի ։ Ապա յետ ամաց ինչ ի 455 Թուականին Սեւադայ՝ որդի Նորին Շահանդխտոյ՝ եղբայր Վասակայ Թագաւորի, շինէ և մեծածախ աշխատութեամբ եկեղեցի մի յոյժ պայծառ և գե-ղեցկայարմար, գմբէթայարկ յանուն սրբոյ Կարա-պետին, և գաւիթ ի դրան նորին. որք և կան հան-գուցեալ ի դրան Նորին. որոց յիշատակն օրհնու-թեամբ եղիցի. և վարձս բիւրապատիկ ի Քրիստոսէ Աստուծոյն մերոյ ։



## ԾԶ. — Վասն եպիսկոպոսութեան Տեառն Յովհան-նիսի և գործոց նորին ։

Յետ վախճանին Տեառն Գրիգորոյ՝ Սիւնեաց եպիսկոպոսի, ընտրեն զերջանիկ և զխառաւորեալ այրն Աստուծոյ զՅովհաննէս, զոր կարծեմք իզարմից զոլ Տեառն Սարգսի՝ Հայոց կաթողիկոսի ։ Եւ բա-րեպաշտ եւ աստուածասէր Թագաւորն Սիւնեաց եւ Բաղաց աշխարհիս Վասակ առաքէ զնա աղատ արամբք եւ մեծամեծ պատարագօք յԱնի առ սուրբ հայրապետն Հայոց Տէր Սարգիս զի ձեռնադրեսցէ եպիսկոպոս Սիւնեաց. եւ հայցէ ի նմանէ շնորհել վերստին զաստիճան մետրապօլտութեան և զպա-տիւն զոր ունէին՝ զխաչն որ առաջի ընթանայր եւ

զգաւազանն եւ զբազմականն զոր բարձեալ էր Տէր Անանիա վասն գայթակղելոյն Յակոբայ ։ Եւ թագաւորն Գագիկ փեսայացեալ էր սմին Վասակայ թագաւորի . եւ էր թագուհին Կատրամիդէ դուստր սորա, որ և հանդիսանայր շինութեամբ երկնաձեւ առագաստին սրբոյ կաթողիկէին ։ Յուղարկեալ էր եւ նոյա արքունի ընծայս, և գրով ծանուցեալ զխնդիրն ի կաթողիկոսէն . վասն որոյ եւ թախանձեալ Գագկայ եւ սուրբ թագուհին Կատրամիդէ զհայրապետն՝ տալ ձեռնադրել մեծահանդէս շքեղութեամբ զՏէր Յովհաննէս մետրապօլիտ Սիւնեաց ։ Եւ ընձեռէ նմա հայրապետն զսեպհական խաչն Սիւնեաց և զոսկէտուռն վառն եւ զմեծագին գաւազանն եւ զպատուական գահոյս բազմականին, զորս պահեալ էին ի սենեկին սրբարանի հայրապետանոցին ։ Եւ նորոգեն զաստիճան եւ զպատիւ մեծի եւ առաքելական աթոռոյն Սիւնեաց ըստ առաջնոյն օրինի ։

Եւ ապա արձակեն զնա մեծապատիւ ճոխութեամբ եւ երեւելի փառօք յիւր աթոռն՝ ընկալեալ եւ բազումս պարգեւս ի թագաւորէն եւ ի թագուհւոյն, նաեւ մասն ի փրկական փայտէն պնդեալ յոսկում զոր առաքեալ էր նոցա ինքնակալ կայսրն Յունաց Վասիլ ծիրանածին , որ ունէր յինքն նիշ ներկուածի արեանն Յիսուսի , յորմէ աճադին զօրութիւնք եւ

մեծամեծ հրաշք երեւէին ։ Եւ այնպէս եկեալ անկըշիռ պարգեւօքն ի սեպհական աթոռն Սիւնեաց ։ Ընդ որում ընդ առաջ ելեալ Թագաւորն Վասակ իշխանակոյտ բազմութեամբ եւ մեծարգոյ շքեղութեամբ ընդունէր . եւ ոչ սակաւ լինէր խնդութիւն ի մէջ նոցա ։ Իսկ սուրբ մետրապօլիտն առատ վարդապետութեամբ եւ քաղցր բանիւ լուսաւորէր եւ մխիթարէր զիւր հաւատացեալ հօտն ։ Այպս այնուհետեւ սկսաւ փարթամանալ եւ պայծառանալ տունն այն (առաւել) քան զառաջինն . եւ զամենայն յափըշտակեալ ժառանգութիւնս անդրէն դարձուցանէին . քանզի Մաքենոցացիքն զԳեղաքունի էին յափշտակեալ, և ոմն մի զՎայոց ձոր, և եպիսկոպոս նստեալ . և ոմն մի՝ զԵրնջակայ գաւառն, և անդ նստեալ եպիսկոպոս յԵրնջակայ վանքն . և Գողթնացիքն՝ զԲոռտեձորն եւ զԲռուստ եւ զՕրդուաս ։ Նմանապէս եւ իշխանքն զգեղանն էին բաշխեալ ազատաց իւրեանց, զորս շրջաբերական թղթովք Տեառն Սարգսի, որ ահագին նզովիւք փակեալ էր զի մի ոք իշխեսցէ յանդըգնիլ ի հերքումն յայսմ միճակիս . այլ զբովանդակն ի սեպհական աթոռն դարձուսցեն ի սուրբ նշանն և ի Տէր Յովհաննէս, դարձոյց անդրէն եւ հնազանդեցոյց ինքեան եւ հերքեալ հալածեաց զօտար եւ զզայրացեալ հովիւսն ։

Որում աջակցեալ բուռն զօրութեամբ բարեպաշտ

Թագաւորն Վասակ դարձուցանելով անդրէն զյափշտակեալ հոգեցատուրան զգեօղն Ցաւղունի եւ զԳողեվանն, նաև զբոլոր վիճակն իւրոյ տէրութեանն. եւ գրէ իւրով ձեռամբն նաման վիճակիս այսպէս. «յանուն Աստուծոյ այս իմ հրամանքէ Վասակայ Թագաւորիս որ գրեցի ի 468 Թուականիս. եւ ետու իմ Աստուծոյ փոխանիս Տեառն Յովհաննիսի զի յորժամ ընտրեաց Աստուած զաւ յորովայնէ ոպպէս զմեծ Կարապետն. եւ շնորհեաց մեզ այցելու որ եւ լուսաւորեաց զամենեսեան ա՛յնքան զի երանեցաք ամենայն վիճակեալքս տրա յամենայն աշխարհաց. այս դարձուցաք զՑաւղունի գիւղն և զԳողեվան ի սուրբ քաղաքն Տաթեւ զոր յառաջ յետս էաք առեալ վասն խանգարման եւ խափանման հայրապետանոցին. եւ այժմ վերստին հաստատեցաք. ընդ նմին եւ զբոլոր վիճակս որ ըստ երկոտասան գաւազանացն անդրէն դարձուցաք եւ հաստատեցաք զՎայոց ձոր, զՎեղաքունի, զՓորակն, զՀամբանդ, զՋուղայ, զԾորընջակ։

Յաւիտեան մինչև յաւիտեան չունի ոք հրաման յԱստուծոյ ամենակալէն եւ յամենայն սրբոց հակառակ կալ այսմ աթոռոյ կամ յափշտակել ջանալ զայս շէներս եւ զգաւառքս. եւ թէ յանդգնին՝ յԱստուծոյ եւ ի սուրբ հայրապետացն հոգւով եւ մարմնով նզովեա՛լ եղիցին»։ Գրեցաք և կնքեցաք մերով ար-

քոնական հրամանաւ եւ միաբանեաւ ի կամս Աստուծոյ : Ես Սմբատ իշխան վկայ եմ իմ քեռւոյս աստուածապսակ Թագաւորիս հրամանաւս զոր չը կարէ ոք խափանել. եւ ես Գրիգոր՝ որդի Աշոտի իշխանաց իշխանի, վկայ եմ իմ քեռւոյս աստուածապսակ Թագաւորիս հրամանաւս. Աստուած շնորհաւոր (արասցէ)սուրբ աթոռոյն : Դարձեալ տայ Թագաւորն Վասակ զգիւղն Գրուակս. եւ գրէ վճիռ այսպէս : «Կամաւն Աստուծոյ ես Վասակ՝ որդի Սըմբատայ Թագաւորի, զԳրուակ գիւղ որ յառաջ տըուեալ տէրանցն ի սուրբ Նշանն, ես վերստին հաստատեցի իւր բոլոր սահմանովն ի Տաթեւ ի ձեռն աստուածապատիւ եպիսկոպոսին Սիւնեայ Տեառն Յովհաննիսի, ազատ յամենայն չարէ եւ հարկաց զի կատարեսցեն զառաջնոյն յիշատակն եւ զմերս : Եւ արդ թէ ոք խափանել ջանայ՝ յամենակալէն յԱստուծոյ եւ յամենայն սրբոց նզովեալ եղիցի, եւ մասն ըզ Կայենին առցէ. եւ թէ տաճիկ իշխանութիւն փոխի. եւ յափշտակել ջանայ՝ յԱստուծոյ եւ յիւր փեղամբարէն ապիզար լինի, և հազար հազար նալաթ եղիցի». ի թուիս 465 : Հաստատ է կամաւն Աստուծոյ :

Տեսեալ զայս ամենայն նախանձին եւ իշխանք ոմանք զնախանձ բարի. եւ տան զգիւղն Շոռոթն ի Տաթեւ. եւ գրեն կտակ պայմանի այսպէս : «Յանուն Աստուծոյ այս գիր վճռի է մեր Խարբի, Աշոտաւ֊

զայ, Սուփանայ, Սակոփ որդեացս, որ կամ եղեւ մեզ տալ զմեր հօր արեան գին դիւղն զՇոռոթն ի Տաթեւոյ սուրբ մայրաքաղաքս ի ձեռն Տեառն Յովհաննիսի՝ Սիւնեաց եպիսկոպոսի, ի ժամանակս Թագաւորիս մերոյ Վասակայ, մեր հօրն հոգւոյն. եւ կարգեցին մեզ յիշատակ զսուրբ Սարգսին օրն ամեն եկեղեցիք վանիցս պատարագ Սակոփ. ի Թուականիս Հայոց 475 ։ Արդ՝ թէ ոք խափանել եւ խախտել ջանայ զայս տուրս՝ յԱստուծոյ ամենակալէ եղիցի որոշեալ. և ի սուրբ առաքելոցն և մարգարէիցն և յ318 հայրապետացն եւ յամենայն սրբոց նզովեալ լիցի. և մեր մեղացն պարտական եղիցի. ամէն »։ Եւ ես Վասակ Թագաւոր իմով ձեռամբս հաստատեցի եւ եդի զիմ կնիքս արքունական. եւ ես Յովհաննէս եպիսկոպոս հաստատեցի իմ ձեռին գրովս եւ կնքեցի իմ սովորական մատանեաւս. մի՛ ոք իշխեսցէ խախտել զայս վճիռս. եւ թէ տաճիկ աւազ լինի եւ յափշտակէ՝ յԱստուծոյ և յիւր փեղամբարէն որոշած լինի և յամենայն սրբոց նզովեալ և 100,000 նալաթ ։



## ԾԷ. — Շրջաբերական Տեառն Սարգսի՝ Հայոց կաթողիկոսի, Սիւնեաց բոլոր վիճակին ։

Շնորհօք ամենակալին Աստուծոյ Հօր, եւ գթութեամբ միածնի Որդւոյ նորա, եւ նախախնամութեամբ ազատիչ սուրբ Հոգւոյն, այս գիր հրամանի և օրհնութեան է իմ նուաստ ծառայի Աստուծոյ Տէր Սարգսի, և ողորմութեամբ նորին կաթողիկոսի ամենայն Հայոց, զոր գրեցաք նամակ շրջագայական առ նախագահ և յաստուածամեծար տունդ Սիւնեաց, յաստուածապսակ թագաւորդ Վրաց և յաստուածապահ իշխանդ Սևադայ եւ Աշոտ եւ առ այլ ազատդ եւ յընդհանուր ժողովրդականդ ըստ երկոտասան կարգեալ դաւազանացդ ։ Որոց նախ օրհնութիւն եւ պահպանութիւն ժամանեսցէ ի սուրբ Գրիգորի աթոռոյս, եւ յաստուածաներկ եւ յայլ աստուածագումար սրբոցս և ի մէնջ. որովք փրկեալք լինիջիք յամենայն պատահարաց և ի տարաժամ դիպուածոց ։

Գիտութիւ՛ն ձեզ հոգևոր որդիք մեր՝ որ թէպէտ յառաջ քան զմեզ ի կաթողիկոսացն՝ ի Տէր Թէոդորոսէ և ի Տէր Անանիայէ վասն իրիք ինչ պատճառի խախտեալ էր առաքելադիր աթոռդ Սիւնեաց. և օծանեալ եւ բաժանեալ վիճակ դաւազանիդ այդորիկ. այլ մեք

ի գալ ընտրեալ առնս Աստուծոյ Յովհաննիսի՝ ձեռնադրեցաք զսա ըստ առաջին աթոռակալացն մետրապօլիտ Սիւնեաց. և հաստատեցաք վերստին զնոյն վիճակ երկոտասան դաւաղանին յաթոռ նախագահ եւ ի տունդ Սիսական ի Տաթև ի ձեռն աստուածարեալ եւ բազմերջանիկ սուրբ եպիսկոպոսիս եւ ընտրեալ մետրապօլտիս ձեր Տէր Յովհաննիսի. եւ վերստին աւանդեցաք դմա զնախնական սպասին իւրեանց՝ զխաչն եւ զբազմականն ։ Եւ այս ոչ եթէ մերով ձեռներէց իշխանութեամբ. այլ զի երեր առ մեզ զմեծափառ նամակս եւ զվճիռ պայմանի գրեալ ձեռամբ նախնի հայրապետացն Հայոց, սկսեալ ի սրբոյն Գրիգորէ Լուսաւորչէ և յորդւոց և ի թոռանց իւրոց որոց նամակն մինչ ի սուրբն Սահակ յունարէն գրով էր գրեալ. եւ իւրաքանչիւր մատանեի կապարեալ կնքով եդեալ ի վերայ. և անտի հայերէն գրով մինչ յԱնանիա. եւ յետ Անանիայի գրեալ մինչեւ ի մեզ բայց միայն յԱնանիայէ ։

Եւ սա էր գրեալ վասն Վահանայ եպիսկոպոսի. բայց ոչ ըստ այլոցն կարգի. եւ էր բովանդակն 55 նամակ շրջաբերական թղթի իւրաքանչիւր հայրապետի կնքով. եւ այն երկար բանիւք եւ հրահոսան նզովիւք գրեալ զի մի՛ որ իշխեսցէ պակասեցուցանել ի սահմանադրեալ վիճակէ սոցա եւ կամ նուաստացուցանել եւ բառնալ ի պատուոյ եւ յաստիճանէ սո-

ցա ։ Վասն որոյ և մեք երկուցեալ յայնպիսի առաքելական հարցն հրամանէ ․ և պատկառեալ ի ծերացեալ, բազմաժամանակեայ աթոռոյն Սիւնեաց՝ անդրէն դարձուցաք զբոլոր սահման վիճակի նոցա ․ եւ վերստին հաստատեցաք զեղեալ պատիւ նոցա՝ զխաչըն, զբազմականն եւ զգաւազանն ։ Եւ այս իսկ են գաւառք վիճակեալք հօտի նոցա ․ Սիւնիք, Բաղք, Արեւեաց տունն, Որդուատ, Արքունիք (5), Վանանդ, Երնջակ, Նախիջաւան, Ջուղայ որքան Երասխայ դետն հատանէ, Ճահուկ, Վայոց ձոր խաչերոյ խոռոմն, Գեղաքունի Կռզայ բակոմն, Երեչատ, Ջաղացաձորն, եւ Փորակն իսկ բոլորովին, յորում բազում հակառակութիւնք լեալ էին ․ եւ մեծամեծ նզովիւք ամրացուցեալ էին կաթողիկոսքն Հայոց ։

Հատանէ եւ զսահման Աղվանից Ըամբի խոռն, Ծար գաւառ, Աղահէճ, ընդ որ Աղուանոյ դետն հատանէ մինչ ի քարավաղին կամուրջն, եւ Հաբանդ գաւառ ․ եւ յԵրնջակայ սահմանին Բոտի ձոր զոր Գողթնացիքն էին առեալ, նաև Վանանդ և Գողթն բոլորովին ․ որոց Թէպէտ եպիսկոպոս լեալ էր եւ կայր սակաւ վայրացն ․ այլ ի ներքոյ Սիւնեաց նուաճեալ էր ։ Եւ արդ դուք գաւառքդ Սիսական՝ ամենայն մտերմութեամբ հնազանդ լերուք Սիւնեաց աթոռոյն, և ընկալարո՛ւք զառաքեալդ ի մէնջ զեպիս֊

կոպոսդ ձեր զՏէր Յովհաննէս որպէս զհրեշտակ Աստուծոյ և զառաքելական այր. և ամենայն հպատակութեամբ ծառայեցէ՛ք դմա որպէս Աստուծոյ. եւ թէ ոք հակառակել կամի այդմ աթոռոյ եւ կամ խանգարման պատճառ լինի այդմ հայրապետադիր սահմանի պատուոյ եւ վիճակի եւ ժառանգութեանց եկեղեցւոյն՝ զանբաւ հրահոսան անէծսն ժառանգեսցէ՛ որ յառաջին սուրբ հայրապետացն կարգեալ էր եւ կրկնապատիկ ի մէնջ իսկ : Իսկ կատարիչք հրամանիս օրհնին յԱստուծոյ ամենակալէ եւ ի սուրբ հայրապետացն եւ ի մէնջ եւ ի սրբոյն Գրիգորոյ աթոռոյս : Եւ արդ գրեցաւ գիր հրամանիս մերոյ մերով ձեռամբ ի թուականիս Հայոց 455. եւ վասն առաւել հաստատութեան կնքեցաք մերով սովորական մատանեաւս ի փառս Աստուծոյ, որ է օրհնեալ յաւիտեանս. ամէն :



ԾԸ. — Գալն խոնայեղացւոց. եւ կործանեալն զեկեղեցին եւ այրեալն զվանսն Տաթեւոյ. եւ նորոգ շինութիւն եկեղեցւոյն և վանացն ի Տէր Յովհաննիսէ :

Այս բազմերջանիկ եպիսկոպոսս զարդարեաց զեպիսկոպոսարանն՝ զմեծ նախագահ տունն Սիւնեաց

կՑաթ եւ զանազան զարդուք եւ մեծամեծ սպասուք և գեղեցիկ կարգօք աստուածայնօք . և ելից բազմութեամբ կրօնաւորօք , անյաղթ փիլիսոփայիւք եւ աննման երաժշտօք եւ բանիբուն վարդապետօք եւ աստուածազգեաց ճգնաւորօք , նաև յոգնապատիկ արհեստաւորօք ։ Եւ էր այնուհետև տեսանել զտունն զայն իբր զմայրաքաղաք բազմածողով . քանզի եւ շինեալ կայր բազմութիւն երգոց եւ ամբոխութիւն իբրև հազար արանց, որոց մշտաջան աղօթքն բարձրացեալ էր առաջի Աստուծոյ . եւ կայր կանգուն յերկրէ յերկինս իբրև սիւն հրեղէն ։ Յորոց աղօթից խաղաղացեալ էր աշխարհս Սիսական յամենայն հինից թշնամեաց զամս 50 . և ի վերուստ անպատուհաս լինէր յամենայն պատժոց և ի պատահարաց և ի տարաժամ դիպուածոց ։

Ապա խանդացեալ ընդ այս չարին ոչ կարաց տանել . այլ մտեալ ի սիրտ իսմայէլական զօրագլխացն որ ի Մովկան եւ ի Թովիշ, յԱհր եւ յԱրտաւէլ եւ յԱտրպատականն . եւ գրգռեալ շարժեաց վասն համբաւոյ երևելի տանն ։ Որք ձայն տուեալ միմեանց ժողովեցան ի միասին բազում զօրօք, եւ խորհուրդ արարին գալ գաղտագողի ի վերայ վանացն, եւ յաւարի առնուլ զանհուն կարասխ նորա, այսինքն զկահ սպասուց և սրբութեանց եկեղեցւոյն ։ Եւ յարուցեալ անցին ընդ Երասխ, եւ զանխլաբար

եկեալ հասին յանկարծակի ի վերայ սրբոյ ուխտին, եւ իբր զհուր սաստիկ հեղան ի մէջ վանիցն . եւ որք կարացինն թափեցան ի վայր ի խրամս, եւ զերծեալ փախեան . եւ եպիսկոպոսն Տէր Յովհաննէս ոչ պատահէր ի տեղին ։ Իսկ զայլսն ամենայն սրոյ ճարակ տային, եւ զեկեղեցին որ յանուն սրբոյն Գրիգորի Լուսաւորչին էր՝ լցին փայտիւ, և հուր հարեալ հրդեհեցին զգեղեցկայարմար շինուածն, և քանդեալ կործանեցին . կամեցան եւ զսքանչելի սիւնն կործանել զմեծ Տէր Յովհաննիսին որ երկու ամաւ յառաջ քան զմեծ եկեղեցին էր կանգնեալ . և տեսեալ հրաշս ինչ ոչ իշխեցին հալել . նմանապէս եւ ոչ ի մեծ եկեղեցին . այլ զամենայն շինուած վանացն այրեցին եւ քակեալ յատակեցին զգործատներն եւ զտրապէզն մարմնաւոր սեղանոյն եւ զամենայն յարկս կրօնաւորացն եւ այլ բնակչացն . եւ զոր ինչ գտին՝ յաւարի առեալ գնացին ուստի եկին ։

Ապա լուեալ զայն եպիսկոպոսին եկն ի տեղին, և տեսանէր զայնքան մեծամեծ վնասն եւ անհնարին աղէտսն, անտանելի սգով և անչափելի ողբովք լայր եւ կոծէր դառնապէս, եւս առաւել, վասն կործանման եկեղեցւոյն . և յանմխիթար տրտմութեան վարանէր . տայր հրաման եւ զապանեալսն խնկել եւ պատուել մարտիրոսական օրինօք եւ փոխել ի հանգիստ ։ Ժողովեալ ժամանեցին եւ ամենայն ազատք

և դաւառակալք Միսակեան աշխարհիս, և տէր Սմբատ եւ տէր Գրիգոր. եւ բազում մխիթարանօք սփոփեցին զեպիսկոպոսն, և յորդորեցին ի վերստին շինութիւն տանն ինքեանք օժանդակելով ամենայն պիտոյիւք ։ Իսկ ապա երանելի եպիսկոպոսն ըստ խոհեմ իմաստութեանն իւրոյ պնդեալ իբրև այր զմէջ իւր՝ ձեռն ի գործ ածեալ սկսանի ի շինութիւն կործանեալ տաճարին սրբոյն Գրիգորի զոր յառաջ Փիլիպպէ իշխանն էր շինեալ. եւ կանգնէ զնա գեղեցկայարմար շինուածով, և դնէ ի նմա զգանձն հոգևոր զանհամեմատն ի յէիսս զսուրբ Լուսաւորչին զպատուական եւ զերջանիկ նշխարն միակողմն գլխոյն եւ զմիւս բազուկն յաջակողման աւագ կամարին ի գլուխ սեանն ամփոփեալ անյայտ ի մարդկանէ, զոր յետ ժամանակաց գտեալ եղեւ ի նմին տեղւոջ մերոյ նուաստութեանս նորին կապարեայ կնքովն ։

Կանգնէ եւ սա կամարս ի վերայ աւագ դրան վանացն որ հայէր ընդ արևմուտս, և շինէ ի վերայ նորա երկու խորան յանուն սրբոյ Կարապետին ի քերեալ քուաքատակեայ քարանց. շինէ եւ զամենայն տունս հասարակաց եւ զյարկս կրօնաւորացն յոյժ վայելուչ քան զառաջինն զայրեալն եւ զքանդեալն յայլազգեացն. շինէ եւ յետոյ զաւիթս սրբաքարով ի հարաւոյ դրան մեծ եկեղեցւոյն սրահս յոյժ յարմարս ի հանդիստ եղբայրութեանն, եւ ժողովեալ զցրուեալ

եղբարսն պայծառացոյց քան զառաջինն . չինէ եւ խորան մի ի վերայ փոքր դրանն ընդ որ մտանէն ի գաւիթ եկեղեցւոյն : Իշխան մի Գիւեն անուն՝ որդի Խաղբակայ, տայ յիւր հայրենի ժառանգութեանցն զԽոտ գիւղն եւ զԽոտադետոյ մեծ այգին, եւ ի Վժանխ զԾաղկիկ որ է տեղի բազում անդաստանաց, վասն իւր հոգւոյն ի Տէր Յովհաննէս և ի սուրբ նշանն . եւ գրէ ինքեան կտակ վճռի . եւ խնդրէ ամ յամէ հինգ օր պատարագ յԵղիական աւուրց շաբաթ օրն . եւ չարաչար եւ մեծամեծ նզովիւք փակէ ոչ ումեք յափշտակել զայն հոգեցատուր ի սուրբ եկեղեցւոյն . եւ դնէ զՏէր Յովհաննիսի կնիքն վաւերական ի վերայ :

Եւ արդ՝ մի՛ ոք իշխեսցէ այսմ հակառակել և կամ զնորա յիշատակն խափանել . ապա թէ ոչ՝ նզովս առցէ յԱստուծոյ և ի սուրբ հայրապետաց, ի Թուին Հայոց 495 : Դարձեալ և երջանիկ եպիսկոպոս Տէր Յովհաննէս կազմէ ի համակ ոսկւոյ զսխրալին ընաւից զահարկու եւ զմեծասքանչ սուրբ նշանն զտիեզերահրաշ եւ զաստուածաներկ սուրբ խաչն որ էր իբր արեգակն ջահաւորեալ յաշխարհիս Սիսական . եւ հրահրաւն ճառագայթիւքն հիացուցանէր զամենայն մարդիկ : Եւ խորհրդապէս յօրինուածովք զարդարեաց զնա եդեալ ի վերայ պատուական քարանց Թուով 24 . եւ ընդելուզեալ մարգարտովք գեղեց-

կութեամբ. եւ եդեալ ի նմա զկենսաբաշխն արարածոյ, զփրկական և զաստուածընկալ սուրբ փայտն յորոյ վերայ պնդեալ էր բեւեռօք Բանն Աստուած. և ունէր յինքն յայտնի տեսողաց զկաթուած արեանն Յիսուսի Քրիստոսի. յորմէ ելանէին զօրութիւնք եւ նշանք ահաւորք: Եւ էր այս փայտ խաչանիշ ձեւեալ. և կայր ի ներքոյ միջի ականն որ էր ի սպիտակափայլ բիւրեղանման յակնդաց. ընդ որով թափանց երեւէր փրկաւէտ սուրբ նշանն:

Եւ ետ գրել փորուածով ի թիկանց կուսէ յիշատակ բանի զայս « Տեառն Յովհաննիսի՝ Սիւնեաց եպիսկոպոսի, է սուրբ նշանս. ի թուականիս 466 կազմեալ զսա կանգնէ ի տանն Սիսական առ ի յոյս հաւատացելոց և ի փրկութիւն բոլոր վիճակելոցս »: Եւ արդ՝ այսպիսի մեծահանդէս բանիւք եւ երեւելի գործով պայծառացուցեալ զտունն զայն բազմերջանիկ եւ յոգներանեան եպիսկոպոսս այս Տէր Յովհաննէս. և յետ 50 ամի մետրապօլտութեան իւրոյ, ի թուականին 507 գնայ զկնի կոչողին ի քաղաքն անդրանկաց յԵրուսաղէմն վերին, ուր ժողովք սրբոյն են և քաղաքապետ Քրիստոս. զի ըստ մեծավաստակ իւրոյ արդեանցն եւ ճգանցն առնու զվարձն հազարաւորս և բիւրապատիկս: Եւ դուք աստուածարեալ հայրապետք եւ սրբազան եղբարք՝ որք յաջորդիք ի սուրբ յաթոռս, եւ լինիք ժառանգաւորք տանս, անմոռա֊

նայն եւ անխափան պարտիք կատարել գյիշատանկ բազմերախտ սո՛րբ հօրս հանապազ աղօթիւք եւ կենդանարար խորհրդեամբն ։ Եւ աղօթիւք և խնդրր-ուածովք սորա եւ ամենայն սուրբ հայրապետացս դուք եւ մեք ի միասին փրկեա՛լ լիցուք յամենայն վտանգաւոր կրից հոգւոյ և մարմնոյ. և անխախտելի մնասցէ սուրբ տունս եւ ամենայն վիճակեալք սորա, զորոյ զամէնն սուրբքն եւ սիրելիքն Աստուծոյ տասցեն ։



## ԾԹ. — Վասն թագաւորացն Սիւնեաց ։

Արդ առաջին թագաւորեաց ի Սիսական աշխար-հըս արին և քաջն, հզօր և բարեպաշտ արքայն Սըմ-բատ՝ որդի Սահակայ՝ եղբօրն Սմբատայ, որք էին որդիք բարեպաշտին Աշոտոյ՝ եղբօր մեծին Վասա-կայ որ Իշխանիկ կոչիւր. և սոքա որդիք երանելոյն Փիլիպպէի՝ եղբօր Սահակայ որ ի Դվին սպանաւ ի պատերազմին Հաւլայ ամիրային, որդիք Վասակայ՝ մեծ Նահապետին Սիւնեաց ։ Իսկ յետ Սմբատայ թագաւորէ որդի նորուն Վասակ՝ այր քաղցր եւ աստուածասէր եւ յաջողած յամենայն գործս ։ Որ տուեալ էր զքոյրն իւր Աշոտոյ ի նոյն Սիսական տոհմէ որ էր իշխանաց իշխան ամենայն Թագաւո-

Հատ. Բ ։ 5.

րութեանս. և ունէր երկուս որդիս՝ Սմբատ և Գրի-
գոր։ Ապա վախճանի Վասակ Թագաւոր և դնի ընդ
(հօր) իւրում Սմբատայ. եւ ոչ ունէր ժառանգ տէ-
րութեանն. վասն որոյ Թագաւորեցուցանեն զՍըմ-
բատ՝ որդի Աշոտոյ. եւ կարգեն ի տեղի հօր իւրոյ
զԳրիգոր՝ եղբայր սորա, իշխան իշխանաց Սիսական
աշխարհիս։ Բայց Սմբատ առաւել էր քաղցր եւ
հեզահամբոյր և ահարկու յամենայն շրջակայ ազգան.
որ և կալեալ զԹագաւորութիւնն ամս ինչ՝ վախճանի,
եւ դնի ի Ցովհաննու վանս առ դրան տաճարին։ Եւ
առնու զԹագաւորութիւն նորա եղբայր իւր Գրիգոր.
եւ սոքա երկոքեան որդիք մեծին Աշոտոյ որ աւագ
Աշոտեանք կոչին։

Իսկ Գրիգոր առեալ էր իւր կին զամենօրհնեալ
եւ մեծահաւատ բարեպաշտուհին Շահանդուխտ ի
տանէն Աղվանից՝ դուստր նոյին Թագաւորազինն
մեծին Սևադայի. եւ էին անզաւակ. եւ կամէր
մնալ Թագաւորութիւն նոցա անժառանգ. ապա
խորհեալ ի միասին ընդ իշխանսն՝ ածեն յԱղվանից
զՍենեքերիմ՝ եղբայր նորին Շահանդխտոյ Թագա-
ւորազն մանուկ, յոյժ գեղեցիկ տեսլեամբ եւ առոյգ
հասակաւ՝ հանճարեղ եւ իմաստուն, նաև երկիւղած
յԱստուծոյ։ Եւ ստանայ զնա ժառանգ իւրեանց
Թագաւորութեանն ամս ինչ. եւ վախճանի եւ սա։

Եւ յայնմ ժամանակի էր բարձրացեալ եւ զօրա-

ցեալ տէրութիւնն Ցանկայ (6). և ամենայն աշխարհ ի ներքոյ հարկի նոցա նուաճեալ կայր. վասն որոյ եւ յոլով գաւառս չորթեալ հանին ի Սիսական աշխարհէս ի ձեռաց բնիկ տէրանցն. եւ էր յաթու սուլտանութեանն Մէլիք շահն՝ այր բարեբարոյ եւ խաղաղարար, յորմէ մեծարեալ լինէր Սեննեքերիմ ի պատիւ թագաւորութեան. և յոյժ երևելի փառօք թագաւորեաց ի տանս Բաղաց, և ընդարձակեաց զամենայն սահմանս տէրութեան իւրոյ, եւ բազում ամօք վարեալ զթագաւորութիւնն քաղցր եւ խախաղական կենօք մինչ ի մահ Մէլիք սուլտանին որ մեռաւ ի 541 թուականին: Եւ ապա սկսաւ քայքայիլ խաղաղութիւնն եւ ապականիլ ամենայն շինութիւնք աշխարհիս զոր յիւրում տեղւոջ ասացից: Եւ էին Սեննեքերիմայ երեք որդիք՝ Գրիգոր, Ամբատ, Սևադայ եւ դուստր մի: Բայց մահ Սենեքերիմայ եղեւ այսպիսի պատճառաւ. զի յետ Մէլիք շահին ամենայն ոք գլուխ ի վեր առեալ՝ եղև անձնիշխան եւ զմիմեամբք ելեալ ո՛ք որ կարողանայր, աւերէր զերկիր զերփմամբ եւ յափշտակութեամբ:

Սակս որոյ խանդացեալ անիծեալ Խամայէլականացն ընդ գեղեցիկ և ամուր թագաւորութիւնս Բաղաց զոր խոչ մեծ համարէին իւրեանց. եւ ելեալ ամիրայն Պարտաւայ եւ Ռանայ եւ Գանձակայ բա-

ղում զօրօք գայ ի պատերազմ ընդ Սենեքերիմայ, ընդ որում էր Շիրակայ իշխանն Գրիգոր Ապիրատեան : Իմացեալ զայն Սենեքերիմայ և ամրացուցեալ զամենայն աշխարհն յանառիկ ամուրսն. եկեալ ապա անիծեալ ամիրային. և տեսաւ զի անհնարին էր ի մարդկանէ, յուղարկէր զԳրիգոր իշխանն Անեցի, որ պատճառաւ ինչ կայր առ նմա, առ Սենեքերիմ արքայն եւ ասէ . երդմամբ հաւանեցո՛ զնա գալ առ իս եւ առնեմք ընդ միմեանս սէր . եւ մեծամեծ պարգեւօք արձակեմ զնա. ապա թէ ոչ հաւանեցուցանես, եւ զքոյդ զլուխ աստէն հատանեմ : Գնացեալ ապա Գրիգորին այն զչար ճանապարհն, եւ մտեալ առ Սենեքերիմ, եւ մեծամեծ երդմամբ հաւանեցուցանէ զնա գալ առ ամիրայն. որք և եկինն ի միասին :

Իսկ տեսեալ զնա չարաթոյն գազանին եւ ստեալ ուխտին, և յարձակեալ մոմռանօք ի վերայ՝ եսպան զթագաւորն . եւ ինքն անց, գնաց յաշխարհ իւր : Ահա այսպէս շիջաւ ճրագն քրիստոնէից որ կայր Յուսացեալ յամուրսն Բաղայ : Զոր եւ եկեալ մեծամեծացն եւ որդեացն իւր՝ կոծ մեծ արարին ի վերայ եւ բարձեալ տարան ի սուրբ ուխտն Վահանու. եւ անդ եդին ի շիրմի ընդ այլ թագաւորսն : Եւ յետ նորա էառ զտէրութիւն նորա որդի իւր Գրիգոր՝ նուազ եւ ընդաղօտ թագաւորեալ : Բայց այս Սե֊

ներքերիմ եւ քոյրն իւր Շահանդուխտ բազում արա-
րին արդիւնս եւ շինուածս երեւելիս ի վանսն Յով-
հաննու. նաեւ բազում պարգեւս և ժառանգութիւնս
ընծայեցին ի սուրբ մայրաքաղաքն աթոռ ի Տաթեւ,
զոր եւ կարգեցից աստ ։



Կ. — Վասն եպիսկոպոսին Սիւնեաց Տեառն Գրիգորի
որ զկնի Տեառն Յովհաննիսի. և գործոց նորին ։

Իբրև կատարեցաւ երանելի մետրապօլիտն Սիւ-
նեաց Տէր Յովհաննէս. ապա աստուածապսակ թա-
գաւորն Սմբատ ընտրէ այր մի պատշաճաւոր, վկայեալ
յամենեցունց, զարդարեալ ամենայն առաքինու-
թեամբ և լի գիտութեամբ Գրիգոր անուն, յուղարկէ
առ կաթողիկոսն Հայոց յԱնի, և տայ ձեռնադրել զնա
եպիսկոպոս Սիւնեաց ։ Որ եկեալ բազում ջանիւ,
մեծավաստակ առաքինութեամբ քաղաքավարէր ի
մարմնի, տուեալ զանձն օրինակ ամենայն բարեաց,
տեւեալ ձիգ ժամանակօք մինչեւ ամս 58 ։ Սա
արարեալ զարմանալի շինուածս յեպիսկոպոսարա-
նին Տաթև, զի կանգնեաց կամարս ի վերայ դրան
վանացն որ հայէր ընդ յարևելս. և մերձ նմին տուն
սրբաշէն. և ի վերայ սոցա եկեղեցի մի զմբէթաւոր

գեղեցկայարմար յանուն սրբուհւոյ Աստուածածնին ։ Եւ էր նա իբր դիտանոց բարձր որ հայէր ի վերայ վանացն . եւ ի չորեսին կողմանցն յօրինեալ գաւիթս. բայց յառաջի կողմն բարձրաբերձ սեամբք չինէր սրահս վայելուչս իբր քաղցր հովանոց. եւ գրէ ինքեան արձան յիշատակի ի վերայ եկեղեցւոյն. եւ հաստատէ քառասուն մի՝ ամ յամէ կատարել անխափան ի յիշատակ իւր ։

Սա առնոյր եւ զԲոլորաքարն Նորեայ բաժինն ի Դվենէ՝ որդւոյ Խաղբակայ. եւ հաստատէր նզովիւք ի սուրբ եկեղեցին ։ Ի ձեռն սորա աւանդեալ երանելի եւ սուրբ Թագուհին Շահանդուխտ եւ բարեպաշտ Թագաւորն Սենեքերիմ՝ եղբայր նորին, զԱրիտն աւան որ է մերձ եւ սահմանակից սրբոյ և մեծի աթոռոյն Տաթեւոյ. և գրեն զվճիռ պայմանին ահագին եւ սոսկալի նզովիւք՝ ինքն իսկ Թագաւորն իւրով ձեռամբն որ էք այսպէս « կամաւ կարող հզօրին Յիսուսի ես Սենեքերիմ՝ Թագաւոր Հայոց, կացեալ ի Սիսական եւ Բաղաց աշխարհիս, ընթերցեալ զառաջին հայրապետացն եւ զիշխանացն հաստատագիծ նամակ՝ կամեցաք վերստին նորոգել եւ անդրէն դարձուցանել. եւ գրեցաք զայս վճիռ պայմանի իմ սրտի յօժարութեամբ եւ հրամանաւ բարեպաշտ եւ քրիստոսազգեաց քերյս իմոյ Թագուհւոյս Շահանդխտոյ եւ սրբասնունդ օրիորդիս Կա-

տայիս. որք լցին զերկրաւոր փառս աշխարհիս եւ զհետ երանաւէտ ձայնին Քրիստոսի ընթացան ճգնազգեստ առաքինութեամբ ։ Եւ եւս զԱրիս իւր ամենայն սահմանօքն շուրջանակի, հողով եւ ջրով եւ արտավարօք եւ զամենայն որ ինչ իւրն էր, ի Տաթեւոյ սուրբ եկեղեցիքն՝ ի հայրապետանիստ մայրաքաղաքն, ի սուրբ առաքեալքն եւ ի սուրբ Գրիգորն, ի հայրապետութեան Տեառն Գրիգորոյ՝ Սիւնեաց եպիսկոպոսի, եւ իւրեանն որդիացելոյ Տեառն Ստեփաննոսի ։ Նոյնու անհաշիւ, անհամիմաղ, առանց զոք զրկելոյ, առանց զուրուք յափշտակելոյ, առանց ումեք տրտնջելոյ. քանզի մեր սեփական (էր) եւ ոչ այլ ումեք զոր ընծայեցի սուրբ ուխտիդ Տաթեւոյ յաղագս փրկութեան հոգւոյ իմոյ եւ քաւութեան մեղաց իմոց եւ հարազատաց իմոց քերց, եւ որդեկաց իմոց կենաց, եւ փրկութեան Գրիգորոյ, Սմբատայ եւ Սեւադայի եւ մօր իւրեանց եւ քեռն ։ Եւ կարգեցի քառասունք մի՝ որ ամ յամէ կատարեն ի սուրբ եկեղեցիքն ի տէրունի քառասունքն՝ զքսան օրն Թագաւորին Գրիգորոյ՝ որդւոյ Աշոտոյ, եւ զքսան օրն՝ իմ մօրն Սոփիայ որչափ մեք կենդանի եմք, եւ յետ ելիցն մերոյ՝ զքսան օրն իմ քուերն Շահանդխտոյ առնեն, եւ զքսան օրն՝ ինձ Սենեքերիմայ ։

Արդ եթէ ոք ընդ հակառակս ելանէ կամ խան-

գարել մտածէ կամ յափշտակել յանդգնի կամ քսէ ումեք, կամ ի բանսարկութիւն մտաբերէ շորթել զմեր արդիւնսդ ի սուրբ եկեղեցեացդ, այնպիսին մի գտցէ ողորմութիւն յԱստուծոյ մի յայսմ աշխարհի եւ մի ի հանդերձելումն. այլ անէծք յափշտակողացն եկեսցէ ի վերայ նորա, և մեղք մեղսապարտիցն եւ նզովք չարագործացն, որպէս Կայենին եւ Յուդային և Արիոսին եւ հոգեմարտին Մակեդոնին եւ Նեստորի երկաբնակին եւ Լեոնի հռոմայեցւոյն և որ այլ նմանիք նոցա. եւ հաստատիչքն օրհնեա՛լ եղիցին յԱստուծոյ ամենակալէն և յամենայն սրբոց»։

Գրեցաւ իմով ձեռամբս Սենեքերիմայ՝ որդւոյ Սեւադայի ի կամս Աստուծոյ. ես Շահանդուխտ վկայ եմ իմ եղբօրս Սենեքերիմայ հաստատուն արարածիս եւ վճռիս. որ եառուն ի Տաթեւոյ սուրբ առաքելքն. Աստուած շնորհաւո՛ր արասցէ սուրբ եկեղեցեացն. որ խանգարել մտածէ՝ զգրեալ անէծքն ժառանգեսցէ։ Եւ հաստատիչքն օրհնեա՛լ եղիցին. ես Գրիգոր՝ Սենեքերիմայ որդիս ու իմ եղբարքս վկայ եմք այս անսուտ և հաստատուն տրոյս և հրամանացս ի թուիս 534 ի կամս ողորմութեան բարերարին Հօր Աստուծոյ և օծելոյ նորա Յիսուսի բանին բարձրելոյ և կենդանարար սուրբ Հոգւոյն. ես Գրիգոր ամենանուաստ ծառայ Քրիստոսի եւ ողորմութեամբ նորին եպիսկոպոս Սիւնեաց եւ որդիացեալս իմ

Ստեփաննոս ընկալաք զընծայս յԱստուծոյ օծեալ և պսակեալ Թագաւորիս Սենեքերիմայ և զհոգեցատուրս զորս արարին անխախտելի եւ հաստատուն վճռաւ ի մայրաքաղաքս Տաթեւ՝ ի սուրբ Գրիգորս եւ ի կենսակիր սուրբ Նշանս, յիւրեանց արեանգինք գաւառայս ի Ծղուկ նահանգի զԱրիտն աւան. եւ կարգեցին յիշատակ իւրեանց զոր կատարեն ի սուրբ եկեղեցիքդ ամ յամէ անխափան ըստ գրելոյդ իւրեանց՝ ի կեանս իւրեանց և զկնի հանգստեան իւրեանց ի Քրիստոս ։

Եւ արդ եթէ մեք և եթէ որ զկնի մեր յաջորդին ի սուրբ յաթոռս հայրապետք, և կամ տանս այլ առաջնորդք վանական, աւագ երէց, եկեղեցական և այլ կարգաւորք՝ յեղեալ քառասնոյդ ծուլանան, եւ զինչ և իցէ պատճառաւ՝ միով աւուրբ պակասուն առնեն՝ Թո՛ղ Թէ այլ աւելորդ խափանեն՝ անիծեալ լիցին ի Քրիստոսէ Աստուծոյ, և ջնջեսցին անուանք նոցա ի դպրութենէ կենաց. և մի՛ կատարեսցի յիշատակ նոցա առաջի սուրբ սեղանոյ զենմանն Քրիստոսի և անթողութի՛ւն լիցի յարդար դատաւորէն յանկաշառ ատենին ։ Եւ որ զԱստուծոյ պսակեալ Թագաւորին արարածդ եւ զհոգեցատուրդ խափանել ջանայ եւ յափշտակել ի սուրբ առաքելոյդ եւ ի սուրբ Նշանէդ, եթէ ի մեծամեծաց եւ եթէ ի փոքունց, եթէ յաւագաց, եթէ

յաղատաց, եթէ յօտարաց, եթէ ի ծանօթից՝ զինչ և իցէ պատճառաւ ընդ հակառակս ելանէ և խափանման և յափշտակելոյ պատճառ կամի ինչ (լինել), և յափշտակէ՝ անիծեալ լիցի անձն այն ի բերանոյն յորմէ օծն անիծաւ, եկեսցեն ի վերայ նորա անէծք ցաւագինք, և օրհնութիւնքն անէծք դարձցին. և յամենայն երկնային և յերկրաւոր դասակարգութեանց սիրողաց Երրորդութեանն անիծեալ լիցին հոգիք նոցա, զիւր կեանքն և զժառանգութիւնն մի վայելեսցէ, զորդի կեանքս ցաւագին կատարեսցէ և յետ վախճանի իւրոյ հողն օրհնութեան մի բաւեսցի նմա. իսկ հաստատիչքն օրհնին յԱստուծոյ և յամենայն սրբոց իւրոց» ։

Տեսեալ սոյն զայս բարեպաշտ և մեծ իշխանին Հասանայ՝ որդւոյ Գրիգորոյ, յազատացն Սենեքերիմայ, և շնորհէ նա զգիւղն Նորաշինիկ և զՋեատիվանս որ ի Կովսական գաւառի ի սուրբ եկեղեցիս. որք և վաղ ժամանակօք տուեալ էին ժառանգութիւն սուրբ եկեղեցւոյն Տաթևոյ. զՆորաշինիկ տուեալ էր Հրահատ իշխան ի Տէր Դաւիթ, և զՋեատիվանս տուեալ էին յաւուրս Յակոբայ մետրապօլիտի. վասն որոյ և սա դարձուցանէ անդրէն ի ձեռն Տեառն Գրիգորոյ ։ Եւ գրէ կոնակ հաստատումն վճռի առաջի թագաւորին որ էր այսպէս «Ցանուն Աստուծոյ այս իմ գիր է Հասանայ՝ Գրիգոր֊

կայ ուրուք. այս օրս որ Աստուած ինձ յաջողումն երետ. և ես զիմ բերդն ի Մշտաքախթենէն առի և զԿոզվանական գաւառ իմ արեամբս յամիրայ Փառլնոյ Թափեցի, զՆորաշինին և զՋեռատիվանս այլ ի Տաճկաց սուրբ Նշանս դարձուցի իմ Թագաւորիս Սենեքերիմայ հրամանաւ, ի ժամանակս աստուածապատիւ եւ հոգևոր Տեառն Գրիգորոյ՝ Սիւնեաց եպիսկոպոսի, և ամէն ազատացս առաջի տուի զայս, սոյա ամենեցուն վկայութեամբ ազատ յարքունի հարկաց. որ չկայ ի հետ այս գիւղօրէիցս ումեք հաշիւ կամ շատ և կամ սակաւ. և մի ոք իշխեսցէ այլ կալ սմա հակառակ կամ համիմայ յայամհեռէ մինչև յաւիտեան, կամ ի մերոց կամ յօտարաց, կամ յաւագաց, կամ ի ձեռնաւորաց: Ապա թէ յանդգնի՝ անէծք և հայհոյութիւնք և մեղք և հերձուածք ամենայն չարագործացն ի վերայ նորա եկեսցեն եւ զիւր կեանքն մի վայելեսցէ. և ի սուրբ Երրորդութենէն որոշեալ եղիցի: Իսկ հաստատիչքն օրհնեալ լիցին:

Եթէ տանիկ աւագութիւն փոխի և յափշտակել խորհի՝ յիւր հաւատոյն ապիզա՛ր եղիցի. եւ զիւր փեղամբարն թողեալ եւ անարգեալ լիցի. 1000 լանաթ ի վերայ նորա Մուսայէ՛»: Ես Սենեքերիմ Թագաւոր իմ ձեռովս հաստատեցի զՀասանայ վճիռս որ զայս չինարիս որ ի Տաճկաց Թափեալ էր իւր արեամբն,

այլ ի Տաթեւ երեւ իմ հրամանաւ. եւ ես իմ որդովքս և ազատովքս վկայ եմ, որ որչափ այս եկեղեցիքս ի հաստատութեան կան՝ մի իշխեսցէ յանդըգնիլ և ձեռնարկել ոք վասն յափշտակելոյ զայս տուրս ։ Եւ ես ետու ընդ սմին և զԽոշտաստայ տափն. արդ՝ թէ ոք հակառակի այլ՝ զվերոյգրեալ անէծսդ ժառանգեսցէ. և ես Ռուհիքս վկայ եմ այս արարուածիս զոր մի ոք իշխեսցէ հակառակ կալ. ի թուականիս Հայոց 535 ։

Յետ այսր դարձեալ գայ թագաւորն ի սուրբ ուխտն առ հոգևոր Տէրն Գրիգոր, ի տես և յաղօթս ։ Եւ էր գիւղն Հարժիս և Բերդկաներեչի և Ցուրայ գետ յափշտակած ի սուրբ եկեղեցւոյն, և առ ազատացն Սենեքերիմայ մեծ իշխանին Մահեւանայ և միւս ազատին Գէորգեայ. վասն որոյ ծանուցանէ եպիսկոպոսն թագաւորին զգրկանքն եկեղեցւոյն. եւ առաջի արկանէ զհին նամականին որ տուեալ էր առաջին թագաւորացն անխախտ պայմանաւ. զոր ընթերցեալ նորին՝ զարհուրեցաւ ի սոսկալի նզովիցն. զի երեք անգամ հաստատած էին այս գիւղօրայքս ի սուրբ աթոռն. առաջին՝ ի Սմբատայ՝ թագաւորէ Հայոց, և յԱշոտոյ՝ մեծ իշխանէն Սիւնեաց. և Բերդկաներեչի գանձագին էր Տէր Դաւթի. երկրորդ՝ ի Սմբատայ՝ թագաւորէ Սիւնեաց՝ որդւոյ Սահակայ, հաստատեցաւ ի ձեռն

տեառն Վահանայ Բաղացւոյ, և ի Վասակայ՝ որդւոյ նորին. երրորդ՝ Հասան ոմն իշխան՝ որդի Կորայ քըրդին, յազատաց մեծ իշխանաց իշխանին Վասակայ. որ էր իշխեցող Հայոց և Վրաց, որդւոյ մեծին Սմբատայ՝ Սիւնեաց գահերէց իշխանի, զնոյ առեալ էր զգիւղն Հարժիս և ի հայրենեաց իւրոց փոխան տուեալ ։ Սա հրամանաւ մեծին Վասակայ և որդւոց իւրոց Սմբատայ և Գագկայ, տայ զայս գիւղս ազատ յամենայն հարկաց ի վանսն Տաթևոյ ։

Եւ դրեն կտակ մեծամեծ դաշամբք և հաստատեն նմա մի քառասունք ամ յամէ զՅայտնութեանն ։ Ահա զայս ամենայն ընթերցեալ և ծանուցեալ բարեպաշտ Թագաւորին Սենեքերիմայ, ըստ հաւատոյ երկիւղին հրամայէ դարձուցանել անդրէն իւրոց իշխանացն . և գրեն կտակ յաւիտենական անխախտ պայմանաւ, ինքն եւ իշխանք իւր այսպէս « այս ձեռագիր է իմ Սենեքերիմայ Թագաւորի՝ որդւոյ Սևադայի, որ մինչ Աստուած անյիշաչար եղև առ իս, եւ ողորմեցաւ ինձ . և կրկին հաստատեաց ի յիս զհայրենի տէրութիւն իշխանութեան իմոյ որ խախտեալ էր ի ձեռն Իսմայէլականացն ։ Ես ընթերցայ զառաջնոցն զգրեալսն և զյափշտակեալ ժառանգութիւնսն սուրբ եկեղեցւոյս և երկնահրաշ աթոռոյս Սիւնեաց, դարձուցի անդրէն ի մայրաքաղաքս Տաթև. եւ կրկին հաստատեցի իմով ձեռամբս

անխախտ հայրենիք սմա զՀարժիս, զԲերդկաներեչի, զՑուրայ գետ. և էր այս չորրորդ անգամ հաստատութիւն ։ Եւ աւանդեցի զսոսա իմ ձեռագրովս յաստուածարեալ եւ ի սուրբ հայրապետս մեր Տէր Գրիգոր ։ Եւ արդ չէ ոք կարող զիմ գիրդ և զհաստատեալ պայմանդ ի սուրբ առաքելոյդ խախտել կամ յափշտակել յայսմհետէ մինչև յաւիտեան, եւ կամ խանգարման պատճառ լինել ։ Եւ թէ յանդգնի ոք և մտածէ զայդ՝ յԱստուծոյ եւ ի սուրբ առաքելոյն նզովեա՛լ եղիցի. եւ Յուդայի եւ Արիոսի մասնակից լինի. եւ ընդ սատանայի դատեսցի. եւ զիւր կեանքն մի վայելեսցէ. եւ թէ տաճիկ իշխանութիւն փոխի և խլել և խեռալ եւ ապականել խորհի, նա յԱստուծոյն, որ արար զերկինս եւ զերկիր, նզովեա՛լ եղիցի եւ յամենայն ընտրեալ սրբոց նորա. և ի մարգարէից զոր փեղամպար կոչեն ապիզա՛ր և անիծեա՛լ լիցի, եւ յիւր օրէնադիր Մահմետէն որոշա՛ծ և նալա՛թ եղիցի յազգաց յազգս » ։ Գրեցաւ ի թուականիս Հայոց 540 ։ Յանուն Աստուծոյ եւ ես Մահևան և ես Գէորգ հրամանաւ աստուածապահ թագաւորիս մերոյ Սենեքերիմայ դարձուցաք զՀարժիս, զԲերդկաներեչի, զՑուրայ գետ ի Տաթևոյ սուրբ առաքելոցս որ զրկեալ էին յաւերման և ի նեղ ժամանակի, եւ այժմ կայր առ մեզ ։ Եւ արդ ոչ մերոց եւ ոչ ումեք չկայ իշխանութիւն եւ հաշիւ

հետ այս շինորէից, ոչ չարի, ոչ Տաճկաց հարկի, ոչ բերդաչարի, ոչ գունդգահի եւ ոչ այլ իրաց. այլ միայն սուրբ խաչիս եւ հոգևոր տեառնս է իշխանութիւն ։ Եւ թէ ոք յանդգնի՝ զվերոյգրեալ նզովդ ժառանգեսցէ ։ Ես Ռուհիբս վկայ եմ թագաւորիս անսուտ հրամանացս և հաստատութեանս, և չմարթի ոք խանգարման պատճառ լինել. այլ հաստատ է կամաւն Աստուծոյ ։

Դարձեալ և այլ բազում ժառանգութիւնս ետուն ի սուրբ ուխտս զոր աւելորդ համարեցաք գրել աստ. ետուն եւ այգի մի մեծ ի Մեղրոյ ձորի՝ զբերդ Աւագեանց այգին Արուսահլ ումն՝ տէր Մեղրոյ բերդին, ի թուականին 532. Ետուն եւ գեղ ի Բարկուշատի. ետուն եւ զԽողվանի գեղ ի Վանանդայ ձորի. ետ և իշխանն Աշոտ զԱմբրաւաքար ի սուրբ նշանն. եւ գրէ կտակ այսպէս « յանուն Աստուծոյ ես Աշոտ իշխան՝ որդի Կարապինայ, ետու զիմ հայրենի ժառանգութիւնն զԱմբրաւաքար ի սուրբ նշանն ի Տաթև ի ձեռն Տեառն Գրիգորոյ՝ Սիւնեաց եպիսկոպոսի, հրամանաւ աստուածապսակ թագաւորին Սենեքերիմայ. եւ կարգեցին մեզ պատարագ անխափան զօր Համբարձման Տեառն ։ Եւ արդ՝ չունի ոք հրաման խախտել զայս, եթէ հակառակի եւ կամ չար եւ հարկ ի վերայ դնէ՝ ի սուրբ Երրորդութենէն նզովեա՛լ լիցի եւ յամենայն սրբոց նորա . եւ մասն

ընդ Յուդայի առոյն . եւ թէ տաճիկ ատաղ փոխի, եւ հանել Ջանոյ՝ հարիւր հազար ճաւրմր լինի եւ յիւր հաւատէն ապիզմր եղիցի . ի Թուիս Հայոց 538 ։ Աստուած շնորհաւո՛ր արասցէ . ես Սենեքերիմ Թագաւոր եւ իմ որդիքս Գրիգոր եւ Սմբատ հաստատեցաք ։ Նմանապէս եւ այլ բազումս որոց տրիտուր փոխարինին հազարապատիկ եւ բիւրապատիկ լիցի յամենատատ Տեառնէն յանանցական վայելմանն եւ յանզրաւական յուրախութիւնն ։



ԿԱ. — Պատճառ աւերման Կապանին և առման բերդիցն . եւ բնաջինջ սպառումն թագաւորութեանն Բաղաց . և վախճան կատարածի Սիւնական ազգին ։

Յամի յորում էր թուականն Հայոց 552, եղեւ սկիզբն աւերածոյ Կապան գաւառի եւ ամուր աշխարհին Բաղաց, եւ սպառելոյ տէրութեան Նոյա թագաւորաց և իշխանաց, զոր լուաք և ընթերցաք ի Թղթոյն Տեառն Ստեփաննոսի՝ Սիւնեաց եպիսկոպոսի, զոր գրեալ էր ի հոյակապ քաղաքն Անի ի խնդրոյ սուրբ քահանային Մխիթարայ՝ աւագերիցու քաղաքին եւ փակակալի սուրբ կաթողիկէին ։ Եւ էր պատճառ մեծի կատարածին այսպէս ։ Գնաց Սենե-

քերիմ Թագաւորն ի տեսութիւն Մէլիքշահ սուլտանին ի մայրաքաղաքն Պարսից յԱսպահան. և հանդիպեալ նմա՝ մեծարեալ լինէր բարձրագոյն փառօք և նստուցեալ ի գլուխ բազմականին։ Եւ էր ծառայ մի սուլտանին, յոյժ սիրեցեալ որ առաջի իւր բաժակ մատուցանէր՝ Զորթման անուն։ Սա յոյժ նեղէր զինեաւ ի ժամ ճաշոյն զԹագաւորն. եւ թէ բազում պարգեւս խոստանայր՝ ոչ անսայր. ապա խոստանայր տալ Զորթմանին զդուստր իւր. վասն որոյ ըստ իւրեանց սովորութեանն հանգոյց զնէ ի վերայ գօտւոյն Սենեքերիմայ որպէս թէ նշան փյի այնմ բանի. եւ տարեալ ցուցանէր սուլտանին։ Եւ այնուհետև զկատակեալ բանսն պահէր ի սրտին խորամանկութեամբ ի ծնունդս ապականութեան։

Իսկ յորժամ եհաս ի պատիւ և ի կարգ իշխանութեան՝ խնդրէր ի Սենեքերիմայ զխոստացեալ աղջիկն. և նորա խիստ բանիւք պատասխանեալ անարգէր զնա ծաղր առնելով զխնդիրն։ Յայնժամ իբրև գիտաց Զորթմանն զկամս Թագաւորին զի անհնարին էր այնմ բանի, սկսաւ դառն տառապանօք եւ ազգի ազգի նեղութեամբք կեղեքել եւ աւերել զամենայն իշխանութիւն նորա։ Բայց ի 525 թուականին շէն էին գաւառք Կապանին եւ պայծառացեալ վանորայքն ի պաշտաման և ի լուսաւորութեան. իսկ ի 541 թուին մինչ մեռաւ Մէլիքշահ սուլտանն՝ զամ մի ողջոյն

ստապանեցան առ հասարակ։ Եւ սակաւ մի խաղաղա֊ցեալ ամս եօթն ի տէրութեան Բէկի-Արուխին՝ որդւոյ Մէլիք-Շահին։ Ապա ի 548 թուին մինչ մե֊ռաւ Բէկի-Արուխն՝ դարձեալ վերստին սաստանեցան զամենայնս։ Իսկ ի լնուլ մետասան յոբելեաններին և եր֊կուց թուոյ որ է ի 552 թուին՝ օր մի յանկարծակի մինչ կային յանհոգութեան քաղաքացիքն, մատնեաց Տէր զանաարիկն ի մարդկանէ զԿապան քաղաք. եւ անիծեալն Զորթման վասն քինուն իւր յեղակարծում ժամու հեղաւ ի վերայ քաղաքին։ Նախ՝ բազում հեռաւակազօր մարդիկ սորամուտք եւ քարագնացք ելին ի գլուխ ապառաժուտ լերինն. և իջին ընդ մեծ աւարի հեզեղատն ի քաղաքն, զի այն վայր ոչ էր պարսպափակ վասն անհնարին զոլոյ մտից մարդկան. եւ սկսան կոտորել ի Ջհտաթաղոյն. եւ ապա բացին զդուռն քաղաքին որ ի խնձորոյ գլուխ հայէր. և մտին զօրքն ամենայն և հարեալ սատակեցին զամենեսեան առ հասարակ. բայց ի բերդն ոչ ինչ կարացին ձեռ֊նարկել. այլ գնացին անդրէն ի տեղի իւրեանց։

Ահա այս իսկ եղև սկիզբն աւերման աշխարհին, և որ ըստ օրէ սկսաւ նուազիլ և պակասիլ իշխանութիւնն այն որ ունէր ընդ ձեռամբ բերդս 43. և անուանիքն ի նոցանէ 12. և վանորայս 48, և գիւղս 1008 (7). եւ մայրաքաղաք զԿապանն. այս Բաղաց իշխանու֊թիւնն է։ Դարձեալ յետ մի ամի, ի 553 թուակա֊

սրին առաւ Ուրոտն. և ի 554 ին առաւ Բղեն. և գերեցաւ Խոսրովիկ իշխանն. և ի սուր սուսերի մաշեցան բազմութիւնք քրիստոնէից, եւ բնաւին յաւեր անցաւ տունն Բաղաց. եւ ընեցին ամենայն ուխտք վանորէից ի պաշտամանէ. և խաւար Թանձրամած կալաւ զաշխս Հայաստանեայց. եւ սուգ անհնարին զգեցան ամենայն քրիստոնեայք և եկեղեցիք Հայոց. բայց միայն Բաղաբերդ եւ Գեղի, Կաքաւաբերդ, Շլորուտն, Կարճեւան, Մեղրի, Գրհամ առ Գրիգորոյ Թագաւորի եւ Սմբատայ՝ Թոռանց Աշոտոյ որք էին անզաւակ. բայց միայն մի դուստր ունէր Գրիգոր Կատայ անուն ։ Իսկ ի 565 Թուին կատարեցաւ մեծաւ ճգնութեամբ սուրբ Թագուհին Շահանդուխտ՝ քոյրն Սենեքերիմայ Թագաւորին ։ Ի սոյն ամի եւ վախճանի յոգներանեան այրն Աստուծոյ եւ սուրբ եպիսկոպոսն Տէր Գրիգոր ։

Ի 575 Թուականին եկն ամիր Հարոնն և բնաջինջ արար զտունն Կապանին և զԱրևիք գաւառ. և էառ զբերդն Կաքաւու եւ զքարն Բաղակու որ էր վանք, յորում մթերեալ կայր բազում սրբութիւնք, խաչ եւ վկայարանք ոսկի եւ արծաթի եւ կտակարանք որ գաղթեալ էին ի գաւառայն. և ամենայնն ի գերութիւն մատնեցան ։ Այսպ ի լնուլ Թուականին 600 ամին եւ ի սկսանել զառաջին ամն, զՇլորուտն բերդ գողացան հնարաւոր ազգն Թուրքաց. և ի 606 Թուին

զՄեղրի գողացան. եւ ի 619 Թուին կրկին բարկացաւ Աստուած Բաղաց աշխարհիս եւ Սիւնեաց նահանգիս. և զապականն ամենեցուն և զտեղի ապաստանի զանառիկ ամուրն զԲաղաբերդ մատնեաց ի ձեռս Իսմայէլի անիծեալ եւ գիշախանձ ազին, որ բազում զօրօք եկն և ոչ կարաց հնարել ինչ: Ապա պատրող բանիւք խաբեաց զպարզամիտ արս քրիստոնեայս Աչաղուացիս. եւ նոքօք նախ առ զքարն Կկոց. եւ ապա ի գիշերի՝ այնու արամբք գողացաւ զԲաղաբերդ. եւ առեալ կոտորեաց սաստիկ. եւ զի վասն անառիկ ամրութեանն յամենայն վանորէիցն անդ էին կուտեալ զսրբութիւնս և զգրեանս և զսպաս եկեղեցւոյ. ևս առաւել՝ զանհամար և զաննման սրբութիւնս եւ սպաս եկեղեցւոյն Տաթեւոյ՝ փարթամ և հարուստ աթոռոյն, խաչ և վկայարանք յոսկւոյ և յարծաթոյ, եւ անգին ակամբք եւ անհուն մարգարտով զարդարեալ, և կտակարանք յոլովք որք թուով աւելի քան զ10,000 զորս ամբարեալ էին անդ: Ամենայնն առ հասարակ գերի վարեցան, եւ ցան եւ ցիր եղեն ընդ երեսս աշխարհի: Աւա՜ղ և եղո՜ւկ է մեզ զի առաւել եղեւ մերս կորուստ եւ ապականութիւն քան զԵրուսաղէմին ի Նաբուգոդոնոսորայ արքայէ. քանզի նմա երբեմն եղեւ դարձ եւ նորոգումն որ ի Կիւրոսէ. իսկ մեզ վերջինն տիրեաց թշուառութիւն անդարձ և յաւիտենական:

Ապա մինչ մատնեաց զմեզ Տէր, եւ որ ըստ օրէ եղծանելով կամէր եղծանել, զայլ բերդերն եւ զամուրսն իւրեանց կամաւ ետուն յԵլտկուզ աթաբէկն. եւ ընդհանրական տիրեաց Տաճիկն. եւ ժամանակ զառն և դժնդակ հասաւ. և առ հասարակ ամենայն երկիր եւ շինանիստքն յաւեր դարձան եւ անմարդաբնակ եղեն: Բայց Գրիգորն որ իշխէր Բաղաց, ետ ածել ի Խաչենոյ իշխանայն մանուկ մի Հասան անուն ի Գեռաքարեցեայն. և ետ զդուստր իւր Կատայն Նմա ի կնութիւն. և կայոյց ժառանգ թագաւորութեան իւրոյ. եւ ինքն եւ եղբայր իւր Սմբատ յառաջ քան զառնուլ բերդին մեռանին ի 615 թուին: Մինչ զբերդն կամէին առնուլ՝ Հասան կայոյց բերդապահս, եւ ինքն առեալ զկին իւր եւ զընտանիս՝ ի գիշերի ել ի բերդէն եւ անց, գնաց ի գաւառ իւր եւ ի տուն ի Խաչէն:

Իսկ մնացեալ ազատքն Ջուրջն եւ Խոսքավիկն տղայ հասակաւ մեռան ի Նախջաւանի. և թաղեցան ի Ճահուկ. և եղբօրորդի մի Ջուրջին գնաց փախստական ի քաղաքն Անի Մահկան անուն. եւ միւս իշխանն Համտուն որ էր որդի մեծ իշխանին Բաղաց Հասանայ, եւ թոռն աւագ Համտունայ, գնաց ի Վայոց ձոր առ փառաւորեալ եղբայրն իւր Տէր Յովհաննէս, որ բնակէր ի խորաձոր անապատին որ Նորաւանս կոչի, մերձ Հրաշկաբերդոյն. եւ անդ կրո-

Նաւորեալ՝ ի նմին վախճանի ի 680 թուականին ։ Ահա զայսօրինակ բարձաւ տէրութիւն Սիւնեաց եւ Բաղաց. և եղև վախճան տոհմին Սիսակայ և Նախարարութեան Սիւնեաց. քանզի ամենայնքն որ կային յառաջագոյն յաւուրս Սմբատայ և Սահակայ, իւրաքանչիւրքն՝ էր որ անզաւակ մնային. եւ էր որ կիսօրեայ փոխեցան, էր որ սպանան եւ գերեցան. եւ մնացեալ էին միայն այս Գրիգոր և Սմբատ որք այսու օրինակաւ բարձան ։



ԿԲ. — Վանորայք և ուխտք եկեղեցեաց թէ քանի՛ էին յայսմ աշխարհի ։

Առաջին՝ գլուխն ամենեցունց վանօրէից և աղբիւր շնորհաբաշխութեան տանն Սիսական Տաթև, և մեծ առաքինարանն Թանահատի վանք, Սիւնի վանք որոյ եկեղեցին չքնաղ և նորակերտ ձեւով կանգնեալ զմբէթայարկ խորան երկնանման, ի մեծ բարեպաշտուհւոյն Վարազդխտոյ՝ Սիւնեաց տիկնոջէ յառաջ քան զհայ թուականն, յանուն սրբոյ Լուսաւորչին ։ Եւ առաջև վանացն ի մէջ քաղցրահայեաց մէյդանին ունեն իշխանքն տուն արքունի և ապարանք իշխանանիստ, եւ յամենայն աւուր ամեն գային ի ժամ պատարագին ։ Ապա Կնէվանք զորմէ ասեն

մանկունք անդէորդք արածէին Ջոլիս եզանց, եւ սկսան խաղալ․ և կարեալ կնիւն մի և արարին խաղ եւ եդին ի վերայ քարի մի եւ սկսան երկրպագել եւ ասել « զոր ինչ երէցն ասէ և ընթեռնու, այն ի վերայ քո եղիցի․ և յայսց եզանցս այս երեքս քեզ մատո՛յց եղիցի »։ Եւ զոր նոքա ընդ խաղս արկին՝ Հոգին Աստուած իջեալ տնօրինէր նոյնպէս ։

Ապա ի ժամ երեկոյին սկսան գնալ․ եւ թէպէտ ջանային՝ զայն նուիրեալ մատաղն ոչ կարային յարուցանել ի տեղւոյն․ գնային եւ ազդ արարին տէրանցն․ եւ նոքա եկեալ ոչ կարային շարժել․ եւ հարցեալ զպատճառն ի մանկանցն՝ խոստովանեցին զուղիղն ։ Կոչեալ այնուհետեւ քահանայս օրհնեցին զխաչն եւ զենին զեզինսն եւ պատուեցին զտեղի կնիւնին ։ Ազգ լինէր այս իշխանացն Սիւնեաց․ եւ գային ի տեսութիւն․ և հրամայեցին շինել եկեղեցի ի տեղւոջն, և սահմանեցին զնա տուն կրօնաւորաց․ բայց զտեղի կնիւնին թողին ի մէջ եկեղեցւոյն փոս մի դուզնաքեայ․ և մինչ յաւեր տեղւոյն ձէթ բղխէր ի փոսոյն այնքան՝ զի օտար ձիթոյ ոչ կարօտանային․ այլ եկեղեցւոյն կանթեղունքն նովաւ կերակրիւր․ և զեռ ևս կայ եկեղեցին և տեղի կնիւնին, և խաչ ևս որք վկայեն անսուտ զոլ։ Ապա Վաղատնին վանքն․ Նորավանք, Երիցու վանք որք էին մշտապաշտօնք․ Տատանեաց վանք․ եւ սոքա մշտնջենաւորք․ Գոզո-

րեայ վանք․ Վահանու վանք․ Տանձափարախ․ եւ սոքա խարազնազգեստք եւ սահմանաւորք․ Լուակէ վանք․ Լհէ վանք․ Քրաւնից վանք․ Թաղէի վանք․ Կուռախաձորոյ վանք․ Ծիծառնոյ վանք․ Խաչատրոյ վանք․ Ջիւնարու վանք ։

Ի Վայոց ձորոյ կողմանն Խոտակերից վանք որ Քարկոփ կոչի․ և սոքա մշտապաշտօնք․ Նորավանք որ յետոյ եղեւ եպիսկոպոսարան․ միւս Նորավանք․ Ցաղաց քար՝ բարձրահուչակ եւ սուրբ առաքինարան յորում է 490 թուականին ի թագաւորութեանն Գագկայ, հայր ոմն վանիցն Վարդիկ անուն չինէ պայծառ եկեղեցիս երկու ի հանգստարանի առաջին սուրբ հարցն, զմին գմբէթայարկ յանուն սրբոյ Կարապետին, եւ զմիւսն սազաչէն, հրաշալի յօրինուածովք ։ Ապա Հերմոնի վանք․ Թանատէի վանք յորում կայ նշխարք սրբոյն Ստեփաննոսի․ Գնդայի վանք ։ Իսկ ի Գեղամն մեծ մենարանն Մաքենոցն եւ Վանայ վան եւ միւս Վանէ վան․ Ծողուագայի վանք ։ Ահա այս ամենայն վանեար յականէ եւ յանուանէ ի գլխաւորագոյնիցն, յորոց բազումք ամայի եւ թափուր են ի շինութեանց, եւ սակաւքն ի լուսաւորութեան այժմ, որք են թուով 30․ բայց այլ եւս բազումք կային զորս ոչ թուեցաք ։



## ԿԳ. — Եպիսկոպոսք որք կարգեցան զկնի Տեառն Գրիգորի ։

Վախճանի Տէր Գրիգոր կեցեալ ամս 58. եւ յաջորդէ զաթոռն Տէր Ստեփաննոս ամս 27 ։ Ի սորա աւուրս եղեւ շարժն Գանձակայ ի587 թուականին, եւ դողաց երկիր ի հիմանց. եւ զմբէթն մեծ եկեղեցւոյն ի Տաթեւ բոլորապտոյտ շրջեկան թռեաւ եւ անկաւ ի վերայ սուրբ Գրիգորոյն եւ զաւթին որ ի դրանն կայր. եւ փլոյց առ հասարակ ։ Իսկ ի592 թուին կատարեցաւ սուրբ եպիսկոպոս այս. և ժամանակ դժնդակ եհաս զոր լեզու ոչ կարէ պատմել. և ամենեքին ջնջեցան մարդ և անասուն. և անբնակ եղեւ բոլոր աշխարհս Սիսական. միայն թէ ի ծերպս քարանց մնացեալ էին ուրեք ուրեք երկու կամ երեք արք ։

Յետ Տեառն Ստեփաննոսի առնու զաթոռն Տէր Բարսեղ. եւ սակաւ ինչ կեցեալ անկանի պատահմամբ ինչ ի գետն Երասխ մօտ յԱստապատ (8) գեղ ջորւովն հանդերձ յոր հեծեալ կայր ։ Եւ մտեալ լեռորդաց հանին յայն կողմն. եւ լոյս մեծ ճառագայթեաց ի վերայ ջրոյն. եւ տարեալ թաղեցին ի Մաղարթոյ վանք որ ի սրբոյն Բարդողիմէէ շինեցաւ. եւ պահեցաւ յորմ եկեղեցւոյն ի մանա-

նայէն Իսրայէլացւոց երեք հատ, զոր հաստատէ Միխայէլ պատմագիրն ։ Այս ամայացեալ էր աթոռն ի բնակչաց. եւ ոչ գոյր տէր եւ կամ իշխեցող զի հոգայր վասն եկեղեցւոյս կամ վասն սուտ Յիացորդաց հօտին եւ ի խնդիր լինել առաջնորդի ։

Էր աւագ երէց մի ի մեծ աւանին Մեղրոյ Գրիգոր անուն. այր ճշմարիտ եւ լաւ, որ էր եղբայր Տեառն Բարսղի, սա յերիւրեալ ի սրբասէր եւ ի մեծահաւատ տիրուհւոյ իւրմէ Ծամամ կոչեցելոյ, որ ասէր. ո՞վ երէց՝ ամայացեալ աթոռն Սիւնեաց, փութա՛, եւ լե՛ր քահանայապետ զի և որդեակս մեր լիցի որդի քահանայապետի. տե՛ս զսուրբն Գրիգոր եւ զորդիս եւ զթոռունս իւր զի էին եւ նոքա կանամբիք ։ Յորմէ համարձակեալ գնաց առ Տէր Գրիգորիս՝ եղբայր Ներսիսի՝ Հայոց կաթողիկոսի. եւ անդ ձեռնադրեալ եպիսկոպոս՝ գայ ի վիճակս Սիւնեաց. եւ տեւեալ ամս 20 մեռանի ի Վայոց ձոր ի Խարձայ գիւղ. զի շրջէր ընդ վիճակեալսն, ի թուականին 617 ։ Եւ տարեալ ի սուրբ ուխտն Նորավանս եդին ի հանգիստ ընդ երանելի եւ սուրբ եպիսկոպոսին Տէր Յովհաննիսի Կապանեցւոյն. Եւ յաջորդէ զտեղին որդի նորին Ստեփաննոս մանուկ տիօք, լի ամենապատիկ շնորհօք, սիրեցեալ եւ մեծարեալ յաչս աւագաց որք էին ի ժամանակին իշխեցողք՝ Եղտկուղ Աթարէկին և որդւոյ նորա Փաղհա-

ւանին եւ Խօգիլ Ասլանին եւ Բուրաք Աթաբէկին, որք եւ գգուական անուամբ Փախրելմնեհ կոչէին, որ թարգմանի սիրող Քրիստոսի, եւ պատուէին զնա տուղրայիւ գրոյ եւ փարմանաւ եւ մանշուրաւ զոր մեք սիգէլ կոչեմք ։

Ի սորա աւուրս էին Թամարն եւ Լաշա Գորգին՝ թագաւորք Վրաց, եւ մեծ ամիր սպասալարն Զաքարէ եւ եղբայր իւր Իվանէ աթաբէկն որք եւ մեծապէս սիրէին եւ պատուէին զնա ։ Եւ ետուն ի Կայեն տեղի հանգստեան նմա զգերահռչակ ուխտն Հաղարծին եւ գիւղն զԱրասաձորն ։ Սա նորոգեաց զխախտեալ եկեղեցին ի Տաթեւ զսուրբ առաքելոցն, եւ եդ դնել զգմբէթն ի ձեռն հօրն Յակոբայ Ճահկեցւոյ ։ Սա ձեռնադրեաց եպիսկոպոս ի Հախբատ զտէր Գրիգորիս՝ քեռորդի Զաքարէի եւ Իվանէի, եւ տեւեալ յեպիսկոպոսութեանն ամս 46՝ վախճանի ի Վայոց ձոր յԱրխայ գիւղն. եւ տարեալ դնի ընդ հօր իւրում ի նոյն Նորավանս, ի 665 թուականին ։ Ապա առ կենօք սորին էր ձեռնադրեալ եպիսկոպոս Տէր Սարգիս՝ քեռորդի սորա հրամանաւ քեռւոյն իւրոյ յԱղվանից կաթողիկոսէն ։ Եւ յետ մահուան Տեառն Ստեփաննոսի միւս այլ հօրեղբօրորդի նորին Յովհաննէս անուն գնացեալ յԱղթամար, և անդ ձեռնադրեալ եպիսկոպոս. և նա նստէր ի Տաթեւ ։ Եւ այս Տէր Սարգիս բնակէր ի

Վայոց ձոր, ի Նորավանս մենաստանի. եւ բաժանեաց զթէմ վիճակին՝ զՎայոց ձոր բովանդակ առնոյր սա. և զայլն թողոյր ի Տէր Յովհաննէսն ։ Եւ յայսմ հետէ եւ առ յապա հաստատեցաւ եւ այն ուխտ աթոռ եպիսկոպոսութեան. զի էր տուն եւ տեղի ապաստանի յաւերման ժամանակին տանն Սիւնեաց, տեղի հանգստեան եւ շիրիմք գերեզմանաց բազում եպիսկոպոսաց. զորոյ զորպիսութիւն շինութեան եւ զպատճառ հանդիսանալոյն յետոյ տացուք ։

Տէր Յովհաննէսն կեցեալ ամս 38՝ վախճանի ի Նորավանս մեծահռչակ ուխտի. եւ դնի ի գաւթի նարակերտ եկեղեցւոյն յ700 թուականին ։ Եւ առնու զաթոռն եղբօրորդի նորին Տէր Հայրապետ և միւս ազգականն Տէր Սաղմոն ։ Իսկ Տէր Սարգիս հիմնարկեալ գեղապաճոյճ եկեղեցւոյն ի Նորավանս հրամանաւ եւ օժանդակութեամբ մեծ իշխանաց իշխանին Լիպարտի՝ որդւոյ Էլիկումին ի ցեղէ մեծի նահապետութեանն Օրբէլեանց որ ի Վրաց աշխարհէն, ի թուականին 665. և կատարէ հրաշազան յօրինուածովք յանուն սրբոյ Նախավկային. եւ ի նմին խորանս խորհրդաւոր ութ՝ զամս եօթն (աշխատեալ) ։ Եւ ինքն յետ բազում արդեանց և երևելի արարուածոց գնաց ի Կիլիկիա առ բարեպաշտ արքայն Հայոց Հեթում. և պատիւ յոլով ընկալեալ ի

նմանէ, և տեղի հանգստեան՝ զաւազ Մէլքիճին. և բազումաճգնեալանդ՝ գնաց ի սուրբ քաղաքն Երուսաղէմ, ի գերեզման Աստուծոյն մերոյ և Փրկչին Յիսուսի Քրիստոսի. եւ երկրպագեալ աստուածակոխ տեղեացն՝ գտանէ զանկչիւ պարգևն՝ զաջն սրբոյ Նախավկային Ստեփաննոսի. և առնու ի Փռանգէն, զի յայնժամ Փռանգք տիրէին սուրբ քաղաքին։ Յորոյ վերայ գրեալ կայր փռանգ եւ հոռոմ եւ ասորի գրով եթէ սրբոյն Ստեփաննոսի է Նախավկային. եւ առաքէ ի սուրբ ուխտն Նորավանից. որ և կայ անդէն ի սուրբ եկեղեցւոջն ։

Եւ ապա առեալ Խորազմին (9) զԵրուսաղէմ ի Փռանգէն՝ կոտորեաց սաստկապէս. եւ ելից զտաճար Տեառն արեամբ. եւ գտեալ զերանելի եպիսկոպոսն զՏէր Սարգիս ի վերայ գերեզմանին Տեառն ի սաղմոսերգութեան այլ եւս երեք ընկերօք՝ հատին զգլուխն և հեղին զարիւնն ի վերայ (10) գերեզմանի Տեառն կափարչին. եւ այսպէս մարտիրոսական արեամբ պսակեցաւ. ի Քրիստոսէ Աստուծոյն մերոյ ։ Եւ յաջորդեցաւ ի տեղի նորա բեռորդի իւր Տէր Ստեփաննոս ամս 20. եւ ապա յետ նորա Տէր Սարգիս՝ եղբօրորդի Տեառն Ստեփաննոսի եւ որդի Վահրամայ ճգնաւորի, այր իմաստուն և արդիւնաւոր եւ վարդապետ ընտիր եւ բազմաշխատ, որ եւ բազում արար արդիւնս ի տանս ի գործս երևելիս ,

*եւ զարդարեաց զեկեղեցիքն պատուական սպասուք. և սաստել հանդիսայոյց զգերափառ սուրբ մենաստանն քան զնախնիսն իւր ։ Իսկ Տաթևացիքն շինեցին զվանքն որ ի քաղաքս (ամաց հետէ) աւեր և ամայի թողեալ էր, զոր և փարթամացուցին ամենայն պիտոյիւք մեծ եւ փառաւորեալ իշխանաց իշխանքն Սմբատ և Տարսայիճն՝ որդիք Լիպարտի. և ինքեանք կեցեալ ի միասին՝ նախ վախճանի Տէր Սաղոմօն անդէն. և ապա կեցեալ Տէր Հայրապետ ամս 40. եւ զի առ կենօք սորին էր ձեռնադրեալ եղբօրորդի իւր Յովհաննէս անուն. և յետ սորա կեցեալ քաղում հակառակութեամբ ամս երեք՝ վախճանի և դնի ընդ հօրեղբօր իւրում Տէր Հայրապետին ։*

*Յետ որոյ և մեր ազնիւ և Թարմիստար անձին յաջորդեալ ի կրկնանորոգ զահ մետրապօլտութեան տանս Սիւնեաց, և զերկու զահերէց աթոռքս և աշխարհախումբ հանդիսարանքս միապետեալ՝ զՏաթևն և զՆորավանքս հանդերձ բոլոր վիճակելովքս, այժմ կամք կանգնեալ ի կամար երկնահանդէտ լերինս մինչ ի սահմանեալ կէտ իմ, ուր Տէր սպասեսցէ ։*

**ԿԳ. — Սկիզբն և պատճառ շինութեան և նախապատիւ գահերիցութեան սուրբ եւ գերահռչակ եւ փառաւոր ուխտին և աշխարհահռչակ խմբարանին Նորավանից :**

Յառաջ քան զայս բազում ժամանակօք, վաղաւուրբք եւ հնագոյն ամօք, ի նեղ եւ անձուկ ձորակին այնմ, ի պատշաճաւոր տեղւոջ էր շինեալ եկեղեցի մի կրաշաղախ վիմօք յանուն սրբոյ Կարապետին՝ յոյժ սքանչելագործ եւ ահարկու եւ անուանի մերձակայ սահմանացն : Եւ բղխէր մերձ նմին աղբիւր քաղցրահամ. և ձորն ամենայն գեղեցկացեալ էր այգեօք և թանձրախիտ ծառօք մրգաբերօք : Նաև ի թանձրամած կաշկառուտին, ի նոյն ձորին կայր եկեղեցի մի յանուն սրբոյ հայրապետին Փոկասու շինեալ. և ի մէջ եկեղեցւոյն բղխէր ջուր սակաւ ի ներքոյ բեմին. և ընդ ջրոյն ելանէր և ձէթ բժշկարար. զորմէ լուաք ի հնագոյն աւանդութեանց եթէ բերեալ եղև ի նշխարաց սրբոյ հայրապետին Փոկասու, և անդ հանգուցեալ. յորոյ անուն և տեղին Փոկաս կոչեցաւ : Եւ առնէր հրաշս զարմանալիս զի ամենայն անբուժելի ցաւք և անհնարինք ի մարդկանէ՝ գոգութիւնք և բորոտութիւնք և վէրք բազմաժամանակեայ նեխեալք և ապականեալք, ի ժամանելն ի տեղին յայն հաւատովք, և ի լուանալ ի

Ջուրն, և յօծանելն ձիթով, բժշկեալ լինէին. և թէ մահացու լինէր՝ առժամայն վախճանէր ։ Եւ վասն այսր մեծապէս լինէր հնչեալ համբաւ տեղւոյն ընդ ամենայն աշխարհ ։

Ապա ի նուազեալ ժամանակիս, մինչ եհաս աւեր ամենայն աշխարհի և բարձաւ թագաւորութիւնն Բաղայ. եւ սպանաւ թագաւորն Սենեքերիմ, եւ բնաջինջ եղև տէրութիւնն Բաղայ. եւ խափանեալ լուսոյն ամենայն ուխտք պաշտօնէից. ի 554 թուականին էր եպիսկոպոս ոմն ի վանսն Յովհաննու Յովհաննէս անուն, լցեալ ամենայն առաքինութեամբ. եւ բոլորովին զգեցեալ զՔրիստոս, յազգէ ազնուական, որդի մեծափառ իշխանին Բաղայ Հասանայ, որ ունէր ընդ ձեռամբ զամենայն ազատս թագաւորութեանն այնմ. և էր որդի մեծին Համտունայ ։ Այս Յովհաննէս յետ աւերման նորոյ աշխարհին, բազում ալէկոծեալ այսր անդր, եկն ի Վայոց ձոր գաւառ. եւ կամեցաւ բնակել ի խորաձոր անապատին Նորավանից, մերձ անառիկ դղեկին Հրասեկայ բերդոյն, առ հիազօր եւ մեծաքանչ եկեղեցւոյն սրբոյ Կարապետին ։ Եւ երթեալ յանդիման լինի մեծի արքային Պարսից Մահմուտ սուլտանին, ծանօթանայ նմա և առնու ի նմանէ փարման և մանշուր (11) վասն տեղւոյն այնմ ։ Համարձակ բնակէ ի նմա ժողովեալ արս կրօնաւորս եւ ճգնազգեացս, եւ հեռացուցանէ

ի վայրիսն ղամենայն արս աշխարհականս. եւ շրջապատիւ սահմանէ զվայրն ամենայն կանգնելով ըզ նշանն տէրունի զի մի՛ անցանիցեն ընդ այն կանոնք եւ լկտի մարդիկ ։ Եւ առնու ի սահմանակցացն հողս եւ անդաստանս ի ժառանգութիւն եկեղեցւոյն՝ ի Գանձակեցեացն եւ ի Տխարբեցեացն ։

Սա նեղեալ յանիծեալ եւ խպիղծ բերդապահէն Հրասեկայ, որ էր Խազրիկ Խորասանի (12), եւ որոշայր սպանանել զսուրբ եպիսկոպոսն, եւ աւերել զկրօնաւորանոց տունն սուրբ ուխտին, փոխէ զձեւն ըստ պարսկական օրինի զի հմուտ իսկ էր նոցին լեզուի, եւ գնայ փախստեայ առ սուլտանն յԱսպահան քաղաք ։ Եւ էր նորա որդի միամօր, եւ հիւանդացեալ էր անհնարին ցաւօք. եւ էր մերձ ի վախճան. եւ ամենայն հնարք բժշկաց հատեալ էր. եւ էին ծնողք մանկանն եւ մայր սուլտանին ի մեծ սգի եւ տրտմութեան ։ Ասեն տեսանէ ի տեսլեան մայր սուլտանին եթէ այրն օտար, որ եմուտ ի քաղաքս, եպիսկոպոս է, եւ անունն՝ Յովհաննէս. նա բժշկեսցէ զմանուկդ. վասն որոյ վաղվաղակի ի խնդիր լինէին նմա. եւ գտեալ ածին առաջի մեծ սուլտանին ։ Իսկ նորա լուեալ զնմանէ եւ ծանեաւ. ընդ յառաջ եղեւ նմա եւ երկիր եպագ հայցելով զի թէ հնար ինչ իցէ՝ բուժեսցէ զցաւ մանկանն ։ Եւ մտեալ սուրբ եպիսկոպոսին, ըստ մեծայոյս հաւատոյն, առ

կիսամեռ մանուկն, և առաքելական զօրութեամբ ի բաց հերքեալ զցաւն՝ աստուածաբար հրաման տայր կանգնել ի մահճացն մահացեալ մարմնոյն ։ Ցաղագս որոյ հիացեալ մեծաւ զարմացմամբ սուլտանին՝ հարցանէր ի նմանէ զպատճառ գնալոյն. և նորա ծանուցեալ զդառն աղէտս ամիրային Հռոմկլայ բերդոյ, և զմիտս խուլամին որ յԱնապատ բերդի ։

Ընդ որ յոյժ ցասուցեալ՝ երախտահատոյց լինի նմա և տայ զՀռոմկլայ բերդ մանշուր գրով ի ձեռն եպիսկոպոսին. Եւ առաքէ ընդ նմա արս հաւատարիմս սատակել զբերդապահն խորովք ընտանեօք, և տալ զտեղին յեպիսկոպոսն ։ Ընդ նմին և շնորհէ մայր սուլտանին զԱնապատ բերդն երկոտասան ագարակօք նմին Տեառն Յովհաննիսի, և անսուտ սիգելաւ և անանցական մանշուրաւ շնորհէ ժառանգութիւն սուրբ եկեղեցւոյն Նորավանից. զորոյ արքունական նամակս և մեք իսկ ընթերցեալ ճշգրտեցաք. Եւ ըստ տաճիկ օրինին էր անհուն երդմամբք հաստատեալ գծիրն՝ Նաչարք եւ ապիզարք բազում կարգեալ ի նմա ։ Գայ ապա մեծաւ խնդութեամբ եպիսկոպոսն ի տեղի իւր հանդերձ հրոսակօքն, և ըմբռնեալ զամիրայն ընտանեօք իւր ի Հռոմկլայ բերդ՝ քարավէժ սատակէ. Եւ զտեղին քանդեալ աւերէ ։ Եւ զմիւսն որ յԱնապատի հալածեալ՝ զբերդն ագարակօքն հանդերձ սեպհականէ եկեղեցւոյն ։

Բայց յետոյ Հրասեկայ բերդն շինեցաւ, և բնակեցան ի նմա Պարսիկք, զոր եւ վերստին առին յաւուրս Աթաբէկ Իվանէին ի ձեռն Առիպայեցի Ախթամարին եւ Վասակայ իշխանի Խաչենեցւոյ որ էր հայր Պռոշայ՝ բարեպաշտ եւ մեծարգի իշխանի, հրամանաւ և ուժով Իվանէի. իսկ Անապատն Մնաց առ սուրբ եկեղեցւոյն մինչև ցայսօր : Բայց ինքն իսկ եպիսկոպոսն էր լցեալ ամենայն առաքինութեամբ. և կայր մեծամեծ ճգամբք. եւ բազում աքանչելիս երևեցուցանէր այնքան՝ զի զորտանց հրամայէր լռել՝ և լռեցին մինչև ցայժմ : Եւ կին մի եւ մանուկ առնտեայ անկեալ պատահմամբ ընդ մեծ քարն որ հանդէպ վանիցն, ի Տխարբայ շինոյն. տեսեալ սրբոյն եւ կնքեալ նշանաւ խաչին հանդէպ՝ անվնասք մնացին եւ ամբողջ դարձան անդրէն ի տուն իւրեանց՝ եւ ասէին « Տէր Յովհաննէս կայր ի յատակ քարիս և երկու ձեռամբ ըմբռնեալ ամրեցոյց զմեզ » :

Եւ այսպէս կեցեալ բազում ամս՝ վախճանի ի թուին Հայոց 663. եւ դնի յիւրում աղօթարանին ի մէջ երկուց վիմացն ի նմին ուխտի. եւ զօրութիւնք մեծամեծք եղանեն ի գերեզմանէ նորա. զի սատակէ զմուկն և զթրթուռ և բժշկէ զամենայն պատահարս ի մարդ եւ յանասուն եւ յանդաստանս : Եւ ապա յետ նորա մինչ էառ Եղտկուզն զմայր սուլտանին.

եւ տիրեալ արքայական գահոյիցն, եկն Տէր Ստեփաննոս շնորհազարդն, որ եւ Փախրըլմնեհ կոչեցաւ յԱթաբէկէն, եւ բնակեցաւ ի սուրբ ուխտն Նորավանից. զի հին աթոռն աւերեալ էր եւ ապականեալ. եւ հայր սորին Տէր Գրիգոր անդէն կայր ի շիրմի ։ Եւ հաստատեալ զնա տուն աթոռոյ եպիսկոպոսութեան՝ առնու փարման և սիգէլ ի մեծ Աթաբէկէն վասն միճակիս այսր զի ի նմա ժառանգեսցեն ժառանգորդք սուրբ եկեղեցւոյն ։ Նմանապէս եւ խնդրէ թուղթ շրջաբերականի ի մեծ կաթողիկոսէն Հայոց ի Տէր Գրիգորէ զի լիցի սեպհական միճակ ժառանգութեան այս գաւառք սուրբ ուխտին Նարավանից ։

Եւ ապա յետոյ գնացեալ առ աթ՛աբէկն Ելտկուզ՝ ցուցանէ զնամակ սուլտանացն. եւ ի նմանէ եւս առնոյր մանշուր հաստատուն գրոյ ամենայն ժառանգութեանց եկեղեցւոյն Նորավանից. եւ խնդրէ եւս զԱգարակի ձոր գիւղ, զոր եւ քաղցր կամօք եւ զայն եւս ընծայէ հաստատուն եւ անսուտ մանշուրաւ սուրբ եկեղեցւոյն, եւ զամենայն որ ինչ էր վանիցն արար ազատ յամենայն աշխարհական հարկաց՝ զհող եւ զջուր, զայգի, զգիւղ եւ զագարակ եւ զբերդն իսկ Անապատայ ։ Ապա կեցեալ բազում ամս՝ վախճանի անդէն. եւ դնի ընդ հօր իւրում ի 665 թուականին ։ Եւ յաջորդէ զտեղին Տէր Սարգիս որ մար-

տիրոսայան յԵրուսաղէմ ։ Սա առ կենօք սորին (իմա՛ Ստեփաննոսի) եղև եպիսկոպոս, եւ բնակէր ի Նորավանս ։ Եւ էր Տեառն Ստեփաննոսի եղեալ գրաւական զաստուածամուխ սուրբ նշանն, զՏէր Յովհաննիսի զուարդ խաչն եւ զԹիթեղնակայն եւ զկամարակայն . Թիթեղնակայն ունէր թիթեղունս ոսկի ի վերայ երեսայն . եւ կամարակայն՝ կամար ակնաձեւ թեւէ ի թեւ , առ եպիսկոպոսի մի յԱծոպտ վանս , ի Շահապօնս , Պետրոս անուն ։ Զոր եւ իմացեալ կողմնակալի այսմ կողմանց Վասակայ իշխանի՝ հօր Պռոշայ, տանու բռնաբար զերիս զայս աստուածացեալ սուրբ նշանքս . եւ տարեալ զառաջ խաչն ընծայէ Աթաբէկին Իվանէի, եւ զերկուսն՝ զԹիթեղնակայն եւ զկամարակայն տարեալ դնէ յիւրում վանսն ի Կեչառուս ուխտի ։ Ապա ի 665 թուականին մինչ կայր աթաբէկն Իվանէ ի խոնար (պաշարումն) ի վերայ բերդոյն որ Զարէքն կոչի, գնայ Տէր Սարգիս հրամանաւ եւ գրով քեռոյն իւրոյ Տէր Ստեփաննոսի առաջի Աթաբէկին ի խնդիր աստուածընկալ սուրբ խաչին ։ Եւ զի էր նորա գործակալ եւ հրամանատար ի վերայ ամենայն իշխանութեանց իւրոյ, եւ առաջ հեջպայ մեծ եւ բարեպաշտ իշխանն Բուպակ կոչեցեալ . եւ էր սա աներ Լիպարտի՝ որդւոյ Եմիկումին , եւ Լիպարիտն յոյժ սի-

րեցեալ էր յաչս Իվանէի. եւ խաչն կայր ի պահեստի ի Պղնձահանքն (13) ։

Ցանդիման առնէն զեպիսկոպոսն Աթարէկին եւ մատուցանեն զգիրն. եւ ինքեանք մեծապէս հոգայանձին կալեալ ջանային թաքել զգերեալն. եւ բազում դանձս ծախեալ ի մեծամեծսն և ի ներքին խորհրդականսն ։ Բարեպաշտն Լիպարիտ 500 դահեկանի չափ ընծայէ, եւ աղերս Աթարէկին 500 դահեկան կարմիր յազնուական ոսկւոյ, և այնպէս իբր գնոյ առնլով հաճեցաւ զմիտս նորա դարձուցանել անդրէն ։ Ապա հրամայէ կոչել զեպիսկոպոսն և ընէ պայման ընդ նմա և ասէ « եթէ ոք կամի զսրբոյ Նշանին անդրէն դառնալն՝ տացէ՛ վաղիւն զգերդս զայս ի ձեռս իմ, եւ ես տամ զնա ի ձեռս քո, ապա թէ ոչ՝ դառնաս ունայն » ։

Իսկ ընդ լուսանալ առաւօտուն՝ զօրութեամբ սուրբ խաչին, քերեն բերդայիքն ինքնայօժար կամօք զբանալի բերդին և դնեն առաջի Աթարէկին ։ Բերեն ընդ նմին այլ եւս երիս բանալիս բերդից, եւ դնեն առաջի ։ Ընդ որ յոյժ խնդացեալ եւ զարմացեալ ընդ սքանչելիսն՝ հրամայէ աւագ ծիկնաւորին իւրոյ դիւանին Անաւփրէ (14) անուն գնալ ընդ Տեառն Սարգսի եւ տալ զխաչն ի նա ի Պղնձահանքն ուխտի. որ եւ առ ժամայն կատարեցաւ ։ Եւ նորա գնացեալ առնու զխաչն խնդութեամբ,

և անցեալ փութանակի գայ, հասանէ ի Նորավանս ուխտ. և բնակեցուցանէ անդէն զսուրբ նշանն. որ և եգիտ վախճանեալ զքեռին իւր Տէր Ստեփաննոս, բայց տուաւ ի գին գերեալ խաչին ի Լիպարտէ 1000 դահեկան կարմիր, որպէս ասացաքն։ Իսկ Թի-թեղնակայն եւ կամարակայն միացին անդէն ի Կեչառուս։



ԿԵ. — Վասն շինութեան եկեղեցւոյն Նորավանից եւ հոգեցատուր ժառանգութեանց նորա. եւ այլ շինու-թեանց եւ արդեանց որ եղև ի Լիպարտէն եւ յիշխա-նացն Օրբէլեանց։

Այս բազմերջանիկ եպիսկոպոս Տէր Սարգիս, յետ վախճանին Տեառն Ստեփաննոսի՝ կամեցաւ շինել եկեղեցի եւ հանդիսացուցանել զսուրբ ուխտն։ Եւ էր այլ ոմն թեկն ածեալ սմա, եւ կամէր լինել աթո-ռակալ Սիւնեաց՝ Յովհաննէս անուն՝ հօրեղբօրորդի Տեառն Ստեփաննոսի. եւ երթեալ յԱխթամար ձեռնադրի անդ։ Վասն ոչ սիրելոյ զհակառակու-թիւն եւ զօժտումն եկեղեցւոյ երջանիկն ի հայրա-պետն Տէր Սարգիս թողու զամենայն վիճակն ի Տէր Յովհաննէս, եւ առնու զՎայոց ձոր գաւառ, զճահուկ եւ զՆախջաւան սեպհական ժառանգու-

*թիւն սրբոյ ուխտին իւրոյ Նորավանից. եւ զայն թողու ի նա ։*

*Եւ գնացեալ ինքն առ կաթողիկոսն Հայոց Տէր Կոստանդին, և առնու ի նմանէ վիճակ հաստատուն անխախտելի դաշամբ, եւ թուղթ շրջաբերական վասն այսց գաւառացս զի լիցի հաստատուն վիճակ ժառանգութեան սուրբ եկեղեցւոյն Նորավանից. և անբաւ հրահոսան նզովիւք փակեալ ամրացուցանէ զի մի ոք ի կաթողիկոսայն կամ յիշխանաց կամ յեպիսկոպոսաց իշխեսցէ հակառակել կամ խանգարել զայս սահմանադրեալ վճիռ ։ Նաեւ լինի աղմուկ վասն սուրբ խաչին. և գնան երկոքին եպիսկոպոսքն եւ Լիպարիտն եւ որդի իւր Ելիկումն ի դատաստան առ Աթաբէկ Իվանէն ի Դվին ։ Եւ նորա նստուցեալ զմեծամեծս իւր, հրամայէր քննել՝ զԲուպակն եւ զվարժուանն, զԻվան դպէյն եւ զմեմնաշաղէյն, զմեծ ճորտնդխոէյն՝ որ եկեալ էր ի թագաւորութենէն, զժիրամ ժողարն Վարձէոյ եւ զժիրամ ժողարն Պղնձահանիցն եւ զմեծ մանքավարն Գարշոէջուցն, զԳագեցին և զՄածնաբերդեցին եւ այլ բազում դէդեպուլք եւս եւ զղատին Տփղեաց եւ զղատին Անւոյ եւ զղատին Դվնայ եւ զանուանի շեխն (15) Սուրմարւոյ. ընդ որոց եւ զմեծ եպիսկոպոսն Անւոյ եւ զեպիսկոպոսն Բջնւոյ եւ զեպիսկոպոսն Հախբատայ. որք և քննեալ իրաւունք դատեցան այսպէս*

« եթէ մեռեալն և գերեալն զմի ունին օրինակ. որ
ոք զմեռեալն յարուցանէ՝ ոչ է ծնողացն ծնունդ,
այլ նորոգողին զնա . և որ ոք զգերեալ թափէ. ոչ է
ստացողին յայնմհետէ. այլ գերեթափին ։

Արդ՝ որպէս աշխարհս այս առմամբ սրոյ և ձե-
ռին սեպհական կոչի ժառանգութիւն Վրաց թա-
գաւորութեան, այնպէս եւ այն խաչ սեպհական էր
Իվանէի, եւ ի տալն զնա ի Լիպարիտ և ի Տէր Սար-
գիս բազում ծախուք մինչ ի 1000 դահեկան, Լի-
պարիտ եւ իւր եկեղեցւոյն է պարտ լինել յաւիտե-
նական ժառանգութիւն » ։ Այսպս այսմ դատաստանի
յայտ հաճութեամբ հաւանեալ Աթաբէկին և ամե-
նայն բազմութեան ազատակոյտ իշխանացն՝ հրա-
մայեցին ունել զխաչն անդայրին (16) և անհամփմաղ
Լիպարիտ և իւրոյն ։

Իսկ եպիսկոպոսն Տէր Սարգիս խորհեալ ընդ
մեծ Լիպարիտ՝ սկսանին միաբան մեծավաստակ
աշխատանօք և անչափ ծախիւք չինել զեկեղեցկայարա-
մար եկեղեցին ի Նորավանս. և աւարտեն զնա ամս
7՝ ութ խորանօք, ի թուականին Հայոց 672. և մեծա-
հանդէս ժողովով եպիսկոպոսօք , վարդապետօք ,
դահազլուխ իշխանօք, ազատօք և տանուտէրօք առ-
նեն նաւակատիս սրբոյ տաճարին . ընդ որում էր եւ
մեծ իշխանն Բուպակ որ եւ ընծայէ սուրբ եւ նո-
րակերտ քաւարանին յիւրոյ հայրալ արդեանց եւ

հայրենեաց պտուղ բոլորահաւատ զագարակն Աղբերրիս իւրով սահմանօքն, ջրարբի եւ անջրդի վայրօք, մեծ ձորովն որ Թմաձոր կոչի, և Գնջեայ սահմանովն մինչ ի Գանձակայն որ հայրեացն տափ կոչի։ Եւ հրամայէ գրել վճիռ արձանի անխախտ պայմանաւ եւ հաստատել ինքեան յիշատակ յամեն տարի առնել տասն պատարագ մօր իւրոյ. և աւանդէ զայս ի ձեռն Տեառն Սարգսի. եւ էր օրինակ վճռին այսպէս։

« Ի ժամանակի Թագաւորութեանն որդւոյ Թամարին Լաշային (17), յամիր սպասալարութեանն Հայոց և Վրաց Շահանշահի, և յաթաբէկութեան Իվանէի հօրեղբօր նորին, ես մեղուցեալ ծառայ Քրիստոսի Բուպակ՝ իշխանաց իշխան, եկի ի Նաւակատիս սուրբ եկեղեցւոյս Նորավանից առ երջանիկ հայրապետս մեր Տէր Սարգիս. և ընծայեցի ի հալալ հայրենեաց իմոց զոր իմ բազկաւս առեալ էի յայլազգեաց և իմ արեամբս թափեալ, եւ իմ պարոնայքն մեծ սիգելով այլ ինձ էին որոշեալ, զԱղբերրիս գիւղ իւր ամեն սահմանաւն, ի սուրբ եկեղեցիս Նորավանից ի սուրբ Կարապետս և ի սուրբ Նախավկայս տուի՝ ազատ յամեն հարկաց. եւ չունի ոք հրաման յայսմ հետէ մինչև յաւիտեան հակառակիլ այսմ ոչ յաւագաց, ոչ յիմոց, ոչ յօտարաց։ Եւ Տէր Սարգիս և այլ միաբանքս հաստատեցին ի տարումն տասն

պատարագ՝ ի Վարդավառին տօնին իմ մօրն Հռգւոյն ։ Արդ՝ թէ ոք յանդգնի և հակառակել ջանայ այսմ տրիցս՝ մասն և բաժին զՅուդային և զխաչահանաւացն առցէ՝ և ընդ ամենայն չարագործայն ի Կայենէ սկսեալ մինչև ի նեռն դատապարտեա՛լ պատժեսցի, և ի սուրբ Երրորդութենէն եւ յամենայն սրբոց եւս եւ յերից սուրբ ժողովոյն նզովեա՛լ եղիցի ի մահ եւ ի կեանս. եւ իմ ազգք եւ զաւակք չունին ո՛չ ձեռն, ո՛չ իշխանութիւն ի վերայ այսմ տեղեաց ։ Բայց թէ տաճիկ աւագ փոխի և հակառակել ջանայ՝ յիւր Աստուծոյն ապիզա՛ր լիցի, և յիւր փեղամբարէն որոշա՛ծ. և անհամար հազար նալաթ ի վերայ նորա և յորդւոյ և յազգի նորա եղիցի՛ յայսմ հետէ մինչեւ յաւիտեան. ի թուիս Հայոց 672 » ։

Եւ զի յառաջ քան զայս յափշտակեալ էին զգիւղն Ագարակի ձոր. վասն որոյ խնդրէ Լիպարիտն բագում թախանձանօք յամիր սպասալարէն Զաքարէ. եւ տարեալ ցուցանէ զմանշուրն Աթաբէկ Եղտկուզին. եւ թափէ զգիւղն. եւ հրամայէ գրել ինքեան յիշատակ ի վանսն Նորավանս, եւ նզովիւք հաստատել զի մի՛ ոք իշխեսցէ հեռացուցանել զնա ի սուրբ եկեղեցւոյն. եւ ինքն գրէ իւրով ձեռամբն այսպէս.

« Ես մեղուցեալ ծառայս Քրիստոսի Զաքարէ ամիր սպասալար՝ որդի մեծին Սարգսին, Հայոց եւ Վրաց

ասպարապետի, դարձուցի զԱգարակի ձոր գիւղն ի Նորավանս ազատ յամենայն հարկաց. եւ խնդրեցի ի Տէր Սարգսէ՝ առաջնորդէ սուրբ ուխտին ի տարումն հինգ տասն օր պատարագ զոր պարտին անխափան կատարել. եւ յետ մեր մի ոք իշխեսցէ ի մերոց կամ՝ յօտարաց յափշտակել զայս գիւղս ի սուրբ եկեղեցւոյն. այա թէ յանդգնին՝ նզովեալ լիցին յԱստուծոյ ամենակալէն և յամենայն սրբոցն, և մասն և բաժին նորա ընդ Յուդայի՛ եւ այլ խաչահանուացն և ուրացողացն եղիցի. և մեր մեղացն պարտականն լիցի»: Հաստատեա է կամաւն Աստուծոյ, ի Թուականիս Հայոց 660:

Յետ այսր բաղում՝ արդիւնս ցուցեալ մեծին եւ բարեպաշտին Լիպարտի ի սուրբ ուխտն, զի նմա շնորհեալ էր զգաւառն եւ զվանքն հայրենագիր սիգելաւ յԱթաբէկէն Իվանէէ, հրամանաւ Թագաւորին եւ Լաշա Գէորգիին. եւ եղեալ ի վերայ զկնիք Թագաւորին անանցական մնատանեաւ: Վասն որոյ ի ձեռն եպիսկոպոսին Տէր Սարգսի շինէ զպայծառակերտ քաւարանն. եւ զարդարէ սպասուք. եւ փարթամացուցանէ ամենայն գոյիւք եւ ժառանգութեամբ՝ ինքն եւ որդիք իւր, զորս ըստ կարգի յիշեսցուք. եւ գրէ ինքեան արձան յիշատակի ի վերայ սուրբ եկեղեցւոյն այսպէս. « ի 672 Թուականութեանս Հայոց, կամաւն Աստուծոյ, ես Լիպարիտ՝

որդի Եղիկումին, թոռն մեծի Օրբէլեանց, որ և հայրն իմ վասն մեծի քինոյն ել ի հայրենի աշխարհէն իւրմէ եւ ի թագաւորէն Ափխազայ. եւ գնաց ի տունն Պարսից, առ Աթաբէկն Ելտկուզ. եւ նա մեծաւ փառօք եւ գորովագութ սիրով ընկալաւ զնա, եւ պարգեւեաց նմա զմեծ քաղաքն Համիան. եւ յետ ժամանակաց եթող զիս որբ: Եւ մեք անգիտութեամբ խաբեալք ի նոցանէ՝ ծանեայ ապա զհաւատն իմ հայրենի. եւ ի մանկական հասակիս դարձայ վերըստին ի լուսաւոր հաւատ սրբոյն Գրիգորի. եւ եկի առ մեծ Աթաբէկն Իվանէ. և նորա բազում սիրով ընկալեալ զմեզ՝ ետ փոխան հայրենեաց իմոց զՀրաշկաբերդ իւր կերովս (եկամտիւք). եւ այլ բազում գիւղս ի Վայոց ձոր, ի Գեղաքունի, ի Կոտայսն և ի Կայեն: Եւ ես մեծ յուսով շինեցի զվանքս որ կոչի Նորավանս, յառաջնորդութեան Տեառն Սարգսի՝ Սիւնեաց վերադիտողի, եւ կանգնեցի զսուրբ եկեղեցիս բազմածախս գանձիւք. եւ դարձուցի զաւագ սուրբ նշանս բազում ծախիւք ի տանէ Աթաբէկ Իվանէի. եւ բնակեցուցի ի սմա: Թափեցի եւ զԱգարակի ձոր իւր սահմանովն. ետու եւ զՏխարբ գիւղն իւր ամեն սահմանովքն, եւ թաղք մի ի Համարի գիւղ»:

Իսկ Տէր Սարգիս եւ միաբանքս հաստատ գրեն արձան յիշատակի իւրոյ եղբարցն եւ ծնողացն այս-



պէս. « ի Թուականիս Հայոց 710 այս գիր յիշատակի եւ արձան անջնջելի իմ Սմբատայ է՝ իշխանաց իշխանի, որդւոյ մեծին Լիպարտի որ զազօթարանս շինեցի և զեկեղեցիքս նորոգեցի վերստին, և զաստուածամուխ սուրբ նշանքս եւ զսուրբ նշխարքս որ հաւաքեցաք աստ, զարդարեցի ոսկի պահարանօք. և ետու նախ յիմ հալալ հայրենեացն երկու գիւղ՝ զԱւէշ և զԱնապատս որ յափշտակած էր ի տեղւոյս, և յԱկոռի զնորատունկ մեծ այգին իւր կիւրակաջրովն : Եւ Տէր Սարգիս և միաբանքս սահմանեցին յիշատակ մեզ զաւագ բեմն՝ բովանդակ տարին անխափան պատարագօք՝ զկիրակին եւ զշաբաթն Լիպարտի, զհինգշաբաթն՝ Ասփային, զերկուշաբաթն և զերեքշաբաթն՝ Եղիկումին, չորեքշաբաթն՝ Իվանէին, ուրբաթն Փախրադուլային :

Դարձեալ ետու եւ զՀօղոցմոց այգին եւ զՋուոյ այգին. եւ հաստատեցաք յամեն եկեղեցիքդ մին օր պատարագ հանիրն մերոյ Խաթունին : Յետ այսմ եւ տուաք զԱզատ գիւղն իւր ամեն սահմանովն, շրջակայ լերամբ եւ դաշտով՝ սկսեալ ի բարձր դիտաւոր սարէն որ Քուռակախաղաց կոչի, մինչ ի յԵրեւանն, Հօղոցմոց եւ Ճաւաձոր եւ ի գլուխն Ակոռւոյ : Ընդ սմա եւ զիմ ձեռատունկ այգին ի Ծաղկաձոր վասն հոգեաց եղբօրորդւոյն իմոյ Բուրթէլին որ տղայ հասակաւ սպանաւ ի պատերազմի յաշխարհն Խա-

լանդրայ ի դաշտին Խազրայ զոր այժմ Խփչախք կոչեն ։ Եւ սահմանեցաք նմա պատարագ 15 օր, որ ամ յամէ անխափան կատարեն՝ զ10 օրն յԱւագ տօներին Դաւթի եւ Յակոբայ եւ այլոյն, եւ զհինգ օրն ի Նոր կիւրակէին ։ Արդ՝ եթէ ոք ի մերոց կամ յօտարաց, յաւագաց կամ ի ձեռնաւորաց զմեր յիշատակս խափանել ջանայ, եւ ինչ եւ իցէ պատճառաւ հակառակել կամ յափշտակել խորհի՝ յամենատեղծ հրամանացն Աստուծոյ անլուծանելի անիծիւք ընդ Բելիարայ և իւրոցն և ընդ օձին նզովեալ եղիցի. եւ յառաքելոց եւ ի մարգարէից եւ ի հայրապետաց եւ ի մարտիրոսաց եւ ի սրբոց հրեշտակաց որոշեալ և անիծեալ լիցի. ընդ Կայենի և Քամայ, Կորխայ եւ Դաթանայ եւ Աբիրոնի, Եզաբէլի եւ Գեեզի, Յուդայի և Արիոսի և ուրացեալ Վասակայ դատապարտեալ անշէջ հրոյն պատժեսցի ինքն ։

Եւ ելցեն մեզ պատարագ յամեն շաբաթում յաւագ խորանն երեք օր՝ զկիրակէն, զշաբաթն և զհինգշաբաթն. զկիրակէն եւ զշաբաթն՝ իմ մեղապարտ հոգւոյս Լիպարտի. և զհինգշաբաթն՝ իմ կենակցին Ասփային ։ Արդ՝ ո՛ ոք լինիք ժառանգաւորք սուրբ եկեղեցւոյս՝ խնդրեցէ՛ք մեզ մեղաց թողութիւն. եւ որդեկաց մերոց Ելիկումին եւ Սմբատայ եւ այլոյն՝ արեւշատութիւն. եւ զմեր յիշատակս կատարէ՛ք անխափան ։ Եւ թէ ոք հակառակի այս հոգեցատուր

գիւղիս եւ կամ այլ արարուածիս. եւ յափշտակել Ջանայ ի սուրբ եկեղեցւոյս՝ ի սուրբ Երրորդութենէն նզովեալ եղիցի հոգւով և մարմնով, և յերից սուրբ ժողովոցն եւ յամենայն սրբոց անիծեալ լիցի. ընդ սատանայի եւ ընդ Յուդայի եւ ընդ Ներոնին եւ ընդ ամենայն ուրացողաց դատապարտեսցի յահաւոր ատենին Քրիստոսի. իսկ կատարիչքն օրհնեալ եղիցին։ Եւ թէ տանիկ աւագ փոխի եւ չորթել Ջանայ՝ յիւր հաւատէն ապիզա՛ր եղիցի և յԱստուծոյ և յիւր փեղամբարէն հազար հազար նալա՛թ լինի. երկինքն նորա մի՛ ցօղեսցէ, եւ երկիրս նորա մի՛ պտղաբերեսցէ »։

Եւ ահա մինչ այս այսպէս լինէր յաջողեալ յամենայն կողմանց. ապա եւ ինքն Տէր Սարգիս, յետ բազում արդեանց, գնայ ի սուրբ քաղաքն Երուսաղէմ, որպէս վերագոյն ասացաք, եւ անդ մարտիրոսական մահուամբ կատարի։ Եւ յաջորդէ ի տեղին Տէր Ստեփաննոս, որ եւ սա գնացեալ առ մեծ կաթողիկոսն Հայոց Տէր Կոստանդին. և վերստին հաստատէ զայն ուխտ յաթոռ եպիսկոպոսաց, եւ զթէմն զոր ունէր՝ զՎայոց ձոր բոլոր և զՆախջաւան և զՃահուկ գաւառօքն. և առնու շրջաբերական թուղթ. յորում և էր ահագին նզովիւք փակեալ եւ ամրացուցեալ զի զկնի ժամանակաց մի՛ ոք իշխեսցէ խախտել. և ունէր օրինակ զայս (18)։

Ապա եւ ի սորա ժամանակս մեծ եւ արքայաշուք իշխանն Սմբատ՝ որդի Լիպարտի, շինէ ժամատուն մի հրաշակերտ յօրինուածովք՝ տեղի աղօթարանի ի դրան սրբոյ Նուխավլկային ի տաշածոյ վիմաց եւ ի կոփածոյ քարանց ։ Եւ յաւուրս Տեառն Սարգսի, որ զկնի սորա, աննման սպասուք զարդարէ զեկեղեցին մեծածախ գանձուք յոսկւոյ և յարծաթոյ և ի պատուական մետաքսէից. եւ շնորհէ հայրենական ժառանգութիւն սուրբ ուխտին գիւղս երիս եւ այգիս յԱկոռի և ի Հողոցմոյ, յԱռափայ և ի Ջուայ եւ յԱմաղվաձորի ։ Եւ ուխտիս ցուցանեն Ախթամարն եւ Արփալանն. և գրեն ինքեանց յիշատակ և պատարագ ։ Նմանապէս և քահանայ ոմն Շնորհաւոր անուն. սա թաղում հայրենիս ի նոյն գիւղ (ընծայէ) և հաղար դրամ. և սահմանէ ինքեան պատարագ ։ Յայնմ ժամանակի զարթոյց չարն պատերազմ ի մէջ եկեղեցւոյ. և յարեան ոմանք, (որ) զՍիմէին և զԱկիտոփելին խորհելով ի վերայ սուրբ եւ առաքելական աթոռոյս, և սկսան օձտել և խախտել զսահման մեծավիճակ գաւաղանիս Սիւնեաց, որ հին եւ հարուստ ժամանակօք առաքելական եւ հայրապետական կանոնիւ հաստատեալ կայր ։ Իշխան ոմն Պռոշ անուն՝ որդի Վասակայ, զիւր գաւառն եւ զգեղանսն որ ի Վայոց ձոր, կամէր յափշտակել և այլում եկեղեցւոյ ժառանգեցուցանել ։ Եւ աներկիւղ ոմն անզգայա-

բար մոլեգնեալ ի չար ախտէ սնափառութեան եւ ագահութեան, ի գաւառին Երնջակայ Յովհաննէս անուն՝ որդի երիցու մի, Սեղրաք անուն յԱպրակունիս գեղջէ, գնայ առ երջանիկ կաթողիկոսն Հայոց Տէր Կոստանդին. և պատրեալ զնա խաբող բանիւք՝ ձեռնադրի եպիսկոպոս, եւ գայ յԵրնջակու վանս յօղելով պատճառս այսպիսի. եթէ եւ այս աթոռ է եպիսկոպոսաց զի զոն աստ գերեզմանք հայրապետաց որք էին պատահմամբ եկեալ վասն ամրութեան բերդին ի ժամանակս եպիսկոպոսացն Սիւնեաց. եւ անդ վախճանեալ:

Եւ թիկունս արարեալ յայլազգեացն հազարապետ մի. եւ բռնաբար յափշտակեաց զԵրնջակ գաւառ. վասն որոյ ելեալ եպիսկոպոսացն Տէր Սարգսի ի Նորավանից, և Տէր Յովհաննէս՝ ի Տաթևոյ, հրամանաւ եւ օժանդակութեամբ մեծի եւ բարեպաշտ իշխանաց իշխանին Տարսայիճին՝ եղբօր Սմբատայ, գնացին առ մեծ կաթողիկոսն Հայոց Տէր Յակոբ որ զկնի Տեառն Կոստանդեայ. եւ ծանուցին նմա զաղէտ տարակուսանացն եւ զպատառումն առաքելական վիճակին: Իսկ նորա լուեալ եւ ընդոստուցեալ՝ հրամայէ գրել թուղթ եւ ահագին նզովիւք կտրէ ի կենաց զեղկելին Յովհաննէս որ յԵրնջակի. եւ հրահոսան անիծիւք փակէ մի եւս համարձակիլ ումեք ի հերքումն այնր վիճակի: Նմանապէս և առ իշխանն

Պռոշ գրէ Թուղթ մեղադրելով զինքն եւ զորդիս իւր . եւ հրամայէ ի բաց կալ յայնմ մտածութեանց . ապա թէ ոչ՝ անէծս յաւազինս ժառանգեսցէ ։ Ահա զայս հոգացեալ եպիսկոպոսացն՝ դարձան այսրէն եւ եկեալ ի տեղիս իւրեանց . նախ մատուցին զնամակն Պռոշայ, եւ նա ըստ հանճարեղ մտացն եւ մեծայոյս հաւատոյն մեծաւ զղջմամբ զմեղայ խոստովանելով եթող զհակառակութիւնն եւ ձեռագիր պայմանաւ հաստատեաց ուխտ երդման զի այլ ոչ եւս մտածեսցէ կամ ինքն կամ իւրքն զայնպիսի բանսարկութիւնս. Եւ դարձոյց անդրէն զթէմն. Եւ օրհնեցաւ յեպիսկոպոսացըն ։ Իսկ զմիւսն որ յԵրնջակ որջացեալ՝ ըմբռնեալ ցուցին զնզովաբեր Նամակն. Եւ հանեալ կողոպտեցին ի նմանէ զձեռն եպիսկոպոսութեան եւ քահանայութեան . եւ անդրէն հաստատեցին զգաւառն ամենայն ։ Բայց օրինակ շրջաբերական թղթոյն Տեառն Յակոբայ զոր բերին, այս իսկ էր (19) ։

Դարձեալ եւ յետ աւուրց ինչ այր մի մեծազգի ի տոհմէ իշխանայն Բաղաց, Թոռն Ջուրջեանց Մահեան անուն, զորոյ զնախնիսն յաւերման ժամանակին բերեալ էր Աթաբէկն Իվանէ . Եւ բնակեցուցեալ ի Վայոց ձոր եւ տուեալ հայրենեօք զՆորոյն բերդ այլովք ագարակօք ։ Եւ այս Մահեան անզաւակ գոլով՝ բարժանէ զհայրենիս իւր ընդ եղբօրորդւոյ իւրում Ամիրային . եւ առնու զկէս բերդին եւ որչափ ջուրն

հատանէ զանդաստանն որ ի Վարդենեաց կողմանն. եւ եկեալ ի սուրբ ուխտն առ Տէր Սարգիս՝ ստանայ ինքեան ղաւակ զսուրբ եկեղեցին եւ զսուրբ Նշանն. և ընծայէ զիւր հայրենաբաժինն զՆորբոյն և զտուն և զայգիս որ յԱւսիայ եւ զամենայն ստացուածս իւր ի սուրբ Նշանն. եւ գրէ ինքեան արձան յիշատակի. եւ ահագին եւ մեծամեծ նզովիւք փակէ եւ ամրացուցանէ զի յետ ժամանակաց մի՛ ոք իշխեսցէ խախտել զայն հոդեցատուր ի սուրբ եկեղեցւոյն. և սահմանէ ինքեան քսան օր պատարագ ամ յամէ անխափան։ « Եւ արդ՝ եթէ ոք ի մեծամեծաց կամ ի փոքունց. յաւագաց կամ ի ձեռնաւորաց այս տրոցս հակառակ կայ, եւ զՆորբոյն ի սուրբ եկեղեցւոյն Նորավանից հանել խորհի զինչ եւ իցէ պատճառաւ. եւ կամ յառաջնորդաց տեղւոյն և ի ժառանգաւորաց ղպատարագն ծուլանան կատարել եւ անհոգս առնել, այնպիսիքն ջնջեա՛լ եղիցին ի դպրութենէն կենաց, եւ մասն և բաժին զսատանա՛յին և զՅուդա՛յին և զամենայն չարագործա՛ցն առցեն, և յԱստուծոյ և յամենայն սրբոց նզովեա՛լ եղիցին։ Եւ անուն եւ յիշատակ նորա ջնջեա՛լ եղիցի յաշխարհէ. եւ մեր մեղացն պարտակա՛ն եղիցի. իսկ կատարիչքն օրհնեա՛լ եղիցին։ Եթէ տաճիկ աւաղութիւն փոխի, եւ խափանել ջանայ՝ յԱստուծոյ և յիւր փեղամբարէն ապիզա՛ր լիցի. և իւր հաւատն նորա հարա՛մ լիցի, երկինքն

նորա հո՛ւր ցօղեսցէ, եւ երկիրս նորա փո՛ւշ բերցէ. եւ ինքն որդւովք եւ ազգով իւրով ջնջեա՛լ եղիցի ի կենաց իւրոց. ամէն »:

Բայց այլ եւս բազում արդիւնս առնեն ի սուրբ եկեղեցին ի բնիկ ազատաց եւ յընտիր տանուտէրաց, որպէս Ախթամարեան զարմքն որ ի հին ժամանակաց բնակեալ էին յԱւփայ գիւղն՝ տան յիւրեանց հայրենեացն զԴայեկի քարոյ այգւոյն զվերին բաժինն:



ԿԶ. — Վասն մեծի նախարարութեանն Օրբէլեանց որք ուստի էին եւ ո՛րպէս. եւ վասն գալոյ նոցա յաշխարհս յայս. եւ վասն բազում բանից եւ գործոց գրոյցք յոլովք (20):

Ցիսկզբան նահապետութեան աշխարհիս Հայոց եւ Վրաց եւ ի ցեղապետութեան մերոյինս սեռի Նախնւոյն Թորգոմայ, էին նորա որդիք ութ արուագոյնք եւ հսկայակերպք. որոյ երիցագոյնն Հայկ, երկրորդն՝ Քարթլոս, երրորդն՝ Բարդաւս, չորրորդըն՝ Մովկան, հինգերորդն՝ Լեկան, վեցերորդն՝ Հերաւս, եօթներորդն՝ Կովկաս, ութերորդն՝ Եգրէս: Ապա բարժանեալ Թորգոմայ զժառանգութիւնս որդւոց իւրոց՝ տայ զՀայաստան աշխարհս բոլոր

սահմանօքն Հայկայ եւ զծմակային աշխարհն հիւսիսային՝ Քարթլոսայ եւ այլոց եղբարցն ։

Իսկ Քարթլոս գնաց ի լեառն որ կոչի Արմազ (21). եւ անդ շինեաց իւր տուն եւ ամրոց մի անառիկ ի պատշաճաւոր տեղւոջ, և կոչեաց զբերդն Օրբէթ (22). եւ անուանեցաւ աշխարհն այն ի Խունանայ (23) մինչև ի ծովն Սպերոյ յանուն նորա Քարթլ ։ Ապա յետ բազում ժամանակաց որդիք զհարս փոխանակելով՝ եկն նահապետութիւնն Քարթլայ մինչ ի ժամանակս թագաւորութեանն Պարսից մեծին Խոսրովու որ Քէքաւուս (24) կոչեցաւ ։ Եւ սահման էր Վրաց կոչել զգլխաւորն իւրեանց տանուտէր զի ոչ ունէին թագաւոր (25) . եւ նստէր տանուտէրն ի Քարթլ ի մեծ քաղաքին Մցխիթայի, որ շինեցաւ ի Մցխիթայէ՝ յաւագ որդւոյն Քարթլոսայ . որք եւ նեղեալ յայնմ ժամանակի ի բռնաւոր թագաւորէն Պարսից՝ կամէին զմահ ընդ կենաց փոխանակել ։ Եւ կայցեալ յայնմ ժամանակի պետ աշխարհին Վրաց Արդարմոս պարսիկ հրամանաւ Աբրիտոնայ (26) որ տիրեալ էր Պարսից եւ Վրաց եւ Աղվանից ։ Այս այն Արդարմոս է, որ շինեաց վերստին զՄցխիթայ եւ պարսպեաց կրաշաղախ վիմօք, եւ եդ պարիսպ յԱրմազ լեռնէ մինչ ցգետն Կուր ։ Որ եւ յետ վախճանին սորա արք չորք տիրէին Վրաց . եւ խռովութիւն եւ ապականութիւն տիրէր ամենեցունց առ

հասարակ . էր որ ի Քէքաւուս Խոսրովոյն, եւ՝ էր որ զկնի նորա ի Քուէ Խոսրովոյն . եւ էին Վիրք ի մեծ վշտի և կային յուսահատեալք յամենայն կողմանց ։

Ահա ընդ ժամանակս ընդ այնոսիկ անկանէր աղմուկ շփոթի և խռովութիւն մեծ ի մէջ Թագաւորութեանն Ճենաստան աշխարհի որ յարեւելս կոյս, որ անդր է քան զաշխարհն Խալանդրաց (27)՝ սահմանակից Խազրաց եւ Հոնաց . որ եւ ձգի երկայնութեամբ մինչեւ ցԵմաւոն լեառն ։ Քանզի ի մեռանել Թագաւորին Ճենբակուր կոչեցելոյ Թագաւորազունքըն սկսան պատերազմել ընդ միմեանս . եւ զօրացեալ մի կողմն՝ փախստական լինի միւսն, որ էր այր յաջողակ եւ պատշաճագեղ, ուժեղ եւ անձնեայ, երիտասարդ հասակաւ . որոյ առեալ զընտանիս իւր եւ զգունդն Թագաւորական գանձուքն՝ օդապարիկ երիվարօք սրաթռիչ լեալ անցանէն ընդ բազում աշխարհօք այնքան ահագին կերպարանօք զի ոչ ոք համարձակէր ընդ առաջ լինել նոցա ։ Եւ անցեալք ընդ դուռն Դարիալայ՝ իբր վերին ակնարկմամբն եկին յաշխարհն Քարթլայ, առ տանուտէրն Մցխիթայ . եւ տեսին զնոսա նեղեալ եւ ի մեծ վտանգի տարակուսեալ ի Պարսկայն ։

Ապա խօսին ընդ տանուտէրն և ընդ աւագագոյն արսն եւ ասեն « մեք ի Թագաւորացն Ճենաց եմք . եւ հատուածեալ յեղբարց մերոց եկաք աստ . եւ

հանձեսցաք ընդ ամուր աշխարհս ձեր . եւ աստուածք ձեր վասն վշտիդ ձերոյ ածին զմեզ յօգնութիւն ձեզ ։ արդ մեր կամք է կամ դադարել առ Պարսից թագաւորութիւնն և կամ անցանել առ ինքնակալն (28) Յունաց . բայց թէ ձեզ հաճոյ թուիմք՝ պատրաստեցէ՛ք մեզ տեղի հանգստեան . եւ կամք աստէն եւ թափեմք զձեզ ի նեղչաց ձերոց, և թէ ոչ՝ երթամք զճանապարհ մեր ուր և Աստուածն մեր հոգասցէ »։

Իսկ տեսեալ աւագ տանուտէրաց աշխարհին զայնպիսի արս քաջակորովս եւ ուժեղս, եւ լուեալ զհաճոյական բանս Նոյա՝ մեծապէս խնդային ի վերայ եկելոյն . եւ արարին խրախութիւն մեծ . եւ բարձր փառօք եւ մեծաշուք պատուով ընկալան զնոսա եւ սիրեցին յոյժ յոյժ . եւ զանառիկ ամուրն Օրբէթ, որ շինեալ էր ձեռամբն Քարթլոսայ, ետուն Նոյա տուն բնակութեան եւ տեղի ամրութեան . եւ գաւառս բազումս եւ աւանս մեծամեծս եւ բերդեարս ետուն ի ժառանգութիւն Նոյա ։

Ապա միամտեալ Նոյա ի տեղւոջն բնակեցան յՕրբէթն, եւ վասն անուան բերդոյն յետ յոլով ժամանակաց Օրբունք (29) կոչեցան, այսինքն Օրբէթեցիք . զի սովորութիւն է ազգին այնմ անուամբ տեղւոյն կոչել զիշխանսն, որպէս Մեթէուլքն և Մեւխէուլք եւ Մրաջուլքն, եւ ի Հերեթոյ Հերիսթավքն, եւ ի Ջաւախեթոյ՝ Ջաւախուրքն, եւ ի Կախեթոյ՝

Կախեցիքն, և ի Լեխթայ՝ Լեխթիմայքն (30) և այլ բազումք. որ եւ մինչև ցայսօր սակս այսր պատճառի Օրբէլք կոչի ազգն այն. որք եւ յառաջն Ճենեւուք կոչէին, այսինքն Ճենացիք։ Եւ արդ՝ մինչ այս այսպէս լինէր՝ ապա ինքեանք ժողովեցին զասուն Վրաց, եւ զօրս գումարեալ յարեան ի վերայ ամենայն նեղչացըն և կոտորեալ հալածական արարին ընդդիմանալովն Պարսից. եւ եղեւ խաղաղութիւն յաշխարհին յայնմ. վասն որոյ կարգեցին զնոսա ասպարապետ եւ զօրագլուխ ամենայն տանն Վրաց։ Եւ ի թագաւորելն Վրաց առաջին թագաւորին Փառնավազայ (31) առաւել պատուեցան Օրբէլքն ի նմանէ. և ի Վրաց աշխարհին ոչ գոյր ոք նման նոցա կամ հաւասար բայց միայն ի թագաւորէն։

Եւ ահա զայս ծանեաք ընդ աղօտ ինչ ի Վրաց պատմութենէն. բայց վասն նախանձուն Գէորգի թագաւորին որ ազգաւ ջնջեաց զնոսա ի Վրաց աշխարհէն, ջնջեցին զանունս նոցա ի պատմութենէն իւրեանց եւ յամենայն գրեանցն եւ յեկեղեցեացն. Վասն որոյ և մեք քննեալ և տեղեկացեալ ծանեաք զսակաւն ի բազմաց ի գիտող արանց եւ ի մնացեալ յիշատակարանաց ուրեք ուրեք, եւս եւ յաւանդութեանց նախնեացն իւրեանց զոր ծանուցին հարք որդւոց մինչեւ ցմեզ։ Այլ զի ժտեալ էր յիշատակ նախնական զրուցարանութեանց նոցա, նա և ամե-

նայն արուեստք եւ գործք երեւելիք ի տանն Վրաց ազգին Օրբէլեանց ի նոյին ժամանակագրոյն զոր Քարթլիս ցխորեբայ (32) կոչեն, վասն այն մեք ոչ գիտացաք զորպէսն եւ զկարգ բանիցն զի եւ ըստ կարգի չարայարեալ էաք ի մատենին . բայց զոր գտաք ի հայալեզու գիրս սակաւ ինչ յիշատակ՝ դի-ցուք, եւս եւ զվախճան կատարածի նոցա զոր հա-ստատեաւ ծանոյց մեզ գեղեցիկ պատմութիւնն Մխիթարայ Անեցւոյ (33) ։

Արդ՝ ի թուականութեանն Հայոց 498 ի թագա-ւորութեանն Վրաց Դաւթի, եւ Հայոց Գագկայ չահանշահի որ ի Վանանդ (34), և ի կայսերակալու-թեանն Յունաց Մանաւմախին, տեսին նուաղեալ զազգս քրիստոնէից հազարածին իսմայէլացիքն . եւ ձայն տուեալ միմեանց ի Խորասան, ի Խորազմաս-տան, ի Փարս եւ ի Քրման, ի Բուխար եւ ի Մա-զանդարան, յԱրաղ, ի Բաղդատ և ի Բասր, յԱռան եւ յԱտրպատական . եւ ժողովեցան բազմութիւնք Պարսկաց եւ Խազրաց, Խորազմաց եւ Արաբկաց, եւս և սկիւթացի Թուրքաստանեայց (35) . եւ եկեալ բանակեցան ի դաշտին Կարնոյ, անթիւ և անհամար բանակօք . և խորհեցան զխորհուրդ զոր ոչ կարացին հաստատել, այսինքն բառնալ եւ ջնջել զկրօնս եւ զանուն քրիստոնէից ի Հայոց, ի Վրաց եւ Յունաց աշխարհէն ։

Ապա համբաւ դառնալուր եւ տիեզերակործան հռչակին հասանէր յառաջագոյն առ կայսրն Յունաց. եւ դողումն սարսռալի հասեալ կալաւ զերիկամունս ամենայն մարդոյ : Վասն որոյ յղեն այր ղԿոմնենոս (36) Տրապիզոնոյ զօրօք. եւ խնդրեն միաբան օգնականութիւն ի Հայոց եւ ի Վրաց թերեւս կարասցեն զերծանել յայնմ անդնդապատոյտ եւ ահագնեռանդ բարկութեանցն Հարաւայնոց : Զոր լուեալ թագաւորին Դաւթի եւ Գագկայ՝ (37) ոչ համարձակեցան ընդ առաջ ելանել իսմայէլեան զօրուն. այլ մեծապաղատ՛ թախանձանօք (համոզեն) զքաջն անպարտելի՝ զԼիպարիտն Օրբէլեանց (38) գնալ եւ խառնել ի զօրն Յունաց եւ ընդդիմանալ մարտին եկելոյ. եւ ինքեանք զօղեալ որջացան յամուրս աշխարհին : Ապա յանձն առեալ Լիպարիտն անվախ սրտիւ ասէ « ես երթամ ընդ առաջ այլազգեացն և ընեմ զանձն իմ ի վերայ քրիստոսական հաւատոյս, եւ զօրութեամբն Աստուծոյ կամ դարձուցանեմ անդրէն եւ կամ մեռանիմ վասն Քրիստոսի. բայց ո՛վ թագաւոր՝ յանձն առնեմ գյետնորդս իմ քեզ զի մի վասն նախանձոտ եւ չարաբարոյ ազատացդ Վրաց նենգեսցես ինչ սոցա և զրկեսցես ի պատուոյ եւ ի հայրենեացս մեր »:

Զայս ասացեալ ինքն Լիպարիտ հանդէս արար ազատաց եւ զօրաց իւրոց, որ ունէր զկէս թագա-

ւորութեանն, եւ անցին ի հանդիսին 700 ազատք մեծամեծք, որք էին սեպհական ծառայք նորին. եւ 16,000 արք պատերազմողք: Իսկ ի զօրացն արքունի ճառ տասն հազար այր (39). եւ գնացեալ ի Վանանդ ի դաշտն Կարուց՝ խառնեցան ի նա զօրքն Հոռոմոց (40) 15 հազար այր. եւ եղեն միանգամայն 41 հազար հեծեալ: Եւ զի այլազգիքն կոտորեալ էին նախ զԹրդըրու (41) գիւղ. եւ ապաստանեալ էին զամենայն շրջագայ գաւառօն, եւ բանակէին ի նոյն դաշտի. ապա ճակատեցան ընդդէմ իրերաց ընդ լուսանալն այգուն. եւ յօրինեցին զուազմն հանդիսին երեքկարգեան գնդովք՝ նախամարտիկս եւ միջնամարտիկս և վերջապահս: Եւ զի առ անթիւ բազմութեան Իսմայելացւոյն Լիպարտեան զօրն ոչ ինչ երևէին այլ իբր Ջրտուս (42) կամ զինաքաղս (43) թւէին առ նոյա. տեսեալ զայն անպարտելի ախոյեանն քաջն Լիպարիտ՝ զօրացոյց զգունդն իւր եւ ասէ « մի երկնչիք. այլ միայն զօրացի՛ք անուամբն Քրիստոսի եւ կնքեցէ՛ք զձեզ նշանաւ խաչին. եւ մեր է յաղթութիւնն »: Եւ ինքն իջեալ յերիվարէն ծունր դնէր և կնքէր զինքն նշանաւ սուրբ խաչին և յանձն առնէր Քրիստոսի. եւ կապէր ի պարանոցն զմասնն որ ի փրկական խաչէն. եւ այնպէս զինեալ զինքն՝ հեծեալ ի տաճիկ երիվարն, եւ ընկենոյր զօսկենկար վահանն ի թիկունս, և զձաւձ նիզակին (44)

յահեակ բազուկն, եւ զլայն պողովատիկ շեշիրն երկ֊բերանի ի յաջ ձեռինն . և զվաղրն ահագին ի ներքոյ բարձիցն իբր զուռն դարբնաց եւ կամ զսակր կոցա֊ւոր քարահատաց՝ անցեալ ի մէջ ռազմաւոր հանդի֊սին արշաւէր սիգալով յայսկոյս և յայնկոյս ։ Եւ յոս֊կեկուռ (45) զրահէն և ի սաղաւարտէն նշոյլք հատա֊նէին իբր յարեդականէ ։

Փչէր, գոռայր իբր զառիւծ, խնդրէր ի նոցանէ մենամարտիկս, և ասէր . ես եմ Լիպարիտն Ափխա֊զաց (46), եկա՛յք քաջքդ Պարսից եւ Արեաց՝ եւ նախամարտեսցու՛ք ընդ միմեանս » ։ Եւ թէպէտ բա֊զում անգամ խնդրեաց . ոչ ոք իշխեաց ելանել ընդ առաջ նմա . եւ յոր տեղ սլանայր Լիպարիտն եւ իբր զարծիւ խոյանայր ի վերայ նոցա, յետս յետս մատ֊չէին՝ զմիմեանս առաթուր կոխելով ։ Ապա գիտաց Լիպարիտն զի բեկան սիրտք նոցա . եւ թուլացաւ զօրութիւն նոցա . դարձաւ յիւր ռազմն, եւ քաջալե֊րեալ յառաջ շարժեաց . եւ գոչեցին ահեղ աղաղա֊կաւ եւ խառնեցան ընդ միմեանս . եւ խմբեցաւ պատերազմն ահագին իմն դղրդմամբ . որ թուէր իբր որոտումն ամպոց եւ ճայթմունք փայլատակմանց ։ Եւ ինքն Լիպարիտ իբր զամպ հրախառն մտանէր եւ ելանէր և կայծակնահար առնէր զբազումս . և զօրէն հրոյ ընդ եղէգն փոթորկեալ՝ ճեղքէր զգունդս նոցա եւ անցանէր յայն կողմն . եւ յաջ եւ յահեակ հոսէր

զետս արեանց . եւ զնէր կոյտս դիականց եւ հատանէր յայլազգեացն գունդս գունդս եւ զայն իբրև զերամս նապաստակաց տապաստ արկանէր ի դաշտին ։ Եւ այնպէս կոտորեալ յաղթեաց Իսմայելացւոյն . եւ փախստական արար զսակաւ մնացեալսն քաջն Լիպարիտ զօրութեամբն Յիսուսի Քրիստոսի Աստուծոյն մերոյ ։

Եւ ապա ի հասարակել աւուրն դարձան ի մեծաջան աշխատութեանց եւ վաստակոց մեծաւ գոհութեամբ եւ բազում ուրախութեամբ . իսկ անիծեալ և տիրասպան ազատքն Վրաց երկուցեալ յահագին զօրութենէ նորա . եւ խորհուրդ առեալ ընդ դէդեպուղ զօրագլուխն Լիպարտի . եւ յանկարծակի հատին զջիլ երիվարին նորա . եւ ընկեցին յերկիր զԼիպարիտն ։ Եւ ի մէջ առեալ բազմութեանն սպանին զնա ի տեղւոջն . եւ ածին խաւար եւ սուգ քրիստոնէից ։ Զոր եւ իմացեալ Իսմայէլացւոյն . եւ մեծաւ խնդութեամբ դարձան անդրէն և սուր ի վեր առեալ կոտորեցին զզօրսն Վրաց ։ Եւ ոմանք փախստական եղեալ ցրուեցան ընդ երկիր . եւ այն էր կատարած կորստեան աշխարհիս Հայոց եւ Վրաց զի տիրեաց Տաճիկն ընդհանուր գաւառաց ։ Առին սակաւ մի յետոյ զԱնի որ ի 513 Ալփասլան (47) սուլտանն, առին եւ զԿարս, առին զբոլոր գաւառն Շիրակայ եւ Վանանդայ եւ Արշարունեաց եւ զԱրարատեանն

եւ զԱխտական աշխարհս եւ զԲազզայն եւ զամենայն երկիրս մինչ ի դուռն Տփղեաց ։

Եւ արդ զայսպիսի դուռն մեծի կորստեան և աշխարհագումար կործանման քրիստոնէից յայնմ աւուր բացին անիծեալ եւ տիրասպան զօրքն Վրաց. բայց ես զսպանումն Լիպարտի համարիմ ոչ կորուստ անձին. այլ գիւտ մեծի փրկութեան՝ զի եդեալ զանձն ի վերայ հօտին Քրիստոսի՝ մեծապէս հանդիսացաւ, եւ անպարտ սպանմամբ յիւրոյն մարտիրոսական արեամբ պսակեցաւ, եւ գնաց առ ամենաթագաւորն Քրիստոս զի ի նմանէ ընկալցի զվարձս և զպարգևս մեծավաստակ աշխատութեան իւրոյ ։ Իսկ ապա հաւատարիմ ծառայք նորա բարձին զդիակ գեղեցիկ երիտասարդին և անպարտելի քաջին մեծաւ ողբով, և տարեալ ի Կարս՝ կազմեցին դագաղս եւ զարդարեցին ոսկեհուռ հանդերձիւ եւ արքայական ճոխութեամբ, եւ առեալ տարան ի մեծ հանդիսաւոր վանսն իւրեանց ի Բեթանիա (48), որ էր շինեալ նախնեացն նորա տուն գերեզմանի ինքեանց ։

Եւ եկեալ թագաւորն Դաւիթ ամենայն մեծամեծօք, եւ արարեալ կոծ մեծ ի վերայ նորա՝ եդին ի տապանի ընդ հարս իւր ։ Իսկ պատիւ եւ բարձ ցեղին Օրբէլեանց ի տան թագաւորին էր այսպէս. լինել սպասալար ամենայն զօրացն և հրամանատար ամենայն աշխարհին Վրաց. եւ ամենայն գործա֊

կայք տանն արքունի ընդ ձեռամբ նոցին (էին). ունել սեպհական երկոտասան դրօշս և յամեն դրօշ՝ հազար այր. եւ զի սահման էր թագաւորին սպիտակ լինել վառն և կարմիր նշան ունել, հրամայեցին սոցա կարմիր ունել զվառ դրօշին և սպիտակ նշան ի վերայ՝ եւ ի շրջելն առաջի թագաւորին եւ ի կանգնելն ունել ի ձեռին զաւազան առիւծագլուխս, եւ ի ժամ ճաշոյն առանձին (49) նստել ի բազմականացն ի վերոյ քան զամենայն դեղեպուչ նախարարսն, եւ ուտել հաց արծաթի սեղանով. եւ սոքա էին թագադիրք թագաւորին :

Եւ արդ յետ բազում ժամանակաց ի թագաւորութեանն Դաւթի հզօրի՝ որդւոյ Գէորգիի, մեծ սպարապետն Օրբէլեան Իվանէ յոյժ արիացեալ ընդարձակեցոյց զսահմանն Վրաց պատերազմեալ ընդ Տաճկաստան. զի առին զՏփղիս (50) ի Տաճկէն եւ զՏաւուշ, զԳագ, զՏէրունականն, զԼոռէ եւ զԱնի ի572 թուականին : Վասն որոյ առաւել սիրեցաւ և պատուեցաւ ի թագաւորէն, և խնդրեաց հայրենեաց իւրեանց տուաւ նմա ի թագաւորէն Լոռէ իւր գաւառովն, և Ագարակն՝ (51) տեղի դարապասի, և Շամշոյլտէ որ էր հայրենիք նոցին, վերստին տուաւ գաւառովն : Եւ այս մեծ սիրելաւ եւ թագաւորական մատանեաւ հայրենիք հաստատեցաւ սոցա : Իսկ ի մեռանելն Դաւթի հզօրի առնու զթագաւո-

րութիւնն որդին նորա քաջն Դեմետրէ որ էանց գովութեամբ ընդ նախնիս իւր. և թագաւորեաց ամս 33 ։ Սա առաւել սիրեաց և պատուեաց զԻվանէ և զորդին իւր Սմբատ ։ Ի սորա աւուրս առին Իվանէ եւ Սմբատ զԽունան որ ի բազում ամաց էր առ Տաճկին, եւ այն ևս հաստատեցաւ հայրենիք նոցա ի թուականին 577 ։ Յետ այսմ մեռանի Իվանէ ծերացեալ աւուրբք. և առնու զտէրութիւն նորա որդին իւր Սմբատ ։ Եւ ծանիր զի սոքա խնամութեամբ խառնեալ էին ընդ թագաւորին Վրաց եւ ընդ թագաւորին Հայոց Կիւրիկեանց որք էին Բագրատունիք. վասն այնր պատճառի առին ի նոցանէ զԲագրատունի անուանսն, այսինքն զՍմբատն և զԻվանէն որ է Յովհաննէս, եւ զԼիպարիտն եւ զԵլիկումն և զԲուրթէլն ունին ի հին նախնեացն որ ի Ճենաց եկին. եւ զայլ անուանսն ի Վրաց առին .

Դարձեալ եւ առնու միւս Իվանէ՝ Աբուլէթի որդին, զԴմանիս (52) ։ Եւ յետ բազում յաջողուածոց եւ մեծամեծ քաջութեանց մեռանի Դեմետրէ թագաւոր ի 607 թուականին ։ Եւ առնու զթագաւորութիւնն որդի նորա Դաւիթ՝ նման հօրն, այր հզօր եւ իմաստուն . եւ կեցեալ ամս երկու . եւ սա մեռանի ։ Եւ ի ժամ վախճանին կոչէ զկաթողիկոսն եւ զմեծամեծ դէդէպուլսն, կոչէ եւ զեղբայր իւր զԳէորգի

եւ զխորքրիկ տղայն իւր զԳեմնայն. եւ դնէ առաջի իւր զաւագ խաչն եւ զկրկական խաչն և զսուրբ աւետարանն եւ ասէ. ո՞վ մեծամեծքդ Վրաց՝ դուք ինքնին քա՛ջ գիտէք եթէ որպէս ջանայր հայրն իմ ի վերայ ձեր, և կրկին նորոգեաց զթագաւորութիւնս զայս. եւ ի ժամ մահուն մեծամեծ ուխտիւ և դրով ինձ շնորհեաց զթագաւորութիւնս. եւ ես այժմ մերձ եմ ի վախճան: Եւ իմ եղբորդ Գէորգիի ոչ ինչ հաշիւ եւ բան ոչ գոյ ընդ այսմ աթոռոյ. արդ՝ որպէս հայրն իմ ինձ շնորհեաց սեպհական զայս տախտ (աթոռ) արքայութեան, նմանապէս եւ ես իմում զաւակիս Գեմնայիս շնորհեմ ձեր ամենեցուն վկայութեամբ: Եւ դու Գէորգի՝ եղբայր իմ, կա՛ց ի տեղի իմ և արա՛ զզօրապետութիւն աշխարհիս, եւ կե՛ր զքո բաժին ժառանգութիւնն զոր հայր իմ ետ քեզ մինչև զարգասցի մանուկս իմ: Եւ յառաջ կոչեալ զԻվանէ՝ որդի Սմբատայ Օրբէլեան, երդմնեցուցանէ զնա վասն մանկանն պահել զուխտ անդարձին: Եւ առեալ զձեռանէ մանկանն եդ ի ձեռն Իվանէի և ապսպարեաց նմա. եւ զայլ դիդեպուղան զամենեսեան երդմնեցոյց ոչ նենգել տղային. այլ ի լնուլ հասակին օծցեն զնա թագաւոր:

Զայս արարեալ վախճանի ինքն. և դնի ընդ հարս իւր ի Գելաթ (53): Եւ յայնմ օրէ եւ յառաջ լինէր մանուկն ի տան Իվանէի, եւ սնանէր եւ զարգա-

նայր ։ Իսկ Գէորգի յինքն յանկուցեալ զվիրտ մեծամեծ իշխանացն, ևս եւ զկաթողիկոսին՝ կամէր թագաւորել. եւ ոչ իշխէին յայտնել զխորհուրդն մեծին Սմբատայ Օրբէլեան և որդւոյ նորին Իվանէի եւ Լիպարտի ։ Ապա յետ ամսեան մի ժողովեցին զամենայն դէդէպուլս եւ զազատս առ Գէորգի, ընդ որս եւ գնաց Իվանէ իւրայովքն. որում եւ յայտնեալ Գէորգի զխորհուրդն՝ բազում ողոքանօք հաւանեցոյց զնա ասելով թէ. ի լնուլ հասակի եղբօրորդւոյն իմոյ ոչ զրկեցից զնա. այլ ըստ անդարձի երդման իմ դնեմ զնա ի տախտ թագաւորութեանս ։ Վասն որոյ ամենեցուն միաբանեալ օծանեն թագաւոր (54). որ և էր յաջողակ յամենայն գործս արութեան եւ յոյժ հանճարեղ ։

Եւ յաւուրս նորա եղև բազում ընդարձակութիւն ի թագաւորութեան նորա. և բազում պատերազմունս մղեաց իւրով անձամբն. եւ ի ձեռն արի եւ քաջ սպասալարին Իվանէի դողացոյց զամենայն տունն Պարսկաց եւ Տաճկաց եւ Թուրքաց ։ Այս Գէորգի էառ զԱնի քաղաք ի 610 թուականին եւ զամենայն տունն Շիրակայ. եւ շնորհեաց մեծին Իվանէի՝ ամիր սպասալարին Վրաց, որդւոյն Սմբատայ Օրբէլեան. և սեպհականեցաւ նմա հայրենիք ։ Այս Իվանէ միանգամ եհար զՇահի-Արմէնն (55) ի դուռն Անւոյ որ եկեալ էր 40,000աւ ի վերայ քա-

զաքին. զի Թէպէտ զայր Թագաւորն Գէորգի յօգնութիւն. այլ սա իսկ էր մղող մարտին. և մի անգամ՝ փախոյց զմեծ Աթաբէկն Ելտկուզ ի դաշտին Գագայ որ եկեալ էր 100,000 աւ ի վերայ Գէորգիի. և կամէր կոտորել զամենայն Վիրս, եւ ըմբռնել զԹագաւորն. զոր մեծաւ հնարիւք եւ արիական քաջութեամբ այնքան ի նեղ էարկ Իվանէ. զի ի գիշերի Թողին զվրանս եւ զզէնս եւ զանհուն կարասիս իւրեանց և զբեռնակիրս. և փախեան մազապուր ։ Բայց Թէպէտ զայս ամենայն առնէր, եւ այլ բազում երախտիս եւ գործս մեծամեծս առ Թագաւորն. սակայն նա վերին երեսօքն ի մեծամեծ փառս եւ ի պատիւ բարձրացուցանէր զնա. եւ ի սրտին միշտ կասկածէր ի նմանէ վասն տղային որ նմա յանձնեցաւ. եւ խնդրէր ժամ դիպող դաւել նմա ծածուկ հնարիւք և ոչ գտանէր. և գիտէր ի սրտին զայս եւ Իվանէ ։

Ապա հայրն Սմբատ ծերացեալ աւուրբք մեռանի՝ եւ դնի ընդ հարս իւր. և ժառանգեն զիշխանութիւն նորա որդիքն իւր՝ Իվանէ եւ Լիպարիտ ։ Իսկ ի Թըւականին Հայոց 626 եղև աղմուկ շփոթի ի մէջ Թագաւորութեանն Վրաց. եւ բնաջինջ կործանեցաւ տունն Օրբէլեանց. զի ի Թագաւորելն Գէորգիի ամն՝ 21 (56) եւ ի լնուլ հասակի երիտասարդութեան Դեմնային. մինչ նստէր Իվանէ եղբարբքն և

որդւովք իւրովք յԱգարակն կոչեցեալ դարապանի. և խրախճանային ի միասին. զային առ նա ի մեծամեծ դէղձպուղացն, զայր և Դեմնայն. և ասէին ընդ նմա « յիշեա՛ Իվանէ՝ զուխտն քո և զերդումն զոր երդուար Թագաւորին Դաւթի. և մի ուխտադրժանց լինիր. ահա՛ հասեալ է ժամանակ Թագաւորեցուցանելոյ զմանուկս Դեմնայ : Եւ Գէորգի կայ նստեալ ի Սախսատէ (57) սակաւ արամբք. և մեք ամենեքեան հաստատուն եմք յայն երդմանն զոր երդուաք հօր սորա » : Ապա ասէ Իվանէ « քա՛ւ լիցի մեզ այդ զի խորհեսցուք սպանանել զօծեալ Թագաւոր. այլ վասն երդմանն մեր և ուխտին ըմբռնեսցուք զԳէորգի մինչև Թագաւորեցուցանեմք զԴեմնայն. Եւ ապա առնումք ի նմանէ ուխտ երդման և ձեռագիր զի հնազանդ կացցէ եղբօրորդւոյ իւրում. և արձակեսցուք զնա զի կացցէ և նստցի յիւրում բաժնի ժառանգութեանն զոր հայր իւր ետ նմա » :

Եւ զայս ասացեալ հաւանեցան ամենեքեան. եւ սկսան զօրս գումարել փութանակի : Լուեալ զայս խորհուրդ անարգագոյն մանկան միոյ, և երթեալ ի գիշերի աղդէր Թագաւորին, և նորա հեծեալ յերիվար փութանակի փախչի և անկանի ի Տփղիս եւ ամրանայ անդ : Զօր և անգիտացեալ Իվանէի հեծեալս գումարէր և զօրս կազմէր : Եւ էին միաբան ամենայն գլխաւորք և ազատք Վրաց ընդ Իվանէի-

և ամենեքեան համագումղ դիմեալ եկեալ էին առ նա յԱգարակն դարապաս՝ Բարթլիս Հէրխ. թաւքն (58) և Ղաւրղաւրայքն և Ջաւախուրքն. Կախայն և որդիք իւր և Կամրագէլն մեծ եւ Ջա. գելմեթնայն և Տաշրայիքն և Կայենեյին Համան եւ Անեցին Գրիգոր Աւլիրաուեանց, որոց զօրքն էին թուով աւելի քան զ30,000 ։ Իսկ Թագաւորն Գէորգի միայն առանց զօրաց կայր ի Տփղիս, եւ կոչէր առ ինքն զխոփշախ ոմն Խուպասար (59) անուն. և եգիտ արս իբր հինգ հազարս. և այլ ոչ ունէր օգնական զոր ։

Ապա իբրև լուան զմուտն արքային ի Տփղիս եւ զամբանալն նորա անդ՝ ոչ գնացին ի վերայ նորա. այլ սպասէին ելանել նմա անտի ։ Եւ մինչ յերկա. րէր գործն, որպէս օրէն է մարդկային անհաստատ բարուց, եւ մեծն Կամրագէլ ի միաբանութենէ նոցա եւ գնաց ի ծածուկ առ Գէորգի ։ Զայն տե. սեալ եւ Գրիգորի Մաժխարուեանց՝ եւ նա գնաց եւս առ Գէորգի. նմանապէս և այլքն, մի մի, սկսան քամիլ եւ գաղտագողի գնալ առ Թագաւորն ։ Եւ այնուհետև սկսաւ զօրանալ կողմն Գէորգիի. և նուա. զիլ կողմն Գեմնային ։ Բանզի որք երթային առ Գէոր. գի՝ մեծաւ պատուով ընդունէր և անչափ պարգևօք խրախայուցանէր, եւ զամենայն հայրենիս եւ փառ. թամութիւնս Օրբէլեանց խոստանայր տալ նոցա ։

Յայնժամ իբրև բազմանայր եւ զօրանայր Գէորգի. եւ գիտէր զի նուազեալ էր կողմն եղբօրորդւոյն և Իվանէի՝ գնաց մեծաւ պատրաստութեամբ ի վերայ նոցա. զոր և լուեալ Իվանէի՝ հորդեաց զամենայն ստացուածս իւր ի բերդն Շամշուլտէ, յորում և կայր տուն գանձուց նոցա ի հին նախնեացն՝ լի անբաւ կարասեաւ. և կացոյց անդէն բերդապահս ի գլխաւոր արանց. եւ ինքն առեալ զզօրսն և զմեծ իշխանսն, որ առ նմին, եւ զԳեմսայն. եւ գնաց ի Լօռէ եւ ամրացաւ յոյժ : Եւ զեղբայր իւր զԼիպարիտն երկու որդւովքն առաքեաց առ Աթաբէկն Ելտկուզ ածել ի նմանէ զօրս յօգնութիւն : Իսկ թագաւորն Գէորգի եկեալ եւ ոչ գտաւ զնոսա յԱգարակին. ապա նստեալ ի վերայ բերդին խիտար (60) զաւուրս 25. եւ էառ զնա եւ կոտորեաց զպահակսն, եւ էառ յաւարի զբազմութիւն գանձուց նոցա և զամենայն ստացուածս. եւ եկեալ բանակեցաւ շուրջ զԼօռէիւ : Եւ զի յերկոտասանն Հրոտից ամսոյ եմուտ Իվանէ ի Լօռէ. եւ եկաց մինչև ի հինգն Մեհեկի. վասն որոյ նեղեալ բերդայեացն՝ սկսան ազատքն, մի մի, կախաղանօք ի գիշերի իջանել ընդ պարիսպն եւ անկանիլ առ թագաւորն :

Ապա ի մեծամեծ դէդէպուլացն, որք էին սիրելիք եւ համախոհք Իվանէի, սկսան ի ծածուկ գրել գիրս պատգամի եւ ընկենուլ նետիւք ի բերդն առ Իվանէ

վասն հաւանութեան և հնազանդութեան զի երկըն-չէին ի գալստենէ Ելտկուզ աթաբէկին. եւ էր գիրն այսպէս ։

« Մեծ Իվանէ Օրբէլեցի՝
Քաջ եւ հզօր անպարտելի,
Որ աշխարհաւ ես ծենայցի՝
Տոհմ ինքնակալ թագաւորի ։
Եկեալ յաշխարհս յայս Վրացի՝
Գտեալ պատիւ անկշռելի,
Պետ եւ գլուխ տանս արքունի՝
Եւ սպասալար Գէորգիի ։
Թէ քո հարկիքդ (61) քեզ պիտի՝
Կեանքդ եւ պատիւդ ցանկալի,
Եւ հայրենիքդ անչափելի՝
Որ կէս Վրաց տանս է աւելի ։
Թո՛ղ դու զերդումն զառաջի՝
Զուխտն եւ զանդարձն զայն Դաւթի,
Ե՛կ, հնազանդեա՛ Գէորգիի՝
Վրաց հզօր թագաւորի ։
Բե՛ր եւ մատո՛ ընծայ բարի՝
Զմանուկ Դեմնայդ որդի Դաւթի,
Որ քեզ պատճառ եղև չարի՝
Նաև բազմաց յայսմ աշխարհի » ։

Տեսեալ զայս թուղթ Իվանէի գրէ և նա պա-

տասխանի և կապէ ի նետն յայն. և ընկենու ար-
տաքս ։

Ո՜վ դէդէպուլք իմ սիրելի՝
Մեծ և հզօր իշխանք բարի,
Ես Իվանէ Օրբէլեցի՝
Ընթերցայ զգիրս ձեր խրատի ։
Բայց չեմ հաւան այս խորհրդի՝
Զոր գրեցիք յայսմ թղթի,
Մարդ որ կենօքս այս զբաղի՝
Թողու զաւանդն տէրունի ։
Ուխտադրուժ ինքն լինի՝
Առնու զբաժինն ուրացողի,
Ցանանց գեհենին պապակի՝
Եւ ի դիւաց գունդն դասի ։
Ես անցաւոր մարդ ցնդելի՝
Վասն առօրեայ կենաց պատուի,
Զկարեմ կորսել զուխտն որ եդի՝
Անել զերդումն սոսկալի ։
Այլ մեռանիմ յայսմ բանի՝
Երթամ առ Տէրն ցանկալի,
Առնում ստացուած անճառելի՝
Որ յումեքէ ոչ կողոպտի » ։

Եւ զայս թէպէտ վրացի լեզուաւ գրէին, սակայն մեք յեղափոխեալ ի հայ բան յարմարեցաք ։ Ապա

իբրև իմացան զանխոնարհելի կամս նորա՝ սաստկացուցանէին զպատերազմն ։ Եւ Դեմնայն անմտաբար երկուցեալ՝ ել ի գիշերին եւ կախեալ ընդ պարիսպն իջաւ և գնաց առ հօրեղբայրն իւր. եւ անկեալ առ ոտս նորա հայցէր շնորհել նմա միայն ըզկեանս ։ Զոր եւ տեսեալ Թագաւորին՝ խրախանայր մեծապէս. եւ յղէր պատգամաւորս առ Իվանէ եւ ասէր « վասն որոյ մարտնչէիր դու և վրէժխնդիր լինէիր՝ եկն առ իս. արդ դու վասն ո՞յր ապստամբիս, ե՛կ առ իս » ։ Եւ նորա ասացեալ. յիրաւի է զոր հրամայէ. բայց երդնուցու ինձ (Թէ) ոչ վնասեսցէ եւ ոչ յափշտակեսցէ ի հայրենեաց իմոց, եւ ես եկից առ նա ։ Եւ երդուեալ Գէորգի և կապեալ ուխտ մեծամեծ դաշամբ ընդ նմա. վասն որոյ համարձակեալ եկն առ Թագաւորն ։

Իսկ Թագաւորն խնդացեալ մեծապէս՝ զառաջինն ընկալաւ զնա յոյժ սիրով, և փառաւորեաց մեծաշուք պատուով մինչև էած ընդ բռամբ զամենայն որդիս և զազգատոհմն նորա. եւ ապա ստեաց Գէորգի իւրում ուխտին և սոսկալի երդմանն ։ Եւ կալաւ զԻվանէ և փորեաց զաչս նորա. եւ զԴեմնայն որ էր փեսայացեալ Իվանէի ըմբռնեաց (62), և զաչսն եդ փորել և յերանացն յապաւել զի մի լիցի, ասէ, ժառանգ ի նմանէ. իսկ զկրսեր եղբայր Իվանէի զՔաւթարն եւ զորդին Սմբատ և զեղբօր-

որդին զԻնայն ետ սպանանել. և զամենայն ազդատոհմ նոյին և զարու մանուկ նաեւ զկանայսն ետ առ հասարակ ջնջել և կորուսանել՝ զոմանս ջրասոյզ, զոմանս քարավէժ. եւ այնպէս երարձ ի տանէն Վրաց զանուն նոցա. եւ հրամայեաց ջնջել զյիշատակ ազգին Օրբէլեանց ի պատմագրոց իւրեանց նաև յեկեղեցեաց: Եւ ետ գրել զգրոց այսր ապստամբութեան, ոչ որպէս եղեալն էր, զիրաւացի պատճառն. այլ, ըստ իւրում բարուցն, մեծամեծ զբարքանութիւնս յօղեալ եւ պատուաստեալ ի վերայ նոցա. եւ կարգեաց ի նզովս զի մի ևս յիշեսցեն զանուն նոցա, և մի թողցեն ի նոցանէ զոք ի Վրաց աշխարհին. և եդ զայն կտակ չարի յիւրում գանձարանին: Եւ այս եղև ի 626 թուականին (63):

Ահա այսպէս եղև զրաւ զրկանայն և սպանումն եւ հալածումն Օրբէլեանց ի բնիկ հայրենեաց իւրեանց. որ ի գալստենէ նոցա ի Ճենաց աշխարհէն մինչեւ ցայն վայր, թուի թէ աւելի քան զ1000 ամ (էր): Ոմանք զրաբանեն զնոսա եթէ անձանց խակալով փառս՝ կամեցան ինքեանց առնուլ զթագաւորութիւնն. որ եւ ամենեւիմբ սուտ են եւ որպէս զչուն հաջեն (64). այլ վասն ուխտին և երդմանն Դաւթի թագաւորի՝ ի վերայ որդւոյ նորա զկեանս իւրեանց ի մահ եդին, որպէս օրէն է ուխտապահ եւ տիրասէր արանց, զորոց զզրկողացն եւ զզրկելոցն

դատաստանն Աստուած տեսցէ (65) յիւրում անաչառ դատաստանին ։ Բայց Լիպարիտն՝ եղբայր Իվանէի, որ գնացեալ էր առ աթաբէկն Ելտկուզ երկու որդւովք՝ Ելիկումաւն և Իվանէիւ, շարժեալ էր զօրունն Պարսից, եւ բազում հեծելովք գայր յօգնութիւն եղբօրն իբրև 60,000աւ ։ Ապա լուեալ զգոյժ չար պատահմանն ասէ. անմեղ քրիստոնեայքն զինչ մեղան զի երթեալ կորուսից զնոսա. և արեան պարտքն մեր զուր (66) երևին զի զնոսա ընդ բռամբ ածից ։ Դարձաւ անդրէն և դադարեաց առ Ելտկուզին, և ի դառն կսկծոյն և ի չարաչար սգոյն սակաւ աւուրս կեցեալ՝ մեռանի յօտար աշխարհի ։

Եւ որդին նորա Ելիկումն դադարէ անդէն. և եղբայրն իւր Իվանէ գնաց առ ամիրայն Գանձակայ, եւ անդ բազում փառս եւ պատիւ գտեալ դադարէ. զոր եւ յետոյ բազում ողորքանօք եւ երդմամբ յաւուրս Թամարին դարձուցին անդրէն եւ ետուն ի հայրենեաց իւրեանց զՕրբէթ միայն ։ Յորմէ ծնան որդիք եւ այժմ նոքա են Օրբէլք ։ Այլ ի հալածելն զՕրբէլքն բաժանեաց զհայրենիս նոցա Գէորգի, զոմանս ետ Թչնամեացն եւ մատնողացն, եւ զայլսն ետ Խոփչախին որ Խուպասար կոչիւր. զոր վերագոյն ասացաք, եւ մատոյց զնա ի գահ իշխանութեան նոցա, եւ եդ սպասալար ամենայն Վրաց ։ Բայց ինքն Գէորգի ոչ ունէր ժառանգ թագաւո-

րու[թ]եան՝ բայց միայն դուստր մի Թամար անուն. և վախճանեցաւ ի 633 թուականին (67) ։ Եւ կալաւ զթագաւորութիւնն դուստրն որում ածին այր զորդի Ռուսաց թագաւորին որում անուն էր Գէորգի (68) ։

Սա էառ զԴվին քաղաք՝ եւ սակաւակեաց եղեալ մեռանի. եւ առնու Թամարն միւս եւս այլ այր Սօսլան անուն. եւ լինի նմա որդի մի Լաշայ Գէորգի անուն ։ Բայց յետ վախճանին Գէորգի թագաւորին Թամարն մեծարեալ զորդիսն Սարգսի՝ որդւոյ Զաքարէի իշխանի, հայ ազգաւ եւ ուղղափառ հաւատով, զԶաքարէ եւ զԻվանէ, եւ բարձրացուցանէ ի փառս եւ ի պատիւ. զԶաքարէ կացուցանէ ի տեղի Օրբէլեանց ամիր սպասալար Վրաց. եւ տայ նմա զհայրենիսն նոցա զԼօռէ. եւ զեղբայրն Իվանէ կացուցանէ Աթաբէկ ի վերայ աշխարհիս Հայոց և Վրաց՝ ։ Որք բազում ջանիւ թափեցին զաշխարհս Հայոց ի Պարսից. եւ առին յԱռանայ մինչեւ ցներքին Բասեն եւ ի Բարկուշատայ մինչ ի Մժնկերտ ։ Առին զԿարս, զՎաղարշակերտ, զԿաղզվան, զՍուրբ Մարի, զԱնի, զԱնբերդ, զԲջնի եւ զԳառնի, զԴվին մայրաքաղաք, զԳարդման, զԳանձակ, զՋարէք, զՀերթ (69), զՇամքոր, զՇաքի, զՊարտաւ, զՋարաբերդ (70) ։ Առին ի 660 թուին (71) զՍիւնիս, զՈրոտն, զԲորոտան, ըզ

Բղէն (72), զԲարկուշատ ։ Եւ Թէպէտ յայլ և յայլ Թուականս առան. սակայն զհասարակն սորա առին եւ որդիքն իւրեանց. եւ ազատեցին զաշխարհս ի դառն ծառայութենէ Տաճկաց ։

Իսկ Եմիկումն որ մնաց ի տան Աթաբէկին, գտեալ եւ սէր յոլով ի նմանէ եւ յորդւոյ իւր ի Փահլաւանէն (73) եւ ի Խզլ Ասլանէն (74), եւ պատիւ եւ փառս բարձրագոյն ի վերքան զամենայն մեծամեծ աւագանին Արեաց եւ Պարսից աշխարհին ։ Եւ ետ նմա աթաբէկն զմեծ քաղաքն Համիան եւ կոչեաց զնա որդի իւր. եւ հաստատեաց նմա հայրենիք տուղրայիւ գրոյ եւ մանշուրաւ. եւ կացուցանէ զնա ամիրայ եւ քաղաքապետ մեծ մայրաքաղաքացն Պարսից Ռէոյ (75), Ասպահանայ. եւ Խազմինի ամս երկոտասան ։ Եւ նեղէր զնա սուլտանն մետայանալ ինքեան եւ առնուլ զմեծ մասն աշխարհին եւ Թողուլ զհաւատն Քրիստոսի ։ Եւ Եմիկումն, Թէպէտ տղայ էր հասակաւ, այլ լի էր հանճարով. ոչ տայր տեղի բանիցն եւ ոչ Թուլանայր ի հաւատոյն. վասն որոյ նեղեալ ի Պարսկացն եւ երկուցեալ ի հաւատոյն զի մի բռնադատեսցեն (76), խնդրէ պատճառանօք տեղի ի Նախջաւանու գաւառի. այն երկիր (ասէ) մօտագոյն է ի Վիրս. եւ անտի հեշտ է ինձ եւ դիւրաւ առնուլ զվրէժ արեան հարցն եւ եղբարցն իմոց ։

Ընդ որ հաճեալ Աթաբէկին՝ տայ նմա զբերդն Երնջակայ եւ զՃահուկն աւան եւ զքալասրահն ի Նախջաւան եւ այլ բազում տուրս. եւ կայուցանէ գործակալ եւ զօրագլուխ այնմ կողման ։ Եւ զի բաժանեալ էր զաշխարհն իւր երկու որդւոցն. եւ տուեալ էր զԽորասան եւ զԱրաղ եւ զներքին բաժինն Պարսից Խզլ Ասլանին, որ Թարգմանի կարմիր առիւծ. և զվերին կողմն Պարսից եւ զԱտրպատական եւ զԱռան եւ զՆախջաւան՝ Փահլաւանին. վասն որոյ զձեռն Էլիկումին դնէ ի ձեռն նորա եւ ապսպարէ նմա ասելով. դու դմա հայր լեր եւ դա՝ քո որդի ։ Եւ յուղարկէ զնա բազում փարթամութեամբ եւ երևելի փառօք ի .քաղաքն Նախջաւան ։

Եկեալ ապա Էլիկումին եւ տիրեալ այնմ նահանգի. կոչէ առ ինքն զեպիսկոպոսն Սիւնեաց զՏէր Ստեփաննոս՝ որդի Տեառն Գրիգորի, եւ մեծաւ խնդութեամբ ընկալեալ զնա՝ անկանէր առաջի նորա եւ խոստովանէր զյանցանս իւր մեծաւ զղջմամբ և խնդրէր ի նմանէ օրհնս. և նորա հաղորդեցուցեալ զնա օրհնացն եդ ձեռս ի վերայ եւ օրհնէր զնա ։ Ապա յետ այնորիկ խնդիր լինէր Էլիկումն ամուսնութեան. եւ ոչ գտանէր ի քրիստոնէից զոք սպատշաճ իւրոյ խնամութեան զի աշխարհս այս դեռ ևս ի ներքոյ իշխանութեան Պարսից էր ։ Վասն որոյ հաւանեալ խնամութեան Սիւնեաց

եպիսկոպոսին Տեառն Ստեփաննոսի զի հոգևոր աս-տիճանաւ բարձր էր քան զնա : Եւ խնդրէր ի նմանէ զդուստր քեռ նորա ի Ճահուկ զի էր քոյր նորա կին ազատազգի և փարթամ առն միոյ Ճահկեցւոյ, որում Արաս անէին : Զոր մեծաւ խնդութեամբ յանձն առեալ եպիսկոպոսին՝ փեսայացուցանէ զնա ինքեան տալով զօրիորդն գեղեցիկ եւ մեծահաւատ Ելլիկու-մին, որում անուն Խաթուն ճանաչիւր : Եւ ծնի ի նմանէ որդի մի գեղուղէշ պատանի, զոր անուանէ յանուն հօր իւրոյ Լիպարիտ :

Եւ այսպէս կեցեալ բազում աւուրս՝ եգև օր մի հիւանդանալ նմա հիւանդութիւն մեծ, զոր լուեալ մեծի Աթաբէկին՝ եկն ի տեսութիւն ի Ճահուկն աւան, և նստեալ մերձ նմին նեղէր զհիւանդն ասելով. ես վասն այն եկի զի ինձ մեծ տուրս արասցես. և նա ասէ. ո՜վ արքայ՝ հրամայեա՛ եթէ զինչ է խնդիրդ քո և կամ ինչ հաճոյ թուի քեզ զի ընծայեցից քեզ. եւ նա ասէ. ո՛չ զանձք և ո՛չ այլ ինչ պատուականք պիտոյ են ինձ. բայց եթէ զհաւատդ շնորհեսցես ինձ և առցես զդենս իմ : Եւ մինչ կարի ստիպեաց. ապա ողորմելին այն նեղեալ և ցնորեալ ի ցաւոյն, եւ խուճապեալ ի յԱ-թաբէկէն՝ իբր խելագար իմն ցնդեալ ընդ բանսն ասէ. եղիցի ըստ բանի քում. որ և խրախացեալ մեծապէս Աթաբէկին կրկնեաց նմա ծունր եւ յարուցեալ գնաց. եւ մեծ սիգելով եւ անանցական գրով եա

զՃահուկ եւ զՔալասրաՀն եւ ի Նախջաւան յաւազ փողոյին 30 (77) կուզպակ ազատ եւ թարխան (ապահարկ) յամենայն հարկաց փոքրիկ մանկանն Լիպարտի լինել նորա յազգէ յազգ հայրենիք ։ Բայց Ելիկումն ողջացաւ ի ցաւոյն ըստ խնամոցն Աստուծոյ. եւ յոյժ զղջացեալ գնաց առաջի սուլտանին և Աթաբէկին եւ ուրացաւ զտաճկութիւնն. և վերստին խոստովանեցաւ զճշմարիտ հաւատն Քրիստոսի և ասէ. ո՞վ տեարք իմ՝ եթէ կամ է ձեզ, ես կացից իմ հաւատովս, և միամիտ սրտիւ ծառայեցից ձեզ. եւ թէ ոչ՝ ես պատրաստ եմ ի մեռանել վասն հաւատոյս իմոյ ։ Եւ նոքա վասն յոյժ պիտանութեան առնն ոչ ինչ նեղեցին. այլ թողին զնա ի կամս իւր ։

Որ և կեցեալ սակաւ մի՝ գնաց ի պատերազմ ընդ որդւոյ Աթաբէկին ի Գանձակ. եւ անդ սպանաւ ։ Եւ մնաց փոքրիկ մանկիկն Լիպարիտ որբ առ մօր իւրում, զոր իբրեւ իմացան գլխաւորք քաղաքին՝ ածին զմայրն և զմանուկն ի Նախջաւան և պահէին ի պատանդի գի մի՛ առեալ մօրն փախիցէ ։ Եւ տաճիկ մի բռնաբարեալ զխաթունն՝ ածէ ի տուն իւր և առնու զնա կին ։ Եւ սնանի մանուկն ի տանն յայն անծանօթ լեալ քրիստոնէութեան աւելի քան զ10 ամ ։ Ապա մինչ տիրեցին այսմ աշխարհի Չաքարէ եւ Իւանէ. եւ տկարացաւ տունն Պարսից, սկսան

յոյզ առնել եթէ զոյ ոք յորդւոյն Սիպարտի ի Պարս֊կաստան. որոյ ծանուցանէ մեծ եպիսկոպոսն Սիւ֊նեաց Տէր Ստեփաննոս՝ աներն Եղիկումին, եթէ կայ մանուկ մի ի քուերէն իմմէ Սիպարիտ անուն. եւ է ի պահեստի ի Նախջաւան: Ընդ որ յոյժ խնդայեալ Զաքարէ եւ Իվանէ՝ թախանձեցուցանեն զեպիսկո֊պոսն հանել հնարիւք զմանուկն անտի: Եւ զի էր եպիսկոպոսն յոյժ ծանօթ և սիրող տան Աթաբէկին եւ ամենայն մեծամեծայն նորա. եւս առաւել որք ի Նախջաւան էին. վասն որոյ եկեալ եպիսկոպոսին ի մօտաւոր վայրսն (78) եւ ի բանի արարեալ զքարե֊կամս իւր՝ բազում հնարիւք եւ գողանալ զմանուկն Սիպարիտ եւ զմայրն իւր. զորս ի գիշերի կախաղա֊նօք իջուցին ընդ պարիսպն. եւ առեալ տարաւ ի Վայոց ձոր. եւ զմայրն ամրացուցեալ ի տեղի մի, զտղայն տարաւ առաջի Իվանէի: Որ և ի տեսանելն զնա անտանելի խնդութեամբ լնոյր. եւ առ ժամայն ծանուցանէր Թամարին եւ Լաշային. եւ նոքա յոյժ խրախանային. քանզի միշտ ի կասկածի էին ի նոցանէ:

Այս մեծապէս խիղայէ զնա Աթաբէկն եւ բա֊զում չուք եւ պատիւ զնէ նմա. եւ կամէր փեսայա֊ցուցանել ինքեան տալով նմա զքոյր իւր Թամթի: Իսկ ի մեծ դէղէպուլացն ոմն Բուքա անուն, որ էր գործակալ ամենայն տանն Աթաբէկին, խարեալ պատրող բանիւք՝ ի ծածուկ փեսայացոյց ինքեան

տալով նմա զամենօրհնեալ եւ զգեղեցիկ օրիորդն զԱսփայն, ընդ որ առ ժամ մի ցասուցեալ Աթաբէկ Իվանէի ։ Յետ որոյ հրամանաւ Թագաւորին տայ փոխան հայրենեայն Լիպարտի անանցական գրով զՀրաչկաբերդ իւր դաւառովն եւ այլ բազում գեղօրէս ի Վայոց ձոր, ի Կոտայսն զՆլառն եւ այլ գիւղս յոլովս ․ ի Գեղաքունի զՀամասարի եւ այլ գեղօրէս բազում, ի Կայեն զԱղստև իւր կերովն (79)։ Եւ զի նա եղեւ առաջնորդ առման Սիւնեաց եւ այլ բերդերոյն (80), տայ եւ ի ձեռս նորա զՍիւնիս․ զՈրոտն, զԲարկուշատ եւ զայլ բերդորէսն ։

Եւ կացուցանէն Թագաւորն Լաշայ և Աթաբէկն Իվանէ զԼիպարիտն կողմնակալ այսմ աշխարհի, նմանապէս և զմիւս իշխանն զամենօրհնեալն զՎասակ Խաչենեցի, զհայրն քրիստոսասէր և բարեպաշտ պարոնին Պռոշայ, կացուցանէն կողմնակալ ի Վայոց ձոր գաւառիս ։ Որ և մեծաջան վաստակօք բազումս նահատակեալ ի վերայ քրիստոնէից եւ եկեղեցեաց՝ օրհնեցաւ եւ գովեցաւ յամենայն աշխարհաց ․ որոյ յիշատակն օրհնութեամբ եղիցի յայսմհետէ մինչեւ յաւիտեան ։ Իսկ ամենօրհնեալն Լիպարիտ մեծաւ բարեպաշտութեամբ քաղաքավարէր ․ շինեաց եկեղեցի ի Նորավանս եւ զարդարեաց եւ փարթամացոյց զնա, որպէս վերագոյն ասացաք (81) ։ Եւ մայր սորա մեծաւ ճգնութեամբ ապաշխարեալ բազում

ամս ի Նեղապաղոյն խրճթի՝ վախճանեցաւ եւ եդաւ ի Նորավանս, ի դրան (82) սուրբ Կարապետին ։ Եւ եղեն Լիպարտի հինգ որդիք՝ Էլիկում, Սմբատ, Իվանէ, Փախրադուլայն, Տարսայիճն ։

Եւ ինքն յետ ամաց ինչ ի միջօրեայ հասակի առնու հարուածս ի ճանապարհի յանկարծադէպ նետից՝ ի գլուխ լերինն որ հանդէպ բերդոյն Բորոտնայ, եւ եկեալ անկանի ի բերդն Գողըշտի վանից. եւ կոչէ առ ինքն զեպիսկոպոսն իւր զՏէր Սարգիս. եւ հաղորդեալ՝ անդէն վախճանի. և բերեալ դնի ի Նորավանս, ի դրան սուրբ Կարապետին առ մօր իւրում ։ Եւ կին նորա եւ որդիք նորա մնան որբք եւ անտէրունչք. բայց գեղեցիկն Էլիկում փեսայացեալ էր Գրիգորոյ Մարծանեանց, որ յազգէ Մամիկոնէից համբաւի. եւ վարէր զտէրութիւն հօրն ։ Իսկ մեծ ասպասալարն Զաքարէ մեռանի ի 661 թուին. եւ Աթաբէկն Իվանէ յերկարեալ այլ եւս ամս հնգետասան՝ մեռանի ի 676 թուին (83)։ Եւ զսպասալարութիւնն Զաքարէի առեալ էր որդին իւր Շահանշահ. էառ եւ զԱթաբէկութիւնն որդին Իվանէի Աւագն, որ եւ էառ իւր կին զԳոնցայն, կեցեալ յիշխանութեանն ամս 23 ։

Բայց պատմեցից ձեզ սատանօր զրոյցս զարհուրեցուցիչս. զի նախ քան զայս հալածական եղեալ ի Թաթարէն սուլտանն Խորազմայ Ջալալադինն՝ որդի

Խորազմշահին (84), եւ գայ ընդ Պարսկաստան. եւ անցեալ ընդ Ատրպատական մտանէ յաշխարհս Հայոց. եւ յոր տեղ հասանէր՝ աւերէր, գերփէր, ապականէր ոչ խնայելով ի մարդ կամ յանասուն ։ Ապա եկեալ յԱյրարատեան գաւառ՝ բանակ հարկանէր անդ. վասն որոյ ժողովեալ Իվանէ Աթաբէկին զամենայն զօրս եւ զօրութիւն Հայոց եւ Վրաց՝ կամէր մարտիւ պատահել նոցա ։ Եւ կացուցանէն զոմանս դէտ եւ ազդարար ինքեանց՝ զՇալուէ ոմն եւ զԳրիգոր կանչող. որք տեսեալ յոյժ նուազ զզօրն Խորասանի կանչէին և ազդէին մերոյ զօրացս եթէ. եկայք ։ Իսկ նա որ Տէրն է յաղթութեանց, կամելով կամէր եղծանել զանօրինեալ և զամբարշտեալ ժողովուրդն, փոխարկեաց զձայն ազդարարայն յականջս սոցա եթէ. փախիք ։ Որք եւ թողեալ անդէն զկարասիս իւրեանց եւ զվրանս՝ աճապարեալք յերկիւղէն փախեան եւ իբր խելացնորեալք, առանց սրոյ եւ զօրութեան նա եւ պատերազմի վիթեալք (85) ընդ վիրթուածս մեծ քարին որ ի խորամին Գառնւոյ, առհասարակ հոսեալ կործանեցան. եւ Աթաբէկն Իվանէ 10 արամբք զերծեալ անկան ի յամուրն Գեղէ ։

Եւ Լխալարիտն իւրայովքն գտեալ կածան մի՝ դընայ (86). եւ եկեալ ամբողջ ի տուն իւր գոհանայր զՏեառնէ. եւ էր այս ի 674 թուականին ։ Իսկ զկնի

այսր անհնարին պատուհասիւք եւ զանազան դիպ-ուածովք տագնապանեալ եղեւ աշխարհս ամենայն. զի գնեալ Խորազմիկքն զաշխարհս անտերունչ՝ անխնայ կոտորեցին և գերեցին [illegible]եցին զամենայն չին-ուածս տանց եւ յարկաց քաղաքաց, գիւղից եւ վա-նորէից. այրեցին եւ զվաստակս ամենայն, եւ հարին զայգիս եւ զծառս. վասն որոյ սով սաստիկ տիրեաց առ հասարակ: Եկն եւ օձ թանձրագին որ եռայր յամանս (87) եւ յանկողինս ի տուէ եւ ի գիշերի: Եկեր եւ մարախն մեծ մինչ ի ծովն Ովկիանոս եւ էած սով առ հասարակ մարդոյ եւ անասնոյ: Եւ ամենեքեան առ հասարակ տապաստ անկեալ լինէին լերանց եւ դաշտից եւ ձորոց. սակս որոյ եւ անկաւ գայլ մարդակեր. և զմնացեալսն ի սրոյն, յօձէն, ի սո-վոյն և ի մահուանէն նոքա գիշատեալ սատակէին:

Եւ այս երկու պատճառաւ, մի՝ զի սովորեալ էին յուտել զմեռեալս, եւ մի՝ զի մարդիկն ներգևեալ եւ նքողեալ էին ի սովոյն: Եւ ահա այս պատուհաս տիրէ աշխարհիս ամս 7: Իսկ յետ մետասան ամի զարթոյց Տէր յարևելից զազգն Նետողաց որ Մուղալք կոչէին, եւ ըստ գեղջկայն Թաթարք, որ ի Չին եւ ի Մա-չին (88) աշխարհէ անդր քան զԽաթաստան՝ անաստ-ուածք և անօրէնք. բայց բնութեամբ օրինացն զար-դարեալք, ատեցողք աղտեղի գիջութեանց եւ ամե-նայն վնասակար գործոց, արդարամիտք առ միմեանս,

միամիտք եւ հնազանդք առաջնորդի իւրեանց, իրաւարարք եւ իրաւադատք, իսկ բարուք աղքատք եւ ընչաքաղցք, նեղիչք եւ կեղեքիչք մարդկան. պատկերով յոյժ գեղեցիկք (89) եւ լերկք ըստ կանացի դիմաց. եւ ծանօթք քրիստոսեան հաւատոյ. եւ յոյժ սիրողք քրիստոնէից, յաղեղունս կորովիք եւ յամենայն պատերազմունս յոյժ հնարաւորք։

Բայց յետոյ թողին զբնական բարս իւրեանց եւ եկին ի հայրենի սահմանէն զոր ունէին. մտին ընդ Մահմետի օրինօքն և ուսան զամենայն պղծութիւնս եւ անկարգութիւնս, եւ յանառակ կեանս վարէին։ Ահա սոքա բարժանեալ յերիս առաջս (90)՝ գնաց մինն ընդ արեւելից հիւսիսով յաշխարհն Խազրաց եւ Սուտաղաց, Ըռուսաց (Ռուսաց) եւ Չէրքեզաց եւ Բուլղարաց. եւ տիրեցին նոցա մինչ ի սահմանսն Ալամանի և Աւնկրաց (Հունգարաց) որք են Փռանգ, որոց գլխաւորին անունն Բաթու ղան։ Իսկ միւս կողմն գնաց առ Հնդկաստանօք, որք տիրեցին մեծ մասին Հնդկաց. եւ հնազանդեցին զՈւղուրս եւ զՈւղուզս եւ զԽորազմիկս եւ զԴելեմիկս եւ առին զԱլամալեխ եւ զԲէշպալեխ եւ զամենայն կողմանսն զայն, որոց գլխաւոր Հաւքաթայ ղան։ Իսկ միւս կողմն եկին ընդ մէջ աշխարհիս անցեալ ընդ մեծ գետն Ջահան և ընդ ջուրն զոր ինքեանք Ամու մաւրան (Ամուր) կոչեն (91)։ Եւ պտուտկեալ, փոթոր-

կեալ հասին յաշխարհս մեր. և առ հասարակ տիրեալ հնազանդեցին զամենայն տեղերս. կոխեցին, կործանեցին զամենայն թագաւորութիւնս, առին զԽորասան, եւ կործանեցին զաւաքաղաքսն նոցա ընդ Բաղխ եւ Հրէ, զՄ[illegible] զՆշաւուրն, զՏուսն եւ զԴամղանն (92), առին զԽուժաստան, զԼաւռաստան, զՊարսկաստան, զՔրդստան, զԱրաբստան. առին զԴիարբաքըն որ է Ասորեստան (93), զՇուշտար և զՔրման, զԲաղդադ և զԲասր մինչ ի Խումզ (Հորմուզ) քաղաք և ի ծովն Հնդկաց: Առին և զԱտրպատական, զԱռան և զՀայաստան, զՎիրս և զՀոռոմս. մինչ ի յԱնկիւրիա եւ ի Գանգրա եւ ի Զմիւռնիա Եփեսացւոց, եւ զԿիլիկիա մինչ ի ծովն Ովկիանու (Միջերկրական) եւ ի ծովն Պոնտոսի ի Տրապիզոն քաղաք:

Առին եւ զտունն Շամայ, զՈւռհայ եւ զԽառան մինչ ի Համս եւ ի Համայ: Բայց զառաջինն եկն յաշխարհս Ջուրմանն եւ Ջաղատայն, Ասլանն եւ Ասաւուրն և Ղատա ղանն (94). և առին զաշխարհս ի 685 թուականին: Եւ յետոյ եկն Հուլաւու ղանն՝ (95) թոռն մեծի Զանգզ ղանին. եւ զմնացեալսն յառաջնոյն էառ՝ զԲաղդադ քաղաք յորում եւ եսպան ըղ խալիփայն ի 707 թուին. եւ զՄուսխարղինն էառ ի 708 թուին զամ մի պաշարեալ. եւ գնաց մինչ յԵրուսաղէմ. էառ զՀալպ որ է Բերիա, եւ զԴըմըշխ

որ է Դամասկոս, եւ զՊալպաք որ է Արեգ (96) ։ Էառ և զմեծն Անտիոք. որք կամաւ հնազանդեցան ։ Էառ եւ զԵրուսաղէմ ի Մսրայնոյն ։ Եւ այնպէս բազում եւ անհուն քաղցրութիւնս եցոյց ։ Եւ զի յոյժ սիրող էր քրիստոնէից, վասն որոյ ամենայն ազգք հաւատացելոց կամաւ հնազանդէին նմա. եւ յոյժ ձեռնտու եւ օգնական լինէին. եւ արդ այսքան առ այս ։

Մեք դարձցուք անդրէն ի կարգ բանից. զառաջինն մինչ եկն Թաթարն յաշխարհս յայս. մեր գաւառքս անկեալ էր ի բաժին Ասլան Նոյինին. եւ էր Եղիկումն ամրացեալ իւրայովքն յանառիկ ամուրն Հրաշկաբերդի ։ Եկն Ասլանն այն եւ շրջեցաւ ընդ բերդովն եւ ծանեաւ զի անհնարին էր ի մարդկանէ. ապա իջանի հանդէպ բերդոյն. եւ յղէ պատգամաւորս առ նա եւ ասէ. արա ընդ մեզ սէր. եւ ե՛կ առ մեզ. եւ բազում բարութիւնս գտցես ի մէնջ. ապա թէ ոչ՝ մինչ յե՛րբ նստցիս ի քարիդ յայդ, մեք չեմք գնալոց յայսմ աշխարհէ. այլ Աստուած հայրենեօք ետ զսա մեզ. երբ և է ելանես ի դմանէ, և կորուստ լինի քեզ եւ տան քո ։

Լուեալ զայս Եղիկումին՝ ոչ ընդդիմացաւ բանիցն, այլ քաղցրութեամբ պատասխանեալ խնդրեաց երդումն. եւ ել ընդ յառաջ նորա բազում ընծայիւք ։ Եւ տեսեալ զնա Ասլանին՝ յոյժ սիրեաց եւ ընկալաւ

զնա, եւ արար խաղաղութիւն. եւ կալեալ զնա առաջնորդ գնաց մինչև յԱնի եւ հնազանդէր զամենայնն: Եւ առ նա զՎայոց ձոր եւ զԵղեգիս մինչեւ յԵրերօն գիւղ որ է հանդէպ Գառնւոյ. եւ ետ զամենայնն Ելիկումին և ասէ. թրով առածն և ոսկւով գնածն միապէս հայրենիք են մարդոյ, արդ զոր ես սրով իմով առի՝ այս գաւառք քե՛զ լիցին ի հայրենիս եւ ազգի քո. եւ դու միամիտ սրտիւ տե՛ս զմեզ՝ եւ ծառայեա՛ ղանին մեծի որ առաքեաց զմեզ աստ: Եւ նորա բազում շնորհակալեալ յամենայն սրտէ ծառայէ նոցա. եւ յայնմ օրէ եւ ապա հաստատեցաւ այս լինել հայրենիք տանն եւ ազգին Օրբէլեանց: Իսկ այլ զօրագլուխք հնազանդեցին զայլ աշխարհս եւ բերին զԱւագն ի դուրս ի բերդէն Կայենոյ. ըզ բռամբ ածին և զթագաւորութիւնն Վրաց. և եղեն միահեծան ամենեքեան:

Ապա յետ ամաց ինչ գնաց Թաթարն. եւ տարաւ ընդ իւր զօրսն Վրաց եւ զԱւագն եւ զՇահանշահ. ընդ որոց եւ գնաց Ելիկումն ի վերայ քաղաքին Մարտիրոսաց որ Նփրկերտ կոչի. եւ պատնէշ ածեալ շուրջանակի նստան ի վերայ բոլոր բանակօք ամօք եւ ամսօք. եւ ոչ կարացին առնուլ զնա: Անդէն հիւանդանայ Ելիկումն խստագոյն ցաւօք, եւ որպէս ասեն, դեղակուր լինի ի բժշկաց ի հրամանէ Աւագին: Զոր եւ բարձեալ բերին ի Նո-

րավանս. եւ եղև ի դրան սրբոյ Նախավկային. Թողլով որդի մի Բուրթէլ անուն՝ յոյժ գեղեցիկ տեսլեամբ եւ առոյգ հասակաւ ։ Ապա տիրէ իշխանութեան նորին եղբայրն իւր ամենօրհնեալն և գովելին բնաւից Սմբատ որ էր հանճարով մեծ, խորհրդով ուժեղ, խելօք աննման, հնարիւք բազմագէտ, բանիւ առատ եւ քաղցր, լեզուաց հմուտ եւ ճարտար. ի դատարանի դիւանին անպարտելի. զի խօսէր լեզուս հինգ՝ հայ եւ վրացի, ուղուր (97) եւ փարսի եւ զմուղալն իսկ (98) ։

Սա վարժեալ ի մանկութենէ աստուածային պատուիրանաւն, էր մեծահաւատ եւ բարեպաշտօն, սիրող սրբոց և եկեղեցեաց, շինող վանորէից, սփոփիչ եւ մխիթարիչ քահանայից, ողորմած աղքատաց, կանգնիչ և զօրացուցիչ վշտագնեալ ազգիս Հայոց, գերեթափ եւ ազատարար ամենեցուն ։ Բայց յետ Ելիկումին բազում նախանձու եւ թշնամութեամբ վարէր տունն Աւագին ընդ տանն Օրբէլեան. եւս առաւել Գոնցայն՝ կին Աւագին. եւ կամէին վարատել եւ հալածել, կամ կորուսանել զորբ մնացեալ մանկունսն՝ զՍմբատ եւ զեղբարս իւր. եւ յափշտակէին զհայրենիս նոցա ։ Եւ նոքա շրջէին թափառեամբ աստ եւ անդ. ընդ որ խանդաղատեալ արարչական սիրոյն կամեցաւ կանգնել և զօրացուցանել զտունն Օրբէլեան ի ձեռն Սմբատայ ։ Քանզի ընդ այն ժա-

մանակս էր զօրագլուխ Նետողացն, որպէս Թագա-ւոր ի վերայ ամենեցուն, Բաչու նոյինն. եւ նստէր ի գաւառին Հարանդայ՝ ի գլուխ Ջագէձորոյ. եւ էր ածեալ զբռամբ զփոքր Թագաւորն Սոնայ (99) ըզ Դաւիթ. և կայր նա ի մէջ բանակի նոցա ի կալանս։ Ապա ըստ վերին խնամոցն զերծեալ հնարիւք ի գի-շերի՝ անց գնաց փախստեայ երեք արամբք. և ունէր առ ինքն զոհար մի պատուական յոյժ լուսաւոր, եւ տեսիլ նորա կարմիր, յորմէ հատանէին նշոյլք իբր ի հրոյ. եւ ի գիշերի լուսաւորէր զտունն որպէս ջահ. ունէր եւ մասն մի ի փրկական փայտէն զորս ի կշիռ եղեալ էր իւրում թագաւորութեանն բռ-վանդակ։

Եղև սմա անցանել ընդ գլուխ գեղջն որ Գուտենի կոչի. ազդ լինի եւ տեառն գեղջն որ Թանկրէղուլ կոչէին, այսինքն Աստուծոյ ծառայ. և էր սա յազգա-տացն Ամբատայ. և հեծեալ յերիվար ձիարձակ լինի զկնի, և հասեալ կամէր արգելուլ զնա։ Իսկ նորա ի մեծ ահի եղեալ արձակէ ի կրծիցն զփոքրիկ քսակ պայուսակին, և տայ ցԹանկրէղուլն և ասէ. ո՞ւմ ես դու. և նա ասէ. ես Ամբատայ եմ Օրբէլեան. ասէ. տա՛ր զայդ և տո՛ւր ցԱմբատ և ասա՛. թէ այդ գին է թագաւորութեան իմոյ. ա՛ռ և պահեա՛ զդա. եթէ ես ի դուրս գամ և թագաւորեմ իմոյ աշխարհիս, առ իս բերջի՛ս և տա՛մ քեզ երկիր և քաղաք զոր դու

խնդրես, ապա թէ ոչ ելանեմ ի Սոնայ աշխարհէն՝ այդ քե՛զ լիցի ։ Եւ ինքն անցեալ գնաց և եմուտ յամուր և յանձուկ աշխարհն Սոնայ և այլ ոչ ել անտի մինչև մեռաւ անդէն ։

Իսկ Թանկրէղուլն բերեալ զայն մեծաւ խնդութեամբ ի տուն իւր, և պահեալ աւուրս ինչ՝ ետ Ալմքատայ, զոր և առեալ նորա գոհանայր զԱստուծոյ. եւ խորհէր ի միտս իւր եւ ասէր. եթէ պահեմ զսա՝ վնաս է ինձ զի ոչ ծածկի և ոչ դադարի առ մեզ. այլ տանիմ զսա առ մեծ ղանն որ Թագաւորաց Թագաւոր է. և տիրեալ է ծովու և ցամաքի, որ կոչի Մանկու ղան այսինքն սպիտակ Թագաւոր (100), որ էր Թոռն Ջանգզ խանին. և խնդրեմ ի նմանէ ողորմութիւն վասն աշխարհիս այս ։ Եւ յարուցեալ գնաց առ Բաչու նոյինն եւ ցուցեալ նմա զլուսատու գոհարն ասէ. կամ ա՛ռ դու և պարգևեա՛ ինձ զոր խնդրեմ. եւ կամ յուղարկեա՛ զիս առ մեծ ղանն զի տարայց նմա զսա ։ Տեսեալ նորա եւ զարմացեալ ասէ. այդ անգիւտ եւ անգին չափհար է. ես ոչ իշխեմ առնուլ զդա. այլ յուղարկեմ զքեզ առ մեծ և աշխարհակալ ղանն ։ Եւ ապա ածեալ պատրաստութիւն ճանապարհին ըստ պիտոյիցն՝ տայ եւ յիւրոյն օգնական նմա. եւ յուղարկէ զՍմբատ ի Ջին եւ ի Մաչին աշխարհն Նետողաց, որ աւագ տախտն է արքայութեան նոցա, առ Մանկու ղանն՝ որդի Գայուկ ղա-

նին (101), որդւոյ Զանգզ ղանին՝ առաջին թագաւորի նոյա :

Իսկ Սմբատ շրջեալ ի վանորայս մեր, որք կային ի դառն հարկապահանջութեան՝ տայր աղօթս առնել գիշերապաշտամամբ. եւ յանձնէր զինքն սրբոյն. եւ ուխտէր ուխտ զի թէ դարձցի յաջողմամբ՝ զամենայն քահանայս ազատեսցէ ի հարկէ եւ ամենայն եկեղեցեաց ընծայատու լիցի. եւ զամենայն յափշտակեալ հայրենիս դարձուսցէ անդրէն : Եւ այսպէս պաշար առեալ զաղօթս բազմաց՝ գնայր զճանապարհն, և անցեալ ընդ անհուն ասպարէզս երկայն ճանապարհին՝ հասանէր յաշխարհն արեւելեան ի գահն աշխարհակալ ղանութեանն զոր Ղարաղուրում (102) կոչէին. և զի քրիստոնեայ էր օրինաւոր (103) Մանկու ղանն, և ունէր ի դրան մեծի պալատանն եկեղեցի և քահանայս, յորում միշտ պաշտօն և պատարագ անխափան լինէր. եւ ինքն յոյժ սիրէր զքրիստոնեայսն զորս եւ արքայուն (104) կոչէին. և աշխարհն ամենայն կային ի քրիստոնէութեան :

Ապա տեսանէ նախ Սմբատ զամենայն մեծամեծսն եւ զդրան աւագանին. եւ ծանուցանէ նոցա զպատճառ գնալոյն. որք տարեալ յանդիման առնեն մեծի արքային. և ընծայեն զգոհարն պատուական : Ընդ որ յոյժ հաճեալ գովեաց. եւ հարցանէր եթէ զինչ ազգ ես. և ասէ. հաւատով քրիստոնեայ եմ և

ազգաւ՝ հայ ։ Վասն որոյ առաւել սիրեալ զնա․ եւ զպատճառ գալոյն հարցանէր ։ Եւ նա զամենայն բովանդակ ցուցանէր նմա՝ զնեղութիւն եկեղեցեաց եւ զզրկութիւն իւր, եւ զհաւատարմութիւն եղբօրն որ առ Ասլան նոյին, եւ զամենայն որպիսութիւն աշխարհիս ծանուցանէր ։ Որում յոյժ հաւանեալ և մտադիւրութեամբ ընկալեալ զբանսն՝ ապա տայ զՍմբատ մօրն իւրոյ եւ յանձնէ նմա, որում անուն Սուրախթամբէկ (105) կոչիւր․ եւ ասէ․ զայս մի արքայունս մե՛զ պահեսջիք եւ ո՛չ տայցուք այլ ումեք իշխել ի վերայ դորա ։ Եւ անուանեցին զնա Ենչու (106) այսինքն տէրունի․ եւ հրամայեցին կալ ի դրանն աւուրս ինչ․ եւ յանձնեցին գործակալացն տալ օր ըստ օրէ յարքունուստ զռոճիկն․ որ և յամեալ զամս երեք․ և զցայգ և զցերեկ յաղօթելոյ ոչ դադարէր ։

Եւ զի ունէր ընդ ինքեան Սմբատ մասն մի փոքրագոյն յոյժ Նշանագործ, զոր եդեալ առաջի իւր ի գիշերի միում յիւրում խորանին․ և յերեկորեայ մինչև ցառաւօտն կայր բազկատարած առաջի նորա, եւ յորդաբուղխ արտասուօք հառաչէր եւ պաղատէր ։ Ապա նշան ահեղ երեւեալ լինէր յերկնից ի վերայ խորանին, զի կամար լուսեղէն կայր ի վերայ նորա և խաչ ի վերայ կամարին․ յորմէ ցոլմունք եւ նշոյլք բոյեղէնք հատանէին ։ Եւ ի սաստիկ ճառագայթիցն լայնութիւն անհուն, համատարած բանակին լուսա֊

ւորեալ լինէր. եւ ամենեքեան առ հասարակ գլոհ տուեալ ի դուռն արքունի՝ գումարէին զարհուրեալք ի տեսլենէն ։ Եւ ազդ արարեալ արքայի՝ զայ արտաքս և տեսանէ, և ի մեծի զարմացման եղեալ՝ գոհութիւն և փառս տայր Աստուծոյ. և կոչեալ զմի ի խորհրդականացն իւր քրիստոնեայ՝ ասորի ազգաւ և ասէ. ե՛րթ եւ նշանեա՛ զվրանն զայն զի վաղիւն ծանիցուք թէ ո՛ւմ իցէ ։ Եւ ինքն Ամրաստ անգիտանայր այսմ ամենայնի ։

Իսկ ընդ լուսանալն կոչեն զնա առ արքայ. եւ տեսեալ ասէ. ղեռ ա՞ստ է սա. և ասեն. այո. ապա հարցանէ զԱմրաստ. զի՞նչ էր այն զոր տեսաք յայսմ գիշերի ի վերայ վրանին քո. և նա երկուցեալ ասէ. ո՛չ գիտեմ ինչ. արքայից արքայ ասէ. զայն ամենայն ճառագայթն եւ զահեղ երեւումն ո՞չ իմացար յայնքան ժամանակս երկարեալ. ասէ Ամրաստ. գիտէ Աստուածն իմ՝ ոչ եմ հասու. ասէ ղանն. և զի՞նչ ունիս ընդ քեզ ի սրբոց ձեռոց—ասէ Ամրաստ. ոչ ինչ բայց միայն՝ փոքրիկ նշանիկ մի. ասէ. բե՛ր առիս զի տեսից. և եբեր փութանակի ։ Յարուցեալ արքայի էջ ի գահոյիցն. եւ ծունր կրկնեալ բայսաւ գլխով համբուրեաց զնա և ասէ. յայս չափս և յայս ձևս էր խաչն լուսեղէն զոր տեսաք. սա՛ է նա ճշմարտիւ. և յայնմհետէ և յառաջ այնքան սիրեաց և պատուեաց զԱմրաստ. եւ հաւատաց նմա. զի բարձրացաւ քան

զամենայն դրան աւագանին. եւ հրամայեաց տալ
Սմբատայ զոր ինչ և խնդրեսցէ ։

Եւ ետուն նմա փայիզայ (107) ոսկի որ էր տախտակ
ունելով զանուն Աստուծոյ եւ զարքայի գրեալ ի նը-
քեան. եւ այս էր մեծագոյն պատիւ նոցա. եւ գրեն
եառլեխ (108) որ է հրաման. զոր մեք սիգէլ կոչեմք.
եւ տան նմա զամենայն առածն թրով Ասլանին, եւ
զՈրոտն իւր երկրան որ էր առ Բաչուին և իւր մե-
ծամեծայն, եւ զբերդն Բորոտնայ իւր կերոմն, վասն
ապանման հօր նորա անդէն Լիպարտի, որպէս գին
արեան լեալ ։ Եւ եհան զՍմբատ ի դուռս յամենայն
դարբարաց ի Վրաց եւ յայլոց. եւ ահա այս կրկին
հաստատութիւն եղև հայրենեաց նոցա. զի առաջինն
թրով առած էր, որպէս ծառայ, որ ի ձեռն Ասլան
նոյինին. եւ երկրորդս՝ արքայատուր եւ որպէս գնոյ
մեծագունի առեալ ընդ լուսատու գոհարին ։ Եւ
հրաման էառ ազատել զամենայն եկեղեցիս Հայոց
եւ զքահանայս. եւ այնպէս մեծաշուք ճոխութեամբ
դարձաւ այսրէն՝ բերեալ և ընդ ինքեան այր ի դրանէ
արքունի (109) ։ Եւ եկեալ փութանակի հասաւ յաշ-
խարհս յայս ։ Եւ ծագեաց խաղաղութիւն, որպէս
արեգակն ի մէջ գիշերի. եւ նախ յանդիման լինի
Բաչուին եւ այլ գլխաւորացն. եւ ի նոցանէ եւս
առեալ օգնութիւն՝ էառ և թափեաց զերկիրն Որո-
տան բովանդակ մինչ ի սահմանն Բորոտնայ եւ

Բղենայ, յորում եւ կայր ընդաւեր աթոռն Սիւնեաց Տաթեւ ։

Նաւ եւ զՇղեգիս եւ զամենայն գաւառն Վայոց ձորոյ, զՓողահանսն (110), զՈւրծ եւ զՎէդի իւր ձորովն մինչև յԵրերաւնս, և ի Կոտայսն և ի Գեղաքունի բազում չէնս եւ աւանս ։ Եւ ազատեաց զեկեղեցիս եւ զքահանայս զիւրոյ իշխանութեանն եւ ամենայն աշխարհիս Հայոց ։ Շինեաց զվանորայս եւ զամենայն աւերեալ եկեղեցիս. եւ արար բազում խնդութիւն քրիստոնէից ։ Եւ զի աթոռն Սիւնեաց կայր աւեր ի բազում ժամանակաց. եւ ծերացեալ էր եպիսկոպոսն Տէր Յովհաննէս. եւ եղբօրորդի նորա Տէր Հայրապետ հրամանաւ կնոջ Բաչուին սկսեալ էր շինել զվանքն, և կայր ի նմին աղքատութեամբ. զի յայնքան ժառանգութեանցն որ լեալ էր, ոչ տուն մի անգամ կայր եկեղեցւոյն ։ Զոր եւ սեպհականեալ Սմբատայ ինքեան՝ սկսաւ ամենայն ջանիւ հոգ տանել շինութեան և փարթամութեան եկեղեցւոյն, և զյափշտակեալ ժառանգութիւնսն մի մի դարձուցանել անդրէն ։

Իսկ մինչ այս այսպէս լինէր, ապա բարխատեացն սատանայ սկսաւ նախանձ արկանել, եւ գրգռել ըզտունն Աւագին և զմեծամեծսն Վրաց. և զի Աւագն վախճանեալ էր ի 699 թուին. և կին նորա Գոնցայն ունէր դուստր մի Խոշաք անուն. եւ իշխէր ամենայն

իշխանութեան նորա . վասն որոյ ժողովեցան ի Տփղիս առ Արղունն որ էր վազիր և պաաղաց (տեսուչ) (111) կարգեալ ի մեծ ղանէն ի վերայ ամենայն աշխարհիս, այսինքն հրամանատար ամենեցուն եւ իշխեցող արքունի հարկացն եւ մեծ դիւանին, որ արար աշխարհագիր զաշխարհս ամենայն յ703 թուականին : Եւ բազում կաշառօք խնդրէին կորուսանել զՍմբատ եւ ոչ ժառանգեցուցանել զերկիր նորա, զոր և ոչ համարձակէր Արղունն, այլ առին ի Սմբատայ բազում տեղիս. և զմնացեալսն կեղեքէին սաստկապէս. վասն որոյ հարկ եղև նմա վերստին գնալ առ Մանկու ղանն : Եւ առեալ ի տանէն Ասլան նոյինին իւր օգնականս եւ գնաց յաջողմամբն Աստուծոյ : Բայց զի նախ քան զերթալն սորա կոչեալ էին զԱրղունն ի դուռն վասն մատնութեան ինչ . եւ ի հասանել սորա անդ՝ կայր նա ի կապանս. և Սեւինճ բէկ ոմն և Շարափադին՝ (112) դիւան այսր աշխարհի, կամէին սպանանել զԱրղունն եւ ինքեանք գալ ի տեղի նորա . Եւ Սեւինճ բէկն թշնամի էր Սմբատայ. և կամէր սպանմամբ դաւել զնա :

Իսկ այն ինչ ի հասանել նորա ի պալատն՝ յանդիման լինէր Մանկու ղանին : Եւ նորա տեսեալ ծանեաւ զնա. եւ զի յոյժ սիրէր զՍմբատ և հաւատայր նմա. կոչէ առ ինքն և ասէ. Ե՛կ արքայուն՝ եւ ծանո՛

ինձ զամենայն որպիսութիւն այնր աշխարհի եւ զօրաց խնոյ ։ Եւ նա կարգաւ պատմէր նմա. ապա վասն Արղունին հարցանէ եթէ՝ ո՛րպէս աւերեաց զաշխարհն զայն եւ կախէ զքահանայս և զմին սպանեալ է. պատասխանեալ Սմբատայ արդարացուցանէ զԱրղունն. եւ ամենեւիմբ սուտ զմատնողսն ։ Ընդ որ ցասուցեալ արքայի մեծամեծացն իւր եթէ ընդէ՞ր ոչ ուղիղ քննեն ։ Եւ հրամայէ վաղվաղակի ատեան դնել և քննել Սմբատու հանդերձ, զոր եւ ի վաղիւն արարին իսկ ։ Եւ ստեալ Սմբատայ զնոսա՝ առ ժամայն սատակեցին զՍւրինձ բէկն եւ զՇարափադինն. և զԱրղունն հանեալ ի կապանաց ածին առաջի արքային, եւ մեծարեաց արքայ զնա եւ ետ յառաջին գործն. եւ կալեալ զձեռանէ Սմբատայ յանձնեաց նմա. եւ հրամայեաց գրել նորանոր հրամանս եւ առաւել պնդութեամբ հաստատեաց քան զառաջինն զժառանգութիւնն Սմբատայ ։ Եւ այնպէս մեծամեծ յաջողմամբ ելեալ անտի Արղունաւն հանդերձ՝ եկին վաղվաղակի յաշխարհս ։ Եւ վասն մեծի երախտեացն ոչ գիտէր Արղունն եթէ որո՛վ պատուեսցէ զՍմբատ (113) ։

Իսկ ի գալն Սմբատայ յամօթ եղեն ամենայն թշնամիք եւ հակառակորդք նորա ։ Որ և տիրեաց ամենայն գաւառաց եւ գիւղից իւրոց. բայց յետոյ իւր կամաւ վասն սիրոյ եւ միաբանութեան՝ ոմանց

դարձոյց եւ եթող յետս ասա եւ անդ ի գիւղից եւ յագարակաց(119). և զայլն հաստատեաց սեպհական հայրենիք իւրոյ ազգի և զաւակաց ։ Բայց եղև առաջին գնալն Սմբատայ ի Մանկու ղանն յ700 թուականին. և երկրորդն յ705 թուականին ։ Սա մեծափառօք պատուեալ և սիրեցեալ լինէր յաչս Հուլաւու ղանին, եւ կացուցեալ ի վերայ բազում գործոց իւրոց ։ Սա շինեաց զհրաշակերտ ժամատունն ի Նորավանս, ի վերայ գերեզմանաց իւրոց. և արար բազում արդիւնս եւ փարթամացոյց զնա և զարդարեաց ղեկեղեցին և ետ գեղանս և այգեստանս, որպէս վերագոյն ասացաք ։ Սա գնաց ի Բասեն հրամանաւ Հուլաւոյին վասն անօպար (120) մայրափայտից զի շինէին զմեծ արքունիքն որ ի Դառն դաշտի զոր Ալա դաղ(121) կոչեն. և եկեալ յԱշորնիս՝ գնաց ի վանսն Թաթևոյ եւ բազում ծախուք եւ մեծաջանիւ էառ մասն ինչ ի գլխոյ սուրբ Լուսաւորչին Գրիգորի զի կայր անդ մի կողմն գլխոյն. էառ եւ զգագաթ սրբոյն Գրիգորի Սքանչելագործի զոր բերեալ եւ ժողովեալ էր անդ վերջին Գագիկ թագաւորն Բագրատունի. եւ եդեալ ի պահեստի ի կործանման ժամանակին ։ Եւ բերեալ զանպատմելի զանձն աստուածային՝ զարդարեաց ոսկւով եւ արծաթով եդեալ յաղխսաձեւ պահարանի եւ բնակեցոյց ի գերահռչակ ուխտին Նորավանից. ետ և կազ-

մել պահարան Աւագ Սուրբ Նշանին յոսկւոյ, ի կերպ աղխւսակի ունելով դրունս երկբացիկս եւ գրեաց ի Թիկանց կուսէ յիշատակ ինքեան ։

Ընդ աւուրսն ընդ այնոսիկ վախճանի եղբայր սորա գեղեցկածաղիկն Իվանէ, եւ դնի ընդ Ենիկումին. Թողու զաւակ մի բարեբոյս Լիպարիտ անուն. եւ յետ սակաւուց մեռանի եւ միւս եղբայրն, քաջ սպառազէնն Փախրադուլայն. եւ դնի ընդ նոսա ։ Իսկ եղբօրորդին սոցա Բուրթէլն գնաց ընդ զօրս Հուլաւույին ի պատերազմ ընդ Բերքայ ղանին (122) ի դաշտն Խազրաց որ այժմ Խփչախք կոչին. եւ առ մեծ գետովն զոր Թերգ (Տերեկ) կոչեն, սպանանի ի պատերազմին յ710 թուին ։ Եւ յետ այսր փոխի ամենօրհնեալ մայր սոցին Ասփայն յ712 թուին, և դնի ընդ որդւոց իւր ։ Եւ մնայր Սըմբատայ օգնական միայն կրսեր եղբայրն իւր Տարսայիճն, որ էր այր զօրեղ եւ պատերազմող և յաջողակ յամենայն գործս, նաև բարեպաշտ և աստուածասէր յոյժ. որ առեալ իւր կին յԻսմայէլացւոցն՝ զդուստր տեառն Սինեայ՝ զԱրուզ խաթունն, որ եղև քրիստոնեայ եւ երևելի հաւատով եւ երկիւղած յԱստուծոյ. յորմէ ծնան որդիք երեք՝ Ելիկումն, Ստեփաննոս, որ կոչեցաւ յեպիսկոպոսութիւն, եւ Փախրադուլայն ։ Եւ տիրէր Տարսայիճն կողմանն Որոտան ։

Սա զարդարեաց զմեծ եկեղեցին Տաթեւոյ ի սպասըս եւ ի զգեստս գեղեցիկս, եւ ետ ի սուրբ եկեղեցին զվաղնջուց յափշտակեալ ժառանգութիւնսն՝ զՀարժիս իւր սահմանովն, զՑուր իւր սահմանովն, եւ զիւր ձեռատունկ այգին ի Խոտագետ, եւ զՔէթիվանս իւր սահմանովն. եւ գրէ ինքեան արձան յիշատակի ի վերայ սեան հարաւային որ ունէր օրինակ զայս «Այս գիր յիշատակի եւ արձան անջնջելի է իմ Տարսայիճիս՝ իշխանաց իշխանի, որդւոյ մեծին Լիպարտի՝ եղբօր Սմբատայ՝ մեծ իշխանի, կողմնակալի յայսմ Նահանգի, որ իշխեցող էի (123) այսմ գաւառաց ի դրանէն Բարկուշատայ մինչեւ ցսահմանն Բջնւոյ, միաբանեցայ Տաթեւոյ սուրբ առաքելոյս, եւ տվի զիմ հոգւոյ մասն ի յիմ սեփական ուխտս ի սուրբ եկեղեցիս գիւղս 6 (124), զոր լուեալ էաք ի հին ժամանակաց ժառանգութիւն լեալ սմին՝ զՇնհէր, ըղ Խոտն աւան սահմանօք իւրովք, լերամբ եւ դաշտիւ, եւ ի Խոտագետ եւ ի Խոտ զմեր ձեռատունկ այգին, եւ զՑուր եւ զՀարժիս իւր սահմանովն, զորոյ զկէսն դանձագին էի արարեալ. եւ զԲորտի, զՔեթիվանս իւր սահմանովն. եւ եպիսկոպոսք տեղւոյս Տէր Սողոմոն հաստատեցին մեզ յիշատակ, եւ կարգեցին սպասարաւգ յամենայն ամի մին քառասունք՝ զ10՝ Ցայտնութեանն, զ10՝ Զատկին, զ10՝ Աստուածածնին, զ10՝ Աւագ տօներին,

զ20 օրն ինձ Տարսայիճիս եւ զ20 օրն իմ եղբօրն Սմբատայ ։

Արդ՝ որ յետ մեր ի մերոց կամ յօտարաց կամ յիշխանաց կամ ի ձեռնաւորաց այս հաստատ պայմանս եւ անքակ վճիռս խափանել ջանայ, կամ զայն գիւղօրէքն կամ զայդին յայս եկեղեցւոյս հանել խորհի՝ բաժին ընդ Յուդայի եւ ընդ այլ խաչահանուացն եղիցի, և զԿայենին և զամենայն չարագործացն առցէ՛ պատիժս, և յերից սուրբ ժողովոցն նզովեա՛լ լիցի. եւ թէ տաճիկ աւագ փոխի եւ յափշտակել ջանայ՝ յԱստուծոյ եւ յիւր փեղամբարէն ապիզա՛ր (125) եղիցի, և ընդ սատանայի ի գժոխս իջցէ՛. և տամբք և զաւակօք ջնջեա՛լ և բարձեա՛լ եղիցի. իւր հալալն լինի հարամ և հազար, հազար, հազար նալա՛թ (նահլաթ) լիցի. ի թուիս 723 յամսեանըս Նոյեմբերի 13 ։

Եւ է վկայ այսմ վճռիս Տէր Սարգիս՝ Նորավանից եպիսկոպոս. և Սարգիս՝ փականակալ սուրբ եկեղեցւոյս. և յիմ ազատաց Հասան Կարապետի որդի, Որոտշահ՝ Լորայ թոռն, Միրան՝ Նուերայ որդի. հաստատ է կամաւն Աստուծոյ. Աստուած շնորհաւո՛ր արասցէ սուրբ ուխտիս ։ Յուսովն Աստուծոյ ես Տարսայիճս իմ ձեռագրովս հաստատեցի զընծայքս. արդ՝ որ յետ իմ յիմ զաւակացս և թոռանց կամ յայլ իշխեցողաց զմեր հոգիս զրկել խորհի եւ զմեր

յոյսն խափանել եւ զմեր սահմանեալս քակել Ջա-
նայ՝ յ318 հայրապետացն նզովեալ եղիցի ի մահ եւ
ի կեանս, կտրեալ եւ ջնջեալ լիցի յայս կենացս եւ
ի հանդերձելոյն. ամէն ։

Իսկ Սմբատայ հայրագիր լեալ տանն Աւագին՝
խորհի ընդ այլ իշխանացն. եւ տան սպանանել ի
ծովամիջի զԳոնցայն, հրամանաւ Հուլաւու ղանին.
եւ ինքն իշխէր ամենայն իշխանութեանց Աւագին ։
Եւ ապա զզուսար նորա զԽոշաքն ի կնութիւն մեծ
Խօջայխն սահիպ դիւանին որ ունէր ի բուռն զամենայն
աշխարհս տէրութեան Ապաղայ ղանին (126), որ
ասի լինել ըստ մեծի դաւթարի դիւանին համարս 150
դուման, և մի դումանն մի բիւր է. և նա էր դիւանի
գլուխ և վերակացու ամենայնին. և էր այս յ718
Թուին ։ Բայց մեծ եւ բարեպաշտ արքայն աշխար-
հակալ, յոյսն եւ ականկալութիւնն քրիստոնէից՝ Հու-
լաւու ղանն մեռանի ի յ713 Թուին. ընդ նմին եւ
ամենօրհնեալն Տօնղուզ խաթունն՝ կին նորա, որք
դեղակուր եղեն ի բազմահնար Խոջայէն սահիպէն.
որ եւ գիտէ Տէր (Թէ) ոչ ինչ էին ընդհատ բարե-
պաշտութեամբ քան զԿոստանդիանոս և զմայր իւր
Հեղինէ, որք Թագաւորեցին ամս 8 ։

Եւ ապա նստաւ ի տեղի նորա որդի նորին Աբա-
ղայն, այր հեզ և բարի և խաղաղարար. և սա սիրող
քրիստոնէից. վարեալ զղանութիւնն բարեյաղթ յա-

Ջողմամբ ամս 18. և մեռանի ի դաւելոյ ոմանց ի Համիան, յ731 Թուականին ։ Բայց Սմբատ անդատակ գոլով՝ առեալ զմի յորդւոց եղբօրն Տարսայիճին և որդիացուցեալ ինքեան՝ տայ յուսումն գրոց եւ ի հրահանգս քահանայութեան ։ Եւ ինքն յետ բազում շինութեանց աշխարհաց եւ վանորէից և եկեղեցեաց և մեծամեծ և երևելի գործոց, որ անց ընդ ամենայն նախնիս իւր, գնաց ի մեծ դիւանն արքունի առ Արղունն և Սահիպն ի Դավրէժ շահաստան ։ Եւ անդ հիւանդացաւ հիւանդութիւն մեծ, որ եւ մեռաւ իսկ ։ Եւ տուեալ զամենայն իշխանութիւն իւր յեղբայր իւր Տարսայիճն՝ յանձնէ (127) զնա Արղունին եւ Սահիպին. և ինքն փոխի ի կարգս հրեշտակաց, մերձ գոլով նմին երանելին եւ սուրբ րաբունին Ծալուէ, վարեալ զիշխանութիւնն մեծաշուք պատուով եւ երևելի փառօք ամս 20 ։

Եւ եկեալ ամենայն մեծամեծացն լացին զնա, և մեծապէս պատուով զարդարեցին զդագաղս նորա արքայակերպ ճոխութեամբ, և այնպէս բարձրացուցեալ (128) բազմականօք, խաչիւք վառելովք, ջահիւք և մոմեղինօք, պաշտամամբք մեծաձայն, բազմութեամբ քահանայից զարմացուցանելով զաշխարհագումար մայրաքաղաքն՝ հանին հանդիսիւ ընդ դուռըն նորա. և բերեալ ի հայրենի դամբարանն սուրբ ուխտին Նորավանից. եւ աշխարհախումբ հանդիսիւ

եդին ի տապանի ընդ հարս իւր ի Թուականին 722 ։ Վասն որոյ և չինէ եղբայր իւր Տարսայիճն նմա տուն տապանի, եւ եկեղեցի յանուն սրբոյն Գրիգորի, եւ անդ փոխէ ի հանգիստ զեղբայր իւր Սմբատ ։ Որոյ Քրիստոս Աստուած՝ յոյսն հասարակաց, շնորհեսցէ հանգիստ և ողորմութիւն. եւ մաքրեսցէ զամենայն աղտեղութիւն հոգւոյ նորա, եւ կարգեսցէ ընդ սուրբ եւ փառաւորեալ իշխանսն Հայոց. եւ յիշատակ նորա օրհնութեամբ եղիցի ։ Բայց լո՛ւր թէ զորպիսի երախտիս գործեաց սա առ ազգս իւր ։

Էր թագաւորութիւնն Վրաց առ կնոջ մի Ռուսուդան անուն, եւ էր որդի մի Լաշային Դաւիթ անուն զոր բազում հնարիւք ջանայր Ռուսուդանն այն կորուսանել (129) զնա. երբեմն դնէր ի բանտ և ծովասոյզ առնէր. երբեմն տայր յիշխանսն սպանանել, և նոքա ի գետնափոր յարկի պահէին. երբեմն վարէր ի հեռաւոր աշխարհ զի անդ կորուսցեն, և յամենայնէ զերծեալ լինէր խնամօքն Աստուծոյ ։ Եւ երթեալ փախստեայ առ մեծ արքայն Մանգու ղանն՝ ղառնայր ի նմանէ. և եկեալ թագաւորէր յիւրում աշխարհին, և գտանէր սատակեալ զՌուսուդանն ։ Նա առնոյր իւր կին զԽասանգն (130) Նախչաւանու զԵսուգանն. առեալ էր և միւս կին զԳոնցայն և ունէր ի նմանէ զաւակ մի Դեմետրէ անուն ։ Եւ Սմբատ ամենայն հաւատար-

մուԹեամբ հպատակէր նմա. եւ թագում եւ մեծ երախտիս ցուցանէր նմա առաջի Հուլաւու ղանին և առաջի մեծամեծացն, ևս առաւել ի մեծ դրանն ։ Եւ այնքան սիրեաց զնա Դաւիթ Թագաւոր, զի հաւասար գլխոյ իւրոյ տեսանէր. և զփոքրիկ տղայն Դեմետրէ դնէր ի ձեռս նորա և տայր նմա որդի ։ Եւ Սմբատ զթագում Թշնամիս Թագաւորութեան նորա ի մեծամեծ գոռոզանւոյն տայր սպանանել ի դրան արքունի. զի այնքան լոող էր Հուլաւուն նմա. զի ում կամէր՝ մահ տայր ածել, և ում կամէր՝ կեանս շնորհէր, վասն որոյ ամենայն ոք դողայր ի նմանէ և ամենեցուն աչք ի նա հայէին ։

Ապա կոչէ Թագաւորն զՍմբատ ի Տփղիս, և կամէր մեծամեծ պարգեւօք երախտահատոյց լինել նմա. հարց ցնա եւ ասէ. ո՞րպիսի կամք են քո զի պարգեւեցից քեզ պարգեւս մեծամեծս, զի զոր կամիս եւ հաճոյ Թուի քեզ յիմ Թագաւորութենէս՝ անխնայ է քեզ. յոտն կացեալ Սմբատայ եւ երկիր պագեալ նմա ասէ. ո՞վ Թագաւոր՝ զոր ունիմք՝ ամենայնն քո՛ է եւ նախնեացն քոց. եւ այս մեզ բաւական է, այլ խնդիր է իմ ի քէն բան մի Թէ կամիս. եւ ասէ Թագաւորն. երդուեալ եմ զի զոր ինչ խնդրես՝ տաց քեզ ։ Ասէ Սմբատ. բա՛րձ զչար յիշատակն մեր զոր զրպարտեաց նախնին քո Գէորգի զնախնիսն իմ. եւ ետ գրել եւ նզովք կարգել զի մի՛ Թող-

ցեն զմեզ ի հայրենիս մեր. եւ պահեաց ի տան գանձու իւրում. տո՛ւր զայն ի ձեռս իմ ։ Եւ զարմացեալ Թագաւորն՝ նախատէր զհամն իւր թէ ընդէ՞ր զայսպիսի արս զօրեղս եւ յաջողակս եհան ի տանէս մերմէ ։ Եւ հրամայեաց սպասաւորացն յոյզ առնել և գտանել զգիրքն. որք երթեալ գտին եւ վաղվաղակի բերին ։ Առեալ Թագաւորն ի ձեռն՝ յոտն եկաց եւ ասէ. ահա Սմբատ՝ ա՛ռ զգիրքս զոր խնդրէիր ։ Յարուցեալ Սմբատայ երկիր պագանէր եւ ասէր. ո՞վ արքայ՝ մինչ այդչափ ողորմեցար, զկատարեա՛լն ցոյց առ իս բարիս. այդ գիրք գրեալ է ձեռամբ Թագաւորի, պա՛րտ է եւ ջնջիլ ձեռամբ Թագաւորի. հրամայեա՛ լուցանել առաջի քո կրակ, և քո ձեռամբ ընկեա՛ ի նա զգիրքդ ։

Եւ առ ժամայն հրամայեաց Թագաւորն և լուցին կրակ. և հանեալ զսուրն կոտորեաց զթուղթսն եւ ընկեաց ի կրակն և այրեաց. ընդ որ յոյժ խնդացեալ Սմբատ՝ մեծապէս շնորհակալէր նմա ։ Յետ որոյ եւ այլ բազում եւ մեծամեծ պարգեւօք և Թագաւորական զգեստուք պատուէր եւ խիլայէր զնա Թագաւորն, եւ այնպէս դարձուցանէր ի տուն իւր ։ Ահա այսու օրինակաւ երարձ Սմբատ զնախատինս նախնեաց իւրոց. և արար զկնի եկելոցն յիշատակ բարի ։ Իսկ զկնի սորա տիրեաց ամենայն իշխանութեանց նորա եղբայրն իւր Տարայիձն. որ պատուեալ եւ

սիրեցեալ յաչս աշխարհակալացն եւ ամենայն մեծամեծաց՝ վարէր զիշխանութիւնն իւր բարձր եւ չքեղ փառօք, ահարկու ի վերայ ամենայն թշնամեաց. և այնքան յարգեալ լինէր առաջի Ապաղայ ղանին որ բազում անգամ զարքայական հանդերձն իւր մերկացեալ յանձնէ՝ հագուցանէր Տարսայիճին յոտից մինչև ցգլուխն, եւ զկամարն ի համակ ոսկւոյ բազմագին ականբք և մարգարտօք լցեալ՝ (131) տայր ածել ընդ մէջ նորա ։ Եւ զի այր ուժեղ եւ սրտեայ եւ պատերազմող էր, և հասակաւ ահարկու, յամենայն պատերազմունս, յոր եւ երթայր, մեծամեծ քաջութիւնս (132) եւ անպարտելի զօրութիւնս ցուցանէր, ի Խորասան, ի Շամ, ի Հոռոմս, ի Համս եւ ի Համայ ընդ Մորացւոյն, և ի Դարբանդ՝ ինն անգամ վանեալ անձամբ զպատերազմ և մղեալ մարտս. վասն որոյ մեծամեծ պարգեւօք պատուեալ լինէր յարքայից արքայէ. եւ առեալ զոսկի բաղիշն որ էր տափարակաձև ի չափ թզոյ մի եւ կշիռ լտեր միոյ. զի այն իսկ էր յաղթութեան պատիւն ։

Սա առեալ զթագաւորն Վրաց Դաւիթ՝ գնայր ի տունն Խաչենոյ, առ որդի մեծ իշխանին Ջալալին Աթաբէկն. և առնոյր զքոյր նորա ի կնութիւն զՄինա խաթունն առ կենօք առաջին ամուսնոյն ։ Ընդ որ ոչ հաճեցան օրէնք եւ վարդապետք եկեղեցւոյ ։ Եւ բերեալ ի տուն իւր ստացաւ ի Նմանէ որդի մի

գեղեցկուղէշ. և անուանեաց զնա Ջալալ. եւ դըստերս երկու, յորոց զաւագն եա ի կնութիւն մեծի և փառաւորեալ իշխանին Խաչենոյ Գրիգորոյ՝ որդւոյ Հասանայ, որդւոյ մեծի Գրիգորին, որ էր քեռորդի Աթաբէկ Իվանէի. եւ զմիւսն յետ հօրն ետուն եղբարքն հարսն ի տուն Վրաց թագաւորին՝ կին եղբօրն Դաւթի թագաւորի, Մանուէլին՝ որդւոյ Դեմետրէ թագաւորին, որ էր որդի Դաւթի թագաւորին. որ պակասեաց (133) ի719 թուականին :

Սա շինեաց եկեղեցիս. և արար բազում արդիւնս ի վանորայս. եա եւ ի վանսն Ցաղացքարոյ գիւղ, ի Գեղաքունի զԳառնակերն. եւ այգի մի ի Մաճռակայ ձորի. և գրէ ինքեան արձան ի վերայ սրբոյ Կարապետին . և կարգէ պատարագս երիս ամ յամէ. և փակէ ահագին նզովիւք զի մի խափանեսցեն զհոգեցատուրն զայն : Նորոգէ և բազում եկեղեցիս խախտեալս եւ հնացեալս : Վախճանի եւ յաւուրսն յայնոսիկ բարեպաշտուհի կին նորա Արուզ խաթունն. եւ դնի ի տապանի, ի դրան սուրբ առաքելոցն ի Տաթեւ : Բայց յետ թագաւորութեան Դաւթի զորդի նորա Դեմետրէ բերեալ Տարսայինձի ի տուն իւր սնուցանէր, ըստ պատուիրելոյ հօրն : Եւ ապա բազում ջանիւ եւ օժանդակութեամբ նստուցանէ յաթոռ հօր իւրոյ թագաւոր Վրաց ի721 թուականին : Իսկ յետ Ապաղային որ մեռաւ ի 731 թուին նստի

Թագուտարն՝ (134) եղբօրորդի նորին, ղան, ամենայն աշխարհի. որ եւ Ահմադ անուանեաց զինքն. եւ խորհեցաւ քակել զօրէնս քրիստոնէից եւ առնել մըսլման զամենայն ազգ : Եւ յերրորդում ամի տէրութեան իւրոյ եսպան ի Մուղան զմիւս եղբայրն զՂանդրաթայն եւ զսուլտանն Հոռոմոց զԽիաթադինն (135) եւ զերկուս որդիսն Ցագանին : Եւ ի գարնանային ժամանակին գնաց անհուն զօրօք ի Խորասան ի վերայ Արղունին՝ որդւոյ Ապաղայ ղանին, զի սպանցէ զժառանգ թագաւորութեանն. եւ կալեալ զնա դարձաւ այսրէն :

Իսկ Աստուածն քրիստոնէից յայնմ գիշերի դարձոյց զսիրտ մեծամեծացն առ Արղունն, զոր հանեալ ի բանտէ կապանացն՝ թագաւորեցուցին (136). և սուր ի վերայ եդեալ կոտորեցին զամենայն թշնամիս նորա : Հասեալ զկնի սատակեցին զԱհմադն եւ զհամախոհս իւր՝ զՀասան Մանկի չերին (137), զՍահիպ դիւանն, զԱլինախն եւ զայլս բազումս : Եւ էր ընդ նոսա թագաւորն Դեմետրէ, զոր սիրեաց Արղունն, եւ ետ նմա զամենայն աշխարհս Հայոց՝ ըզտունն Աւագեան և զտունն Շահանշահեան եւ ըզԳագեցին եւ զորդիսն Սադուն աթաբէկին : Եւ ինքն էր յոյժ սիրող քրիստոնէից եւ եկեղեցեաց : Էր ընդ նոսա եւ Տարսայիճն, զոր յոյժ մեծարեաց և սիրեաց Արղունն : Ապա դարձաւ Դեմետրէ մեծաւ

խնդութեամբ եւ ամենայն ազատօք, եւ մեծամեծք Վրաց եւ Հայոց ընդ նմա ։ Եւ եկեալ ի Շարուր՝ գնաց նմա ընդ առաջ Տարսայիճն մեծամեծ պատուով, եւ արքունական ընծայիւք մեծարեաց զԹագաւորն ։ Եւ նա առեալ տարաւ ընդ իւր զնա յերկիրն Աւագեան՝ յԱյրարատ. եւ բազում թախանձանօք բռնազբօսեաց զնա, եւ ետ Աթաբէկ իվերայ ամենայն տէրութեան իւրոյ մինչեւ ի Տփղիս եւ յԱնի եւ ի Կարս ։ Եւ եդ ի ձեռս նորա զտղայսն իւր զԴաւիթ եւ զՄանուէլն սնուցանել զնոսա եւ պահել ։

Եւ յայնմհետէ ունէր Տարսայիճն զաթաբէկութիւն աշխարհիս Հայոց, և բազում դիւրութիւն եւ ողորմութիւն առնէր նեղեալ ազգիս Հայոց ։ Եւ գնացեալ ի Տփղիս՝ ետ բերել զդիւանն արքունի եւ ընթերցաւ զամենայն դաւթարսն, եւ զի էին գրեալ ի դաւթարն անուանք վանորէից Հայոց զի ի ներքոյ հարկի եւ դիւանի կային. ապա ետ բերել զճիկնաւոր աւագ դիւանադպրութեանն. և փոխեաց ըզ դաւթարն. և եհան զանուանս վանորէիցն աւելի քան զ150. եւ զհինն այրեաց հրով. և այնպէս ազատեաց զամենայն եկեղեցիս ։ Նաև այնքան ողորմած եւ գթած եղև առ ամենեսեան զի ի Նետիս գիւղ, որ է ի վերայ Հուրազդան գետոյ, խաչ կանգնէին եւ անուամբ նորա կոչէին զնա ։

Սա արար ժողով բազում եպիսկոպոսաց և վարդապետաց եւ վանականաց աշխարհախումբ հանդիսիւ ի գերահռչակ ուխտին Նորավանից, եւ ետ ձեռնադրել զորդի իւր Ստեփաննոս ի քահանայութիւն ի 729 թուականին. և յետ հինգ ամի յուղարկեաց ի թագաւորութիւնն Հայոց ի Կիլիկիա, առ մեծ կաթողիկոսն Տէր Յակոբ ի ձեռնադրութիւն եպիսկոպոսութեան. Որ եւ ի հասանելն անդ, վախճանեալ էր կաթողիկոսն, եւ բազում պատիւ եւ մեծամեծ փառս ընդունէր ի թագաւորէն Հայոց Լեւոնէ որ և յոլով թախանձանօք առնէր նմա մնալ անդէն և նըստել յաթոռ կաթողիկոսութեան Հայոց (138)։ Եւ մինչ ոչ առնոյր յանձն՝ ապա արարեալ մեծ աշխարհաժողով և բազում ընտրութեամբ կացուցանեն կաթողիկոս Հայոց զՏէր Կոստանդին յաւուր ճրագալուցի Զատկին։ Եւ ի մեծի աւուր Զատկին ձեռնադրեն զՍտեփաննոս մետրապոլիտ մեծ աթոռոյն Սիւնեաց ի վերայ այլոց եպիսկոպոսացն որ կային աստ և անդ, ոմանք ի Վայոց ձոր եւ ոմանք ի Տաթեւ. որք և միաբան թղթովք և ընծայիւք յուղարկեալ էին զնա առ կաթողիկոսն վասն նորոգման սուրբ աթոռոյն հին պատուոյ եւ աստիճանին որ բարձեալ էր ի վաղնջուց վասն աւերման և կործանման աշխարհիս։

Եւ այսպէս պսակեալ զՍտեփաննոս ընդ (139)

սուրբ և առաքելական եկեղեցւոյն Տաթեւոյ փեսայացուցանեն այսմ աթոռոյ. եւ գրեն շրջաբերական նամակ ոսկեգիր մագաղաթաւ, մեծարգի բանիւք և հաստատուն պայմանաւ. նորոգելով զպատիւ աթոռոյն զմետրապօլտութեանն. և չքեղացուցեալ անհամեմատ փառօք զգեցուցանեն նմա զհայրապետական զգեստն ոսկեթել հիւսուածով. եւ դնեն թագ պատուական ի գլուխ նորա. զայս կաթողիկոսն (140). Իսկ թագաւորն նմանապէս զգեցուցանէ ի թագաւորական զգեստուց ըստ հայրապետական ձեւոյն, եւ դնէ կրկին անգամ թագ պատուական ի համակ ոսկւոյ ի գլուխն, որ եւ զանուն թագին ինքեանք միթր կոչէին. տային և զեմիփորոնն մեծախորհուրդ զերեք կրկինն, որ մետրապօլտայն է, և խոյր ոսկեթել մարգարտայեաւ յօրինուածով. նաեւ այլ բազում պարգեւս մեծամեծս. և այնպէս բարձրագոյն փառօք դարձուցանեն այսրէն ի թուականին 736 ։

Իսկ ի գալ (141) նորա խնդայ հայրն իւր Տարսայիճն եւ եղբարքն եւ ամենայն աշխարհն ։ Բայց յետ սակաւուց խանդացեալ եպիսկոպոսացն որ ի Տաթեւ՝ գնային առ այլազգիսն և բազում ոճիրս սերմանեցին եւ յոլով վիշտս հասուցին եկեղեցւոյ. եւ մինչ ի վախճան ինքեանց երկոցունցն Տէր Հայրապետին եւ Տէր Յովհաննիսին ոչ դադարեաց խազմն եւ խռովութիւնն ։ Իսկ Տեառն Ստեփաննոսի գնա-

չեալ առ մեծ աշխարհական Արղուն. եւ ցուցեալ նմա զնամակ կաթողիկոսին եւ ծանոյց զամենայն որպիսութիւնն ։ Եւ նորա մեծապէս պատուով ընկալեալ զնա՝ յոյժ հաճեցաւ, եւ հրամայեաց գրել նմա ըստ իւրեանց օրինին եառլեխ. եւ հաստատեաց զամենայն եկեղեցիս եւ զաշխարհն եւ զեպիսկոպոսունսն ի Տէր Ստեփաննոս. եւ ետ նմա այր ի դրանէն և փայիզայ. և այնպէս յուղարկեաց յաթոռ իւր ։ Որ եւ եկեալ տիրէր ամենայնին ի փառս Աստուծոյ ։ Եւ կային հնազանդութեամբ ի ներքոյ նորա Տէր Գրիգորն, որ էր ազգական Տեառն Յովհաննիսի, և Տէր Սարգիս որ ի Նորավանս ։ Այս Տէր Սարգիս, որպէս յառաջն ասացաք, բազում արդիւնս ցուցեալ ի Նորավանս, եւս առաւել արար գործ մի երևելի, զի ի գիւղն Արփայ ի վերայ գետոյն կանգնեաց կամուրջ զարմանալի տաշածոյ վիմօք՝ յոյժ բարձր և ընդարձակ և լայն, հիացուցիչ տեսողաց, բազում ծախիւք եւ անչափ աշխատութեամբ՝ հրամանաւ բարեպաշտին եւ մեծափառ իշխանին Տարսայիճին, որոյ վարձատրեսցէ Քրիստոս հազարապատիկ ։

Յայսմ ժամանակի երկպառակեցան զօրքն զան Արղունին. եւ անկաւ շփոթումն մեծ ի մէջ մեծամեծացն զլխաւորաց, և հանին բազում արեան ճապաղիս. զի կալաւ Արղունն զմեծ զօրապետն ըղ

Բուղայ չինքսանն, որ կոչի աւագայ աւագ կամ տէրանց տէր, եւ եսպան զնա զի խորհուրդ նենգութեան էին խորհեալ նմա. ընդ նմա եւ զամենայն համախոհս նորին զՂազանն եւ զԹուխղուխ հազարապետն, զԱրուխն, զԱւճանն և այլ բազումս. տակս որոյ եւ զրպարտեալ զԹագաւորն Վրաց Դեմետրէ բաղբաղելով եդին ի վերայ բարուրս մահու և տարեալ սպանին տարապարտ ի մեծ դաշտին Մովկանայ (142) յեզր գետոյն Կուրայ ի թուին 738 ։ Իսկ քրիստոսասէր եւ ամենօրհնեալ իշխանաց իշխանն Տարսայիճ, յետ բազում բարեպաշտութեանց եւ երևելի գործոց, լցեալ զկէտ կենաց իւրոց՝ վախճանի յիւրում դարապասին յԱրփայ. եւ տարեալ ի Նորավանս մեծ աշխարհաժողով հանդիսիւ դնի ընդ եղբօր իւրում Սմբատայ՝ յիւրում (143) ձեռակերտ դամբարանին, ի թուականին 739 ։ Եւ ապա որդիք նորա վիճէին ի վերայ տէրութեան եւ իշխանութեան հօրն. որք գնացեալ ի դուռն արքունի՝ յանդիման եղեն աշխարհակալ ղան Արղունին եւ ծանուցին զբանս իւրեանց ։ Իսկ նորա յառաջ կոչեալ զաւագագոյն զՋլիկումն. և կարգեալ զնա ի տեղի հօրն՝ կացուցանէ իշխան ի վերայ ամենայնին ։

Բայց թէպէտ տիրեաց բոլոր հայրենեաց եւ իշխանութեանց հօրն. սակայն ոչ կամեցաւ զրկու֊

թիւն առնել եղբարցն. այլ եպիսկոպոսօք եւ վարդապետօք և ազատօք բարձանեալ զամենայն ժառանգութիւնսն եւ ետ ըստ պատշաճին զբաժին եղբօրն Ջալալին՝ ի նա, եւ զբաժին հօրեղբօրորդւոյն Լիպարտին՝ ի նա ։ Եւ այնպէս կային միաբանութեամբ և վարէին զտէրութիւն յայսմ նահանգի մեծարգոյ եւ չքեղաշուք իշխանութեամբ պատուեալ և փառաւորեալ յաչս աշխարհակալացն եւ մեծամեծացն, պահելով զաշխարհս զայս ի խաղաղութեան, եւ զվանորայս ի շինութեան ։ Եւ զի յայսմ ժամանակի ամենայն աշխարհ աւերեալ եւ ապականեալ էր, և վանորայք խափանեալ ի պաշտամանէ, եւ ամենեքեան առ հասարակ դիմեալ ի տէրութիւն սորա, աստ զհանգիստ առեալ զետեղէին, որպէս եւ եկն կաթողիկոսն Աղվանից Տէր Ստեփաննոս, և բնակէր առ Տեառն Ստեփաննոսի՝ եղբօր սորա, և այլ բազում եպիսկոպոսք եւ վարդապետք և յազատ արանց. և էր տեսանել շնորհօքն Աստուծոյ զտունս զայս իբր զտապանն Նոյեան ի մէջ աշխարհակործան ալեացն, զոր և Տէր Աստուած անսասանելի պահեսցէ բարեխօսութեամբ սուրբ Աստուածածնին և ամենայն սրբոց մինչեւ ի կատարած աշխարհի ։

Բայց այսու յոյժ գեղեցկացան. զի ինքեանք մարմնական իշխանութեամբն պայծառանային եւ եղ-

թայր իւրեանց Տէր Ստեփաննոս՝ հոգևոր շնորհօք և բարձր դիտապետութեամբ շքեղանայր. և յեռեալք սիրով ընդ միմեանս կային հանդարտութեամբ, ըստ այնմ եթէ զի՞ բարի կամ զի՞ վայելուչ՝ զի բնակին եղբարք ի միասին ։ Եւ ունէին սոքա բողբոջս բարեբոյս զաւակաց. Եղիկումին որդիք երկու՝ Բուրթէլ եւ Բուղտայ անուն. եւ դուստր մի զոր ետ ի կնութիւն գեղեցկածաղիկ իշխանին և մեծ կողմնակալին Խաչոյ՝ որդւոյ Հասանայ, որդւոյն Պռոշայ՝ մեծ իշխանին, որ էր որդի Վասակայ քաջի, զոր վերագոյն յիշեցաք ։

Իսկ Լիպարտի՝ որդիք հինգ, որոց երիցագոյնն Սմբատ որ փեսայացեալ էր տանն Աթաբէկի Սագունեանց, և միւսն Յովհաննէս զոր առեալ Տեառն Ստեփաննոսի սնոյց և վարժեաց ուսմամբ. եւ ած ի քահանայութիւն (144)։ Եւ արդ ո՞վ ընթերցողք՝ մի՛ լիցի ինձ ոք պարսաւաղէտ որպէս թէ զիւր ազգ յարգէ և պատուէ. և կամ կարծիք ինչ տարցի, եթէ աւելի ինչ բանս յօղեալ պատուաստեցաք. վկայ է ինձ Տէր, որ յիսկզբանէ ճառիս մինչ ի կատարածս բազում ճշդիւ քննեալ գտաք զստոյգն. և զոր մեր ականատես էր եղեալ՝ ի բազմաց զսակաւն եւ զճշգրիտն եղեալ կարգեցաք աստ ։ Եւ թէ զօտարաց ազգաբանութեանց և յիշատակաց, որք վաղ ժամանակօք անցին, փոյթ եղև մեզ, ապա ո՞րքան

եւ առաւել զիմն (145) եւ զխմոյն ։ Եւ զի յայս մատեան զՍիսական աշխարհի գրոյս կարգեցաք․ եւ ի վերջոյ որդիքն Օրբէլեան կային տէր եւ իշխեցող սմա. վասն այսորիկ հա՛րկ եղև մեզ եւ զսոցայս ճառել. և դու ընկա՛լ անախտ մտօք եւ զմեզ թո՛ղ առանց մեղադրութեան. փառք յաւիտեանս. Ամէն ։



ԿԻ. — Վասն յիշատակի եւ միաբանութեան աստուածապաշտ թագաւորին Հայոց Լևոնի ի սուրբ, երկնահանգէտ աթոռն Սիւնեաց ի Տաթև որ ի ձեռն Տեառն Հայրապետին՝ Սիւնեաց եպիսկոպոսի ։

Պատուեալ եւ պատուական ծերունին Տէր Հայրապետ՝ եպիսկոպոս Սիւնեաց, յետ շինութեան սրբոյ ուխտին Տաթևոյ նորոգէ զխախտեալ և զծակոտեալ գլուխ սրբոյ եկեղեցւոյն, որ իշարժմանէ և իվաղ ժամանակաց հնութենէ ապականեալ էր ։ Եւ ի ձեռն մեծահնար ճարտարաց քերածոյ քարամբք եւ կրաշաղախ ձուլմամբ յօրինէ զսալայարկս ծածկութի գմբէթին եւ ստորակայ սագիցն և գաւթին որ ի դրանն ։ Եւ ի սրբել զհին կազմուած աղիւսաձոյլ եւ վիմակարկատ դերբկացն որ ի վերայ ձեղուանն՝ գտանեն ի գլուխ առաջին խորանին հիւսի-

սային կողման տուն գաղտանոց, եւ ի նմա մթերս անհուն սրբութեանց եւ նշխարաց առաքելական, հայրապետական եւ մարտիրոսական, յորում եւ կայր աստուածընկալ խաչն Բարգէնեան: Եւ մեծապէս գոհութեամբ իջուցանէին յեկեղեցին: եւ անհուն լինի խնդութիւն եղբայրութեանն:

Ապա յետ բազում աւուրց ծերական ալեօք եպիսկոպոսն բարեբարոյ Տէր Հայրապետ յաղթեալ ի սիրոյ Տեառն իւրոյ՝ դնայ ի տեսութիւն աստուածակոխ տեղեացն Երուսաղէմի. եւ հասեալ փափագմանն լնու զտենչումն երանելի ոգւոյն եւ դառնայ առ աստուածապսակ թագաւորն Լեւոն Հայոց: Եւ նորա ի վաղ ժամանակաց ցանկացող եղեալ միաբանութեան սուրբ եւ գերափառ ուխտին Տաթեւոյ՝ խրախացաւ մեծապէս ընդ հանդիպումն եպիսկոպոսին. եւ ըստ մեծայոյս հաւատոյն կազմեալ ընծայ թագաւորական սուրբ եւ երկնաձեւ եկեղեցւոյն զգեստ սեղանոյն յարքունական մետաքսից զբխզանդային որ ի Յունաց ճարտարացն աննման կիտուածօք, եւ խաչ պատուական ի սպիտակափայլ եւ սառնատեսակ քարանց համակ կերպացեալ եւ ալընդեալ յոսկում, եւ սկիհ պատուական ի զուտ արծաթոյ. եւ այլ բազում պարգեւս եպիսկոպոսին: Եւ գրէ իւրով ձեռամբ յիշատակ ինքեան.

« Մարդիկ որ հոգւոյ աչօք յանվախճան կեանս հայե-
[ցան՝
Մինչդեռ ի մարմնի էին փրկութեան հոգւոյն ջա-
[նացան,
Ցաղագս որոյ ես Լեւոն Թագաւոր ազդիս հայկա-
[զեան,
Եւ խոստովանող ուղիղ հաւատոյ համագոյ սուրբ
[Երրորդութեան,
Ցայս Աստուածընկալ սուրբ ուխտ խնդրեցի լինել
[միաբան,
Որպէս զի հաղորդ եղէց ի նմանէ ամենից որ աստ
[բարութեան,
Որ եւ աղերսեմ առ ձեզ աստանօր անձինք սրբա-
[զան,
Ձի մեզ եւ նախնեաց մերոց որք հանգեան յուսով
[յարութեան,
Լիցի աղօթիւք ձերովք հասանել մեղաց թողու-
[թեան,
Եւ արքայութեան երկնից արժանի լինել հանգըս-
[տեան,
Ընդ որս եւ որդւոց մերոց եւ զարմից որ գան մեր
[փոխան,
Մնալ ի յերկրի կենօք ընդ երկայն աւուրս բարու-
[թեան ».

ի Թուին Հայոց 731 :

Յեպիսկոպոսութեան Սիմեոնայ Տէր Հայրապետայ եւ Տէր Յովհաննիսի, հզօր եւ բարեպաշտ արքայն Հայոց Լեւոն տիրապետեալ արեւմտական նահանգին Կիլիկիոյ, մեծազոյն յուսով և առատ պարգևօք միաբանեցաւ ի սուրբ ուխտս միեղէն եղբայրութեանս, որպէս յայտ առնեն վերոյգրեալ բանքդ ։ Արդ՝ որ զկնի մեր գայք բնակել յայս աստուածաբնակ տեղի աղօթից. եւ ամենայն բարեգործութեան որ աստ կատարին, հաղո՛րդ կալջիք զբարեսէր թագաւորն Հայոց Լեւոն հանապազորդ յիշմամբ առ Տէրն մեր Փրկիչ օրհնեալն յաւիտեան ։ Յաղագս այսր յուսոյ եւ սիրոյ աստուածազօր թագաւորին եղբայրութեամբս կարգեցաք զօր սրբոյ Զատկի Յարութեան միաշաբաթուն յիշատակ նմա, որ կատարեն զպատարագն յամենայն եկեղեցիս անխափան մինչ ի վախճան ։



ԿԸ. — Վասն կաթողիկոսութեան Հայոց որ զկնի Տեառն Յակոբայ. և ազգի ազգի պատահմանց նոցա և գերութեանց. և Հռոմկլային և մայրաքաղաքացն Փռանգաց որ ի ծովեզերին ։

Յետ սրբասէր կաթողիկոսին Հայոց Տեառն Յակոբայ մեծաւ հանդիսիւ և աշխարհաժողով ամբոխիւ

Նստուցանէն կաթողիկոս Հայոց ի Սիս յաւագ եկեղեցին սուրբ Սոփի զԿոստանդին վարդապետ, որ էր առաջնորդ սուրբ և գերահռչակ մենաստանին Խորին կոչեցելոյ, մեծապատիւ շքով և արքունական ճոխութեամբ, ձեռամբ թագաւորին Հայոց Լևոնի՝ որդւոյ Հեթմոյ, ընդ որս և էր մեր նուաստութիւնս ։ Սորա կեցեալ ամս երեք (146) յաթոռն, աստ վախճանեալ թագաւորին Լևոնի, սպայազատէ զտէրութիւն նորա երէց որդին Հեթում. եւ սա նախանձ հակառակութեան բերեալ ի սրտին ընդ կաթողիկոսին Կոստանդեայ՝ առնէ ինքեան խորհրդակից յեպիսկոպոսաց և յիշխանաց գլխաւորագոյնսն, նա եւ ի վարդապետաց իսկ ։ Եւ հրապուրեալ զամենեսեան տիրանենգ խորհրդով՝ առնէ ժողով ի Սիս մայրաքաղաք, եւ յառաջ կոչէ զքիլսն չարաբանս. եւ դնեն բարուրս բաղում զրաղատ բանից ի վերայ հայրապետին, անարժան և անպատշաճ լսողաց. քննիչ եղեալ ծառայքն Տեառն և հօտն՝ հովուին, դատափեթ առնէին զփոխանորդն Աստուծոյ ։ Եւ այսպէս զրպարտեալ զկաթողիկոսն, զորոյ զիրաւն և զճշմարիտն Աստուած միայն գիտէ ։

Իսկ հեզն այն եւ հանդարտն ըստ տիրապատուէր հրամանին ոչ ինչ ընդոստնոյր. այլ զամենայնն յանձն առեալ ասէր. արդար են բանքդ այդ. եւ ես ճշմարտիւ գործեցի զդոսա. բայց այդ յայտնիքն. իսկ

զծածուկն, որում վկայ է միայն ծածկագէտն, բիւրապատիկ քան զդոյն ունիմ ամբարեալ յոգիս . և չեմ արժանի այսմ աստիճանի . արդ զոր կամ է ձեզ՝ արարէ՛ք ընդ իս ։ Որում պատասխանեալ Թագաւորն և ժողովն . ի բա՛ց հան ի քէն, ասեն, զկաթողիկոսութիւնդ և տո՛ւր ցմեզ ։ Լուեալ զայս կաթողիկոսին և յանձն առնոյր յօժարութեամբ . և զգեցեալ զզգեստն հայրապետական զբազմախաչն եւ զեմիփորոնն հինգ կրկին որ պատրիարքացն է, և զթագն սպասաւական եդեալ ի գլուխն, և զվաւերականն մեծագին ածեալ ի մատն, և առեալ ի ձեռն զաջ սրբոյն Գրիգորի՝ օրհնեաց զթագաւորութիւնն զայն և զամենայն աշխարհ, և ասէ . գոհանամ՝ զքէն Տէր իմ Յիսուս՝ որ մատնեցեր զիս մարմնաւոր դատաստանաց և անցաւոր պատուոյ և ամօթոյ, և ոչ պահեցեր յօրն մեծ յորում դատաստանքն ահեղ եւ պատիժքն անվճար եւ ամօթն յաւիտենական ։ Բայց տո՛ւր սոցա առաջնորդ բարի և հովիւ ընտիր զի ըստ կամաց քոց հովուեսցէ զբանաւոր հօտս քո . այլ արանցս այսոցիկ որք առին զդատաստանս քո . և նախ քան զօրն իմ աստուածաբար դատեցին զիս, դու արասցե՛ս իրաւունս ընդ իս և ընդ նոսա ։

Եւ ապա հանեալ զզգեստն եդ ի վերայ արծաթի սեղանոյ . նմանապէս և զաքեմն եպիսկոպոսութեան հանեալ ծալեաց եւ եդ ի վերայ նորա եւ ծածկեաց

պատուական հանդերձիւ . եհան ի մատնէն և զծանրագին մատանին . և զգաւազանն և ետ զամենայնն ցպատգամաւորսն, և ասէ . ահա զոր խնդրէքդ ։ Եւ ինքն ետ բերել մազեղէն մի սև և յոյժ խոշոր և ըզգեցաւ . և ի նոյն մազեղենէն քուսիթայ եդ ի գլուխն. և ողջունեալ զամենայնն՝ ել ի տանէ եպիսկոպոսարանին միայն եւ լռիկ, որ էր մերձ ի քաղաքն Սիս, զոր Գլխիթացի կոչեն ։ Իսկ վատշուէրքն այն և ջեռեալքն նախանձու և հեռիւ ոչ շատացան և ոչ յագեցան այնու, և ոչ զղջացան ընդ առնելիս (թերևս՝ ալխս) նորա . այլ կարծիս իմն բերեալ ի միտս եթէ ելանիցէ յայսմ իշխանութենէ եւ երթեալ ի վերին աշխարհն յարևելից. և անդ ընկալեալ լիցի պատուով կաթողիկոսութեան . և ի բաց հերքեսցի ի մէնջ ։ Եւ յուղարկեալ ըմբռնեն զնա և տարեալ ի բերդն Լամբրոն դնեն ի մետաղս երկաթի կապանօք ։ Եւ յետոյ բարձին զկապանսն . բայց ոչ հանին յարգելանոցէն զամս 4 ։ Եւ եղև այս ի թուականին 738 ։

Զայս այսպէս արարեալ յուղարկէ թագաւորն եւ ժողովն նուիրակ ի կողմանս արևելից յաշխարհս Հայոց, առ մեզ եւ առ այլ եպիսկոպոսունս եւ իշխանս աշխարհիս, զՍտեփաննոս վարդապետ Սկևռացի որ առ մեզ իսկ էր փարժեալ եւ ուսեալ, հրաւիրական նամակօք, յորում և գրեալ էին զպատճառ աքսորման կաթողիկոսին ումպէտ բանիւ ք բազբաղեալ հայթայ֊

թանս փաստաբանութեանց խըր դքրթաքաղս յաղթիւսայ. և յօղեալ բանս ի վերայ Կոստանդեայ մինչև ցերեսուն, յորոց մի այս էր, եթէ յառաջ քան ըզ պատարագն ըմպէ շարբաթ. զոր թէ արարեալ լինի՝ ո՛չ վասն ագահութեան եւ ո՛չ վասն աներկիւղութեան. այլ վասն տկարութեան մարմնոյ: Եւ երկրորդ՝ թէ առնու հարկս ի լկտանոցացն որ ի Հռոմկլային: Ո՞վ դատախազ՝ այդ սահման է յամենայն ընդհանրական քաղաքս Հայոց և Յունաց և ամենայն ազգաց. ի դմանէ ե՞րբ կարգեցաւ բողանոցն. և թէ էառ՝ ոչ եմոյծ պատարագ կամ երախայրի ի տուն Տեառն. այլ տայր ի հռոգս սպայից բերդապահացն, և թէ վնաս է այդ, ընդէ՞ր կարգեցաւ ի հայրապետական կանոնսն՝ ի պոռնկաց և ի շնացողաց և յամենայն վնասակարաց տուգանս դահեկանաց տալ յեկեղեցին. և թէ բարեկարգութիւն խորհեցար առնել ազգիս, այդ թագաւորի է գործ. նախ՝ դու բա՛րձ ի քումմէ թագաւորութենէդ և ապա հրամայեա՛ ամենեցուն բառնալ: Նմանապէս և այլքն ըստ սմին օրինակի էին բանք որք երբէք ոչ տային կարծիս վնասու ինչ ի հաւատ կամ յեկեղեցի, զոր աւելորդ և անկարգ համարեցաք գրել աստ:

Եւ յետ այսց բանից հրաւիրեալ էին զմեզ մեծաբանօք գնալ ի ժողովն նորոգ ընտրութեան հայրապետի. որում պատասխանեալ ասացաք. մեք ո՛չ

եմք հաստու կամ խորհրդակից եղծման զի եւ նորոգմանն հաղորդեսցուք. ո՛ք որ ինքնահաճ կամօք եղծումն արար, նոյն և զնորոգ ընտրութիւնն հոգասցէ. եւ կամք Արարչին յա՛յս միջի իւրում եկեղեցւոյ ։ Դարձեալ ապա անդրէն նուիրակին և գտանէ նախ քան զպատասխանիսն հաստատեալ յաթոռ կաթողիկոսութեան զՍտեփաննոս ոմն անապատաւոր զոր Հռոմայեցի կոչէին, այր լաւ և լի ամենայն առաքինութեամբ ։ Բայց ի ժամանակս յայս զօրն եգիպտական որոց զօրագլուխ սուլտանն Ալփի (147), գան բազմախուռն ամբոխիւ ի վերայ մեծ մայրաքաղաքին Տրապօլեայ որ ի ծովեզերին յորում կայր աթոռ պատրիարքին Անտիոքու եւ բրնձին որ կոչէր Թագաւոր ։ Քանզի ի յառնուլն զԱնտիոք (148) Փնտուխտար սուլտանին որ ի յ717 Թուականին, յորում գերեաց և կոտորեաց աւելի քան զերկոտասան բիւր, և քակեաց զերկնաձեմ եկեղեցիսն. եւ ծովացոյց զմէջ պարսպին. յայնժամ փոխեցաւ աթոռ պատրիարքութեանն ի Տրապօլիս ։

Եւ նստեալ սուլտանին շուրջ զքաղաքաւն, տայ ի դուրս զքաղաքն աստուածանենգ և անիծեալ զոնթ (իմա՛ կոմս) մի փռանգ (149) որ էր իշխան մեծի քաղաքին ։ Եւ առնուն զնա և անողորմ սրով կոտորեն և գերեն անհուն և անհամար քրիստոնեայս. քակեն և այրեն զեկեղեցիսն, և զանձնաւոր պատկերն Քրիս-

տոսի որ կայր յաւագ եկեղեցյին պրկեալ ի վերայ խաչի՝ զոր երբեք մարդ ոչ կարէր նկատել զնա եթէ յանշունչ նիւթոյ իցէ, այլ թուէր յինքեան ունել զոգի եւ զշունչ․ զայն ընկեցին ի վայր եւ տոռունս կապեալ ի պարանոցն քարշէին ընդ փողոցս մինչեւ խորտակէր զամենայն ։ Եւ եղեւ սուգ մեծ ամենայն քրիստոնէից․ և այս էր ի թուականին 738 ։ Իսկ յետ միոյ ամի, ի 740 թուականին առաւ եւ մեծ քաղաքն Կորնթացւոց աշխարհաժողովն Աքքայիա (150) ի նոյն ծովեզերն յորում կայր տուն եւ աթոռ երից թագաւորացն Փռանգաց դամփիլուն և պայլիպալուն և ապրանսուն (151)․ կայր եւ ի նմա մեծ արծուէպքն Երուսաղէմի, այսինքն արքեպիսկոպոսն․ քանզի յերից թագաւորացն որ անդ էին՝ մինն էր սէր և միաբան ընդ սուլտանին Մսրայ․ վասն որոյ խաբեալ ի սուլտանէն եթէ տուր զքաղաքդ ի ձեռս իմ եւ ես բառնամ զայլ թագաւորսն եւ տամ զամենայն ի ձեռս քո, եւ այնպէս խաբկանօք առեալ զանառիկ քաղաքն և զանմարտնչելի ամուրն՝ քակեաց ի հիմանց եւ փլոյց զզարմանակերտ շինուածսն ամենայն․ զոմանս կոտորեաց․ և բազումք ընչիւք իւրեանց նստեալ ի նաւ գնացին ։

Բայց դասպիտալն որ սէր էր ընդ նոսա, ոչ ինչ վնասեցին․ այլ խաղաղութեամբ հանին ի քաղաքէն իւրայովքն, որ և անց յայնկոյս ծովու ի մեծ աշխար-

հըն Փռանգաց. վասն որոյ և անմխիթար սուգ պատեալ էր զամենայն ազգս քրիստոնէից ։ Ապա յետ այսր ամենայնի բարկացաւ Տէր ի վերայ Ասքանազեան ազինս Հայոց. եւ վասն ծուլացեալ մեղաց մերոց արբոյց մեզ զմրուրն դառնութեան սկաւառական բարկութեան. յիշեաց զզրպարտութիւնն Կոստանդեայ. եւ զարթեաւ ի վրէժխնդրութիւն իւրոյ եկեղեցւոյն. շարժեաց զսուլտանն Մսրայ անթիւ զօրօք և էած ի վերայ անպարտելի ամրոցին Հռոմկլային որ էր գահ հայրապետացն և աթոռ կաթողիկոսացն Հայոց ։ Յորում կային անպատմելի սրբութիւնք և նշխարք առաքելական և հայրապետական և ամենայն գլխաւոր մարտիրոսացն, և փառաւորագոյնն մերոյս գրոհի՝ աջ սրբոյն Գրիգորի Լուսաւորչի և գաւազանն և աթոռն և սեղանն, յորոյ վերայ պատարագէր զՔրիստոս, և հողաթափին նաև շղարշն որ է դաստառակ սրբոյն Հռիփսիմեայ, և պերեզոտն ներկեալ արեամբ ։ Որ եւ ամսօրեայ ժամանակաւ պատերազմեալ էառ նախ զքաղաքն, և ապա զներքին բերդն. և ապա զբարձրագոյն կլայն յորում կայր շինեալ գեղապաճոյճ եկեղեցին ի Գրիգորէ կաթողիկոսէ. և տուն դարապասի հայրապետին ։

Ըմբռնեալ զկաթողիկոսն Տէր Ստեփաննոս երկոտասան եպիսկոպոսօք և բազում քահանայիւք և սարկաւագօք ածին առաջի սուլտանին. եւ առեալ

յաւարի զբերդն՝ կապտեցին, կողոպտեցին զամենայն սպաս եկեղեցւոյն և զանկշռելի զանձն աստուածային և զամենայն ստացուածսն, բայց զեկեղեցին ոչ քակեցին ։ Ապա ի մեծի խնդութեան եղեալ սուլտանին՝ խօսէր բաղում բանիւք ընդ կաթողիկոսն, եւ զայս իսկ հարցանէր ․ այսչափ ժամանակ է աւելի քան զ100 ամ որ դուք աստ նստէիք, և մեր սուլտանութիւնն բազում անգամ ջանացեալ են պատերազմաւ՝ չեն կարացեալ առնուլ զսա, ընդէ՞ր եղեւ այս զի այժմ ի քո կաթողիկոսութեան այսպէս դիւրաւ առաւ ի մէնջ ։ Եւ պատասխանէ կաթողիկոսն և ասէ ․ ոչ գիտեմ՝ Աստուած միայն գիտէ, մի՞ թէ վասն մեղաց մերոց եղև ․ ասէ՛ սուլտանն ․ այս չէր ի յիմ զօրութենէ ․ այլ Աստուածն ձեր մատնեաց զձեզ եւ զբերդդ ի ձեռս իմ, զի ես երեք անգամ խորհեցայ գնալ ․ և Աստուածն ձեր ոչ եթող զիս ․ այլ արգել և ետ զսա ինձ ։

Զայս ասացեալ կացոյց բերդապահս և հրամայեաց շինել զպարիսպն որ բաբանօք էին փլուցեալ ․ և ինքն յարուցեալ գնաց անդրէն եւ մտեալ ի Դըմըշխ՝ (Դամասկոս) ցուցանէր քաղաքացեացն զկաթողիկոսն շրջեցուցանելով ընդ հրապարակսն, եւ անտի գնացեալ ի Մըսըր, տարաւ ընդ իւր երկաթի կապանօք ․ եւ անդ եղեալ ամ մի ի բանտի՝ վախճանեցաւ ի նմին երջանիկ եւ փառաւորեալ կաթողիկոսն

Տէր Ստեփաննոս ։ Եւ առեալ քրիստոնէից հրաման՝ տարան յեկեղեցի Հաբաշի Ասորեացն. և պատուով եդին ի հանգստի. և այս կործանումն լինէր ի Թուականին 741 ։ Եւ ամենայն սրբութիւնքն որ գերեցան, կորեան անհետ եւ անգիւտ. եւ բնաւ ոչ երեւեցան թէ եւ բազում անգամ յոյզ եղեւ ի Թագաւորէն Հեթմոյ ։ Բայց յետ առման Հռոմկլային Թողին ի նա և զամուրն Բեհեստին (152) ։

Ահա տեսեր ո՞վ դատաւորդ եւ զրպարտիչդ հայրապետին քո՝ եթէ ո՛րպէս փոյթ ընդ փոյթ էառ Աստուած զվրէժ պատուհասին ի վերայ և խնդրեաց իրաւունս. զի զոր դու ի Գլխիբայի եկեղեցւոյն արտաքսեցեր. նա զքոյդն արտաքսեաց ի մեծ աթոռոյ Հռոմկլային. զոր դու քո ձեռամբդ մերկացուցեր ի զգեստուն, նա մերկացոյց ձեռամբ սուլտանին Մըսրայ զքո եգեալ հայրապետն. զոր դու ի կապանս եւ ի բանտ առաքեցեր ի Լամբրոն բերդ. նա զքոյն առաքեաց ի կապանս և ի բանտ անզերծանելի զընտանիսն Մըսրայ ։ Ո՞ւր են այժմ զգեստքն հայրապետական, ո՞ւր Թագն պատուական, ո՞ւր աջն եւ գաւազանն եւ աթոռն սրբոյն Գրիգորի որով պարծէիք. ա՜ւաղ անմտութեանս մերոյ. եթէ յո՛րպիսի տուգանս և ի պատուհաս մատնեցաք ։

Եւ արդ՝ այս աթոռ՝ որ ի Հռոմկլային եղաւ, հաստատեալ էր ի սրբոյն Գրիգորիսէ կաթողիկոսէ որ և

Վկայասէր կոչեցաւ (153)․ զի յայնմ ժամանակի ոչ գոյր աթոռ Հայոց, այլ աստ եւ անդ շրջէին։ Սա զանձագին արարեալ ի կնոջէ և յորդւոյ մեծ իշխանին փռանգ որ Ջաւալին կոչիւր, զբերդս զայս․ եդ ի սմա աթոռ և հաստատեաց տուն հայրապետաց Հայոց, յորում նստան կաթողիկոսք տասն․ առաջինն՝ Գրիգորիս, եւ ապա՝ եղբայր իւր Ներսէս, եւ ապա՝ եղբօրորդի նոցա Գրիգորիս որ շինեաց զեկեղեցին, և ապա՝ Տղայն Գրիգոր որ անկաւ ընդ քարն Կոպիտառայ, ապա՝ Գրիգորիս Ապիրատն, ապա՝ Յովհաննէս, ապա՝ Կոստանդին, ապա՝ Յակոբ․ ապա՝ միւս Կոստանդին որ աքսորեցաւ․ ապա՝ Ստեփաննոս որ գերեցաւ ի Մըսըր․ և անդ մեռաւ։ Եւ էին ամք աւելի քան զ140 մինչև ցօր առման նորա։

Իսկ յետ այսր ամենայնի դիպուածոց դարձեալ առնէ ժողով թագաւորն Հեթում և տայ ձեռնադրել կաթողիկոս Հայոց զՏէր Գրիգոր՝ Անաւարզայ եպիսկոպոս, այր գիտնական եւ առաքինի, սիրող եկեղեցւոյ, տօնասէր եւ տօնախմբիչ տօնից տէրունականաց, և պայծառացուցիչ յիշատակաց մարտիրոսաց, ի Թուականին 742։ Գիտէր եւ զլեզու եւ զդպրութիւն լատին եւ յոյն ազգին։ Յերկրորդ ամին սորա եղև շփոթումն Զատկաց եւ խանգարումն լրմանց ամենայն ազգաց․ զի հասաք ի տուն սխալական որ դրոշմեալ է ի հինգհարիւրեկին, որ էր լրումն ըստ

Յունաց յԱպրիլի ի 6, և ըստ Եբրայեցւոցն Նիսանի ի 16ն. և ըստ Հայոց անշարժ տումարին յԱրեգի 23ն. և գայր օր լրմանն ի կիւրակէի. զոր պա՛րտ էր յառաջի միւս կիւրակէն տալ: Վասն որոյ մոլորեալ ի ճշմարտութենէն՝ կորուսին կու րապէս զհենակս շաւղայն, և տօնեցին զօր Ողոգոմենին Յարութեան և արարին Զատիկ. և զոլասեք չարչարանացն կերան եւ արբին ընդ աստուածասպանսն խրախանալով: Իսկ Հայք կացեալ ի ճշմարտութեան ստուգապէս. եւ որք էին յԵրուսաղէմ ի մերոց եղբարց՝ եկեալ հաւատարմացուցին առ մեզ թէ՝ լոյսն որ իջանէր ի շաբաթ օրն ի պատիւ գերեզմանին՝ ի մերն իջաւ ճշմարտիւ ի ճրագալոյցի աւուրն. որում ականատես եղեալ փառաւորեցաք զԱստուած. եւ կողմանք այլազգեացն զամօթի հարեալ պապանձէին:

Իսկ հայրապետն մեր Տէր Գրիգոր աստանօր սըխալեցաւ մեծապէս և ի բաց եկաց ի ճշմարտութենէն. զի թողեալ զբնական և զհայրենի շաւիղս նախնեացն սրբոց՝ հետեւեցաւ ընդ թիւր և զարտուղի ընթացս Յունաց. եւ հաւանեցուցեալ զթագաւորն՝ բռնութեամբ տօնեաց եւ ետ տօնել ամենայն աշխարհին Կիլիկեցւոց զօր Ծառզարդարին Յարութեան. եւ արար Զատիկ առանց ազատութեան. բայց ի պարկեշտ վաներն ոչ ընկալան. նաև բազումք յեպիսկո֊

պոսայ և ի փարդապետայ ոչ հաւանեցան, և ոմանք ի ծածուկ պահեցին․ վասն որոյ բազումք դանեալ և աքսորեալ հալածական եղեն ։ Եւ յայսմ՝ անկարգ արարուածոյ բազմաց դայթակղո։ Թիւն եղև ի կաթողիկոսէն ։

Դարձեալ և եդ սահման զի մի լուծցեն զճրագալոյցն յեղ և ի թան եւ որ ինչ առանց մսոյ է, եւ մի արասցեն նաւակատիս մեծախորհուրդ տօնիցն ։ Եւ հրամայեաց ձէթ օրհնել հիւանդաց և մեղուցելոց և երեխայից․ եւ սկսաւ առ սակաւ սակաւ զամենայն աւանդութիւնս Հռոմոց եկեղեցւոյն սպրդեալ մուծանել ի մերս եկեղեցի․ և ի մերոյս ի բաց քեցել մի մի ։ Եւ բազում՝ դեսպանս և նամակ հաւանութեան առաքէր առ պատրիարքն ի Կոստանդնուպօլիս եւ խոստանայր յանձն առնուլ զոր ինչ եւ խնդրեսցեն ։ Յուղարկեալ էր և առ Արունայն (154) Ասորւոց որ Նեստոր կաթողիկոսն է, նմանապէս թուղթ յանձնաուական միաբանութեան զոր մեք իսկ տեսաք․ բայց մեզ արևելից կողմանցս ոչ ինչ ի վեր բերեալ ծանուցանէր․ այլ միայն այսքան համբաւէր թէ՝ խնդրեմք զաթոռն Անտիոքու մեզ լինել․ և վասն նուաճեալ ժամանակիս կամիմք զմիաբանութիւն Հռոմոց ընդ մեզ եւ զամենայն ազգաց ։ Բայց յեկեղւոյն հոտ դառնադաժան մաղձիցն երևեալ լինէր ի տեղիս տեղիս․ և ոմանք ևս ի մերոց աշխարհէս հաճեալ հաւա-

նեցան եւ սկսան եպերել զնախնիսն մեր . եւ առնել նորաձեւութիւնս . և այլաձեւութիւնս :

Իսկ մեք հանապազ աղեցաւ եւ լերդախոց լինելով ի վերայ այսր ամենայնի՝ հաշեալ մաշէաք ծխական խորհրդովք ի տուէ եւ ի դիշերի . եւ ոչ գոյր տեղի յուսոյ կամ ապաստանի, զի սակաւ մի ախոյեան առից ընդդէմ կալ հոգեւոր մարտին : Երկնչէաք եթէ յաւուրս մեր զարթնու չարն ի պատերազմ ընդ եկեղեցւոյ . եւ յարուցանէ մրրիկ խռովութեան ի մէջ մեր . եւ ընթադրեալ կործանէ զսինլիբոր միացուած ազգիս . յաղագս որոյ պատճառանաց ի գալ նուիրակի նորա Կոստանդեայ՝ եպիսկոպոսին Կեսարու, միաբան խորհրդով եպիսկոպոսաց աշխարհիս եւ իշխանաց գրեցաք մեք թուղթ մաղթանաց նախ ողջամիտ հաւատոյ եւ կարգաց Հայաստանեայ եկեղեցւոյ առ կաթողիկոսն մեր Տէր Գրիգոր ոչ հիւանդանալ անողջանալի ցաւօք, որ իբր զքաղցկեղ ճարակէ յական թօթափել զհասարակ անդամս եկեղեցւոյ . զոր եւ նուիրակին այն գիտելով զանձանց վէրս՝ ոչ կամէր յանձն առնուլ զտարումն թղթոյն բամբասելով պատճառանս ինչ : Եւ էր օրինակ նամակին այս ինչ, զոր եւ աստէն կարգեցից :

ԿԹ. — *Թուղթ վասն հաւատոյ եւ կարգաց եկեղեցւոյ յարեւելեան աշխարհէս առ կաթողիկոսն Հայոց Տէր Գրիգոր, գրեալ ձեռամբ Տեառն Ստեփաննոսի՝ Սիւնեաց եպիսկոպոսի. ընդ նմին և դաւանութիւն ուղղափառ հաւատոյ սրբոյն Գրիգորի Սքանչելագործի եւ Աթանասի Աղեքսանդրացւոյ :*

*Աստուածային անյաղթ զօրութեամբն բարձրացեալ և անեղական աջով Հզօրին պարսպեալ, բարձր բազկօքն Յիսուսի գգուեալ եւ հիազօր շնորհօք Հոգւոյն պերճացեալ, սուրբ, անբիծ, անարատ եկեղեցիս Հայոց՝ անբասիր եւ անշաղախ հարսնս երկնաւոր Փեսային, տնկեալս եւ հիմնադրեալս ի սրբոց առաքելոցն Թադդէոսէ եւ Բարդողիմէոսէ, մշակեալս եւ բեղմնաւորեալս ի սքանչելի բրտանց ահարկու եւ անհամեմատ առնն Գրիգորիսի, նախ՝ գոհութիւն անբաւ բիւրաւորօք և օրհնութիւն անհատ և անվճար Արարչին իւրոյ վերընծայէ, որ ոչ ամենայնիւ ամենեւիմբ գլետինն արբոյց բաժակ, եւ զանձնարին տպառուած կորստական հրապուրանացն էարկ ի վերայ ըստ արժանաժառանգ պատուհասի տոհմին դառնացողի. այլ յետ սաստիկ պատժոցն եւ ահաւոր արկածիցն կրկին կենդանութիւն վհատեալ հոգւոյս, եւ վերստին մխիթարութիւն սգապատ եւ լքեալ սրտիս շնորհէ :*

Նաեւ փոխան կնտութեանն պսակ պանծալի. եւ մոխրոյն եւ քրձոյն՝ զահոյք անարուեստք եւ խնճոյք խրախանաց ։ Սակս որոյ զԱմովսածնին առեալ զձայն՝ ի ճահ գայ ինձ գոչել մեծաձայն. ցնծասցէ անձն իմ ի Տէր. զի զգեցոյց ինձ հանդերձ փրկութեան և պատմուճան ուրախութեան, որպէս փեսայի եդ ինձ պսակ. և որպէս զհարսն զարդու զարդարեաց զիս ։ Այլ եւ ընդ Դաւթայ յուսագնեալ ասասցից. ո՜չ իսպառ բարկանայ մեզ Տէր, եւ ո՜չ յաւիտեան պահէ ոխս ։ Յետ որոյ ծնրահանգոյց գագաթամբ ողջունէ զգլուխդ իւր պանծալի, զխորալիդ բնաւից, զչքնաղդ և զնորոգ գերահրաշացեալդ ի Հոգւոյն ըզ Գրիգորիոս՝ հայր հանուրց սեռից Հայկայ, եւ կաթողիկոս տիեզերական ի դրանէ Հոնաց եւ Լփնաց, ի ծովէ Կասպից եւ ի լեռնէ Կովկասեաց մինչ ի սահմանս եգիպտական եւ ի ծովն արեւմտային, ուր զգիշերն ազանի ակն տունջենային ։

Եւ ընդ ողջունիս զայս իսկ ծանուցանէ պատուական գլխոյդ բերանով թարմատար եւ եղկելի անձին Ստեփաննոսի՝ Սիւնեաց այցելուի, եւ Նախագահ սեղենի (155) որ ի տանն տէրունի, ո՜ հայր պատուական եւ պետ պանծալի՝ զոն բաղայք բասրանաց ի բերանս բիւրաւոր մարդկան ի բայս եւ ի բանս օտարս եւ ի բաղայս բարբանաց, յորմէ երկուցեալ ակն ածեմք. ո՜ գիտէ՝ յաւուրս վերջինս տեղի գտեալ.

չարն՝ զտոգէտ կրսերութիւնս մեր ընթադրեալ ընդոտնէ, եւ զգեղեցիկ սաղարթ լուսալիր ոստոց հաւատոյ եւ զերկնահանգէտ կարգի սահմանելոյ ի սուրբ եկեղեցւոջ որ ի սրբոյն Գրիգորէ եւ յորդւոց իւր. եւ յայլ աստուածազգեաց հարցն սրբոց՝ նախնեացն մերոց որք ամբաւ ջանիւք, արեամբ եւ քըրտամբ ուղղեալ հաստատեցին, բոյաթոյն արկածիւ այրեալ մծրէ եւ ապականէ եւ չիջուցանէ զգեղեցիկ պայծառութիւնն ։

Եւ երկակի պատճառաւ դնեմք առաջի զայս, մի՝ վասն ամենեւին մաքրութեան եւ սրբութեան հօրդ մերոյ եւ աներկբայ հաստատութեան յեցելոյ մեզ ի ձեզ. եւ մի՝ վասն պարսելոյ եւ կոչկոճելոյ զբերանս զրաքան եւ ունայնախոյզ պարսաւաղիր արանց որք իբրեւ զՍկիւթիանոս, զօրէն Գաբաւոնացեացն շրջին՝ սպրդեալք տանէ ի տուն, եւ շշուկս չարակարծ զամենեքումբք արկանեն այսպէս յօդելով. հոռոմ է մեր կաթողիկոսն. եւ ընդ նոսա դաշնադիր ։ Զորոյ ըզ ճշմարիտն Աստուած գիտէ եւ դուք ։ Որ եւ ոչ միայն այժմ այլ եւ յայնժամ յորժամ էր մեր նըւաստութիւնս առ ձեր փառաւորութիւնդ, որ եւ վանականք կողման Կարմիր լերինն ղմկանձս մեր խիտ առ խիտ տաղտկացուցին. որ և յայսպիսի բաղբաղանաց փաստ առեալ աստուածապսակ թագաւորին եւ բնաւին ժողովոյն՝ ոչ օծին զընտրեալդ ի

ի Հոգւոյն ։ Արդ յաղագս այսր պատճառի հայցեմք ի ձէնջ երկու իրս՝ զմին հրաժարական և զմին յանձնառական ։ Եւ այս ո՛չ ի մարդկանէ. այլ գրե՛թէ Հոգւոյն ազդմամբ վասն զգայթակղութիւն բազմաց բառնալոյ եւ զմիտս տկարաց բժշկելոյ. յանձնառական՝ զսուրբ եւ առաքելական առնն Գրիգորի՝ Հայոց Լուսաւորչին եւ զորդւոց եւ զթոռանց իւրոց, որք էին համախոհք եւ միաբանք երից աստուածագումար Սինհոդոսացն , ունել անթերի զսահման հաւատոյ որ ի Տէր մեր Յիսուս Քրիստոս և ի սուրբ Աստուածածինն եւ ի սուրբ և ի փրկագործ խաչն. ընդ որում և զբոլոր կարգ կանոնական ի սուրբ եկեղեցի, զոր ո՛չ է արժան կատարելոյդ յիմաստս մի ըստ միոջէ յիշատակել ։

Եւ յետ այսր ամենայնի լրիւ պինդ ունել զկրկին նորոգեալ դաւանութիւն հաւատոյ եւ զճշգրիտ սահմանս որ վասն կարգաց եկեղեցւոյ ի սուրբ ժողովոցն Հայոց որք վասն չար աղանդոյն Նեստորականացն և աշխարհակործան, պիղծ ժողովցն Քաղկեդոնականացն յոլով պատերազմաւ և մեծաջան աշխատանօք յուրաքանչիւր ժամանակս յընձիւղիլ չարին՝ ի հարկէ սաղաւարտեալ ժողովէին ի քաղաքն Հայոց առաջնորդք եկեղեցւոյ եւ իշխանք ազգիս. և մեծախոյզ քննութեամբ ջան եդեալ՝ ի բաց խլէին զբոյսս չար որոմանցն, և սերմանէին զճշմարիտն եւ

զբարիոք ուղղափառութիւնն, զորոց զլոյսն երկանց ո՛չ է պարտ տապալել եւ չիջուցանել. այլ միշտ վառ ունել յանձին ։

Եւ ժողով ասացաք . ասեմք նախ՝ զՇահապիվա֊նին, ընդ որում էր անյաղթն յիմաստս Անանիա՝ մետրապօլիտ Սիւնեաց, եւ աշակերտ Մեսրոբայ. որոյ գլուխ ժողովոյն ախոյեանն հաւատոյ Յովհան Մանդակունի բոլոր եպիսկոպոսօք եւ իշխանօք Հա֊յոց ։ Այս սակս ժողովոյն Քաղկեդոնի և այլ մասնա֊ւոր բանից որ ի չարէն տնկեալ էր յաղգս ։ Բ. դար֊ձեալ ժողով ի Նոր քաղաքի՝ Հայոց ՝եւ Ասորւոց ուղղափառաց վասն չար աղանդոյն Նեստորակա֊նացն որ ի Խուժիկս, եւ վասն կարգաց եկեղեցւոյ Բաբգենիւ կաթողիկոսիւ Հայոց . ընդ որում էր երանելին Մուշէ՝ մետրապօլիտ Սիւնեաց ։ Գ. դար֊ձեալ ժողով ի Դվին յաւուրս Ներսիսի կաթողիկոսի, որ վասն քաղկեդոնական սահմանին , եւ Նեստորի աղանդոյն որ ի պղծալից վանքն Գրիգորի Մանա֊ժիհր Ռաժկի. ընդ որում էր երանելի մետրապօ֊լիտն Սիւնեաց Պետրոս՝ աշակերտ Մովսիսի քերթո֊ղահօրն ։ Դ. դարձեալ ժողով ի նոյն Դվին Մովսիսիւ կաթողիկոսիւ վասն նոյն աղանդոյ Քաղկեդոնակա֊նաց. ընդ որում էր և մերն Պետրոս. յորում Թը֊ւական Հայոց եդաւ՝ և սուրբ Աստուած խաչեցարն սահմանեցաւ. և Ցիզզբուզիդ վկայեաց ։ Ե. դարձեալ

ժողով ի Դվին, երկիցս անգամ, Աբրահամու կաթողիկոսիւ, որ վասն բաժանման Վրաց (ի ձեռն) պղծոյն Կիւրիոնի, եւ զատելոյն Աղվանից, ընդ որում էր աքանչելին Քրիստափոր՝ մետրապօլիտ Սիւնեաց, այլովք աթոռակալօքն Հայոց ։ Յորում ամենեւին բարձին զընտանութիւն եւ զխառնումն Քաղկեդոնականաց. և ահագին նզովիւք փակեցին մեզ անհուպ և անհաղորդ մնալ նոյին ։ Զ. դարձեալ ժողով Հայոց ի Պարտաւ առ Աղվանս Եղիայիւ՝ կաթողիկոսիւ Հայոց, վասն նոյն քաղկեդոնականացն. յորում որոշեցին զՆերսէս ոմն, Բակուր կոչեցեալ, կաթողիկոս Աղվանից, չար անարգանօք, եւ զթագուհին Սպրամ. եւ զկտրեալ հօտն խառնեալ միացուցին ընդ Հայս ։ Է. դարձեալ ժողով նախ քան զայս ի Թէոդուպօլիս. Հայք եւ Հոռոմք վասն միաբանութեան յաւուրս Եզրի կաթողիկոսի՝ հրամանաւ կայսեր Հերակլի. յորում հաւանեալ Եզրի տգիտաբար խոնարհեցաւ ։ Եւ Սիւնիք և այլք յաթոռակալացն ոչ ընկալան զաղանդն. այլ միայն ամբողջ շնորհօքն Աստուծոյ. վասն որոյ անարգեալ յԵզրայ արտաքսեցաւ Յովհան Մայրագոմեցի ։ Ը. դարձեալ ժողով ի Մանազկերտ յաւուրս Յովհաննու Օձնացւոյ. որ զխոնարհեալ աղանդն Եզրայ, որ յաւուրս վեց կաթողիկոսացն, մաքրեաց. և ահագին նզովիւք հեռացոյց զմեզ ի Հոռոմոց ։ Թ. դարձեալ

ժողով սուրբ հարցն յԱնի, յորում քննեալ զտին համախոհ Վրաց զՎահան կաթողիկոս որ ի Բաղաց, եւ զի պատկեր եմոյծ յեկեղեցիս Հայոց, եւ յամենայն սեղանոյ բարձեալ էր խաչին պայծառութիւն եւ կաւնիւք զարդարեալ. որոշեցին զնա նզովիւք. եւ զՍտեփաննոս ոմն եդին ի տեղին ։ Ժ. Իսկ յաւուրս վերջին, ի ժամանակս Զաքարիայի սպասալարի եւ Իվանէի աթաբէկին Վրաց, դարձեալ ժողով սուրբ հարցն եպիսկոպոսաց, վարդապետաց, քահանայից ի Գետականն մերձ Սեւան կղզւոյն. և միանգամ յԱնի. եւ չարաչար նզովիւք բարձին եւ հեռացուցին զամենայն համախոհսն Վրաց եւ Հոռոմոց ։

Արդ՝ այդ ամենայն հարք եւ Սինհոդոսք մեծաւ քննութեամբ մաքրեցին զեկեղեցին Հայոց յամենայն զանազան որոմանց. և զսահման հաւատոյ եւ զկարգ եկեղեցւոյ անխախտելի կտակաւ թողին մեզ ։ Վասն որոյ պարտ է ամենայն հպատակութեամբ պինդ ունել զայս սահման առանց յաւելման և պակասութեան. և միշտ ընթեռնուլ զնոյա գրեալսն. եւ նովիմբ վարիլ եւ վարել զեկեղեցիս Հայոց ի դաւանութեան հաւատոյ և ի կարգս տօնից եւ ի սահման կենդանարար խորհրդոյն զոր ամենեքին մաքրեցին յամենայն անպատեհ խառնուածոց ։ Զորոց զեդեալ սահմանն քաջ իսկ գիտէք. եւ աւելորդ է ինձ-

երկրորդել առա ։ Այսոքիկ յանձնառականք, յորոց ոչ ումիմք հնար արեամբ եւ մահու չափ մասամբ միով շեղիլ. եւ այնքան նզովից պարտապան լինել. եւ ի մեր հարանցն մանակցութենէ հեռանալ, իբրեւ որդիք ժանտք եւ խրամատիչք ցանկոյ հարցն, որոց պատիժն յայտնի է ի գրեալսն ։ Իսկ հրաժարականքն՝ ի բաց կալ ամենեւին յամենայն միաբանութեանց հաւա[illegible]ցն Քաղկեդոնի, որք անգիտացեալք զՆեստորին հաստատելով ղաղանդ՝ ինքեանք զինքեանս նզովեցին եւ լուծին ի կենաց. նզովել ի բոլոր սրտէ զնոյն ժողով և զամենայն հաւանեալսն նմա, որք յերկուս ճեղքեալ զանճառ միաւորեալն Քրիստոս՝ լինին աստուածամարտք եւ մարդադաւանք. հրաժարել եւ ամենեւիմբ փակել յամենայն անկարգ խառնուածոյ սուրբ խորհրդոյն յապականիչ խմորոյն եւ ջրոյն, յորում զաւազանին ուրանան զշնորհ, եւ եղծանեն զլուացմանն խորհուրդ. զի զոր ի ծնունդ մեզ շնորհեցաւ՝ զայն յատինան փոխարկելով առնեն ըմպելիս ։

Ո՞վ Թշուառք՝ անցայք գիտութեամբ և զօրութեամբ ընդ նոյն իսկ տուիչն այսմ պարգեւաց եւ յաւելիք ի վերայ նորա զխմորն եւ զջուրն. ո՞չ ասէր առ աշակերտսն՝ ի վեր առեալ զբաղարջն եւ զանապակ գինին. զայս արարէ՛ք առ իմոյ յիշատակի. ընդէ՞ր ոչ յաւել զխմորն և (ոչ) ի կիր էարկ զջուրն ։

Բայց առ այս՝ մերթ ի վերայ ածեն զկողին հոսումն ջրոյ ընդ արեան, և տղէտ կրսերութեամբն ոչ իմանան զխորհուրդն եկեղեցւոյ ի կողից սկսեալ, յօրինակ նախնւոյն Ադամայ եւ կողին իւրոյ՝ յորմէ ծնանին ամենայն ազգք բրիստոնէից զլուսաւորն և զանախտն ։ Զի նախ՝ օրինակաւն եղոյց զերկուսն՝ Յորդանանու լուացմամբն և վերնատան խորհրդեամբն. եւ ապա յաստուածային կողից աղբիւրացուցեալ պարգեւեաց մեզ զերկակի շնորհն ։

Դարձեալ ի ժամ սրբոյ խորհրդոյն կատարման ոչ ամբոխիւ, իբր ի մարմնաւոր խորհուրդ քուսել (156), եւ՞ զմի նշխարն յուլթ եւ ի տասն պատարագ բաժանել. այլ ահիւ և դողութեամբ առանձինն ընդ Աստուծոյ միանալ. և թէ պատուակիցք իցեն՝ մերձ կայցեն, եւ ի նմանէ հաղորդեսցին, որպէս պարզև. եւ թէ զԴիոնիսիոսին բերեն զթուղթ յօժանդակ ինքեանց, աւանիկ՝ ո՛չ ասէ նա բազմացն կատարողապետ լինել եւ սրբազնագործել. այլ զմինն հրամայէ կատարողապետ լինել նման Յիսուսի, եւ զայլսն որք ընդ աստուածային սեղանաւն շուրջ պարեն, սրբազնագործեալ հաղորդեցուցանել կենաց հացին ։ Դարձեալ զեկեղեցին Աստուծոյ ոչ առնել տեղի մարմնաւոր սեղանոյ՝ համարձակութեամբ նստել եւ քննել (կամ քնանել) և զշրունսն անփակ թողուլ ի կոխանս շանց եւ խողից, որպէս

եւ մեք ականատես եղաք. այլ պարկեշտութեամբ և
սրբութեամբ եւ ամենայն զգուշութեամբ պահել,
որպէս վայել է տան Աստուծոյ, յօրինակ առեալ ըզ
տունս մարմնաւոր թագաւորաց թէ՝ քանի՜ պահա-
պանաց եւ զգուշութեան պէտք լինին անդ ։

Դարձեալ ո՛չ մտանել ի հոռոմ եկեղեցին, եւ
տօնակից լինել կամ հաղորդիլ, եւ ո՛չ ընդ նոսա տօ-
նել զԾնունդ կամ զԱւետիս. այլ զճշմարիտն զկար-
գեալն ի սրբոյն Յակոբայ, ի վեցն Յունվարի՝ ըզ
Ծնունդն, և ի վեցն (157) Ապրիլի՝ զԱւետիսն ։
Դարձեալ, որպէս օրէն է, ամենայն պնդութեամբ
Հայոց եկեղեցւոյս զճրագալոյցն առնել Նաւակա-
տիս և Նախատօնակ, և խթիլ յեղ և ի պանիր, և յոր
ինչ առանց մսոյ է ։ Զի հինգ օր Նաւակատիքն մեծ
և պայծառ խորհրդովք լի են. և ո՛չ է օրէն ամենևին
զնախատօնակ մեծի Յարութեանն եւ Ծննդեանն
ընդ այլ աւուրս պահոցն հաւասարել ( 158 ) ։
Եւ թէպէտ բան և խորհուրդ շատ ունիմք՝ չէ՛ պարտ
մեզ երկայնել, եւ որպէս ոչ գիտողի ուսուցանել.
այլ սակաւն իմաստնոյդ բաւականասցի ։

Դարձեալ՝ թէպէտ առաքելական իմանամք կարգ
զձէթ օրհնելն հիւանդաց և մեռուցելոց. ի հարցն ոչ
ունիմք սովորութեամբ աւանդեալ մեզ. կարծեմ եւ
համարձակութիւն յոյժ մատուցանէ ժրագունից ի
մեզս՝ մեղօք ապականել զոգիսն յուսով ձիթին. եւ

տակառ դղրամիկ մախել, եւ ձէթ օրհնել. եւ արդարանալ ։ Այդ գիւտք շահիցն ի բա՛ց ընկեցի ի մէնջ. և ընդ հարցն շաւիղ անսայթա՛ք ընթասցուք ոտիւք. բայց թէ զանկատար խուղն որ վասն երախայիցն սահմանէք՝ ընդունելի է ։ Եւ ընդէ՞ր է երկայնել մեզ զբանս. հաւան եմք մեք ընդ մեր հարսն ի դժոխս իջանել. եւ ո՛չ ընդ Հռոմոց յերկինս ելանել ։ Արդ այդչափ եւ այդքանիւք բաւականասցո՛ւք բանիւք ։

Գիտութիւն լիցի աստուածային գլխոյ Հայրապետութեանդ. զի թէպէտ հնազանդ եմք ամենայնիւ Տեառնդ մերոյ՝ սակայն աղաչեմք զմնոտի կարծիս կրսեր եւ տգէտ միտաց մերոց բառնալ եւ բժշկել զի զտկարն յամենայնի շահիլ պարտ է ։ Եւ զոր խնդրեմքս, հեննետիկոս (159) թղթովք ձեռագրեալ, առնել ձեռնարկ հաստատուն եւ անխախտ կտակ միաբանութեամբ սուրբ և երջանիկ եպիսկոպոսաց. և յուղարկել առ մեզ իբր զյետկար անջինջ. զի յայնժամ առաւել հաստատութեամբ եւ հլու հպատակութեամբ հնազանդ լիցուք աստուածային գլխոյդ. և թագաւորեսցես յեկեղեցիս մեր ջահաւորեալ որպէս արեգակն ։

Ապա թէ աւելի ինչ կամ պակաս կամիք մուծանել յեկեղեցիս մեր, զոր ոչ ունիմք ի հարցն ։ Եւ կամ գրեալքս խոտան են առ ձեզ, յայնժամ մի աշ-

խաստ լինիք եւ մի՛ զմեզ աշխատ առնէք. ըստ ձեր կամաց լիցի՛ աշխարհդ այդ և այլ ոք որ կամիցի. եւ զմեզ թողէ՛ք ի մեր սորուկ գերութեանս. եւ մեք կացցո՛ւք, մնասցո՛ւք ակն ունելով վերին այցելութեան ։ Եւ թէ թագաւորական սաստիւ պատժէք զմեզ, մեք պատրաստ եմք ի տանջանս, յաքսորս եւ ի բանտ, ի մահ և ի մեռանել ի վերայ սուրբ և առաքելական հարցն աւանդից ։ Ո՛ղջ լեր թագաւորական արգասիւքդ ծնողդ իմաստից և մայրդ ուղղափառութեան, աղբիւրդ հաւատոյ և անվախ ախոյեանդ սուրբ եկեղեցւոյ Գրիգորիոս՝ կաթողիկոս Հայոց ։ Եւ Տէրն Տէրանց հովանասցի տիրական գլխոյդ ։



## Ձեռնարկ միաբանութեան եպիսկոպոսաց արևելից եւ վարդապետաց և իշխանաց ։

Մեք Տէր Սարգիս եւ Տէր Գրիգոր ի նոյն վիճակէ, համախոհ եւ միաբան եմք այս վերոյգրելոյս հարցն աւանդից. եւ որք ոչ միաբանին այսմ հայրենաւանդ և հայրապետական հաստահիմն դաւանութեանս, նզովեա՛լ եղիցին որպէս Սաբէլ և Արիոս ։

Ես Տէր Յովհաննէս՝ աթոռակալ Բջնոյ, միախոհ եմ եւ միաբան եմ այսմ վերոյգրեալ ուղղափա-

ւան հայրենացանկ դաւանութեանս. և Նզովեմ զոչ հաւանեալ հակառակողսն ընդ չար հերձուածողայն ։

Ես Գրիգոր՝ աշակերտ եւ սպասաւոր բանի, որ մականդրեալ կոչեցայ Բշնեցի, հրամանատար այսմ աթոռոյ՝ սերտ և անքակ միաւորութեամբ համախոհ եմ այսմ վերոյգրեալ դաւանութեանս սահմանիւ մահուն. եւ Նզովեմ Նզովիւք սուրբ հարցն զոչ հաւանողսն ։

Ես Տէր Յովհաննէս՝ շնորհօքն Աստուծոյ եպիսկոպոս Հախբատայ, համախոհ և միաբան եմ իմով վիճակելովս, այս ուղղադաւան Նամակիս. եւ Նզովեմ զոչ հաւանողսն ընդ այլ հերձուածողսն ։ Ես Տէր Մխիթար՝ Հաւույ Թառայ եպիսկոպոս, անքակ միաւորութեամբ համախոհ եմ այսմ վերոյգրեալ դաւանութեանս սահմանիւ մահուն. եւ Նզովեմ Նզովիւք սուրբ հարցն զոչ հաւանողսն ։

Ես Տէր Մարգարէ՝ եղբօրորդի Վանական վարդապետին, համախոհ եմ վերոյգրելոյս ի յանդարձոյ հօրեղբօրն իմոյ, որ հրամայէր թէ օձն կամի շարժել ղտուտն, ջանացարու՛ք ոչ տալ տեղի գլխոյն. և մի հաւատայք խաբողին. արդ հակառակօղք այսմ առաջին հարցն աւանդիցս որոշեա՛լ եղիցին ի փառաց Որդւոյն Աստուծոյ ։

Ես Նաւաստ եպիսկոպոս Գողթան Տէր Սարկաւագ միաբան եմ այսմ աստուածաւանդ կտակիս.

եւ ոչ հաւանեալքն նզովեա՛լ եղիցին ի սուրբ Երրորդութենէն ։ Ես Եսայի՝ կրսեր բանասիրաց, եւ յետին վարժապետ, խմով աշակերտօքս համախոհ եմ եւ միաբան եմ այսմ գրոյ և վերոյգրեալ արանցս. եւ որոշեմք նզովիւք զոչ ընդունողսն ։

Ես Դաւիթ՝ Նաւաստողի քարոզբանի և վարդապետ Հայաստանեայց եկեղեցւոյ, համախոհ եւ միաբան եմ այսմ ուղղադաւան թղթոյս որ ունի ճշմարտիւ զսուրբ հարցն աւանդութիւնն. եւ որոշեմք նզովիւք զոչ հաւանողսն եւ զհակառակողսն ։

Մեք անպիտան ծառայքս Քրիստոսի Եմիկոսմս եւ Լիպարիտս՝ որդիք փառաւոր իշխանացն Տարսայիճին եւ Իվանէի, եղբարքք մերովք և որդւովք և ամենայն ազատօք հաւան եմք եւ հնազանդք մահու չափ այսմ սատուածատուր և հայրենաւանդ կտակիս. եւ որ հակառակին, որոշեա՛լ լիցին ի սուրբ հարցն մասնակցութենէ ։

Մեք մեղուցեալ ծառայքս Աստուծոյ Պապաքս և Եաչի՝ որդիք բարեպաշտ իշխանին Պռոշայ, մերովք ազատօքս համակամ և համախոհ եմք ամենայն հնազանդութեամբ սուրբ հարցն աւանդութեանց վերոյգրելոյս ի նամակի աստ. եւ որ ոք ոչ հաւանի՝ նզովեա՛լ և որոշեալ լիցի ի սուրբ հարցն մերոց և յԱստուածարեալ եպիսկոպոսացս ։



*Սրբոյն Գրիգորի Սքանչելագործի հաւատ, զոր ուսաւ լուսաւոր յայտնութենէ եղելոյ յԱստուածաբանէն Յովհաննէսէ ըստ աղերսարկութեան եւ հրամանի ամենասուրբ եւ միշտ կուսին Մարիամու Աստուածածնի :*

Մի Աստուած եւ Հայր Բանին կենդանւոյ, իմաստութեան անձնաւորի և զօրութեան և կերպարանի էութեանն, կատարեալ կատարելոյ ծնող՝ Հայր Որդւոյ միածնին. մի Տէր միայն ի միայնոյ, Աստուած յԱստուծոյ, կերպարան եւ պատկեր Աստուածութեան, բան ներգործական, իմաստութիւն պարառական բոլորից ընդ գոյացականութեամբ եղելոյս. եւ զօրութիւն ամենից էացելոյս արարող : Որդի ճշմարիտ ի ճշմարտէն, անտեսանելի յանտեսանելւոյն, անապական յանապականէն, անմահ յանմահէն, մշտնջենաւոր ի մշտնջենաւորէն :

Եւ մի Հոգի սուրբ յԱստուծոյ զէութիւնն ունելով, Որդւով երեւեալ եւ բացայայտեալ մարդկան, պատկեր Որդւոյ, կատարեալ կատարելոյ, կեանք և կենդանեաց պատճառ : Սրբութիւն և սրբութեան բաշխիչ, որով ճանաչի Հայր, որ ի վերայ ամենեցուն եւ յամենեսին, եւ Որդին Աստուած, որով ամենայնքս. Երրորդութիւն կատարեալ փառօք եւ

մշտնջենաւորութեամբ եւ թագաւորութեամբ՝ ան֊
բաժանելիք եւ անկարօտանալիք. քանզի և ոչ ստա֊
ցական ինչ եւ ոչ ծառայ յԵրրորդութեանն կամի
ներքս ածական. որպէս թէ յառաջ ոչ եղեալ եւ
յետոյ մտեալ. ո՛չ նուազեալ երբէք Որդի ի Հօրէ. եւ
յՈրդւոյ՝ Հոգի. այլ անփոփոխելի եւ անլայլայելի
Երրորդութիւնն միշտ ։



Երանելւոյն Աթանասի եպիսկոպոսապետին արտադրու֊
թիւն յաղագս աստուածային մարմնաւորութեան
Բանին ձայնակցելով սրբոյ ժողովոյն որ ի Նիկիա ։

Խոստովանիմք (160) զՈրդին Աստուծոյ, նախ
քան զյաւիտեանս, մշտնջենաբար ծնեալ ի Հօրէ.
իսկ առ վերջնովք յաւիտենիւքս վասն մերոյ փրկու֊
թեան ի Մարիամայ ծնեալ ըստ մարմնոյ, որպէս
աստուածազան առաքեալն ասէ « իսկ յորժամ եկն
լրումն ժամանակի՝ արտաքս առաքեաց Աստուած
զՈրդին իւր եղեալ ի կնոջէ ». և զոյն զնոյն Աստուած
եւ Որդի Աստուծոյ ըստ Հոգւոյ. իսկ որդի մարդոյ
ըստ մարմնոյ, ոչ երկուս բնութիւնս զմին՝ Որդի,
զմին՝ երկրպագական. այլ մի բնութիւն Աստուծոյն
Բանի մարմնացելոյ և երկրպագեալ հանդերձ մարմ֊
նով իւրով միով երկրպագութեամբ ։ Այլ և ո՛չ եր֊

կուս որդիս՝ այլ ոմն Որդի Աստուծոյ ճշմարիտ և երկրպագեալ, իսկ այլ ոմն ի Մարեմայ մարդ ոչ երկրպագեալ, որպէս և մարդիկ. այլ զի յԱստուծոյն և Աստուած, որպէս ասացի, մի որդի Աստուծոյ, և Աստուած զնոյն եւ ո՛չ զայլս, եւ ի Մարեմայ ծնեալ ըստ մարմնոյ առ վերջնովք աւուրբքս, որպէս հրեշտակին, Աստուածածնի Մարեմայ յասելն «ի՞բր եղիցի ինձ այս զի զայր ոչ գիտեմ» ասէր «Հոգին սուրբ վերեկեսցէ՛ առ քեզ. եւ կարողութիւն Բարձրելոյն հովանասցի՛ քեզ. վասն զի ծնեալն սուրբ կոչեսցի եւ Որդի Աստուծոյ»:

Ծնեալն սուրբ կոչեսցի եւ Որդի Աստուծոյ այսուհետև ի կուսէն Մարեմայ՝ Որդի Աստուծոյ բնութեամբ եւ Աստուած ճշմարիտ եւ ո՛չ շնորհիւ եւ կցորդութեամբ. ըստ մարմնոյ միայն ի Մարեմայ մարդ. իսկ ըստ հոգւոյն՝ ինքն Որդի Աստուծոյ եւ Աստուած. կրեալ զմեր կիրս որպէս գրեալ է «Քրիստոսի կրեցելոյ վասն մեր մարմնով». եւ դարձեալ. «որ իւր Որդւոյն ոչ խնայեաց. այլ վասն մեր ամենեցուն ետ զնա». իսկ անկիր մնացեալ եւ անայլայլակ ըստ Աստուածութեանն ըստ ասացելումն ի մարգարէէն «Ես եմ Աստուած եւ ոչ այլայլիմ»: Մեռանելով զմերն մահ ըստ մարմնոյ վասն մեղաց. զի զմահն խողխողեսցէ՝ ի ձեռն վասն մեր մահուան ըստ ասողի առաքելոյն «ընկղմեցաւ մահ՝ յաղթու-

թիւն քո. ո՞ւր մահ՝ խայթոց քո». եւ դարձեալ «Քրիստոս մեռաւ վասն մեղաց մերոց ըստ գրելոյն»: Անըմբռնելի իսկ եւ անմահ մահուամբ մեռացեալ յաղագս Աստուածութեանն իւր անարատ Հօր զօրութիւն ըստ առողջին Պետրոսի «ոչ էր, ասէ, կար ըմբռնիլ նմա ի մահուանէ». վերադարձեալ յերկինս եւ նստեալ ընդ յաջմէ Հօր յերկրէ բարձրացեալ մարմին Բանին ըստ առելոյն Դաւթայ «ասաց Տէր Տեառն իմում. նի՛ստ յաջմէ իմմէ». և ի նմանէ ի Տեառնէ հաստատեալ եւ յառաքելոցն. իսկ ըստ Աստուածութեանն պարունակելով ընդ Հօր ի յաւիտենից յաւէտակից որպէս հայրական եւ անճառ զօրութիւն ըստ վարդապետին Պօղոսի «Քրիստոս՝ Աստուծոյ զօրութիւն և Աստուծոյ իմաստութիւն». գալոց է ինքն Որդին Աստուծոյ և Աստուած, որպէս եւ խոստացաւ, դատել զկենդանիս եւ զմեռեալս. որպէս ասէ առաքեալն. դատիչն զծածկոյթս խաւարի եւ յայտնողն զխորհուրդս սրտից եւ զգովութիւն և զանգոսնումն ըստ արժանաւորութեանն վերբերող զիւրաքանչիւրն:

Իսկ եթէ ոք (առաւել) քան զայս յաստուածայնոց գրեցելոցն ուսուցանէ՝ միւս ասելով զՈրդին Աստուծոյ, և միւս՝ ի Մարեմայն մարդ. կամ եթէ ոք ըզ Տեառն մերոյ մարմինն ի վերուստ ասէ եւ ոչ ի կուսէն Մարեմայ, կամ յեղեալ զԱստուածութիւնն ի

մարմին, կամ խառնեալ, կամ այլայլեալ, կամ ախտակիր զՈրդւոյն Աստուածութիւնն, կամ աներկրպագելի զՏեառն մերոյ մարմինն, որպէս մարդոյ, և ոչ երկրպագելի իբրև Տեառն և Աստուծոյ մարմին. զսա Նզովէ սուրբ եւ ընդհանրական. եկեղեցի համանեալ աստուածազան առաքելոյն ասողին «եթէ ոք ձեզ աւետարանէ (աւելի) քան զոր առէքն. Նզովեալ եղիցի. ամէն և ամէն. եղիցի և եղիցի ։



Հ.—Վասն աշխարհակալ արքայիցն որ եղեն զկնի դան Արդունիի. և վասն ամենայն անցից նոցա ։

Նախ և առաջին՝ Թագաւորէ աշխարհիս մերում յազգէն Նետողաց Հուլաւուն ամս 8. և ապա զկնի նորա՝ երէց որդին նորա Ապաղայն՝ ամս 18. ապա Ահմատն՝ եղբօրորդի Ապաղային, և ապա Արղունն ամս 7 ։ Եւ պատճառ մահու նորա եղև հարճ մի յոյժ սիրեցեալ, յորմէ դեղակուր լինի, և վճարի ի դաշտին Մուղանայ ի տօնի Թէոդորոսին (161) ։ Որ եւ ի մահուան նորա լինի կոտորուած բազում մեծամեծ աւագանւոյն՝ Խօջանին որ էր գանձապետ արքային, և Սուլտանին որ էր ի վերայ կերակրոյն և ըմպելեացն. և Ջիշուին և Աւրդուղանին որք էին ի վերայ

դատաստանացն, եւ մեծ դիւանին Սաղաղաւլին՝ (162) բարեբարոյ Ջհտին որ էր ի վերայ ամենայն հարկաց աշխարհիս ։ Եւ բազում և անհուն գանձք արքունի ցան և ցիր եղեն ։ Իսկ զօրագլխացն և մեծամեծացն եղեալ յերկփեղկս՝ ոմանք կոչէին զԲայտուն (163) ի Բաղդադայ՝ ազգական Արղունին, զի դիցեն ի տախտն (164) արքայութեան, եւ ոմանք փութայուցանէին զեղբայր Արղունին զՔեղաթուն (165) ի Հոռոմոց ։ Որ եւ եկեալ նստաւ ի տախտն արքայութեան ղան ի վերայ ամենայն աշխարհի, ի Թուականութեանն Հայոց 740 ։

Սա ետ կտրել դրամ և դահեկան քարտիսէ (166) ունելով յինքեան գիր եւ խայտուածս, եւ կամէր բառնալ զարծաթի դրամն, զի այնու վաճառեսցեն. և սաստկացոյց զհրամանն ի վերայ ամենայն քաղաքաց ։ Եւ յետ 4 ամի տէրութեան իւրոյ անկաւ աղմուկ շփոթի ի մէջ պալատան նորա, զի կասկածեաց յոմանս վասն երկմտութեան ինչ. որք նեղեալք ի դառն և անխտիր զազրագործութեանց նորա, կամեցան ձեռն տալ ի Բայտուն. եւ սկսաւ ըմբռնել զամենայն մեծամեծս իւր՝ զՆԸԼՋիտայն որ էր ի վերայ որսական Թռչնոց և գազանաց, զԴաւլատայն որ էր ի վերայ ամենայն կերակրոց և ըմպելեաց, զԽոնձիբալն որ էր ի վերայ զօրաց բազմաց, և այլս բազումս զօրս երկաթի տոռամբք խառնեալ դնէր ի

պահեստի առ գլխաւոր արանցն ։ Եւ ինքն յառաջեալ գնայր զօրօքն ի հանդիպումն Բայտուին. իսկ կալանաւորքն այն ի ծածուկ ձեռն տուեալ ի բիւրապետ մի Դուքալ անուն եւ ի Թագաւորաղն մի Ելդար անուն. որ միաբանեալ գան ի վերայ. եւ հանեն զկալանաւորսն. և դնեն ի դղ[illegible]ահոջ զպահապանսն նոցա. յորոց մի էր մեծ հազարապետն Խուռումչի, զոր բերեալ ի վանսն մեր Տաթեւ՝ եղին առ մեզ ի պահեստի աւուրս բազումս. որ եւ յետոյ ազատեցաւ եւ հասաւ յիւր իշխանութիւնն հրաշիւք սուրբ եկեղեցւոյն ։

Եւ ինքեանք անցեալ յայսկոյս գետոյն Երասխայ եղեն զօր բազում, եւ սկսան գնալ զկնի Քեղաթուին, զոր եւ լուեալ ամենայն զօրացն նորա եւ սրտաբեկեալ՝ թողին զնա. և եղեն ցան եւ ցիր. եւ ինքն Քեղաթուն մնայր միայնակ. եւ յոչ կամաց դառնայր եւ գայր ի պալատն իւր, զոր առեալ պահէին զօրն ապստամբաց ։ Ապա տեսեալ զերծեալ կալանաւորացն և մեծ զօրագլխացն՝ Ելդարին եւ Դուքալին՝ ըմբռնեցին զնա եւ խեխդամահ սատակեցին. և սպանին առ հասարակ զամենայն համախոհս նորին. և գնացեալ ընդ առաջ Բայտուին՝ մեծաւ ուրախութեամբ նստուցանեն զնա ղան եւ թագաւոր ի վերայ ամենայն աշխարհի, ի դաշտին Արաւոյ (167) ։

Եւ էր սա օրինաց քրիստոնեայ, և խաբեալ ի զօրագլխաց իւրոց՝ եղև Մահմետի օրինօքն, եւ վարէր զարքայութիւն իւր թոյլ և վատթար եւ անարի տմարդութեամբ մինչև յաշնանային ժամանակն ։ Սա յուղարկեալ զՋալալն՝ որդի Տարսայիճին, այլ եւս մուղալ արամբք ի մեծ աթոռն Աղվանից յԱմարաս, որ ի հինսն լեալ էր աթոռ կաթողիկոսաց Նոցին. ետ տանել առ ինքն զգաւազան սրբոյն Գրիգորիսի՝ որդւոյն Վարդանայ, որդւոյ սրբոյն Գրիգորի Լուսաւորչի. քանզի և կայր գերեզման նորին անդ ։ Վասն որոյ եւ գաւազանն ի նմին եկեղեցւոջ պահեցաւ ։ Ընդ նմին տարան եւ զսքանչելի խաչն աստուածահրաշ, որ ի հին ժամանակաց կայր անդ, կազմեալ ի համակ ոսկւոյ և զարդարեալ 36 ականբք պատուականօք. և այս ի մտանելոյ լիրբ եւ անզգամ երիցու մի ի նոյն վիճակէ ։

Եւ զի էր անդ դուստր կայսերն Յունաց Դեսպինա անուն, որ ածեալ էր ի կնութիւն Ապաղայ ղանին. եւ սնուցեալ էր իւր յորդեգիրս զԲայտուն ։ Սա բազում թախանձանօք խնդրեաց զխաչն եւ զգաւազանն և յուղարկեաց ի թագաւորական քաղաքն Կոստանդնուպօլիս ։ Եւ այսու օրինակաւ կողոպտեցաւ աշխարհն Աղվանից ի պատուականն եւ յաստուածային գանձուցն ։ Իսկ Բայտուն այն հասեալ յաշնանային ժամանակն՝ գայ ի Խորասանայ

Ղազանն՝ (168) որդի Արղունին, որդւոյ Ապաղային, ի վերայ նորա ի խնդիր հայրենական աթոռոյն, ամենայն զօրօքն Խորասանայ, զոր Ղարաւունաս կոչէին ։ Որոց զօրագլուխք՝ մեծն եւ բարեբարոյն Խութլուշահն (169) որ թարգմանի շնորհաւոր թագաւոր, եւ անյաղթն ի պատերազմունս եւ բազմահնարն Նաւռուզ, որ թարգմանի նաւասարդ (170) ։

Եւ զի ամենեքեան առ հասարակ թողեալ էին զրնական սահման իւրեանց, եւ մտեալ ընդ Մահմետի օրինօք ։ Եւ այս Նաւռուզս էր որդի Արղունին, որ եկաց պետ և պասխազ ի վերայ ամենայն աշխարհիս . և բազում ոճիրս գործեալ էր ապստամբութեամբ ընդ Արղունին եւ որդւոյ իւրոյ Ղազանին. եւ այժմ միաբանեալ էր ընդ սմա ։ Սա յոյժ ատեցող էր քրիստոնէից եւ թշնամի եկեղեցեաց. որ և ասպատակածեալ՝ գայր իբր զմրրիկ փոթորկեալ, նախամարտիկ լինել, զոր և մանղլայ կոչէին ։ Եւ հարեալ սատակեաց զօրսն որք զճանապարհսն պահէին. և ապա անկաւ աղմուկ շփոթին եւ գոյժ աղաղակին ի պալատն արքունի, որք անզգուշաբար կային անմտութեամբ ։ Յորմէ երկուցեալ մեծ բիւրապետին Թաչարին՝ գնաց և խառնեցաւ ի Նաւռուզն. եւ յայնմանէ բեկեալ սիրտ կողմանն Բայտոյին՝ ամենեքեան առ հասարակ թողին զնա և փախեան ։

Փախչէր և յիմարն այն Բայտուն և գայր առ Դուքալն որ նստեալ էր իւր զօրօքն ի դաշտին Նախջաւանու, յեզր Երասխայ ։

Իսկ տեսեալ զայն Դուքալին՝ բեկաւ ամենայն զօրութիւն նորա. եւ երկմտեցան ի նմանէ հազարապետք նորա, եւ ըմբռնեալ դարձուցին անդրէն ըզ Բայտուն և յուղարկեցին առ Ղազանն. և ինքեանք փախեան այսր եւ անդր ։ Եւ Դուքալն գնաց եւ մտաւ յամուրսն Վրաց, զոր յետոյ ըմբռնեալ Բէքային՝ տայր ի ձեռս Խուտումչէի ։ Եւ նորա առեալ չարամահ սատակէր ․ Նմանապէս եւ Ելդարն փախչէր ի կողմն Կարնոյ քաղաքի. և զնա իսկ գտան յետոյ առ շեխի միոյ. և սատակեցին ։ Այսպէս և զամենայն մեծամեծսն սատակեցին զբռամբ ածեալ առ հասարակ ։ Ընդ որս և զբարեբարոյն բնաւից զԵլչիտայն, որ մեր նահանգի էր իշխեցող և գլուխ 12,000 արանց, ածին ի Գիլանայ. և չար մահուամբ սատակեցին ։ Եւ այդպէս առանց մարտի եւ պատերազմի առին զաշխարհս ամենայն. և նստուցին զՂազանն ի տախտ արքայութեան հօր իւրոյ Արղունին ։

Բայց աստուածատեացն այն Նաւռուզ ի գալն՝ յառաջոյ հրաման եհան առ հասարակ քակել զամենայն եկեղեցիս, եւ կողոպտել զամենայն այր քրիստոնեայ, եւ թլփատել զքահանայս. վասն որոյ բազում վիշտս եւ անհնարին աղէտս հասուցին քրիստո-

նէից ընդ ամենայն տեղիս ։ Քակեցին բազում եկեղեցիս. խողխողեցին բազում քահանայս. կոտորեցին բազում քրիստոնեայս. եւ որք ի սոյն մնացին՝ կողոպտեցին զամենայն ինչս. գերեցին բազում կանայս և մանկտիս ։ Բայց ի Բաղդատ եւ ի Մաւսլ, ի Համիան և ի Դավրէժ եւ ի Մարաղայ (171), ի Հոռոմս եւ ի Միջագետս սաստիկ և անպատմելի գործեցին ոճիրս վնասուց ։ Իսկ ի մեր սահմանս կողոպտեցին զՆախջաւանու եկեղեցիս, եւ գերեցին զքահանայս, եւ բազում չարչարանս ածին ի վերայ. քարշեցին զդրունս բաւարանացն. ընկեցին եւ զսեղանսն. բայց մեծ գլխաւորքն ոչ թողացուցին քակել զեկեղեցիսն ակնածեալ ի Վրաց զօրացն ։ Եկին եւ ի մեծ աթոռն Սիւնեաց. և կամէին քակել զեկեղեցին. զորս կաշառօք եւ բռնութեամբ ոչ թողացուցաք ։ կողոպտեցին եւ զվանսերն որ ի գաւառին Նախջաւանաւ. իսկ այլ աշխարհս Հայոց, զոր Երասխայ գետն հատանէ, մնաց շնորհօքն Աստուծոյ ։ Կալան եւ զկաթողիկոսն Ասորւոց որ նստէր ի Մարաղայ. և բազում անարգանօք չարչարեցին մերձ ի մահ. եւ կողոպտեցին զամենայն ստացուածսն ։ Ըմբռնեցին եւ զեպիսկոպոսն Առաքելոց զՏէր Տիրացուն. և ազգի ազգի անարգանօք ձաղեցին. և առին զամենայն ինչս նորա. բայց ի վանքն նորա, որ էր շիրիմ սուրբ առաքելոյն Թադդէոսի, քանդեցին ըզ

շինուածս տանցն, աւերեցին, կողոպտեցին եւ խապառ կործանեցին ։

Եկեալ էր եւ թագաւորն Հայոց Հեթում առ Բայտուն. և հասաւ յայս տագնապ շփոթի. և կայր ի Մարաղու եկեղեցին, որ կաթողիկոսարանն էր (172). եւ նմա իսկ հասուցին վիշտս․ որ եւ գնաց առ Ղազանն եւ յանդիման եղև նմա, եւ նա ընկալաւ զթագաւորն մեծաշուք պատուով ։ Ապա կացեալ առաջի՝ ծանուցանէր արքայի զանցս աղետից քրիստոնէից․ իսկ նորա ի չքմեղս եղեալ ասէր․ ես ոչ գիտեմ զայդ․ այլ Նաւրուզն գործեաց զամենայն․ եւ հրամայեաց առ ժամայն գրել հրովարտակ ընդ ամենայն աշխարհ զի մի իշխեսցեն ձեռնարկել յեկեղեցիս եւ ի քրիստոնեայս․ այլ խաղաղութեամբ բնակեսցէ ամենայն ոք՝ զիւր հաւատ եւ պաշտօն համարձակ ունելով ։ Եւ յայսմանէ սակաւ մի խաղաղացեալ եղեն հէնք տագնապին ։ Եւ ինքն թագաւորն մեծաւ պատուով եւ չքեղաշուք փառօք դարձաւ անդրէն․ եւ գնաց խաղաղութեամբ յաշխարհ իւր Կիլիկիա ։

Իսկ Ղազանն առեալ զղանութիւնն յ744 թուին յաշունն՝ եւ վարէր ահեղ ուժով եւ ահարկու բռնութեամբ, հզօր եւ բարձր բազկաւ․ եւ կացուցանէր նա ի վերայ ամենայն զօրաց իւրոց եւ աշխարհաց ըղ Խութլուշահն՝ այր բարի եւ հզօր եւ յաղթող ի պա֊

տերադմունս, որ էր յոյժ բարեկամ եւ օգնական քրիստոնէից . որ եւ փեսայացաւ արքային (173) առնելով զքոյր նորա ի կնութիւն . եւ ի սադրելոյ սորա լինէր խաղաղութիւն մեզ եւ ամենայն աշխարհիս Հայոց ։ Բայց անիծեալ եւ արեանարբու գազանն Նաւռուզ գնայր ի կողմն Խորասանայ ի հոգալ զայն աշխարհ . եւ խորհեալ ի միտս իւր կամեցաւ ղաւել հնարիւք զՂազանն, զոր իմացեալ նորա՝ սատակեաց զամենայն ազգայինս, զեղբարս, զորդիս եւ զքնաւրն տոհմն Նաւռուզին ։ Եւ ինքն Նաւռուզն իմացեալ զի յայտնեցաւ վնաս նորա . լինի փախստական ի Ներքսագոյն Խորասան ։ Վասն որոյ գումարեալ զօրս բազումս Խութլուշահն՝ գնաց զկնի նորա, զոր Տէր Աստուած ետ ի ձեռս զանիծեալն զայն . եւ անհետ կորստեամբ ջնջեաց զնա յերկրէ ։ Զի կալան մեծ հրաշիւք ի Հրէ (174) քաղաքի որ անդր է քան ըզ Մավր (175) եւ զՆշաւուր (176) ։ Ընդ որում էին իշխանք մեր Լիպարիտ եւ Ւաչի որք թուք արձակեալ յերեսս Նաւռուզին մեծ անարգանօք ձաղէին ։ Ահա տեսէ՛ք զեղջիւր եկեղեցւոյ եթէ ո՛րպէս մեծագոյն պատուեաց զթշնամին իւր եւ խնդրեաց վրէժ քակտելոյն իւրոյ, զի ոչ տեւեաց իշխանութիւն նորա ամ մի . այլ խսպառ ջնջեցաւ ազգաւ, եւ բարձաւ անուն նորա յայսմ աշխարհէ ։ Գոհութիւն եւ փառք այսպիսի խնամողին զեկեղեցի իւր .

Այլ նախ քան զայս յարեաւ ոմն Ասլան անուն յարքունի ցեղէ․ եւ միաբանեաց ընդ ինքեան բազում զօրս եւ զօրագլուխս․ եւ սկսաւ ի դաշտին Մուղանայ գնալ ի վերայ պալատան ղանին․ եւ անցեալ յայսկոյս Երասխայ զի կուտեսցէ այլ եւս ամբոխս հեծելոց․ զոր իմացեալ Նորա առաքէ ի վերայ Ասլանին զօրս բազումս, որոց զօրագլուխք Ջաւխանն եւ Խուտումչին․ որք եկեալ կռուեցան․ եւ հարեալ զԱսլանն փախստական արարին, և ըմբռնեալ զինքն եւ զամենայն համախոհս իւր՝ առ հասարակ սատակեցին ։ Եւ եղեն բազում արեան ճապաղիք․ սպանաւ եւ վասն այսր պատճառի ի Խորասան Սուքայն՝ եղբօրորդի Ապաղային․ եւ այս այսքան ։ Բայց մանուկ Թագաւորն Վրաց Դաւիթ՝ որդի Դեմետրէի, ի գալն Նաւռուզին եւ ի քակել զեկեղեցիս, երկեաւ եւ գնաց ամենայն նախարարօք եւ ազատագունդ արամբք ի Մեթեւուլէթ (177)․ եւ մտաւ ի բերդնանառիկ որ կոչէր Մուղէ Նախէ (178), այսինքն Ե՛կ եւ տե՛ս ։ Եւ արար Թիկունս զՄեթեւուլքն եւ ըզՓխայքն եւ զամենայն ազգսն շրջակայ ։ Գրաւեաց եւ յինքն զգուռն Ալանաց զոր հինքն Դարիալ կոչէին եւ այժմ՝ Ջասանին կապ ։ Եւ եհան զպահակսն Թաթարին․ եւ նա է մուտն Խազրաց, Ալանաց, Օսից, Խփչաղաց, եւ մեծ արքայութեանն հիւսիսային աշխարհին Բերքայեանց (179)․ որոց էր այժմ ղան

Թաւղամանկոյն եւ Նուխայն՝ (180) Թոռունք Բաթույլին եւ Սարթախին ։

Վասն որոյ բազում դեսպանօք եւ երդմամբ ի խնդիր եղեն, և ոչ լուաւ և ոչ եկն արտաքս ։ Ապա յարուցեալ գնաց բազում զօրօք մեծն Խութլուշահ եւ եմուտ ի Վիրս . եւ նստաւ ի դաշտին Մուխրանայ (181) որ էր մերձ ի բերդն Թագաւորին . եւ ծանեաւ զանառիկ ամրութիւն նորա, եւ կոչէր պատգամաւորօք ի դուրս զԴաւիթ, եւ նա ոչ գայր . այլ խնդրէր պատանդս գրաւական ինքեան . եւ ապա եկեսցէ ։ Վասն որոյ առաքէ զորդին իւր զՇիպաուչին եւ այլ երկս արս ի մեծամեծ պատուաւորացն ։ Իսկ Թագաւորին եղեալ զնոսա ի դիպահոջ՝ գայ առ Խութլուշահն . եւ տեսեալ զնա բազում ընծայիւք՝ առնու եւ ի նմանէ պատիւ եւ պարգևս մեծամեծս եւ ուխտ երդման ոչ նենգել ինքեան ։ Եւ էր այսմ ամենայնի միջնորդ կաթողիկոսն իւր ։ Եւ այնպէս դառնայր ի բերդն իւր եւ արձակէր զպատանդսն ։ Եւ Խութլուշահն դառնայր խաղաղութեամբ եւ մտանէր ի դաշտն Ռանայ ձմերել անդ ։



ՀԱ. — Վասն յետին վերջակայութեան մերոյ նուաստութեանս որ կարգեցաք յեպիսկոպոսութիւն Սիւնեաց. և որ ինչ գրոյցք առ մեօք:

Ես Ստեփաննոս Թարմատար անձամբ եւ եղկելի ոգւով, որոշեալ յարգանդէ մօր իմոյ եւ ընծայեալ ի տուն Տեառն, որդիացեալ մեծի եւ արքայաշուք իշխանին Սմբատայ. ի մօրէ ծնեալ Սիւսական և ի հօրէ՝ Օրբէլեան որ Տարսայիճ կոչի, տիրեալ ի Բաղաց մինչեւ ցԱյրարատ: Իսկ հոգևոր ծննդեամբ սուրբ առաքելին որդիացեալ Տեառն Հայրապետի՝ եպիսկոպոսի Սիւնեաց: Սնեալ եւ ուսեալ առ ոտս աստուածարեալ արանց, կրթեալ ի հրահանգս ընթերցման և երաժշտութեան եղէ փսաղտ և անագանոս ի գաւիթս Տեառն, կոչեցայ ի դպրութիւն և ի սարկաւագութիւն տանն Աստուծոյ. քահանայացայ եւ մանկական տիօք կարգեալ կղերիկոս ահարկու եւ աստուածընկալ բեմին անպատշաճ ոգւով եւ անարի անձամբ, վարժեցայ ի կրթարանի աստուածեղէն տառից՝ սակաւ մի առեալ զճաշակ ռետնի քաղցրութեան առի հրաման յաստուածազգեաց եւ յաշխարհալոյս րաբունապետէն Ներսիսէ. եւ տհաս խակութեամբ նստայ յաթոռ վարդապետական: Ես ինձէն խաւար գոլով՝ կամեցայ այլոց լոյս լինել. ես անմա-

քուր ոգի եւ աղտեղեալ պատկեր՝ սկսայ այլոց քաւչապետել ։

Ես առանց Հոգւոյն կոչման՝ իմով յանդգնութեամբ կամեցայ յառաջ մատչել. ես պատրաստեցի զականջս իմ լսել խաւարահրաւէր բանին « եթէ հանդերձ ոչ ունէիրն ». « եւ ծառայ չար և վատ՝ ». նաև զսարսափելին իսկ, զգեհենածառանգ և զդժոխահրաւէր հրամանն եթէ « Երթ » ։ Եւ ի վերայ այսր ամենայնի այլ ևս յաւելլի յանդգնութիւն զի ժպրհեցայ յաստիճան հայրապետական ։ Եւ ժողովեալ մերոց եպիսկոպոսաց առ հայրն իմ՝ հրաւիրեցին զիս ընթանալ ի թագաւորական աշխարհն Կիլիկիա, առ երջանիկ կաթողիկոսն եւ աստուածապսակ թագաւորն Հայոց առնուլ ձեռնադրութիւն մետրապօլտութեան ի վերայ աթոռոյս Սիւնեաց. զոր եւ յանձն առեալ մեր յիմարութեամբ՝ անգիտացեալ զահարկու եւ անտանելի լծոյս ծանրութիւն, միայն առօրեայ փառօքն հեշտացեալ ախտաւոր մտօք. վասն որոյ երանեմ զչեղեալսն եւ բիւր երանի յարգանդէ վիժելոյն ։

Գնացաք ապա եւ հասաք ի մայրաքաղաքն Սիս. եւ գտաք զհայրապետն փոխեալ յաստեացս. եւ սուգ մեծ եղև մեզ ։ Եւ անտի գնացաք ի միւս քաղաքն յԱդանայ եւ հանդիպեալ թագաւորին՝ գտաք պատիւ ի նմանէ ի վեր քան զարժանն մեր ։ Եւ յա-

մեալ առ Թագաւորին ամիսս երիս՝ մինչև աշխար-հագումար ժողովով ընտրեցին աւուրս 40 այր մի արժանաւոր՝ Կոստանդին անուն, եւ օծին զնա պատրիարք Հայոց ի մեծի ճրագալուցի Զատկին. և ի վաղուեան աւուրն զմեզ իսկ ձեռնադրեցին եւ պսակեցին ընդ սուրբ եւ առաքելական եկեղեցւոյն Սինեաց. եւ պատուեցին մեծամեծ պարգևօք եւ կրկին Թագիւ կարգեալ յաստիճան մետրապօլտու-թեան, եւ կոչիլ պռաւտաւՖրանդէս պատրիարքին Հայոց, այսինքն Նախաթոռ լինել և գլուխ ամենայն եպիսկոպոսաց Հայոց ։ Եւ այնպէս մեծաշուք պատ-ուով դարձաք ի Նոցանէ եւ հասաք յաշխարհս մեր. եւ բազում վիշտս կրեալ յեպիսկոպոսացն որ ի Տա-Թև (մինչև) փոխեցան Նոքա մահուամբ ։ Եւ մնա-ցաք մեք ի դառն և վշտալից կենցաղավարութեանս միապետեալ զքարժանեալ վիճակս աթոռոյս, սահ-մանեցաք մի լինել տուն միաբանութեան զՏաթև և զՆորավանս ։

Բայց վասն հրահոսան Նզովից առաջին կաթողի-կոսացն՝ Տեառն Կոստանդեայ եւ Տեառն Յակոբայ եւ առաջին եպիսկոպոսացն՝ Տեառն Յովհաննիսի եւ Տեառն Ստեփաննոսի եւ Տեառն Սարգսի եւ միւս Տեառն Ստեփաննոսի և Տեառն Գրիգորոյ և Տեառն Սարգսի, որք հաստատեալ էին զՎայոց ձոր բոլոր ժառանգութիւն Նորավանից եկեղեցւոյն, ոչ խախ-

տեսցաք ․ այլ որպէս կալեալ էին մինչև ի մեզ, նոյնպէս կալցին․ եւ զայն բուն աթոռն կալցի եւ մի լիցի երկոցունցս սոցա եպիսկոպոսութիւն եւ մի առաջնորդ եւ իշխեցող ․ եւ ո ոք որ լիցի եպիսկոպոս՝ մի իշխեսցէ երկու ակամբ և երկու մտօք հայել ի սոսա՝ միոյն աւելի խնամ տանելով․ մի լիցի հեռ եւ նախանձ ի մէջ տանս այս․ և բնակիչք սոցա մի իշխեսցեն ասել միմեանց․ եթէ դու Տաթևացի եւ կամ Նորավանեցի․ այլ իբրև մի անձն եւ մի սիրտ եղիցին․ զի և յառաջին ժամանակացն մինչ ի մեզ սոյնպէս էին կացեալ ։ Եւ եթէ փոփոխումն լիցի ժամանակաց, եւ աւեր հասցէ Տաթևոյ՝ զժառանգութիւն այնր եկեղեցւոյ Նորավանից եկեղեցին ժառանգեսցէ․ եւ բնակիչքն անդ բնակեսցեն ։ Եւ թէ Նորավանից հասցէ աւեր՝ զժառանգութիւն և զստացուածըս նորա Տաթևոյ եկեղեցին վայելեսցէ․ եւ բնակիչք նոցա անդ բնակեսցեն ։ Եւ թէ յետ մեր խախտեսցէ ոք զայս վճիռ եւ կամ խորել եւ դաւաճանել խորհի ի միւս կողմանէ՝ անէծս ցաւագինս ժառանգեսցէ՛ ի մէնջ և յամենայն հայրապետաց․ և նզո՛վս առցէ ի սուրբ Երրորդութենէն, եւ մասնակի՛ց լիցի ամենայն չարագործաց ։

Ապա եթէ այլ ինչ հակառակութիւն և չփոթումն զարթիցէ, որպէս եւ մեզ պատահեցաւ, հակառակողքն պարտապա՛ն լիցին անիծից․ եւ ժամանակին

իշխեցողքն տեսցեն զարժանն ։ Դարձեալ ի գալն մեր ի Կիլիկիոյ՝ յետ աւուրց ինչ գնացաք առաջի աշխարհակալ արքային Արղունին. եւ հանդիպեալ նմա՝ ընկալաւ զմեզ եւ յոյժ յարգեաց եւ սիրեաց. եւ մեք ծանուցաք զվիշտս մեր եւ ցուցաք զշրջաբերականն մեր զոր ետ թարգմանել և ընթեռնուլ առաջի իւր ։ Ցուցաք եւ զսիգէլն հայրենեաց մարմնաւոր ժառանգութեանց զոր ետ հայրն իմ. զի հանեալ էր բաժին ժառանգութեան մեզ զվանորայսն իւրոյ իշխանութեանն՝ զՏաթև, զՆորավանս, զՑաղացքար, զԱրատես եւ զայլսն ամենայն. զոր եւ տեսեալ հրամայեաց գրել հրովարտակ հրամանի եւ վերստին հաստատեաց ի մեզ զրովանդակն կրկին իշխանութեամբ հոգեւոր եւ մարմնաւոր. եւ հրամայեաց մեզ կալ եւ օրհնել զեկեղեցին ի դրանն արքունի զոր առաքեալ էր մեծ պապն Հռոմայ (182) ։ Անդ էր և կաթողիկոսն Նեստոր երկոտասան եպիսկոպոսօք, որք եւ օրհնեցաք ի միասին մեծաւ հանդիսիւ ։ Եւ ինքն Արղունն զգեցուցանէր իւրով ձեռամբն զզգեստն հայրապետական, զոր ինքն էր սահմանեալ կաթողիկոսին եւ մեզ եւ ամենայն եպիսկոպոսացն ։ Եւ առեալ ի ձեռն զժամահարն շրջէր ի մէջ բանակին եւ հարկանէր եւ օրհնէր զամենայնն ։

Եւ դարձեալ յետ սակաւուց եկն եւ եպիսկոպոս մի ի նոյն պապէն և մկրտեաց զկրսեր որդի արքային

եւ անուանեաց Թէոդոսիոս, զոր ինքեանք Խարպանդայ (ծառայ Աստուծոյ) կոչէին. և եդ ի գիրկս Փռանգ իշխանին որ Միրզաղ (183) ասէին ։ Իսկ յետ վախճանին սորա թագաւորեաց Քեղաթուն որ կոչէին երնջի թուրնջի, այսինքն գտաք զկորուսեալն ։ Սա որ գնացեալ մեր, եւ ի նմանէ ընկալաք պատիւ որպէս յեղբօրէն. եւ առաք հրովարտակ հրամանի վերստին հաստատութեամբ ։ Ապա յետ այսր ի թագաւորել Ղազանին գնացաք եւ առ նա, և բարձրագոյն ի նմանէ ընկալաք փառս քան յայլոցն, զի ետ կրկնապատիկ ամրութեամբ զնոյն հրովարտակ, եւ հրամայեաց ի շրջելն մեր զխաչ զառաջեաւ ունիլ եւ բարձրագոյն շրջեցուցանել. շնորհեաց և մեզ փայիզայ ոսկի, որ էր տախտակ ի չափ թզոյ միոյ եւ կիսոյ գրեալ ի վերայ զանուն Աստուծոյ եւ Ղանին եւ այլ սակաւ բանք ։ Եւ մեք տեսեալ զանակնկալի (անակնունելի) ողորմութիւնն՝ փառս և գոհութիւն արարչին վերընծայեցաք. եւ այնպէս եկեալ ի տուն կայաք հաստատութեամբ ։

Ապա սկիզբն արարեալ մեր շինութեան սուրբ եկեղեցւոյն ի Տաթեւ որ յանուն սրբոյն Գրիգորի Լուսաւորչին, զի փլեալ էր եւ քակտեալ մինչեւ յատակն ։ Եւ այս երրորդ անգամ էր շինութիւն սորա զի զառաջինն շինեցաւ ի Փիլիպպէ իշխանէն ի ժամանակս Տեառն Դաւթի՝ եպիսկոպոսի Սիւնեաց. և

երկրորդն շինեցաւ ի Տէր Յովհաննիսէ հրամանաւ Սմբատայ Թագաւորի, եւ երրորդս այս զոր մեք սկսաք, զոր եւ շնորհօքն Աստուծոյ հաստահեղոյս քարամբք եւ գեղեցկատեսիլ ձեւով յարմարեցաք ըղ շինուած նորա։ Բայց ի քակելն մեր զսակաւ մնացորդ հիման հիւսիսային սեանն՝ գտաք զանպատմելի զանձն աստուածային՝ զնշխար սրբոյն Գրիգորի Լուսաւորչի զգագաթան մի կողմն և զբարամն (184) աջ բազկին եղեալ ի փոքրիկ սնդուկ փայտեայ եւ կուպրեալ եւ մատանեալ կապարեայ կնքով։ Ընդ որ մեծապէս խրախացաք եւ բազում գոհութեամբ փառաւորեցաք զԱստուած. եւ յետ շինուածոյն եդաք ի նմին խորանի ի պատշաճաւոր տեղի անյայտ ի մարդկանէ։

Եւ առեալ մեր յեղբօրէն մերմէ յԵլիկումէն վասն բաժնի ժառանգութեան զգիւղն Արիտ, որ վաղ ժամանակօք յափշտակեալ էր ի սուրբ եկեղեցւոյն. եւ նորին յօժարութեամբ դարձուցաք անդրէն եւ տուաք ի մեր շինեալ եկեղեցին ի սուրբ Գրիգորն, և գրեցաք յիշատակ անջնջելի մեզ եւ ի հաստատութիւն գեղոյն Արիտայ զի յետ մեր մի ոք իշխեսցէ յափշտակել զնա ի սուրբ եկեղեցւոյն, եւ խափանել զմեր յիշատակն, մի փոխել, մի վաճառել, մի գրաւական դնել, մի եւ այլ ինչ պատճառաւ դաւաճանել ի մերոց կամ յօտարաց, յաւագաց կամ յեպիս-

կոպոսաց. եւ թէ յանդգնի ոք՝ ընդ սատանայի յանդո՛ւնդս կործանեսցի, ընդ Կայենի եւ Յուդայի եւ Արիոսի դատապարտեսցի, ընդ Սոդոմա՛յ եւ Գոմորա՛յ տամբ և զաւակօք հրոյն անշէջ ճարակ լիցի, ընդ Ներոնին աններելի դատաստանաւ պատուհասեսցի. եւ թէ տաճիկ իշխանութիւն փոխի, եւ յափշտակել ջանայ՝ յԱստուծոյ ամենակալէն նզովեա՛լ լիցի. եւ յիւր փեղամբարէն Մահմետէ և յօրինաց նորա ազգզա՛ր եղիցի. ընդ բուտփարիստն (գիցապաշտ) եւ ընդ ախթաշփարիստն (կրակապաշտ) կորիցէ՛ եւ ի դժո՛խս իջցէ. իւր հաւատն նմա հարամ եղիցի: Եւ եղեւ այս ի Թուականիս 746 :

Դարձեալ յառաջ քան զայս բերեալ էին ի գաւառէն Արձախայ զհրաշագործ նշանն աստուածընկալ խաչի. որոյ համբաւ մեծամեծ հրաշիցն եւ զարմանագործ սքանչելեացն սփռեալ էր ընդ ամենայն աշխարհս: Եւ էր նա ի կենսակիր փայտէն որ ունէր յինքեան նիշ արեան ներկեալ յաստուածային կողիցն հօսմանէ, եւ պնդեալ յոսկում դուզնաքեայ պահարանաւ: Եւ ունէին զնա հայրենեօք թոռունքն Դլենայ իշխանի, ա՛յն որ ունէին եկեղեցի եւ բազում միաբանութիւն ի Տաթև. բայց զպատճառ գնալոյ աստուածընկալ սուրբ խաչին ի Խաչէն այսպէս լուաք ի ստուգագէտ արանց. եթէ միայնաւոր ճգնաւոր մի յանծանօթ աշխարհէ, որ շրջէր ի պատճառս աղօ-

թիցս, պատահեցաւ ի գեօղն Դլենայ ի մէջ ձմերան անելով ի մաղախն զայն աստուածեղէն եւ անկշիռ գանձ ։ Եւ օթեւալ ի տան երիցուն տայ զմաղախն ցտիրուհին եւ ասէ. դի՛ր զդա ի սուրբ տեղի մինչեւ երթիցեմ. և էր օրն ճրագալոյց Յայտնութեան. եւ մանուկ տղայ մի երիցուն մեռեալ էր ի գիշերին, եւ ոչ հանին ի լոյս վասն տօնին ։ Ապա տարեալ կնոջն այն զմաղախն միայնակեցին դնէր ի սնարս մեռելոյն. և այն ինչ յետ երեկոյեան պաշտամանն կատարման մինչ սակաւ մի ննջեցին՝ կենագործեալ կենսատու փայտին զմեռեալ մանուկն՝ սկսաւ աղաղակել առ մայրն ։ Իսկ մայրն զարթուցեալ ի քնոյն եւ զարհուրեալ՝ զարթոյց զերէցն. եւ գնացին ի ներսատուն. տեսին յարուցեալ զտղայն եւ նստեալ խաղայր ընդ մաղախին. և բազում ժամս յահի եղեալ ապշեցան. և ոչ գիտէին զիրն ։

Իմացեալ ապա ճգնաւորին՝ էառ զմաղախն ի ծածուկ մինչդեռ ասպնջականքն յիմարեալ կային. եւ գնաց փախստական ։ Որք եւ ուշաբերեալ ծանեան զբանն. եւ ելեալ ճիչ բարձին առ տէր գեղջն եւ պատմեցին զեղեալ հրաշսն ։ Եւ անկաւ աղաղակն ի շէնն և ամենեքեան գան ի տես մանկանն ։ Եւ յարուցեալ Դլենայ ծառայիւք եւ շինականօք պնդեցաւ զկնի միայնակեցին ի կողմն Ազունոյ գետին ։ Իբրև իմացաւ նա եթէ՝ պնդեալ են զհետ իւր, եհան զփոք-

բագոյն մասն փայտին ի պահարանէն՝ եդ ի կրկնուածըս կնգղոյն զոր ունէր. եւ զպահարանն ընկէց ի թուփ մի սալորի ի մէջ մացառախիտ մայրեաց. եւ ինքն գնայր: Եկին ապա արքն այնոքիկ եւ հասին ի տեղին յայն. տեսին յանկարծակի ի մէջ ձիւնատարած սառնամանեացն զթուփն զայն փթթեալ գեղեցիկ ծաղկօք և կանաչացեալ սաղարթօք. և բուրէր հոտ աննման. և ի մեծի հիացման եղեալ՝ կարծեցին անդ պահեալ զխաչն:

Իբրև տեսին եւ նշմարեցին զտեղին՝ գտին ի մէջ թփոյն զոսկի պահարանիկն դատարկ, եւ պնդեցան զհետ և հասին նմա յեզր գետոյն Աղունոյ: Դարձաւ միայնակեցն և տեսաւ զնոսա. և զչարեալ ի միտս իւր, եհան ի կնգղոյն զփայտն և ընկէց ի մէջ գետոյն. զոր եւ ըմբռնեալ արանցն տանջեցին սաստկապէս. եթէ ու՛ր ի մեզ զփայտն. և բացեալ զմաղախն ոչ ինչ գտին, և մերկացուցեալ զխոշոր քրձիկն՝ տեղեկացան, և ոչ երևէր: Ապա հայեցան ի գետն, տեսան յերկուս ճեղքեալ զբազմութիւն ջուրցն և զմասնն ի մէջ ցամաքին, և բոց բորբոքեալ ցոլանայր ի վեր. և հոտ զարմանալի իբր ծուխ թանձր ցնդէր ի տեղւոյն: Լցան արքն ահիւ և խնդութեամբ, դողային և ցընծային խայտալով ընդ գիւտ անգին եւ անհամեմատ մարգարտին. եւ մտեալ ի ջուրն առին զփրկական փայտն. և եդեալ ի պահարանին բերին ի տուն իւր-

եանց ։ Եւ միայնակեացն գնայր զկնի ողբալով եւ բաղխելով զկուրծս. և մինչ յուսահատեցաւ՝ անէծ չարաչար զտունն Դլենայ, և անց գնաց ։

Եւ յայնմ օրէ եւ յապա լինէր այն հայրենիք այնմ ազգի պատուեալ և մեծարեալ պատարագօք յիշխանաց և յաշխարհաց. և յետոյ աստուածասէր և բարեպաշտ մեծ իշխանաց իշխան Ջալալ շինէ եկեղեցի մի Գփշերաձոր անուն. եւ կազմէ պահարան յարծաթոյ. եւ անդ բնակեցուցանէ ։ Ահա զայսպիսի աստուածահրաշ նշան վերին ակնարկմամբն բերին յիշխանութիւնս մեր նեղեալ տեարք նորա յաւերմանէ գաւառին իւրեանց եւ ի դառն եւ վերջին աղքատութենէ ։ Որք եկեալ բնակեցան առ մեօք. եւ սակս չարաչար կարեաց իւրեանց, որ էին պարտական այլազգեաց և կամէին գերի վարել, և տագնապէին ի դառն եւ յանհնարին աղքատութեանց, ծախեցին մեզ զխաչն Թոռունքն աւագ Դլենեանց, որոց աւագն Հասան անուն այլ ևս երկու եղբարք. և առին ի մէնջ զգինն լիով և անթերի՝ հինգ հարիւր դահեկան որ լինի 5000 դրամ, և այլ բազում պարգեւս ձիոց և եզանց և հանդերձից ։

Զոր և մեք առեալ դարձուցաք առ տեարսն զպահարանն ի 1000 դրամի հաշիւ ո՛չ ի գինն այլ պարգեւք. և առաք զվճիռ գին ու ծախոյն անխափան պայմանաւ և կտակ յաւիտենական բազում վկայիւք ։ Եւ

վերստին կազմեցաք պահարանս յոսկւոյ եւ յարծաթոյ, եւ յօրինեցաք նախ զխաչն ոսկի ընտիր սոփեքական ունելով ի պատուանդանն խնձոր ոսկի ըստ քառակերպեան կենդանեացն եւ փողս, եւ եդաք ի վերայ ակունս ի յոյժ մեծագնոյ թուով հինգ ի ծիրանատեսիլ շափիւղայից. և ի մէջ ականցն մարգարիտս 4 մեծագին յառաւել պատուականաց. և եդաք ի ներքոյ միջի ականն զփայտն փրկական. որ ունի գիր մանրատեսակ շուրջ զականակապծօքն, և գրեցաք ի թիկանց կուսէ նշան բանից «այս աստուածընկալ սուրբ նշանս կազմեալ ի Տէր Ստեփաննոսէ՝ Միւնեաց եպիսկոպոսէ, բնակեսցէ՛ յաւիտեան ի սուրբ եկեղեցւոջս Նորավանից»։ Նմանապէս ետու կազմել եւ զմեծագոյն պահարանն յոսկւոյ եւ յարծաթոյ ի ձեւ աղիւսակի գեղեցիկ յօրինուածովք եւ երկրայիկ դրամբք. և սեպհականեցաք զնա Նորավանից սուրբ եկեղեցւոյն. եւ գրեցաք ի նմա յիշատակարան մեզ այսու օրինակաւ։

«Ցամս կործանման աշխարհիս Հայոց, ի դառն և ի դժնդակ ժամանակիս, յորում էր թուականն 743, ի 15 յորելենիս, յաշխարհակալութեան Քեղաթու ղանին, ի կաթողիկոսութեան Հայոց Տեառն Գրիգորի և ի թագաւորութեանն Վրաց Դաւթի, յիշխանութեան այսմ նահանգի ամենօրհնեալ զարմիցն Էլիկումին եւ եղբարց իւր, ես յոգնամեղ պարտաւորս

Տէր Ստեփաննոս՝ Սիւնեաց եպիսկոպոս, որդի մեծափառ իշխանին Տարսայիճին. առաջնորդ վանեմական և աշխարհադէտ տանցս Տաթևոյ և Նորավանից՝ վերին տեսչութեամբն պատուհեալ անպատում պարգևացս աստուածընկալ սուրբ նշանիս. և տեսեալ ի սմա զներկուած արեանն Յիսուսի, զոր բերեալ էին ի գաւառէն Արձախայ, եռաց զիս տարփումն սաստիկ և գնեցի զսա ի բուն հայրենատէրանցն՝ ի Թոռանցն Գլենայ 500 դահեկանի միագլուխ զատ ի յայլ բազում պարգևացն, զոր վասն դառն և չար կարեացն և պարտուցն իւրեանց մեծայօժար կամօք ծախեցին մեզ: Եւ մեք առեալ զարդարեցաք յոսկւոյ սրբոյ և յականց պատուականաց նախ՝ զխաչն և ապա զպահարանն, ի յոյս եւ ի բարեխօս առ Քրիստոս վասն եղկելի հոգւոյս. Թերևս գտից ողորմութիւն յանաչառ ատենին: Եւ ընծայեցի զսա սուրբ և գերափառ ուխտիս Նորավանից հայրենի դամբարանիս մեր: Թէ ոք նենգել կամ հանել ջանայ զսա աստի՝ ընդ Կայենի և Յուդայի և Արիոսի դատեսցի. յերկնաւորաց և յերկրաւորաց եւ յամենայն սրբոց նզովեալ եղիցի ի մահ և ի կեանք. և մեր մեղացն պարտական եղիցի:

Արդ՝ յիշեցէ՛ք զիս և զեղբարսն իմ զարի և զհզօր իշխանսն զՇմիկումն և զԼիպարիտն և զայլ եղբարսն և զբարի քոյրն իմ զՄամքանն. և դուք յիշեալ լիջիք ի Քրիստոսէ Աստուծոյն մերոյ. ամէն »:

Ցայսմ աւուրս էր այր մի մեծազգի Ամիրայ անուն բընակեալ Հայրենեօք ի գեղն Աւափայ, որդի Ջուրջին, թոռն իշխանացն Կապանեցի զոր Մաշեանեանք կոչէին. գնէ զԱղթայ այգին որ յԱւափայ ի մեծ իշխանէն Տարսայիճէն, որ էր եւ նոցա գնուածք ի բուն Հայրենատէրանցն, և տայ ի գինն 4,000 դրամ: Եւ միաբանեալ սուրբ եկեղեցւոյն Նորավանից՝ աւանդեաց ի ձեռս մեր. եւ ետ գրել արձան յաւիտենական զի մի ոք իշխեսցէ հանել զնա ի սուրբ ուխտէն. եւ կարգեաց նզովս մեծամեծս : Վասն որոյ եւ մեք սահմանեցաք նմա հինգ պատարագ յամենայն ամի անխափան կատարել : Նաև ի հին աւուրց տուեալ ի վանսն զՊայեկլի քարոյ այգին հոգեցատուր Ախթամարեանց եւ այլոց ոմանց. եւ արձանագրով եւ նզովիւք հաստատեալ զի մի ոք հակառակեսցի :

Գնեցաք եւ մեք ի միջոցին գյուղ մասն ի հայրենատէրանցն ընդ 2,500 դրամի եւ բոլորեցաք զայգին ի բոլոր Ծակուտ քարէն մինչ ի վեր խոպառուած այգւոյն որ մեծ սալն է : Նառուն եւ հոգեցատուր այգի մի ի Կամրջայ խնլիս եւ այլ բազում հայրենիս՝ հողս եւ տունս. շինեալ էին եւ երկու ակն ջրաղացս առ կամրջին. եւ այս ամենայն հայրայ եւ անխախտ հայրենիք էր և ժառանգութիւն սուրբ եկեղեցւոյն Նորավանից ոչ ի զրկմանէ եւ յափշտակութեանց.

այլ էր որ հոգեպաստուր էր և էր որ զանձազին եպիս-կոպոսաց և իշխանաց. զոր չունի ոք հրաման յաւա-գաց կամ ի ձեռնաւորաց ո՛ ոք և լիցի իշխան, ի վերայ այս գեղջս Աւփայոյ, եւ կամ յազատաց եւ տանու-տերաց տեղւոյս հակառակ կալ եւ կամ յափշտակել ջանալ եւ կամ այլ ինչ դաւ եւ զրկանք խորհիլ կամ վասն ագահութեան կամ վասն նախանձու կամ վասն այլ պատճառի յայս ժառանգութեանս ։ Ապա թէ յանդգնի ոք և լրբենի դիմօք ձեռնարկէ ինչ՝ Հայ-րն Աստուած զհայր նորա նզովեսցէ, եւ Որդին Աստուած զորդիս նորա նզովեսցէ. միասնական սուրբ Երրորդութիւնն զմարմին նորա նզովեսցէ. և ամենայն անէծք մարգարէականք եւ առաքելականք եւ հայրապետականք ի վերայ գլխոյ նորա եւ տան նորա եկեսցեն. ջնջեսցի յիշատակ նորա յերկրէ. և ինքն անքուն որդանցն և անշէջ հրոյն ճարակ եղիցի. իսկ հնազանդքն եւ օգնականքն եւ աւանդապահքն օրհնեալ եղիցին յԱստուծոյ եւ յամենայն սրբոց ։ Եւ թէ տաճիկ իշխանութիւն փոխի. եւ նա նենգել եւ բռնաբարել եւ յափշտակել խորհի՝ յԱստուծոյ և յիւր Մահմետէն ապիզա՛ր լիցի. եւ իւր կնոջն հա-րամ եղիցի. եւ 100,000 նալա՛թ ի վերայ նորա եւ ազգի նորա եւ զաւակաց նորա եղիցի մինչ ի 1000 ամն ։

Դարձեալ՝ և այժմ զիմոյ հէգ եւ թշուառ անձինս

կարգեցից աստ յիշատակ հոգւոյ անջինջ արձանի ։ Վասն որոյ մաղթեմ մեծայոյս թախանձանօք զյոյսն հասարակաց որ Տէրն է հոգւոց և Աստուած բոլորից զի ընկալցի զաս ընդ խերեւէշ այրւոյն. և ընդ շանցն մուրողաց ոչ խնայեսցէ եւ ինձ զսակաւիկ փշրանսն ։ Արդ՝ ստացայ ինձ յիշատակ զեկեղեցիքս Նորավանից, եւ արարի ինձ միջնորդ եւ բարեխօս առ Քրիստոս զաստուածակիր սուրբ նշանքս, զաւագ խաչս աստ ածընկալ զոր իմով ձեռամբս կազմեցի ։ Եւ ընծայեցի ի սոսա զիմ հալալ հայրենիքն և զգանձագին զիւղն Զուայ իւր ամեն սահմանօքն, հողով և ջրով եւ այգեստանեօք եւ բոլոր բնակչօք, զոր գնեալ է իմ յիմ եղբօրէն Ջալալէն ազատ յամենայն հարկաց եւ ի դիւանէ անդաւի (անվիճելի) եւ անհաւչխ յամենայն կողմանց, յեղբարց եւ յաւագաց. եւ տուեալ նաք ի գինն 21,000 դրամ. եւ զգիւղն Արասաշէն եւ զսուրբ Սահակ, որ իմ հայրենաքաժին էր ի մեր հալալ ընչից եւ հայրենեաց ։

Եւ արդ՝ մի ոք իշխեսցէ իշխանութիւն վարել ի վերայ այս շինոյս. եւ կամ հարկ կամ դիւան կամ մալ կամ այլ ինչ դնել ի վերայ. այլ միայն իշխեսցեն առաջնորդք սուրբ ուխտիս Նորավանից եւ վայելեսցեն ժառանգաւորք տանս եւ սպասաւորք սրբոց նշանացս, եւ զմեզ աղօթիւք եւ պատարագաց հանապազ հաղորդս կալցին ի սուրբ եկեղեցիս ։ Դարձեալ՝

վասն տօթոյ տեղւոյս որ յամարայնի չկարէին բնակել եպիսկոպոսքն եւ սպասաւորքն, սահմանեցաք զԱրատեսի վանքն որ ի վերոյ Եղեգեաց. եւ տուաք ամենայն հաստատութեամբ զվանքն եւ զգիւղն իւր ամենայն շրջակայ սահմանօքն եւ հոգեցատուր ժառանգութեամբքն ի սուրբ եկեղեցիս. զի սոքա կալցին հայրենեօք և վայելեսցեն զնա. բայց շինութեան տեղւոյն եւ լուսաւորութեան եկեղեցւոյն ամենայն ջանիւ փոյթ տարցեն որպէս այսմ տան: Դարձեալ՝ եւ ետու զՔարկոփ իւր ամենայն սահմանօք ի վայելումն եւ ի ժառանգութիւն առաջնորդաց տանս եւ այլ եղբայրութեանս:

Եւ յայսմ հետէ մինչև յաւիտեան հաստատ հայրենիք լիցի նա սուրբ եկեղեցւոյս Նորավանից. եւ թէպէտ ժառանգաւորք սոքա լիցին. այլ զշինութենէ վանիցն եւ զլուսաւորութենէ եկեղեցւոյն մի՛ անփոյթ արասցեն, այլ ամենայն ջանիւ հոգասցեն որպէս զսեպհական տանէ: Եւ արդ՝ մի՛ ոք իշխեսցէ այսմ հակառակել, կամ ինչ եւ իցէ պատճառաւ խափանել խորհիլ. եւ քակտել զիմ ընծայեալ հոգեցատուրս ի սուրբ եկեղեցւոյս Նորավանից զի գեօղն Ջուայ իմ գանձագին էր. և Արատէս եւ Քարկոփն՝ իմ հալալ հայրենաբաժին, որ ո՛չ աւագի եւ իշխեցողի, ո՛չ այլ ումեք ոչ ինչ հաշիւ կայր ի ներս: Եւ թէ յանդգնի ոք՝ ի սուրբ Երրորդութենէն նզովեալ

եղիցի ի մահ եւ ի կեանս. եւ ամենայն անէծք որ յօձէն մինչեւ ի Նեռն կայ ի վերայ ամենայն չարագործաց, ի վերայ նորա եղիցին, ընդ Յուդայի մատնչեցելոյ, եւ ընդ ուրացող Վասակայ որդնալից սատակեցելոյ. մեր մեղացն ու խղճին պարտապան եղիցի եւ յաւիտենական հրոյն մատնեսցի. իսկ կամեցողք եւ հնազանդքն օրհնեալ լիցին յԱստուծոյ և յամենայն սրբոց նորա։

Եւ թէ տաճիկ իշխանութիւն փոխի. և յաւիշտակել ջանայ. ինքն յԱստուծոյ եւ յիւր փեղամբարէն ապիզար եղիցի. եւ տամք եւ զաւակօք յանդունդս կործանեսցին, 100,000 նալաթ ի նորա վերայ եղիցին։ Եւ արդ՝ մինչ կարգեցաք զայս յիշատակ, եւ հաստատեցաք զայս հոգեցատուրս, ապա ժառանգաւորք տանս մեղէն եղբայրութեանս համակամ սիրով սահմանեցին մեզ յիշատակ ի սուրբ եկեղեցւոջս մի քառասունք պատարագ Ցինանցն. եւ զկնի Արկնազատկին մինչ ի Հոգեգալուստն յամենայն աւաւօտու Ամբիծք եւ աւետարան հանգստեան յիշում դամբանի. եւ զօր մեծի տօնախմբութեան սուրբ Պենտեկոստէին առնեն մեզ յիշատակ հոգեհանգիստ զենմամբ զուարակաց եւ գառանց, եւ առատ ռոճկօք կերակրոց եւ ըմպելեաց լցուցանեն զպէտս աղքատաց եւ կարօտելոց. եւ յայն օր յամենայն եկեղեցիքս պատարագ մեզ արասցեն եւ

խնդրեսցեն յԱստուծոյ Հոգւոյն զենմամբ Փառակցին Թողութիւն մեր մեղաց եւ փչրանս ողորմութեան, Թերեւս կարասցիս ապրել յանհաւոր ամօթոյ անհեղ հրապարակին ուր բանքն սպառին եւ գործքն Թագաւորեն։

Բայց Թէ ոք յառաջնորդաց եւ յեպիսկոպոսաց տեղւոյս կամ ի փակակալաց, կամ յայլ ժառանգաւորաց տանս ծուլանան կատարել զմեր յիշատակդ կամ նախանձին. կամ պատճառեն պատճառս ինչ՝ որչափ եկեղեցիքս ի հաստատութեան եւ իշխնութեան են, մասն նոցա եւ բաժին ընդ Յուդայի եւ ընդ աստուածասպան քահանայիցն եղիցի. ի սուրբ Երրորդութենէն որոշեալ լիցին, եւ մեր անհուն եւ ծովացեալ մեղացն պարտապան եւ պատասխանատու եղիցին. իսկ կատարիչքն օրհնեալ եղիցին եւ ընդ ամենայն սուրբս մասն եւ վարձ ընկալցին. ամէն։

Եւ արդ՝ աստանօր ո՜վ եղբարք՝ յիշեմ և զխոցուած լերդի իմոյ զի սակաւ մի յառաջ քան զգծագրութիւն տառիս հասաւ մեզ սուգ անվերանալի զի կրսեր եւ սիրելի եղբայրն իմ Փախրադուլայն ի զարդ և ի գեղ մանկական հասակի՝ մինչ տէգ մօրուացն փաղփեալ լինէր Թխատիպ տեսակաւ չուրջ բոլորեալ զպատշաճագեղ ծնօտիւքն. և սիրտ նորա զուարճ խնդամըտական խորհրդօք ի վայելս քաղցրագրօս կենցաղոյս.

և կամք նորա ի վազս եւ ի թիռս իշխանաշուք փա-
ռաց՝ յանկարծակի հասեալ օրհասն կենաց՝ խզեաց
զբոյսն քաջուղէշ, եւ խլեաց զտունկն ծաղկափթիթ.
եբարձ տարաժամ զբաղձալին ինձ ։ Որ եւ հրաժա-
րեալ ի մէնջ գնաց յաստեացս առանց իրիք յիշա-
տակի. զոր եւ տարեալ եդին ընդ հօրն իւրում ի
տապանի ։ Որում Տէրն իմ Յիսուս փոխանակ աստի
զրկանացս անդ ողորմեսցի եւ անտէ՛ս արարեալ
զմեղսատեսակ կիրս մարմնոյ նորա՝ զուարճացուսցէ
ի վայելսն անմահական եւ յուրախութիւնսն անզը-
րաւական. ամէն ։ Եւ այժմ ահա ո՛վ ընթերցասէր՝
պատշաճ համարիմ յաւարտման մատենիս դնել նախ
զանուանս եւ զկարգ եպիսկոպոսացն Սիւնեաց, եւ
ապա իբր զմանեակ ոսկի ի պարանոց եւ կամ կնիք
թագաւորական ի վերայ պատուական գանձուց,
կարգել զանուանս սուրբ եւ երջանիկ հայրապե-
տացն Հայոց ի գլուխ կատարման շինուածոյս մե-
րոյ. զի յԱստուծոյ սկսեալ եւ յաստուածազգեաց
սուրբսն պա՛րտ է յանգեցուցանել ։



*ՀԲ. — Եպիսկոպոսք Սիւնեաց. ամք և թիւք նոցին. առաջին եպիսկոպոս ձեռնադրեալ ի սրբոյն Գրիգորէ ։*

| | | |
|---|---|---|
| 1. | Տէր Գրիգորիս՝ ամս | 46. |
| 2. | Տէր Մաշտոց՝ ամս | ». |
| 3. | Տէր Անանիա՝ ամս | 42. |
| 4. | Տէր Նուն՝ ամս | 8. |
| 5. | Տէր Գաղատ՝ ամս | 17. |
| 6. | Տէր Մուշէ՝ ամս | 36. |
| 7. | Տէր Երիցակ՝ ամ | 1. |
| 8. | Տէր Մակար՝ ամս | 28. |
| 9. | Տէր Պետրոս՝ ամս | 10. |
| 10. | Տէր Գիգան՝ ամս | 3. |
| 11. | Տէր Վրդանէս՝ ամս | 23. |
| 12. | Տէր Գրիգոր՝ ամս | 15. |
| 13. | Տէր Քրիստափոր՝ ամս | 10. |
| 14. | Տէր Դաւիթ՝ ամս | 27. |
| 15. | Տէր Մաթուսաղայ՝ ամս | 18. |
| | Ընդմէջ ամս | 8. |
| 16. | Տէր Աբրահամ՝ ամս | 30. |
| 17. | Տէր Յովսէփ՝ ամս | 19. |
| 18. | Տէր Յովհան՝ ամս | 22. |
| 19. | Տէր Մովսէս՝ ամս | 7. |

20. Տէր Անանիա՝ ամս 7.
21. Տէր Յովհան՝ ամս 9.
22. Տէր Ստեփաննոս՝ ամ 1.
23. Տէր Յովսէփ՝ ամս 17.
24. Տէր Յովակիմ՝ ամս 17.
25. Տէր Սաղովկ՝ ամս 32.
26. Տէր Յովհաննէս՝ ամս 2.
27. Տէր Սաղօմօն՝ ամս 7.
28. Տէր Եղիա՝ ամս 8.
29. Տէր Թէոդորոս՝ ամս 18.
30. Տէր Գէորգ՝ ամս 8.
31. Տէր Դաւիթ՝ ամս 17.
32. Տէր Յովհաննէս՝ ամս 10.
33. Տէր Սաղօմօն՝ ամս 17.
34. Տէր Յովհաննէս՝ ամս 33.
35. Տէր Յակոբ՝ ամս 41.
36. Տէր Վահան՝ ամս 6.
37. Տէր Աշոտ՝ ամս 17.
38. Տէր Յովհաննէս՝ ամս 6 և կէս.
39. Տէր Աշոտ նոյն՝ ամս. 5 և կէս.
40. Տէր Սամուէլ՝ ամս 3.
41. Տէր Յակոբ՝ »
42. Տէր Գրիգոր՝ »
43. Տէր Յովհաննէս՝ ամս 50.
44. Տէր Գրիգոր՝ ամս 58.

45. Տէր Ստեփաննոս՝ ամս 27.
46. Տէր Բարսեղ՝ ամս 5.
47. Տէր Գրիգոր՝ ամս 20.
48. Տէր Ստեփաննոս՝ ամս 46.
49. Տէր Յովհաննէս՝ ամս 38.
50. Տէր Հայրապետ և
51. Տէր Սաղօմոն՝ ամս 20.
Իմիասին՝ ամս 40.
52. Տէր Յովհաննէս՝ ամս 3.

Իսկ որք նստան ի Նորավանս ի նոյն ցեղէ աթոռակալք ։

1. Առաջինն՝ Տէր Յովհաննէս Կապանեցին.
2. Տէր Ստեփաննոս՝ որդի Տեառն Գրիգորի.
3. Տէր Սարգիս՝ ամս 20.
4. Տէր Ստեփաննոս՝ ամս 20.
5. Տէր Գրիգոր՝ ամ 1.
6. Տէր Սարգիս՝ ամս 24.

Եւ այս միաբանեալ զերկոսին աթոռսն.

53. Տէր Ստեփաննոս՝ եպիսկոպոս Սիւնեաց և Նորավանից՝ եօթներորդ (185) ։

Արդ՝ սորոյ աթոռոյս ի բոլոր թէմի եղեալ վանք եւ անապատք են սոքա. Մեղրոյ սուրբ Յովհաննէս

անուն վանքն․ Մեծ անապատն արանց․ Հարանց անապատն արանց․ Ծնձերու Աստուածածին անապատն կուսանաց․ Հալիձորու անապատն կուսանաց․ Մանկեւու ամենափրկչի անապատն կուսանաց․ Գանձասարախու վանքն․ Կարճևանու սուրբ ուխտն․ Յովհաննու և Ծիծեռնակու սուրբ վանքն ։



Կաթողիկոսք Հայոց․ ամք եւ թիւք նոցա ։

1. Սուրբն Գրիգոր Լուսաւորիչ ամս 30.
2. Արիստակէս 7.
3. Վրթանէս 15.
4. Յուսիկ 6.
5. Փառներսէհ 4.
6. Սուրբն Ներսէս 20.
7. Շահակ 4.
8. Զաւէն՝ եղբայր Շահակայ 1.
9. Ասպուրակէս՝ եղբայր սոցա, 3.
10. Սուրբն Սահակ 51.
11. Յովսէփ (186) 12.
12. Գիւտ (187) 10.
13. Յովհան Մանդակունի 6.
14. Բաբգէն 5.

15. Սամուէլ 10.
16. Մուշէ 8.
17. Սահակ (Բ) 5.
18. Քրիստափոր (Բ) 6.
19. Ղեւոնդ 3.
20. Ներսէս (Բ) 9.
21. Յովհաննէս (Բ) 17.
22. Մովսէս 44.

*Ի սրբոյն Գրիգորիսէ մինչեւ ի 4 ամն Մովսիսի, ուր եղաւ թուականն Հայոց՝ ամք 249. եւ յինէն թուականին եղաւ հինգհարիւրեակն. ի Քրիստոսէ ամք 553 ։*

23. Աբրահամ՝ (Ա) ամս 23.
24. Յովհան (Գ) ամս 16.
25. Կոմիտաս 8.
26. Քրիստափոր (Գ) 3.
27. Եզր 11.
28. Ներսէս (Գ) 21.
29. Անաստաս 6.
30. Իսրայէլ 10.
31. Սահակ (Գ) 26.
32. Եղիա 14.
33. Յովհան Օձնեցին (Դ) 11.

| | | |
|---|---|---|
| 34. | Դաւիթ (Ա) | 12. |
| 35. | Տրդատ (Ա) | 23. |
| 36. | Տրդատ (Բ) | 3. |
| 37. | Սիոն | 8. |
| 38. | Եսայի | 13. |
| 39. | Ստեփաննոս (Ա) | 2. |
| 40. | Յովաբ ամիս | 6. |
| 41. | Սողոմոն | 1. |
| 42. | Գէորգ (Ա) | 3. |
| 43. | Յովսէփ (Բ) | 11. |
| 44. | Դաւիթ (Բ) | 27. |
| 45. | Յովհաննէս ի Կոտայից (Ե) | 22. |
| 46. | Զաքարիա ի Ձագայ (Ա) | 21. |
| 47. | Գէորգ (Բ) ի Գառնւոյ | 21. |
| 48. | Մաշտոց ի Սեւանայ ամիս | 7. |
| 49. | Յովհաննէս (Զ) պատմագիր | 27. |
| 50. | Ստեփաննոս (Բ) | 1. |
| 51. | Թէոդորոս (Ա) | 10. |
| 52. | Եղիշէ (Ա) | 7. |
| 53. | Անանիա | 22. |
| 54. | Վահան | 2. |
| 55. | Ստեփաննոս (Գ) | 2. |
| | Անկաթողիկոս | 1. |
| 56. | Խաչիկ (Ա) | 19. |
| 57. | Սարգիս (Ա) | 27. |

58. Պետրոս (Ա) 40.
59. Խաչիկ (Բ) 6.
60. Գրիգոր (Բ) 40.
61. Բարսեղ (Ա) 24.
62. Գրիգորիս (Գ) 53.
63. Ներսէս (Գ) 7.
64. Գրիգոր (Գ) 20.
65. Եղբօրորդի սոյին Գրիգորիս (Ե) 1.

*Սա արգելեալ իբերդն Կոպիտառայ՝ ի գիշերի կախեալ ընդ պարիսպն՝ անկաւ եւ մեռաւ ։*

66. Գրիգորիս (Զ) ապիրատն 7.
67. Յովհաննէս (Է) մեծաբարոյն 18.
68. Կոստանդին (Ա) 47.
69. Յակոբ (Ա) 19.
70. Միւս Կոստանդին (Բ) երեք ամ կեցեալ աքսորեցաւ ։
71. Ստեփաննոս (Գ) Հռոմկլայեցին երկու ամ կեցեալ՝ վարեցաւ ի գերութիւն ի Մըսր. և յետ մի ամի վախճանեցաւ ի բանտն և ի կապանքն ։ Եւ այժմ է Տէր Գրիգոր (Է)՝ Անաւարզայ եպիսկոպոսն ։



## ՀԳ. — Յիշատակարան մատենիս նորին Ստեփաննոսի :

Սկիզբն եւ կատարած ամենայնի Աստուած. զի ի նմանէ սկսեալ եւ նովաւ յառաջացեալ և ի նոյն կատարէ Տէրն, որպէս ի կարակնակերտ բոլորումն է տեսանել զի ուստի սկսաւ ի նոյն յանգեալ միացաւ՝ ի ծոց իւր գրաւեալ զբազմաւորական մասունսն : Տինա՛ եւ ի տպաւորումն շնորհին է տեսանել զի հոսեալ յորդառատ յականակիտ յաղբերէն անցանէ ընդ բնաւն բաշխելով իւրաքանչիւրոյն զմասնաւորն ըստ սպատշաճին : Եւ այնպէս գործեալ յամենեսեան զօգուտն եւ զօգտակարն՝ ինքն նոյն պարզութեամբն միանայ ուստի բղխեցաւն : Ըստ որում եւ ես իսկ շնորհօք վերնային, բարուք ստորնային, ձեւով երկնային, վարուք եղեռնային, կերպիւ կենաբաշխ, ոգւով կենազրաւ, անուամբ քաւչապետ, բանսարկուին գործապետ, առեալ յաստուածային շնորհացն՝ կամեցաք սակաւ մի սեղանաւորել, եւ սկիզբն արարեալ Աստուծով յառաջացաք նովիմբ, զոր եւ աւարտեցուք ի նոյնն :

Արդ գոհութիւն և փառք Ստեղծողին էիցս, անճառին եւ անհասին, պարգեւողին առատաբաշխ եւ խնամող բոլորիցս. օրհնութիւն, պատիւ և երկրպա-

դութիւն անբաւ բիւրուք, անհաս եւ անվճար ի հրա-
բուն սեռից երկնաւորաց և ի նիւթեղէն տարրակա-
նաց երկրածին կենդանեաց, ի բոլոր եղականաց և
ի բնաւից գոյութեանց արարածոց, որ կարողա-
ցոյց զխ[illegible]րթ տհաստութիւն իմոյ մտացս և զցա-
ւալից տարտամութիւն ծովահեղձուկ հոգւոյս տե-
սանել զաւարտ առարկութեանս եւ հասանել ի կա-
տարումն սկսմանս ի դառն աւուրս եւ ի սովամածոյց
մահաչունչ ժամանակս . յորում մահն ցանկալի եւ
երանական . եւ կեանքն ատելի եւ թշուառական .
համապաղորդեալ ամենեցունց զցայգն ի ցաւ եւ
զցերեկն ի ցնորք . եւ ակնկալութիւն ո՛չ ի բարին .
այլ օր ըստ օրէ յանհնարին վիշտս եւ նեղութիւնս ։
Եւ արդ՝ ի կամս կարող եւ հզօրին Աստուծոյ Հօր,
եւ ի շնորհս գթութեան միածնի Որդւոյն Յիսուսի
եւ յողորմութիւն նախախնամող եւ ազատիչ սուրբ
Հոգւոյն , ես նուաստ եւ յոգնամեղ ծառայ Քրիս-
տոսի Ստեփաննոս, եւ ողորմութեամբ նորին եպիս-
կոպոս Սիւնեաց երկոտասան գաւառաց, նաև, ըստ
ներող կամաց նորին, նստեալ ի գահ մետրապօլ-
տութեան տանս, տեսաք նուաղեալ եւ ժտեալ
զանուն եւ զյիշատակ առաջնոցն, եւ յափշտակեալ
եւ կորուսեալ զժառանգութիւնս եկեղեցեաց ։ Եւ
ի վաղուց հետէ ցանկացեալ այսմ նորոգման եւ վի-
պագրութեան ։ Եւ բազում ջանիւ եւ յոլով աշ-

*խստութեամբ որոնեալ հաւաքեցաք ի Հին եւ Նոր պատմագրաց Հայոց, նաև յարձանագրութեանց եկեղեցեաց և ի հնագոյն նամակաց, որ կայր պահեալ յամռ։ րս տեղեայն աշխարհախումբ հանդիսարանին Տաթևոյ. էր ինչ եւ որ յաւանդութեանց ստուգագէտ արանց որում վկայէին իրքն և տեղիքն, զհետ մտեալ ամենայն ճշդիւ ստուգութեան, ի բաց ձգեալ եւ զունայնախոյզ զբաբանութիւնն զի մի տաղտկասցին լուղք. եւ կարճաբան մխպատանութեամբ ցուցաք համառօտիւ զառաւել պիտանին եւ զճահագոյնն. եւ գրեցաք զայս քաղցրաբան պատմութիւն հանդէպ դպրութեանց յիշատակարանաց առաջնոյն, ոչ ընդհանրական. այլ առանձին Սիւնեան աշխարհիս, որ կոչի յիշատակաց մատեան ։*

*Եւ թողաք զսա արձան անջնջելի եւ յիշատակ գովելի յապա ժամանակաց ի հաստատութիւն սուրբ և երկնահանգէտ աթոռոյս Սիւնեաց, եւ ի պայծառութիւն եկեղեցեաց որ ընդ սորին այցելութեամբ ։ Եւ բարձեալ զսա մեղանէրկ բազկօքս տարեալ ընծայեցաք ի տուն Տեառն խայրիս խորհրդական. եւ դահամուհս նուիրական կաթողիկէ եւ առաքելական եկեղեցւոյս Տաթևոյ եւ ամենայն աստուածաբնակ տաճարաց այսմ իշխանութեան. եւ ի դուռն անկեալ աղաչեմք եւ յոգնակառաչ ձայնիւ*

զաղատիմք, ո՞վ գերապանծ եւ լուսաճեմ տառգաստ երկնաւոր փեսային՝ հայցեա՛ ամենայն սրբովք ի Գլխոյն քոյ սխրալի ընդունիլ զսա յիւր աստուածային գանձարան զայս պտուղ շրթանց և ծնունդ հոգւոյ պատարագ հաճելի, եւ թէ ոչ ընդ պատուականսն, սակայն ընդ չքաւորեալսն առ խոյանաւն որք մազ մատուցանէին, նաև ընդ բաժակ մի ցուրտ ջրոյն կամ՝ ընդ երկու լումային ։ Եւ շնորհաւորելով զսա եկեղեցւոյն իւրում տացէ մեզ ակն ունիլ բարեաց եւ առատաձիր պարգևին եթէ ոչ կատարելոյն․ այլ փշրանացն յորմէ շունք կերակրին․ զի քանքարս զոր ետուր ցիս, ո՛չ բնաւին ընդ անբանութեամբ փակեալ խորեցի․ այլ սակաւ մի ըստ իմում սակի արկի ի սեղանաւորն՝ վասն որոյ մի՛ լիցի ինձ լսել եթէ ծառա՛յ չար և վատ՝ այլ յանբերեկ աւուրն մեծի ուր բանք սպառին եւ գործք թագաւորեն, արժանասցուք երանաւէտ ձայնին եթէ «Ե՛կ, մո՛ւտ յուրախութիւն Տեառն» որում գոհութիւն եւ փառք յամենայն եղելոց այժմ եւ յանսպառ յաւիտեանս. ամէն ։

Արդ՝ յարմարեալ այս հանդէսք բանի շարագրեցաւ յաշխարհակալութեան մեծի եւ ինքնակալ արքայի ղան Ղազանին՝ որդւոյ Արղունին, ի տիրել տիեզերաց ցեղին Նետողաց, ի թագաւորութեանն Վրաց Դաւթի՝ որդւոյ Դեմետրէի, և Հայոց Հեթ-

մոյ՝ որդւոյ Լեւոնի Թագաւորի, յիշխանութեան այսմ նահանգի օրհնելոյն և բարեպաշտի Ելիկումին՝ որդւոյ Տարսայիճին և եղբարց իւրոց, յամս աստուածապատիւ և հոգևոր Տեառն Գրիգորի՝ ինքնագլուխ պատրիարքի, և Տեառն Ստեփաննոսի՝ Աղվանից կաթողիկոսի, ի թուաբերութեան անժամանակ Բանին 1299. և ըստ հայումս ի 14 յոբելենին և 46 համարին, ի 186 ոլոմպիադին եւ յերկրորդ ամին, ի յիսուն ընդիքտիոնին պակասեալ թուով, իսկ ըստ քսանեւութնեակ շրջանի արեգականն իրոյ հինգհարիւրեկին, յ214 թուին, ի վանս վսեմական և փառաւորնակ ուխտիս Նորավանից, ընդ հովանեաւ աստուածաբնակ տաճարացս եւ աստուածակիր նշանացս, ի նժդեհ եւ ի դառնադաժան աւուրս. մինչ կայաք ի մէջ տիեզերահոծ տագնապի միշտ զզուեալ երեքալեան դիմակցութեամբ ակնակառոյց միայն վերին այցելութեան ։

Վասն որոյ մայրամած դիմօք մաղթեմ զդասս սրբազանիցդ զի յիշման զմեզ արասջի՛ք արժանի, և ոչ առնէք անտես զանէութիւնս իմ որ կամ հողացեալ ի կորդացեալ գերեզմանի, այլ առաջի աչաց համարեսջի՛ք գոգ ի վեր քարշեալ զօրէն մո րողաց. շառագունեալ դիմօք եւ տուայտեալ երեսօք խնդրել ի ձէնջ փշրանս ողորմութեան, այսինքն միով Նուագիւ երկնաւոր զենմանն առնել արժանի ։ Եւ թէ

*սխալանս ինչ եւ կամ թերի գտանէք ի սմա, յաւելուած կամ պակասութիւն, մի՛ ախտաւոր մտօք պարսաւեսջիք զի բնութիւն է մարմնոյ գթիլ և տկարանալ ի բանս և ի գործս . այլ ողջախոհ կամօք ուղղել եւ աստուածաբար սիրով ներել մեզ եւ շնորհել զյանցանսն ։ Եւ ձեզ ամենեցուն լիցի միոյն բիւրապատիկ գտանել ողորմութիւն յողորմածէն Աստուծոյ կրկին կենօք ։ Բայց պատուէր դնեմ ամենեցուն որք հանդիպիք սմա՝ ո՛չ քերել ի բանից սորա և կամ այլանդակել զյեղանակ կարգին . եւ կամ ժտել ի սմանէ կամ թուղթ հատանել . կամ վասն նախանձու եւ նենգութեան եւ կամ այլ ինչ պատճառի ։ Ապա թէ ոք ժպրհի յանդուգն լրբութեամբ՝ ջնջեա՛լ եղիցի ի դպրութենէն կենաց, և կորեալ ի կտակէն յաւիտենից, ընդ Յուդայի և խաչահանուացն վարձատրեսցի, ընդ սատանայի եւ ամենայն չարագործացն դատապարտեսցի . և որ ոք ընդար... (188) և ընդ այլոցդ զսակաւագիծ յիշատակս . եւ առ հասարակ ամենեքեան մեք եւ դուք ի միասին գտցուք ողորմութիւն յարարչական սիրոյն Աստուծոյ ի մարմնի և ի գերեզմանի, և յաներեկ աւուրն մեծի ։ Եւ նմա փառք յամենայն արարածոց, և գոհութիւն յամենայն բանակաց յերկնաւորաց յամերամս ժամանակաց և յանվախճան յաւիտեանս . ամէն ։*



## ՀԴ. — Միանուագ երկոտասան գաւառաց հարկ եկեղեցւոյ ըստ հին սահմանին :

### Ա. Ծղուկ գաւառ (189) :

| | | | |
|---|---|---|---|
| Նորկք, | 12 (190) : | Տաթև, | 10 : |
| Ցուր, | 6 : | Ծայարդ, | 10 : |
| Խովլիտ, | 8 : | Տաշու, | 5 : |
| Հարժկք, | 10 : | Արիտ, | 6 : |
| Բերդկաներեչի, | 6 : | Արծիւ, | 6 : |
| Խոտուք, | 8 : | Լծէն, | 6 : |
| Ախնէն, | 8 : | Որոտն, | 10 : |
| Բերդն, | 10 : | Ոպնի, | 6 : |
| Երեծ, | 6 : | Երեմի, | 6 : |
| Ըզուերծ, | 10 : | Մոգոյք, | 10 : |
| Մրուց, | 8 : | Լոր, | 12 : |
| Մարղակայք, | 6 : | Մշկանոր, | 6 : |
| Տատան, | 6 : | Յապատանոր, | 8 : |
| Մաղազնի, | 6 : | Փոքրոյծ, | 8 : |
| Տորնիք, | 12 : | Տորունիք, | 10 : |
| Տորունկայ, | 8 : | Տխունիք, | 12 : |
| Աքածի, | 12 : | Թործփղու, | 6 : |
| Դաստակերտ, | 10 : | Գըրուակ, | 6 : |
| Մեծիք, | 12 : | Պխսակ, | 6 : |

| | | | |
|---|---|---|---|
| Աղաթմարաթ, | 6 ։ | Խուրեք, | 6 ։ |
| Ցօղունի, | 10 ։ | Մորենի, | 12 ։ |
| Արևէս, | 7 ։ | Բնունիք, | 6 ։ |
| Արթէք, | 10 ։ | Աթղէք, | 12 ։ |
| Ծննի, | 12 ։ | Որդկերք, | 12 ։ |
| Ոգինի, | 10 ։ | Ըշտկամայրի, | 12 ։ |
| Գետակից, | 12 ։ | Բղեան, | 6 ։ |
| Խանք, | 12 ։ | Որձաբերդ, | 12 ։ |
| Ծաղկայ, | 12 ։ | Կորովի, | 12 ։ |
| Փեղթի, | 12 ։ | Կիրակոսին, | 12 ։ |
| Բռնակոթ, | 12 ։ | Ագարակին, | 7 ։ |
| Կամավանք, | 10 ։ | Գայլոց վանք, | 10 ։ |
| Վաստակերտ, | 12 ։ | Մուշք, | 10 ։ |
| Տաղատ, | 12 ։ | Տաղատոյ վանք, | 6 ։ |
| Ապարանից գետ, | 10 ։ | Տրքար, | 10 ։ |
| Մեծամոր, | 10 ։ | Փեթականոց, | 6 ։ |
| Վաղատին, | 12 ։ | Աղիտու, | 12 ։ |
| Գոմեր, | 7 ։ | Կուրավանք, | 7 ։ |
| Կաքաւարտի, | 12 ։ | | |

Բ. Եւ Այլախ գաւառ ։

| | | | |
|---|---|---|---|
| Քաղատակ, | 12 ։ | Տաքէ, | 12 ։ |
| Ջաքէի վանք, | 12 ։ | Լերին վանք, | 12 ։ |
| Գաստակերտ, | 10 ։ | Անկեղակոթ, | 10 ։ |
| Քարունջ, | 10 ։ | Բորտի, | 12 ։ |

| | | | |
|---|---|---|---|
| Վերին Բորտի, | 12 ։ | Գղվրթոտ, | 6 ։ |
| Բիւրոտի վանք, | 6 ։ | Իւղոտամաղք, | 12 ։ |
| –Սափախիմրախ, | 6 ։ | –Ուռխական գետ, | 10 ։ |
| –Գոթ աձոր ներքին, | 7 ։ | –Գինական գետ, | 10 ։ |
| –Գոթ աձոր վերին, | 10 ։ | –Որդան հայր, | 10 ։ |
| –Ականք, | 10 ։ | –Ջկնարած, | 12 ։ |
| –Մեծաձոր միւս, | 12 ։ | Ջղահայրեանք, | 10 ։ |
| –Կոռոշուխոր, | 7 ։ | –Սախատաձոր, | 8 ։ |
| Մազագնի, | 6 ։ | Բողոտիջուր, | 6 ։ |

Գ. Վայոց ձոր գաւառ ։

| | | | |
|---|---|---|---|
| –Գետիկ, | 12 ։ | Դերբն, | 10 ։ |
| Գոլոշտի վանք, | 6 ։ | –Ուզի ձոր, | 10 ։ |
| –Արտոյ գետ, | 6 ։ | –Տեփոնավանք, | 12 ։ |
| –Մարտիրոս, | 7 ։ | –Ալարանք, | 6 ։ |
| –Բարձի չէն, | 12 ։ | –Մայրադուրք, | 12 ։ |
| –Աջողք, | 10 ։ | –Մոխրոց, | 6 ։ |
| –Կապոյտք, | 12 ։ | –Կտրօնք, | 10 ։ |
| Դեկն, | 10 ։ | Աղեաւ, | 10 ։ |
| Արփեծ, | 12 ։ | –Բոր, | 10 ։ |
| –Աջառագաւիթ, | 6 ։ | Փշօնք, | 15 ։ |
| Գաղատայ, | 10 ։ | –Խողաւաս, | 10 ։ |
| Կորոտինք, | 10 ։ | –Լիճ, | 6 ։ |
| Ըրվէնք, | 6 ։ | –Կամրջոյ ձոր, | 8 ։ |
| Խորձայ, | 8 ։ | Աղոպէն, | 8 ։ |

| | | | |
|---|---|---|---|
| Ջեղեայ, | 8 : | Բաչի մարգ, | 6 : |
| Եկեան, | 10 : | Երերունք, | 10 : |
| Գնչին, | 6 : | Բակերտ, | 10 : |
| Եղփէչ, | 10 : | Որդոյերեգի, | 6 : |
| Ապանայ, | 6 : | Վարդենիք, | 10 : |
| Մսեն, | 12 : | Հայիք, | 7 : |
| Ագարակի ձոր, | 5 : | Նորին, | 12 : |
| Եղեգնաձոր, | 12 : | Նորիք, | 12 : |
| Բերդիմայր, | 20 : | Ամաղուէ, | 10 : |
| Կուրանք, | 12 : | Արկաւուկերտ, | 6 : |
| Հորբ, | 12 : | Ողեան, | 10 : |
| Խարաչկոնք, | 10 : | Արտաբոյի, | 10 : |
| Արփիր, | 7 : | Փրակայ, | 12 : |
| Անգեղի, | 12 : | Գոկեք, | 6 : |
| Եղեգիք, | 12 : | Սարկողովք, | 20 : |
| Մոզն, | 12 : | Ագարակ, | 12 : |
| Արկաղն, | 12 : | Երխու, | 6 : |
| Փշատիք, | 6 : | Արենի, | 12 : |
| Երերն, | 10 : | Ատչար, | 6 : |
| Խոտորձի, | 12 : | Երերունք միւս, | 10 : |
| Անգոնք, | 6 : | Կէչոտ, | 6 : |
| Պրակք, | 12 : | Ջերմուկ, | 12 : |
| Աղթարոյնի, | 6 : | Երկայնարտի, | 6 : |
| Տատաւէ, | 6 : | Տատաւ միւս, | 6 : |
| Գոփտենի, | 12 : | Ցրտոգետ, | 6 : |

| | | | |
|---|---|---|---|
| Հառու, | 6 ։ | Արատէնք, | 6 ։ |
| Միջագետք, | 6 ։ | Ըռեղի, | 8 ։ |
| Խնձորուտ, | 6 ։ | Եձեղի, | 10 ։ |
| Դրունք, | 10 ։ | Ուռիք, | 8 ։ |
| Կաքաւուց աղբիւր, | 6 ։ | Գոմք, | 6 ։ |
| Ունջուք, | 10 ։ | Եղնանիւտն, | 6 ։ |
| Աղնձոյ բերդ, | 6 ։ | Գնդեվանք, | 10 ։ |

Դ. Գեղարքունի գաւառ ։

| | | | |
|---|---|---|---|
| Կոթ, | 20 ։ | Կոկոյք, | 12 ։ |
| Գոձոյ ձոր, | 12 ։ | Ակերտ, | 10 ։ |
| Ցըցնի, | 7 ։ | Խնձի թաղք, | 7 ։ |
| Ոփեայ ձոր, | 6 ։ | Նորաշէն, | 7 ։ |
| Եսանակայ հուն, | 7 ։ | Ողենի, | 12 ։ |
| Գանձաղանուտ, | 7 ։ | Գողձոր, | 7 ։ |
| Երիզկայք, | 15 ։ | Դաստակերտ, | 10 ։ |
| Վասակաշէն, | 10 ։ | Զառագարակ, | 7 ։ |
| Ամարիա, | 15 ։ | Վածոյ, | 10 ։ |
| Կամբրին, | 15 ։ | Հագք, | 15 ։ |
| Խոկառինձ, | 12 ։ | Խորոտն, | 15 ։ |
| Արգինձի, | 10 ։ | Թմոկ, | 15 ։ |
| Մեհոգած, | 10 ։ | Հովուաց ագարակ, | 7 ։ |
| Ձագ, | 17 ։ | Կածիք, | 15 ։ |
| Ութբրուն, | 12 ։ | Յուշապերեկ, | 6 ։ |
| Վարդենիք, | 6 ։ | Ներքին Վարդենիք, | 15 ։ |

| | | | |
|---|---|---|---|
| Թամբաբարը, | 12 ։ | Նրերուք, | 15 ։ |
| Առնէոյ հուն, | 15 ։ | Գոմք, | 12 ։ |
| Պահավանք, | 6 ։ | Կուտրակագոմք, | 10 ։ |
| Վանավան, | 7 ։ | Փառականք, | 10 ։ |
| Բերան, | 12 ։ | Ղեխք, | 10 ։ |
| Բրփիայրեր, | 12 ։ | Ճիկակարբն, | 15 ։ |
| Գերափու, | 15 ։ | Ծաղկայ, | 7 ։ |
| Աչաենք, | 15 ։ | | |

## Ե. Աոթից գաւառ ։

| | | | |
|---|---|---|---|
| Սոթք, | 20 ։ | Ծախաթաղք, | 7 ։ |
| Ունջիծոր, | 7 ։ | Հատաթաղք, | 7 ։ |
| Աւազան, | 12 ։ | Համամաբակք, | 7 ։ |
| Արծխպրակ, | 6 ։ | Գուկանինծ, | 15 ։ |
| Տրչտուք, | 8 ։ | Սափչանապատ, | 8 ։ |
| Խորթագետ, | 8 ։ | Վարդանաբակք, | 6 ։ |
| Նորաբակք, | 6 ։ | Վաստակաշէն, | 10 ։ |
| Կութն, | 12 ։ | Անապատ, | 12 ։ |
| Արփունջն, | 12 ։ | Տառնըրէք, | 10 ։ |
| Կուչկունիք, | 10 ։ | Բարկոյք, | 12 ։ |
| Վաղաւեր, | 10 ։ | Ուռակարբ, | 15 ։ |
| Ամեռնաւոր, | 15 ։ | Տառվան, | 10 ։ |
| Շինիք, | 15 ։ | Աստուածածին, | 10 ։ |
| Երէզ, | 12 ։ | Բակափոր, | 12 ։ |
| Մաքենոց, | 15 ։ | Նաեցիք, | 12 ։ |

| | | | |
|---|---|---|---|
| Ջերիշատ, | 12 : | Ախող, | 10 : |
| Աղբերածոր, | 7 : | Արփնալ, | 17 : |
| Անապատ, | 7 : | Տապուկեթայ, | 7 : |
| Կոտանկը, | 10 : | Վաչէրակը, | 6 : |
| Ջաղացխաձոր, | 10 : | Ղաչուրաբակ, | 7 : |
| Քաշուք, | 12 : | Տեռնատեան, | 12 : |
| Բերդածոր, | 8 : | Դրունք, | 12 : |
| Որթնիք, | 15 : | Տարօնք, | 15 : |
| Ֆարանակ, | 15 : | Ախտափտուն, | 15 : |
| Ոզմունք, | 12 : | Պաշոյ, | 12 : |
| Ջահոյ, | 12 : | Խորասանաբակ, | 6 : |
| Որփիկք, | 12 : | Ակինք, | 10 : |
| Գողոփ ագարակ, | 12 : | Այրք, | 15 : |
| Գեղամաբակ, | 10 : | Կախան-աղբիւր, | 8 : |
| Սահակաբակը, | 7 : | Խոնթակաբակ, | 7 : |
| Ջաղացաձոր, | 6 : | Ոտոցի, | 8 : |
| Գայրաբակ, | 6 : | Ֆկոլաբակ, | 6 : |
| Աորմեղենաբակ, | 12 : | Խորժայ, | 12 : |
| Սնածոր, | 6 : | Ծար, | 15 : |
| Գետաբակ, | 10 : | Երերի, | 8 : |
| Վարժանկէ աղբիւր, | 10 : | Հոնքէնք, | 7 : |
| Եղջերուենիք, | 8 : | Անապատ, | 10 : |
| Փշփի գետ, | 6 : | | |

Զ. Աղահէջ գաւառ :

| | | | |
|---|---|---|---|
| Ափժէն, | 10 : | Անէժ, | 12 : |
| Տանձուտ, | 7 : | Հայեաց աղբիւր, | 12 : |
| Քեղաձոր, | 10 : | Հակ, | 15 : |
| Արտագեռ, | 12 : | Մեղրի, | 12 : |
| Ականք, | 8 : | Արուական, | 6 : |
| Մշենի, | 6 : | Քաշաթաղք, | 6 : |
| Վերին չէն, | 6 : | Ջիասար, | 6 : |
| Մատրակերտ, | 6 : | Մննի, | 6 : |
| Հունչաք, | 12 : | Մարգք, | 10 : |
| Պոխոչոխ, | 10 : | Սուրբ Գէորգ, | 8 : |
| Լօրք, | 8 : | Ագարակու գետ, | 10 : |
| Տափկի, | 7 : | Կարկասան; | 6 : |
| Պախախոյնիք, | 12 : | Մոշէնք, | 10 : |
| Որբոքոյ քար, | 8 : | Արահուծ, | 6 : |
| Ծիծառնավանք, | 10 : | Հայելեակ, | 6 : |
| Կափհորինք, | 12 : | Մախուլն, | 10 : |
| Խրու, | 8 : | Ծորայիք, | 10 : |
| Խախփիք, | 12 : | Վժնաբերդ, | 12 : |
| Հայրի, | 8 : | Անուշաւան, | 12 : |
| Աղտափ, | 6 : | Շամրթայ, | 8 : |
| Արքի, | 6 : | Վասակակերտ, | 10 : |
| Ատրակ, | 12 : | | |

## Է. Հաբանդ գաւառ (191) :

Աղախերդ, 12 :
Կափավանք, 8 :
Վանքցայ, 20 :
Խորէկայ, 7 :
Տանձեակ, 7 :
Տեղ, 12 :
Պատանդավանք, 7 :
Նորաշինիկ, 6 :
Վաղատու, 12 :
Խորխոէ, 7 :
Կարբինք վերին, 8 :
Կարբինք ներքին, 8 :
Գորու, 20 :
Լոփակունք, 10 :
Շագուայ, 10 :
Անձկայք, 6 :
Գենենաթաղք, 6 :
Ղոկինի, 8 :
Ցատղոնի, 12 :
Ագարակ, 8 :
Անձկայք, 12 :
Ջաքաձոր. 12 :
Նախանձիփոր, 8 :
Խալխալք, 8 :
Խնձորեսկ, 10 :
Մրկաքար, 12 :
Շոռնոխոյ, 12 :
Թաղթուն, 7 :
Քօշագեղ, 12 :
Եզնի, 7 :
Խոտնածախ, 20 :
Ակարղըն, 10 :
Մակաղոց, 10 :
Մակաղոց միւս, 7 :
Տեղի, 12 :
Կուլայ, 6 :
Բազմածակք, 6 :
Արտաշէն, 6 :
Քրվանք, 20 :
Գնգաշէն, 12 :
Բաղեան, 12 :
Քիրոփան, 15 :
Ըղուերձ, 12 :
Ականայ, 10 :
Պետրոսկայ վանք, 10 :
Աղօջրիկ, 8 :

| | | | |
|---|---|---|---|
| Գորայք, | 10 : | Ուսկածաղ, | 8 : |
| Խոտ, | 12 : | Սոորին, | 12 : |
| Մարգածոր, | 8 : | Քաշիգածոր, | 18 : |
| Բեքս, | 10 : | Նախակաչէն, | 12 : |
| Արքոյ, | 10 : | Թաղարթի, | 8 : |
| Շաթիլթայք, | 8 : | Շնոյ Հերք, | 24 : |
| Հալէ, | 8 : | | |

## Ը. Բաղք գաւառ

| | | | |
|---|---|---|---|
| Աշաղու, | 8 : | Եծանան, | 12 : |
| Բարեքվայր, | 6 : | Շեքքս, | 12 : |
| Վարդավանք, | 6 : | Տորթն | 26 : |
| Տափեւար, | 6 : | Աւարագետք, | 10 : |
| Տագամարդ | 20 : | Խոտանոփն, | 12 : |
| Եղնգն, | 6 : | Նորաշինիկ, | 6 : |
| Նորաշինիկ միւս, | 6 : | Հընեացծոր, | 6 : |
| Ոփն, | 6 : | Կոփեվանք, | 12 : |
| Ատու, | 10 : | Արուքս, | 6 : |
| Հողար, | 8 : | Կրփւագետ, | 6 : |
| Խմայծ, | 6 : | Կաւարտ, | 8 : |
| Արկանիծոր, | 10 : | Տոգող, | 6 : |
| Ջարերիտակերտ, | 10 : | Տատնեղիչէն, | 10 : |
| Տերքնդաստ, | 8 : | Ագարակ, | 20 : |
| Թուրք, | 12 : | Մփկարագ, | 6 : |
| Անափին, | 7 : | Միւս Անափին, | 7 : |

| | | | |
|---|---|---|---|
| Պարքին, | 6 : | Պարքին միւս, | 6 : |
| Գեղաքունի, | 10 : | Կմեղ, | 10 : |
| Գուկական, | 10 : | Փառաւաք, | 8 : |
| Մեծամարդ, | 12 : | Գիւղ Կիլուական, | 12 : |
| Արձանաձոր, | 6 : | | |

Թ. Միւս Բաղք որ անուանի Քաշունիք :

| | | | |
|---|---|---|---|
| Երէկ, | 12 : | Խողմանի, | 10 : |
| Դաստակերտ, | 6 : | Տանձավայր, | 8 : |
| Վանանդ, | 10 : | Մած, | 7 : |
| Անատայձոր, | 6 : | Շոռնոխոյ, | 8 : |
| Հերմենիչէ, | 6 : | Խախաք, | 12 : |
| Եւեղի, | 7 : | Հանիատուք, | 6 : |
| Մոզք, | 6 : | Մատախոհնի, | 10 : |
| Իցան, | 6 : | Տողոր, | 6 : |
| Աւերք, | 6 : | Տանկաձոր, | 6 : |
| Տեխք, | 8 : | Կոճարու, | 7 : |
| Մաղձնատուք, | 6 : | Խոզի, | 6 : |
| Ջաւթք, | 8 : | Տուտուկատուք, | 7 : |
| Անծնեակ, | 6 : | Ակն, | 6 : |
| Բակուրի վանք, | 12 : | Տախն, | 12 : |
| Մերթակերտ, | 6 : | Հայնեան, | 6 : |
| Ծղու, | 8 : | Տառայ, | 12 : |
| Բարկուշատ, | 12 : | Խերք, | 12 : |

Halijor, Berdik, Ծevakar, … Nor giut, Kʻaraglux, … Tʻnkʻinakert,

| | | | |
|---|---|---|---|
| Տրեայ, | 12 : | Ագատի, | 8 : |
| Ծափկութ, | 12 : | Կորակիթ, | 6 : |
| Անփոկաբերդ, | 12 : | Նակորզան, | 20 : |
| Արոտէն, | 10 : | Նախջաւանիկ, | 10 : |
| Արթիկ, | 10 : | Թով, | 8 : |
| Թով միւս, | 7 : | Աղաւորդ, | 10 : |
| Պաղու-բերդ, | 7 : | Աժղակ, | 12 : |
| Աթխոյք, | 12 : | Երուանդակերտ, | 6 : |
| Վաժինիք, | 8 : | Կամեն, | 6 : |

Ժ. Կոմսական գաւառ։

| | | | |
|---|---|---|---|
| Իգան, | 12 : | Բեխ, | 6 : |
| Տոստուք, | 6 : | Ողոյհի, | 12 : |
| Փառփկուրոսոյ վանք, | 6 : | Բեխուերջի, | 8 : |
| Լոսուկոր, | 6 : | Վաժնասուք, | 10 : |
| Բոսա, | 10 : | Մառակոթ, | 12 : |
| Գիփքավանք, | 6 : | Մենիկ, | 6 : |
| Թաթու մարգ, | 6 : | Դալք, | 5 : |
| Մարուր, | 8 : | Վարոսի վանք, | 10 : |
| Գոն, | 5 : | Հոյնոյկոր, | 5 : |
| Երեգիք, | 7 : | Դախսարեան, | 10 : |
| Համուք, | 6 : | Վառամաղբիւր, | 6 : |
| Մաճկան, | 6 : | Մանուշակի մարգ, | 6 : |
| Նախկոտան, | 6 : | Գիրկն, | 8 : |
| Լիմ, | 8 : | Ջամոռուք, | 8 : |

Լիմ վերին, 8 :
Փշատէգարինս, 6 :
Բերքենի, 8 :
Արզաք, 6 :
Աղաթավիք, 12 :
—Պօղոսի վանք, 7 :
—Թեղոյ կից, [illegible] :
—Արճախտամայրի, 17 :
Մառի, 6 :
—Լուսմայրի, 6 :
Տփրվանոտ, 12 :
—Փռնակերտ, 7 :
—Կից, 15 :

—Լիմախոսվիտ, 6 :
—Դիւց մայրի, 6 :
—Աշտարակ, 6 :
Կերեն, 12 :
—Շիկահողք, 12 :
—Վախտանգաձոր, 7 :
Տաշիկէտ, 10 :
Ծանաքու, 20 :
—Բարէութաղք, 6 :
—Նորաշինիկ, 8 :
—Խոզաձոր, 7 :
Ծոփի, 12 :

## ԺԱ. Արևիք գաւառ :

—Աղվանք, 7 :
—Մալրի, 8 :
Մալունդ, 8 :
Մեղրոյ վանք, 20 :
Որդիշոյ վանք, 20 :
Խոլավանք, 12 :
—Կարճաւան, 12 :
Տաշտուն, 12 :
—Ագարակ, 8 :
Մել, 6 :

Կառատի, 15 :
Արկավանք, 8 :
Տախեար, 8 :
Լեհավանք, 30 :
Լուծքայ վանք, 12 :
Ջուարի վանք, 12 :
—Մոլոչին, 12 :
—Կուրավանք, 8 :
Մանաղու, 8 :
Տեղի, 8 :

| | | | |
|---|---|---|---|
| Կըրեկնեկ, | 10 : | Թաղամայրի, | 6 : |
| Խողուքիւղ, | 6 : | Վարդանաձոր, | 6 : |

## ԺԲ. Ձորք գաւառ :

| | | | |
|---|---|---|---|
| Բաղաբերդ, | 12 : | Նորագիւղ, | 12 : |
| Տինիք, | 12 : | Բակփլանք, | 12 : |
| Ծաղթանու, | 6 : | Գաճուրայ, | 6 : |
| Գեղոյ վանք, | 20 : | Ոչէնթի, | 6 : |
| Բեխորում, | 8 : | Շարաքոյ, | 8 : |
| Բեշ, | 6 : | Կաճաճում, | 8 : |
| Բօլկախու, | 8 : | Կիսք, | 8 : |
| Աջարաշ, | 10 : | Վաժթինիք, | 12 : |

## ԺԳ. Երնջակ գաւառ :

| | | | |
|---|---|---|---|
| Բուստ, | 12 : | Ա[illegible]իկ, | 12 : |
| Բեկերունիք, | 12 : | Ամառաշէն, | 10 : |
| Ովփի, | 12 : | Քրոճնայ, | 8 : |
| Աբրակունիք, | 12 : | Քարկոփ, | 12 : |
| Բերդիկ, | 12 : | Ոսպաստ, | 12 : |

## ԺԴ. Ճահուկ գաւառ :

| | | | |
|---|---|---|---|
| Ճահուկ, | 20 : | Աղբերխաչ, | 50 : |
| Խախ, | 12 : | Կարմիր եկեղեցի, | 12 : |
| Որփոք, | 12 : | Բլուր, | 12 : |
| Պահեստ, | 12 : | Ղաքէն, | 12 : |

| | | | |
|---|---|---|---|
| Բզզան, | 12 ։ | Ընձաձակերտ, | 12 ։ |
| Նորագիւղ, | 10 ։ | Գուքի, | 12 ։ |
| Խոռափունիք, | 12 ։ | Տիգէն, | 12 ։ |
| Գեշենիք, | 12 ։ | Արմաւաշէն, | 10 ։ |
| Սաղուաստնք, | 8 ։ | Զաղայ, | 8 ։ |
| Հեֆանայ, | 8 ։ | Թամաշխաղ, | 12 ։ |
| Ոփիք, | 12 ։ | Նորագիւղ միւս, | 12 ։ |
| Թամթերք, | 12 ։ | Շամկեն, | 12 ։ |
| Նորբերդ, | 12 ։ | Ակոռի, | 12 ։ |
| Եղաստունք, | 12 ։ | Ագարակ, | 8 ։ |
| Դալարիք, | 8 ։ | Փիփեն, | 8 ։ |
| Քոյլք, | 12 ։ | Խոռունիք, | 6 ։ |
| Դրախտիկ, | 6 ։ | Ծաւալք, | 12 ։ |
| Աղու, | 12 ։ | Գայլակալ, | 10 ։ |
| Ջուր, | 8 ։ | Ոլենի, | 8 ։ |
| Բարդինք, | 12 ։ | Տախտակք, | 8 ։ |
| Արփու գետ, | 12 ։ | Անուշավանք, | 12 ։ |
| Աղփաւ, | 6 ։ | Նորաշինիկ, | 6 ։ |
| Շմրթայի, | 8 ։ | Արքայքայ, | 6 ։ |
| Վասպակերտ, | 10 ։ | Աւերակի, | 12 ։ |

Եւ Քրիստոսի փառք յաւիտեանս․ ամէն։ Վերոյ-գրեալ շինից գումարն է վեց հարիւր եօթանասուն և եօթն ։

# Յաւելուած ։

*ՀԵ. — Շարակարգութիւն եպիսկոպոսաց Սիւնեաց արարեալ ի միաբանից Տաթեւոյ վանաց* (192) ։

*Ա. Տէր սուրբ Յովհան Որոտնեցի վարդապետն կախիկ չինեաց զզանգակատունն սրբոյ աթոռոյս եւ զզարմանահրաշ վանս սուրբ Կարապետին որ է մերձ գեղջն Որոտնայ, զոր Կարմիր վանք կոչեն. և եթող իւր յիշատակ ։*

*Բ. Եւ Տէր սուրբ Գրիգոր Տաթեւացին գեր քան զամենայն վարդապետս եկեղեցւոյ, որք թէպէտ ոչ նըստան եպիսկոպոսք յաթոռս, այլ ի վեր քան զնըստողսն արդիւնաւորեցին զաթոռս Սիւնեաց. եւ թէ ստոյգ իսկ է ասել, զբոլոր զազգս Հայոց. վասն որոյ սակս անթուելի երախտեացն որք ունին արարեալ առ սուրբ աթոռս և առ համայն լուսաւորչածին ազգս մեր (որոց գերամբարձութիւնն յայտ է ի շնորհաբուխ վարդապետութեանց իւրեանց եւ ի ստուգաբան սրբոց պատմագրողաց) եդան ի կարգի եպիսկոպոսաց սրբոյ աթոռոյս ։*

*Գ. Տէր սուրբ Առաքեալ՝ պետն Սիւնեաց, քուերորդի սրբոյն Գրիգորի Տաթեւացւոյն. սա շինեաց*

զհարաւային կողման գաւիթն սրբոյ աթոռոյս ի պահպանութիւն ահեղաքանչ մեծի տաճարիս. եւ հրաշագործ խաչ իմն օծեալ ի յիշատակ սրբոյն Գրիգորի Տաթեւացւոյ, եւ կառուցեալ յիւրմէ շինեալ գաւթին ի մէջ սեան ։

Դ. Տէր Սիմէոն եպիսկոպոսն Անկեղակոթցի, յետ յոլովից անյայտից, որ յոյժ ջանակուռ եղեւ վասն շինութեան եւ պայծառութեան սրբոյ աթոռոյս ։ Եւ զի Տաճիկք բռնութեամբ յափշտակեալ էին զբազում անդս եւ անդաստանս սրբոյ աթոռոյս, սա առեալ զամենայն մուրհակսն, յորս գրեալ գոյին ամենայն որքանութիւն սահմանաց, անդաստանաց սրբոյ աթոռոյս, զոր Նախնի թագաւորքն Պարսից տուեալ էին իւրեանց կնքովն. և գնացեալ առ Շահն՝ ցուցանելով նմա զմուրհակսն՝ վերստին սեպհականեալ է սրբոյ տանս զխլեցեալսն զամենայն. վասն որոյ ի Նախանձ բորբոքեալ անօրինացն սպանեալ են զինքն, որոյ սուրբ մարմինն ամփոփեալ կայ մերձ գաւաղանին ի կողմն հարաւոյ ։

Ե. Տէր Շապանողլին Յովհաննէս Շինաթաղեցին, որ էր հոգիընկալ եւ բանիբուն եւ ամենայն առաքինութեամբ զարդարեալ, ջահ եկեղեցւոյ և ախոյեան հաւատոյ և ջատագով կրօնից քրիստոնէական եկեղեցւոյ ։ Սա եօթնիցս գնացեալ յԱսպահան առ շահ սուլտանն Հիւսէին, եւ ըզի վերոյ ասացեալ Սիմէոն

եպիսկոպոսին հաստատեալ Նամականն վերստին նո֊
րոգեաց ։ Սա արար բազում ուղղութիւնս և շինու֊
թիւնս ի սուրբ աթոռս . որ և զարևելեան թանապէն
(դահլիճ) հանդերձ սենեկօքն նորին թրաշ (տաշածոյ)
քարիւ գեղեցկաձև յօրինուածով յոյժ ախորժ եւ
զուարճալի տեսողաց ։ Իսկ ի վերջին գնալն եւ ի
դառնալն անդուստ՝ հասեալ ի Դավրէժ . անդ վախ֊
ճանի հասեալ ի կենաց . որոյ խաչակիր մարմնոյն
վերայ լոյս ծագեալ իջեալ յերկնից, եւ կամարաձև
շրջապատեալ զմարմնովն՝ ակներև տեսողացն ի
վկայութիւն սրբութեանն . ուստի զբազում վիճմունս
արարեալ ընիկ երկրացիքն ընդ Ղափանցիս՝ նոքա
պատճառելով թէ ըստ որում աստ հանգեաւ՝ աստ
հանճի ամփոփիլ . եւ մերայինքն թէ մեր է՝ պա՛րտիմք
տանել ի յիւր աթոռն հանգուցանել ։ Բայց տեսեալ
մերայնոցն թէ վիճմամբ չէ հնար ունիլ զմարմին ցան֊
կալւոյն, առեալ զնա ի գիշերի գաղտագողի՝ բերեալ
անցուցին ընդ Երասխ . եւ նոցա ի լսելն հետամուտ
եղեալ մինչ յեզր գետոյն, և տեսեալ եթէ անցուցեալ
գոլով յայսկոյս, ոչ ինչ կարացեալ առնել . ապա
աղերսիւ խնդրեալ զգաւազանն եւ զակումբն, եւ
դարձեալ յետս ։ Իսկ սոցա բերեալ զմաքուր մար֊
մինն, զորով լոյսն կամարաձև տակաւին շրջապա֊
տեալ գոլով, ամփոփեցին ի մէջ մեծի տաճարին
աւընթեր յետին դասուն հիւսիսակողման սեան ։

Զ. — Տէր Ներսէս եպիսկոպոս՝ աշակերտ սրբոյն Փիլիպպոսի կաթողիկոսի, որ էր այր առաքինի, զարմանալի վարուք սրբութեան, պահող պատուիրանացն Աստուծոյ։ Զսա հարկադրեալ կաթողիկոսն Փիլիպպոս յղեաց ի դատողութիւն սրբոյ աթոռոյս իբր արժանաժառանգ իւրում հայրենական աթոռոյ, գալ շինել եւ պայծառացուցանել զսա (քանզի էր ի ժամանակին յայնմիկ երկնահանգէտ սուրբ աթոռս այս որպէս թէ ամայի գոլով անշուք և անկարգ)։ Որ և յանձն առեալ զհոգեշունչ հրաման սրբազան վեհապետին եւ եկեալ ի սուրբ աթոռս՝ արար բազում ուղղութիւնս եւ բարեկարգութիւնս եկեղեցական եւ քաղաքական, եւ շինեաց արեւմտեան կողմի խուցսն եւ զերեսբայսն և զեկեղեցին ի գեղջ իւրում. և ապա փոխեցաւ ի Քրիստոս յոյսն բնաւից, թողեալ գրաւական մեզ զսրբաստուն մարմին իւր որ ամփոփեալ կայ ի զանգակատան սրբոյ աթոռոյս։

Է. — Տէր Զաքարիա եպիսկոպոս. և սա ևս էր այր սուրբ և առաքինի, եւ կարի ճգնասէր. ուստի մինչ հասանէր ի մեծի պահոց առաջին օրն, զգենոյր զզգեստ կրօնաւորական. եւ գնայր ի Մեծ անապատն կացեալ անդ մեծաւ ճգնութեամբ մինչ ի Ծաղկազարդն. եւ ապա վերադառնայր ի սուրբ աթոռս։ Եւ արար սա բազում շինութիւնս ի սուրբ աթոռս, զի շինեաց զիւր առաջնորդարանն յայժ

գեղեցիկ կերտուածով քարանց , և զերկար խցերն երկփեղկի հանդէպ միմեանց զդրունսն արարեալ ի բնակութիւն միաբան եղբարց. և ինքն վախճանեալ ի Գորադաշտ. և բերեալ զմարմինն ի սուրբ աթոռս ամփոփեցին աստ ։

Ը. — Տէր Մարտիրոս եպիսկոպոս Մեղրեցի. որ էր յոյժ պահեցող և չորակաց ։ Սա բարեպէս կառա-վարեալ զսուրբ աթոռս եւ զժողովուրդս իւր՝ հան-գեաւ խաղաղութեամբ ։

Թ. — Տէր Յովասափ Աղուերձեցին. որ էր այր հոգեկիր, եկեղեցասէր և ցանկացող շինութեանց նոցին. որ եւ շինեաց զեկեղեցիսն Անկեղակոթու և Բռնակոթու և զՄեծ անապատի միաբանակեաց խուցսն. յետ որոյ վախճանեալ բարի մահուամբ հան-գեաւ ի սուրբ աթոռս ։

Ժ. — Տէր Առաքեալ եպիսկոպոսն Սաղախլու Կալերեցի. սա էր կարի ճոռոմաբան և իմաստուն. որ եւ ճոռոմ խօսիւք զամենայն ընդդիմակ ներհակսն իւր ափ ի բերան առնէր ։ Եւ նոցա լցեալ չար նա-խանձու հատին զլեզուն. իսկ սա տակաւին ասէր ցո-սոխսն իւր թէ. Թէպէտ զլեզուս հատիք. այլ ձեռքս իմ և միտքս իմ ընդ իս է. ի ձեռն որոյ կարող եմ գրով ազդել շահին զամենայն չարիս ձեր. վասն որոյ ի կարի նախանձ բրդեալ՝ ի գիշերի ծածկաբար սրախողխող արարին ի կուսանաց անապատին Հալիձորու ։

ԺԱ. — Տէր Աղուերձեցի Կիրակոս եպիսկոպոս. որ էր կարի քաղաքական, յոյժ խմաստուն եւ եղբայրասէր այնքան՝ մինչ զի թարց եղբարց ի մարմնաւոր կերակուրս ոչ մերձենայր բնաւ առանձին ։ Սա արար բազում ուղղութիւնս սրբոյ աթոռոյս, եւ նոր նորոգեաց զմեծ կաթողիկէն սրբոյ տաճարիս օժանդակութեամբ Գաբրիէլ վարդապետին. և շինեաց զպարիսպն և զթաւլայն (ձիատան) ի հիւսիսային կողման. և վախճանեալ ներ սրբոյ աթոռոյս ամփոփեցաւ աստ ։

ԺԲ. — Տէր Թովմաս եպիսկոպոս Գարթեցի, այր աղօթասէր, սրբակեաց և նշանագործ, որ զբոլոր թիւրութիւնս յերկրէ անհետ արարեալ նշանագործութեամբ. և փոխեալ յանցաւորէս յանանցն եթող մեզ զմասունս նշխարս մարմնոյն ի սուրբ աթոռս ։

ԺԳ. — Տէր Ներսէս՝ վերոյիշեցեալ Ներսիսի եղբօրորդին, որ էր այր պարթեւ, յոյժ արտասուահեղ և լալկաց այնքան՝ մինչ զի ասի զժամնէ թէ՝ մինչ մտանէր յեկեղեցին ի ժամ աղօթից մինչ ի յելանելն, անհնար էր սմա խօսիլ ընդ ումեք, սակս ո՛ և իցէ հարկաւոր իրաց ։ Որ եւ արարեալ անթիւ ուղղութիւնս և շինութիւնս սրբոյ աթոռոյս և Մեծի անապատին՝ հանգեաւ ի Քրիստոս ալեւորեալ եւ լի աւուրբ ։

**ԺԴ. — Տէր Մղմզօղլի Աստուածատուր Վահ-բանեցի.** զորա որդիւնս ի սուրբ աթոռս անկար է մի ըստ միոջէ ի թիւ արկանել. զի ելից զսուրբ եկեղեցին բազում զգեստուք, անօթիւք և գրքօք. և յետոյ գնացեալ ի մեծն Պօլիս (Կոստանդնուպօլիս) անդ վախճանեցաւ :

**ԺԵ. — Տէր Յովհաննէս Տաթևացի Ղազարեան՝** այր քաղաքական և ճարտարալեզու, առատաձեռն և շինարար արդիւնաւորիչ սրբոյ տանս. որ գրեթէ նոր ի նորոյ նորոգեաց զեկեղեցեաց տանիսն եւ զսուրբ աթոռս, եւ շինեաց զկալի յարդանոցն եւ զպատուակն անասնոց որ է թաւլայն, զառաջնորդարանն իւր, եւ կից նմին՝ զշտեմարանն այսինքն զամբարներն. եւ ի պարտալի միջի զաբեղաեան զմակաղատեղն. նաեւ յանթուելի պարտուց զերծոյց զսուրբ աթոռս. եւ յետոյ սպանմամբ սրոյ մեռաւ եւ թաղեցաւ ի սուրբ աթոռս : Ի սորա աւուրս անիծեալ բռնաւորն Ռումիոյ որ կոչիւր Ֆաթալի, եկեալ ի վերայ սրբոյ աթոռոյս՝ բազում մեքենայս լարեաց զանազան հնարիւք, կամէր չարին բռնութեամբ առնուլ զսա եւ աւարել. եւ իբրև ետես թէ բռնութեամբ ոչ կարէ առնուլ զանառիկ աթոռս. փոխեաց զմիտս իւր ի խորամանկութիւն ըստ օձի, զի խաբէութեամբ և ստութեամբ երդուաւ ի յօրէնս իւր (ըստ բնիկ պարսկական բարուց) չար եւ ո՛չ մի ինչ առնել սոցա բայց միայն

զայցեն ի հնազանդութիւն ինքեան . եւ ելեալ գնայցէ ։

Եւ սոյա պատրեալ ի ստապատիր խօսից նորին՝ խոնարհեալ հնազանդեցան, եւ իբրեւ գնացին յերկրպագութիւն՝ նոյնժամայն կալեալ զամենեսեան ձերբակալ արար. եւ ինքն մտեալ ի սուրբ աթոռս՝ զամենայն զկայս եւ զկարասիս թէ սրբոյ աթոռոյս եւ թէ այլոց, որ սակս ամրութեան սորին անթիւ ինչս յամենայն տեղեաց աստ հաւաքեալ գոյր, զամենայն յաւարի էառ, և բազում վիշտս և նեղութիւնս հասոյց ամենեցուն ։ Բայց ինքն անիծեալն փոյթ ընդ փոյթ ընկալաւ զպատիժ պատուհասին իւրոյ զօրութեամբն սրբոյ աթոռոյս. զի ի դառնալն աստուստ՝ իսկոյն կալեալ զնա Քեարիմ խան մէքիղն. եւ տարեալ ի տեղին յայն յորում զմայրն իւր սրով կոտրեալ էր ընդ մէջ. և ինքն ի նոյն տեղւոջ ըստ նոյն սարսափի, եւ դժնդակագոյն ևս չարաչար մահուամբ սատակեաց զչարն եւ եբարձ ի միջոյ զխռովարարն աշխարհի ։

**ԺԶ.** — Տէր Ծապանեցի Մինաս Շինաթաղեցի . այր պահող, սիրող սրբութեան եւ չորակեաց ։ Սա զսուրբ աթոռս (զոր անօրէն բռնաւորն Ֆաթալի կողոպտեալ էր) բազում աշխատանօք գուն գործեալ թէ երկրագործութեամբ և թէ մուրացկանութեամբ ուշաբերեաց. այլ և շինեաց զհիւսիսային կողմի փլեալ

դարխայն և նմին կից զանասնոց ղազարն այսինքն թաղրայն. Նա և ի մեծ թանապայէն սկսեալ մինչ ի հացատունն խուցս և հովանոցս շինեաց ։ Եւ ապա հասեալ ի բարունք ծերութիւն հանգեաւ ի Քրիստոս. (այլ ասի յոմանց թէ դեղակուր եղև ։) եւ թաղեցաւ ի ներքոյ գաւազանին դէպ ի կողմն արևելից ։ Ի ժամանակս սորին Գասպար վարդապետն Տաթևացի քաղում օգնութիւնս արար սորոյ աթոռոյս. զի շինեաց զսեղանատունն եւ զխոհանոցն, զհացատունն եւ զսոյին հովանոցն. և յոլով աշխատանս կրեաց ի վերայ մեծ այգւոյն սորոյ աթոռոյս որ ի Շնհէր. և ապա վախճանեալ թաղեցաւ յանկեան յիւրմէ շինեալ սեղանատան ։

ԺԷ. — Տէր Ղազար Բեխեցի. որ երկու ամ վարեալ զգործն առաջնորդական ըստ իւրում հաճարեղ եւ քաղաքական գնացից. և ի յազգմանէ չարին եղև զեստահեղձ. զի համբաւ հասեալ նմա մինչ շրջագայէր ի վիճակին թէ զքէն ամբաստանութիւն են մատուցեալ առ բռնաւորն ։ Եւ սակս շուտափոյթ ճեպելոյն զի եւ ինքն անողք ժամանեսցի ։ մտաւ ի գետն և եղև հեղձեալ ։

ԺԸ. — Աբրահամ մեծ վարդապետն եկեղեցւոյ Աստապատեցի՝ այր կորովի եւ հոգեփիթիթ, սնեալ եւ վարժեալ սա յոտս Յովսեփայ աստուածաբան վարդապետի ։ Էր ընիկ միաբան սորոյ գահին Էջ-

միածնի՝ ընկերակից Սիմէոնի սրբազան կաթողիկոսի. անթիւ արդեամբ ելից զսուրբ Էջմիածին 20 ամ աշխատելով ի Կարնոյ եւ ի Կոստանդնուպօլսոյ նուիրակութիւնս, և ի դիտողութիւնս Զմիւռնոյ 9 ամ: Եւ այլ բազում ուղղութիւնս արարեալ կարգաց և կրօնից եկեղեցեաց: Եւ շարադրեաց զգիրք իմն քարոզից այնքան քաղցր ոճիւ եւ համեղ շարադրութեամբ մինչ զի զընթերցողսն զմայլեցուցմամբ ապուշ առնէ: Զորիկս յիշխանաց և ի պայազատաց և ի միաբանից սրբոյ տիրաէջ գահին հրաւիրեալ ի կաթողիկոսութիւն՝ ոչ էառ յանձն: Բայց մինչ լսէր զսրբոյ աթոռոյս ի կայից եւ ի կարասեացն թէ յեկեղեցականաց եւ թէ յարտաքնոց մերկանալն, զխանգարմանէ կարգաց եւ կրօնից, եւ զվերջանալոյն ուսմանց, որ էր երբեմն երկրորդ Աթէնք ի մէջ Հայոց, որպէս յայտ իսկ է համայնիցդ, եւ մեծամեծ հեզինակաց բնակարան. որպէս էին Յովհան Որոտնեցին և սուրբն Գրիգոր Տաթևացին, ընդ որս ի վերքան զչափն սիրահար գոլով նախանձայոյզ աստուածային օրինացն և տեսակաց իմաստասիրութեան, մորմոքէր, աւաղէր եւ տոչորէր միշտ ի սրտի իւրում:

Ուստի տեսեալ Սիմէոն կաթողիկոսին զբորբոք սիրոյն որ առ սուրբ աթոռս, ի խնդրել երկրիս պետաց յաղագմանէ սուրբ Հոգւոյն իւրեանց հովիւ եւ

տուաջնորդ, զիջեալ սրբազան Վեհին ի խնդիր սո-
ցին՝ ակամայ կամօք շնորհեաց սրբոյ աթոռոյս, թէ-
պէտ անհաւասար և ի վերքան զբոլոր միաբանսն
գիտէր ։ Եւ սա մեծաւ փափագանօք հանդերձ ամե-
նայն աշակերտօքն եկեալ ոչ ի փառաւորիլ· այլ ի
փառաւորել, եւ գտեալ զսուրբ աթոռս յամենայն
իրաց զուրկ թէ ի հոգեկանաց և թէ ի մարմնականաց
ցաւէր արտասուելով մանաւանդ ի վերայ եղերման
իմաստից· վասն որոյ ընդ գալն կրկին դպրոցս կա-
տարելոց եւ ղեռավարժից հաստատեաց, եւ յառաջ-
նոյ պարսպէն յարևելից կուսէ սկսեալ հարիւր տասն
և մէկ կանգուն երկայնութեամբ հանդերձ տասն և
վեց գեղեցկատիպ սենեկօք, ամուր պարիսպ իմն
նոր ի նորոյ շինեալ հաստոյց մինչ ի ձորագլուխն, եւ
զայլ անթիւ խախտեալ տեղիս նորոգեաց ։ Եւ այս-
պէս ի մէջ երկուց ամաց եւ երեք ամսոց աղինասա-
րաս շինուածովք և երկնահանդէտ կարգօք նոր իմն
Եղեմ յօրինեալ զսուրբ աթոռս, յորում ահաւասիկ
Տեառն շնորհիւ եւ իւրն երկնացել աղօթիւք զոն
յոգնաթիւ տարրեղէն հրեշտակաց բանական տունկք
ուռճացեալ երկնատեսակ իմաստիւք ։ Եւ ինքն սրո-
բէակենցաղ վարուք լցեալ զաւհմանեալ պարտ
բնութեանս դիւրին մահուամբ յետ կելոյն 65 ամ՝
փոխեցաւ յաղցաւոր կենացս յանանցն, ի 1226
թուին, Յունվարի 15, յաւուր տօնի Յովհաննու

Մկրտչին զկնի գնալով երկնահրաւէր ձայնին. եւ թաղեցաւ մեծաւ պատուով խաչակիր մարմինն մերձ գաւազանին ի պարծանս մեզ յետնեալ աշակերտելոցս եւ ի բարեխօսութիւն համայն հաւատացելոցս ի Քրիստոս ։

ԺԹ. — Տէր Յովակիմ՝ արքեպիսկոպոս Սիւնեաց, գոլով տեղեաւ ի Մղուկ գաւառէ, յԱնկեղակոթ գեղջէ. միաբանեալ ի մանկական հասակին սրբոյ գահին Էջմիածնի, սնեալ և վարժեալ նախապէս ի յուսումնարանին հասարակաց ։ Բայց յետոյ աշակերտեալ գերդզօն Աբրահամու արքեպիսկոպոս րաբունապետին. եւ ընդ նմին եկեալ ի սուրբ աթոռս Ստաթէի ։ Եւ զկնի երկու ամաց եւ երեք ամսոց հանգուցեալ գերդզօն Աբրահամու արքեպիսկոպոսին. ապա պայազատք երկրիս հանդերձ համականութեամբ սրբոյ աթոռոյս միաբանութեան բոլոր թէմի եւ վիճակի եղեալ իշխանացն ընտրեցին լինել առաջնորդ սրբոյ ուխտիս ։ Որ եւ ձեռնադրեալ եպիսկոպոս ի սրբազնագոյն Սիմէոն կաթողիկոսէ. և բարձու հրամանաւ նորին եղեւ վերատեսուչ եւ առաջնորդ սրբոյ աթոռոյս Ստաթէի ։

Սա արար բազում ուղղութիւնս և շինութիւնս սրբոյ աթոռոյս. չորս վիմաքարս կանգնել ետ ի սուրբ աթոռս՝ զերկուսն ի մէջ մեծի տաճարին առընթեր երկուց սեանց՝ զմին ի վերայ դամբարանի եօթ-

նալոյս վարդապետին սրբոյն Գրիգորի Տաթևացւոյ, զարդարուն խաչիւք քանդակեալ ի քարանց, եւ հոյակապ յօրինուածով կոփածոյ քարամբ գեղեցկատես մատուռ իմն շինեալ. և զմիւսն ի մէջ ժամատանն։ Դարձեալ և յարևելից կուսէ սուրբ Գրիգորի եկեղեցւոյն յետի սեննակն եւ իւր հովանոյն, սուրբ Աստուածածնայ ներքոյ սեննակն, իւր հովանոյն, որ կից դարփազայինէ (ղուռն), Աստուածնայ բուրջն (բուրգն), Գիրաքանց բուրջն եւ մեծ քանապայի կոեր (տանիք) բուրջն, եւ յարևմտեան կողմի ձիթահանքն։ Իսկ յետ այսոցիկ բազում աչխատութեանց եւ վայելչագիր շինութեանց ժանտաբարոյ և չարագործ, աւերիչ եւ քանդիչ համայն աշխարհաց աղայ Մահմատ խանն խաղաց առիւծաբար, մուտս արար յայս երկիր. եւ եդ հրդեհ բնակչացս այսոցիկ. և բազումք ցիր և ցան եղեալք անկան ի նժդեհութիւնս աստ եւ անդ մնալով։ Գնաց եւ Յովակիմ՝ արքեպիսկոպոսն սրբոյ վանացս, ի սուրբ գահն Էջմիածին. և կեցեալ անդ ամս 19՝ հանգեաւ յաղցաւոր կենացս ի յանանց կեանսն, որոյ զհոգին Տէր Քրիստոս լուսաւորեսցէ, ընդ սրբոյ երջանկացն դասակից եւ պսակակից արասցէ։

Ի. — Տէր Մարտիրոս՝ սրբազան արքեպիսկոպոս Սիւնեաց, այր զգօն, զուարթամիտ և երևելի, ծանօթ

Թագաւորաց և իշխանաց և Նախարարաց Ռուսաց և Պարսից, գոլով տեղեաւ ի գեղջէն Տաթևացի, որդի Միրզենց Տէր Յակոբ քահանայի, որ ի մանկական հասակի աստ ի սուրբ աթոռս Ստաթէի սնեալ և վարժեալ, յետոյ ի գալ աղայ Մահմատ խանին, ի 1245 թուին Հայոց, ընդ Նախայիշեալ Յովակիմ՝ սրբազան արքեպիսկոպոսին և ընդ Տաթևու գիւղացւոց գնաց ի Նախիջևան, և անտի ի սուրբ աթոռն Էջմիածին. անտի ևս ընդ Տէր Յակոբ քահանային՝ հօրն իւրոյ, գնաց ի Զմիւռին քաղաք ըստ որում բնակիչք երկրիս յառաջժէ անդ էին գնացեալ: Եւ կեցեալ անդանօր ամ մի եւ երկու ամիս. և զկնի մահուան հոգելոյս Տէր Յակոբ քահանային սա վերադարձաւ ի սուրբ աթոռն Էջմիածին. և անդ միաբանեալ 20 ամ. և աբեղայ օրհնեալ՝ վարդապետական իշխանութիւն առնու ի սրբազան Դաւիթ կաթողիկոսէ, և եպիսկոպոսութիւնն և ծայրագոյն գաւազանի իշխանութիւնն առնու ի սրբազան Եփրեմ կաթողիկոսէն:

Եւ ի ժամանակս սրբազան Դաւիթ կաթողիկոսին ի սուրբ աթոռն Էջմիածին, ի նեղութեան ժամանակին բազում տաժանմամբ 3 ամ գործակալութիւն եւ աթոռակալութիւն է արարեալ. յետ որոյ յառաջ քան զեպիսկոպոսութիւնն, յաւուրս սրբազան Դանիէլ կաթողիկոսին, ի Նախիջևան և ի սոյն յերկիրս Նուիրակ

եկն, որ և բարիոքապէս աւարտեալ վերադարձաւ ի սուրբ Էջմիածին ։ Եւ յաւուրս Եփրեմ սրբազան կաթողիկոսին երկիցս Նուիրակ է եղեալ Թիֆլիզի և Վրաստանի՝ մին ի վարդապետութեան և միւսն ի յեպիսկոպոսութեան ժամանակին. եւ մինչ յայս գործ կայր, տեղւոյս միաբանքն և իշխանք և բոլոր ժողովուրդ խնդրեալ էին ի սրբազնագոյն Եփրեմ կաթողիկոսէն շնորհել գյիշեալ Մարտիրոս արքեպիսկոպոսն առաջնորդ իւրեանց ։ Ի յառաջին Նուիրակութեանն ի վարդապետութեան ժամանակին կաթողիկոսն շնորհեալ էր նոյս թղթով միայն ծանուցանելով, ըստ որում աթոռոյ գործոյն վերայ կայր տակաւին ։ Եւ որովհետև Տաթևու վանքիս ամենայն վախմ գիւղօրայքն եւ սեպհական մուլքն յափշտակեալ էին բռնաւորք երկրիս. յայն սակս ի Թիֆլիզ գնալով՝ Արտիշչև եւ Երմոլով կուսակալացն վասն այնց մլքերիցն թղթով խնդիր էր մատուցեալ եւ պատասխան ընկալեալ ։ Ապա աւարտեալ զնուիրակական գործ իւր և վերադարձեալ ի սուրբ աթոռն Էջմիածին. և ի 1820 ամի Փրկչին եկն ի սուրբ աթոռս Ստաթէի յառաջնորդութիւն կոնդակաւ սրբազնագոյն կաթողիկոսին և բարձու հրամանաւ եւ թղթով Ռուսաց նախարարացն. զոր ինչ վարելահողք կային սուրբ վանքիս, զորս բռնաւորքն յափշտակեալ էին, զայն ամենայն յետս էառ ։

Մինչ սուրբ աթոռն Էջմիածին ընդ իշխանութեամբ Պարսից էր, սրբազնագոյն կաթողիկոսն (Եփրեմ) սակս ազգի ազգի նեղութեանց եկեալ էանց ի Տուշի. եւ անտի ի Հաղբատու սուրբ Նշանի վանս : Եւ անդանօր նորին սրբազնասուրբ օծութիւնն եւ Ներսէս սրբազան արքեպիսկոպոսն՝ առաջնորդ Վրաստանու, թղթով խնդրեցին գնալ ի Հաղբատ եւ ի Թիֆլիզ : Եւ գերաստիճան սրբազան տէրս մեր ուղեւորեալ աստի էջս արար առ նոսա. և նոցա խորհրդակցութեամբ բերեալ ի Թիֆլիզ՝ գերզդօն Երմոլով կուսակալի և իւրեանց թղթակցութեամբ դեսպան առաքեցին ի շահաստանն Դավրէժ. եւ սրբազան ծնողն իմ առաջնորդ սրբոյ ուխտիս Նշանակիր Մարտիրոս արքեպիսկոպոսն վայելուչ արժանաւոր պատրաստութեամբ չու գործեաց եւ գտաւ ժաման առ արքայորդին Աբբաս-Միրզայն ինչ ինչ խնդրանաց աղագաւ. եւ անտի պատուեալ յարքայորդւոյն Աբբաս-Միրզայէն մեծամեծ խիլայիւք եւ հրովարտակաւ վերադարձաւ կրկին առ նոյին սրբազնութիւնն : Յետ որոյ անտի եւս եկեալ ի սուրբ աթոռս՝ իւրոյ առաջնորդական կառավարութեանն գտաւ պարապեալ զանազան ուղղութեանց եւ շինութեանց եթէ հոգեւորական եկեղեցեաց և բազմանայից կարգադրութեանց, եթէ մարմնաւորական վասն շինութեան

սրբոյ աթոռոյս, յամենայնի ջանադիր եղեալ հոգս տարկանէր բարւոք տնօրէնութեանն և բոլոր մերազ-նէիցս ։

Բայց զկնի, ի 1826 ամի Փրկչական թուին ան-կաւ խռովութիւն և շփոթումն ի մէջ երկոքին տէ-րութեանցն Ռուսաց եւ Պարսից. եւ երկիրս այս իբրև նաւ ի հողմահար և ալեկոծեալ ծովու, ազգն քրիստոնէից եւ և էջս առնելով աստ եւ անդ գաղ-թեալ՝ ոչ գիտելով զոր վախճանի իւրեանց ի յեր-կիւղէ չարացելոյն Պարսից, որ իբրև կատաղի առիւծ իմն յառնէին վասն կորստեան քրիստոնէից ազգին ։ Եւ ի նմին ժամանակի ոմանց նախանձայուզաց դիմեալ առ Արքայորդին՝ համբաւեալ էին ինչ ինչ չարութիւն զմանէ . որոյ վասն Օրդուվարու իշխող դժնդակաբարոյ Եահեայ խանն առաքեալ յԱրքա-յորդւոյն չահզատայէ բազում զինակիր Պարսկամբք, եկեալ մտին ի սուրբ աթոռս, եւ շրջապատեալ զչո-րեսին կողմունս ։ Յայնժամ ըմբռնեալ ի մէջ մեծի քանապայիւ կողոպտեալ մերկացուցին զկայս եւ ըղ կարխ թողլով և ոչ մի ինչ բաց ի հանդերձէն ։ Ապա աստի հրեշտակօք առաքեցին յՕրդուվար դուտատաղ (դերի) միայն անդ ժամանակս ինչ. յետոյ տարեալ ի Դաւրէժ՝ 15 ամիս դուտատաղ կեցեալ ի ձեռս Պարսից ։

Այլ յորժամ խաչակիր զօրքն Ռուսաց ամե-նայաղթ զօրութեամբ գնացեալ տիրեցին Դաւրէժի՝

ձերծեալ ազատեցաւ յոխակալաց յայնցանէ ։ Բայց յայնժամ քաջ զօրապետ Պասգեւիչ սարդարն ի տեսանելն զարթազան տէրս մեր՝ ցնծալիր բերկրանօք վերապատուեալ տուեալ էր յաղագս ճանապարհային խարճազնացութեանն հարիւր հատ պաճախ (Հոլլանդիոյ) ոսկի ։ Այսպիսի պատուով և այլ թաղում յուսադրանօք ճանապարհ արարեալ եկն եհաս ի գիրկ սրբոյ աթոռոյս, ի Փրկչական թըուին 1827ին ի 25 Նոյեմբեր ամսոյ ։ Արդա՛րև խարիսխ հաստատութեան աղխնաարաս սրբոյ տանս վերանորոգեալ կանգնեցաւ կրկին յառաջ քան զառաջինն. եւ կամեցաւ բարիոք հոգարկութեանց սրբոյ աթոռոյս (ձեռն արկանել)․ բայց ի չարագրգիտ եւ բարեաց Նախանձիչ բանսարկուէն յանկարծուստ ցաւ իմն եկեալ պաշարեաց ի 27 Յուլիս ամսոյ. եւ այնու ցաւով զբաղեալ՝ ամենայն բարի յառաջադրութիւնք որ վասն օգտի սրբոյ աթոռոյս ունէր մտադրեալ, մերժեցան ի բաց ։

Իսկ այնոքիկ որք յառաջ քան զվրդովութիւնն երկոքին տէրութեանց, և յառաջ քան զհիւանդութիւնն, զորս կարի քաջ մտերմութեամբ և յոյով աշխատանօք կերտեալ է տուեալ ի սուրբ աթոռս, աստանօր թուեցից յանուանէ անուն. մեծ թանապայի եղեալ միջի դրունքն, լուսամուտքն և զոր ինչ փայտեայ շինութիւնք կան, փոքրաւորաց օրանի

քօշքն, դղեկի թանապայի քօշքն, չորեքին լուսամուտքն խուրեանց որմովն ի հիմանէ ետ շինել, և թանապայի դրան հովանոցն առաջի հացատան և խոհանոցի այսինքն աշխանայի դրանց առաջի փայտեայ պսակնն, մինչ ի շիրախանայի (գինետուն) դուռն. յարեւմտեան թավլայի թահարթանդն (քիւ) քարամբ, ձիթահանքի մեծ տունն, և արևելեան ձիթահանքն թաղթանդ (կամարակապ) քարամբք ի հիմանէ ետ շինել. և Կաքաւայ սարի աղբիւրի ջրի ճանապարհն որ յ35 ամաց հետէ քայքայեալ և ոչնչացեալ կայր, սրբազան տէրս մեր յոլով խարճագնացութեամբ աղբիւրն ետ նորոգապէս բերել ի սուրբ վանս ։ Սատանայի կամրջի կապն, ընդ որ յոյժ դժուարաձին թամբով անցանէր, այժմ այնպէս քայքայել տուաւ և ետ նորոգել որ ձիք բեռամբ անցանեն. Ծնհէրու և Հալիձորու միջի Խութի կապն, այն եւս որ կարի դժուարին էր, ետ ուղղել, Նանախի այգւոյ հնձանն, Ղօշանցւոյ այգւոյ հնձանն ի հիմանէ ետ նորոգել. Տուանիձորու կարաստատունն, և Մեղրու երկոքին այգիքն նորոգապէս ետ յօրինել բազում խարճագնացիւք եւ աշխատակրութեամբ ։

Այլ եւ բազմաշխատ և հոգևոր ծնողս իմ Տէր բարձր սրբազան Մարտիրոս րենակերտ արքեպիսկոպոս, դէտ և վերատեսուչն սրբոյ, հրաշալի ուխտիս Ստաթէի և մետրապօլիտն սոյն վիճակիս, մինչ

եօթն ամ կայր նուիրակական գործով ի Թիֆլիղ քաղաքի՝ ընդ ժամանակս ժամանակս լինէր խնդրամատոյց առ Արտիշչեվ եւ Երմոլով կուսակալսն յաղագս սրբոյ աթոռոյս վախմ գիւղօրէից եւ թահրայիցն ։ Իսկ ի գալ Նորին սրբազնութեան աստ, աստի եւս առաւել արար թղթագրութիւն միջոյ ինչ առ Նախայիշեալ մեծամեծսն Ռուսաց, սակայն մինչ հիւանդութիւնն դիպեցաւ տեառնս մերոյ. անձամբ անձին ոչ կարաց գնալ առնել խօսակցութիւն վասն կարեւոր օգտի սրբոյ աթոռոյս. այլ Տաթեւացի Ուստաքօլեան Սիմէոն սրբազան եպիսկոպոսն թղթագրութեամբ սրբազան տեառն մերոյ առաքեցաւ ի Շուշի ամրոցն ի դրունս մեծամեծաց զի խօսեսցի ընդ Նոսա զօգուտն սրբոյ ուխտիս ։

Եւ նա յօգնաջան աշխատանօք գնաց, արար խօսակցութիւն, և Նոքա սրբազան Տեառն թղթագրութիւնն ոչ անտես առնելով՝ մանաւանդ վասն յիշեալ Սիմէոն սրբազան եպիսկոպոսի պատուին շնորհեցին զբովանդակ վախմիաթ գիւղորայքն սրբոյ Աթոռոյս, եւ սեպհական տեղորայքն, որոց անուանք վախմիաթ գիւղօրէից են այսոքիկ. ի Սիսեան մահալին (գաւառին) Ղարաքիլիսէ, Աղքեանդ, Բնունիք եւ Դաստակերտ, Տաթեւ, Սուարանց, Տանձատափ, Մալդաշ, Խաղուանի որ Մալդաշու մազրան է, Խոտա-

նան, Հալիձոր, Շնհէր եւ Խոտ, Բերդիկ, Թաս եւ Կլից : Նախքան զհիւանդութիւն հօգևոր ծնողի իմոյ Տեառն Մարտիրոս արքազան արքեպիսկոպոսի եւ վերադիտողի սրբոյ եւ հրաշալի ու խտիս, այսքան յոգնապիսի աշխատակրութիւնք աղինաստարաս Սիոնի սրբոյ տանս Ատաթէի, ի յիշատակ իւր յաւիտենական : Եւ այնու հիւանդութեամբ հանգեաւ ի Քրիստոս յոյսն բնաւից, որոյ մարմինն եդաւ ի հանգստի ի միջի ժամատան յետի դասուն կից որմոյն հիւսիսային կողման, զորոյ զհոգին Տէր լուսաւորեսցէ : Թիւ վախճանին ի 1830 ամի և 14 Հոկտեմբերի :



# ԾԱՆՕԹՈՒԹԻՒՆՔ։

## Երկրորդ Հատորոյ։

### Պատմութեան Նահանգին Սիւնեաց։

1. Անտի իմն է պատճառաբանութիւնս. ի ծաղկի էր ի դարուն յայնմիկ յԱյրարատեան նահանգի Բագրատունեացն պետութիւն. ուր Հայրապետք ազգիս նստէին սովորաբար։ Եւ եթէ ինքն Ստեփաննոս Օրբէլեան առ ի առնուլ զձեռնադրութիւն եպիսկոպոսութեան ոչ դանդաղեցաւ գնալ ի Տաթեւոյ ի Սիս, մի թէ չկարէ՞ր Յակոբն այն ի Սիւնեաց երթալ ի Շիրակ, այսինքն յիւրմէ գաւառէ յայլ գաւառ սահմանորդ. յայս սակս բուն պատճառ ապստամբութեան նորա եւ այլոց ոմանց յիւրոց յաջորդաց ոչ այնչափ բացակայութիւն կաթողիկոսաց մերոց էր, որչափ սնափառութիւն նորին եւ նուազութիւն քրիստոնէական խոնարհութեան, որով ախտացեալ եպիսկոպոսն այն, թեւկն ածէր ինքնիշխանութեան, որպէս եւ աշխարհական իշխանք իւրոյ աշխարհին ապստամբեալ ի թագաւորէ իւրեանց օրինաւոր՝ անձանց կացին տէր ի կորուստ ինքեանց եւ հայկական գրոհի։

2. Կոն, կաւն, ուղիղ ևս իկօն, է բառ յոյն, և նշանակէ պատկեր ։ Կիրառութիւն պատկերաց առ Հայս կանուխ էր քան զկաթողիկոսութիւն Վահանայ. ուստի և անտեղի համարել պատճառ աքսորման նորին զպատկերս ։ Զօրէն Օրբէլեանի մթին են և այլ պատմագիրք ազգիս ի խօսիլն զՎահանայ, որ թերևս ոչ զիկօնս այլ զիկօնոստաս (խաչկալ) Յունաց կամեցաւ մուծանել յեկեղեցի մեր. և միաբանութիւն հաւատոյ առնել ընդ նոսա, վասն որոյ եւ անկաւ ։ Սամուէլ Անեցի ասէ զմանէ « սա դաշնադիր եղև ընդ Վիրս միաբան դաւանութեամբ ». եւ Կիրակոս վ. Գանձակեցի. եր. 48. զնոյն բան կրկնէ ։

3. Թագաւորութիւն Սմբատայ Սիսակեան ի Սիւնիս, Արծրունեայն ի Վասպուրական, Կորիկէիցն ի Սօմխէթ, և այլոց նմանեաց նոցին այսր անդր, չէին և չեղեն ի բարգաւաճանս Հայաստանի և ոչ ի գովանս նրբամիտ կենցաղագիտութեան իշխանաց մերոց. այլ ցոյցք յայտնի մօտալուտ քայքայման ազգային իշխանութեան մերոյ ։ Բիւր գովութեան արժանի համարէի առաքէն զիշխանս Սիւնեաց եւ Արծրունեաց և այլս, եթէ յետ կալեալ անձանց թագ՝ գուն գործէին նոքա ապահովել զխաղաղութիւն մերոյ հայրենեաց ի ներքս ի ձեռն ընդհանուր զինակցութեան որպէս Գերմանք մերոյ դարու. եւ փութային միաբան գործակցութեամբ լայնել զսահմանս իւրեանց արտաքոյ ։ Այլ զի նոքա ծայրագոյն իմն անմտութեամբ յետ պատառելոյ զմիաբանութիւն ազգին, եղեն այն, եւ բազում անգամ առաջնորդ հասարակաց թշնամւոյն ի ծոց Հայաստանի, մատնչէ

արժանի են անուան եւ կարապետի աւերածոյ Հայաստանի ։ Յուսուփ (Իւսուֆ) որ միով ձեռամբն խլէր զԹագն արքայական ի գլխոյ երանելւոյն Սմբատայ, եւ միւսովն պսակէր զԳագիկ Արծրունի, յայտ առնէր հաւատարեաւ, թէ չէր բարեկամ ոչ միոյն, ոչ միւսոյն . այլ շահիւ դիտէր կենցաղագէտ Պարսիկն ի հնոց առածէն Հռոմայեցւոց « բաժանեա՛ զի տիրեսցես » ։ Յայս միտս խորտակէր նա գործակցութեամբ կարճամիտ իշխանաց նախ զբուն արմատն ազգային ինքնիշխանութեան ի սիրտ Հայաստանի իմաստուն կենցաղավարութեամբ եւ անհուն աշխատութեամբ կանգնեալ ի Բագրատունեաց անտի, և ներէր ընձիւղայ առ նովաւ բուսելոյ փթթել առ ժամանակ մի որպէս զի զայնս ևս խլեսցէ յարմատոյ ի դէպ ժամանակի . իսկ շլամիտ Թագաւորեալքն տակաւին ոչ ի միտ առնուին թէ բրիչն Բագրատունեան ճոխութեան ոչ երբէք հաստատիչ լինէր ոչ Արծրունւոյն, ոչ Սիսակին՝ գոլով ամենեցուն նոցա ի մի եւ նոյն զանգուածոյ ։ Մի պախարակեսցուք ուրեմն այնպէս զՅոյնս կամ զՊարսիկս իբրև Թշնամիս մերոյ ազգին եւ հայրենեաց . այլ զանիմաստ եւ զհերձամիտ բարս մերոց իշխանաւորաց, որոց յանիմաստութենէ առաւել չարիս կրեաց Հայաստան քան որչափ ի խորամանկութենէ Պարսից կամ ի նենգութենէ Յունաց ։

Սմբատ սպարապետ ի Տարեգիրս իւր. եր. 46 յաւելու թէ ի փոքրիկ տէրութեան Արծրունեաց յետ բազմադիմի աւերմանց աշխարհին, էին տակաւին ի ժամանակին յորում փոխեցաւ երկիրս ընդ Սեբաստ-

տիրոյ, 12 բերդաքաղաքք և 4400 գիւղք ։ Նոյնպիսի ինչ գրէ և Ստեփաննոս Օրբէլեան զմանրիկ պետութենէ Կապանայ ընելով իննս զ43 բերդաքաղաքս և 1008 գիւղորէս. արդ եթէ ի 55 բերդաքաղաքս երկուց պետութեանցս դիցուք յիւրաքանչիւրն տունս 1000, եւ ի 5408 չէնսն երդս 100՝ գտանեմք 595, 800 երդ ։ Եթէ այսչափ ևս դիցուք յիշխանութիւնս Վանանդայ, Կորիկէին, Անձևացեաց, Գեղամայ, Վայոց ձորոյ, Հաբանդայ և կողմանց Հայկազուն Աղվանից՝ գտանեմք 1,191,600 երդս, յորս հաշուեալ առ սակաւն շունչս 5, տեսանեմք իբր վեց միլիոն բնակիչս, ամենեքին Հայք միակրօն եւ միաբարբառ, զորս անիմաստ իշխանք ազգիս չորթեցին խտանէ Բագրատունեաց առ ի մատնել յետ սակաւուց յանգիւտ կորուստ Յունաց, Պարսից եւ Թուրքաց թողլով մեզ մասն ժառանգութեան զգերութիւն անարգ և հառաչանս հանապազորդ ։

4. Սուրբ Գրիգոր եկեղեցին Փարբւոյ է ուխտատեղի հռչակաւոր եւ սքանչելագործ առ ստորոտով Արագածի, ի հիւսիսոյ սուրբ Էջմիածնի, ուր դիմեն խածեալքն ի կատաղեաց յամենայն ազգաց ի գիւտ բժշկութեան ։ Ուխտաւորքն երթան հետի, նօթի ունելով պսակ բոլորեալ զգլխով ի կեմէ խոտոյ և ոչ բնաւ հային յետս ի գնալն իւրեանց ։

5. Արքուլիք անուամբ չիք ի Հայս գաւառ, քաղաք կամ գիւղ ։ Թուի թէ բանք կոնդակին ակնարկեն յԱգուլիս՝ երևելի աւան Հայոց առ Երասխաւ ի գաւառին հին Նախիջևանի. բնակիչքն Հայք են բայց ի սակաւ Թուրքաց, յոյժ աշխատասէր, ճարտար յառ

և խոտոր և ճոխ և ունին բաց յազգային լեզուէ զայլիմն բարբառ զոկ ասացեալ, զոր չեղև մեզ արկանել ընդ քննութեամբ ։

6. Տէրութիւն Տաճկաց կոչէ հեղինակս մեր զԹագաւորութիւնն Պարսից, որ սկսաւ ի ձեռն Սալջուկայ Թուրքի ի մուտս մետասաներորդ դարուն. որ և ճեղքեալ ապա ի պետութիւնս Իկօնիոյ, Դամասկոսի, Հալեպի, Անտիոքայ, Մօսուլայ եւ այլն. բարձան ամենեքին յելս երեքտասաներորդ դարուն ։ Հերոսք ճոխութեանս են ժանտն Թօղրուլ բէկ, արեանարբուն Ալփ-Արսլան (որ ա՛ռ զԱնի) եւ բարեբարոյն Մէլիք-Շահ՝ Ջելալ-էդ-Դին ի Մահմետականաց կոչեցեալ, որ կարգեաց զհռչակաւոր տօմար այսր կրօնի ։

7. Ի տէրութեան Կապանի որ պարունակէր զչորս կամ հինգ գաւառս Սիւնեաց դնէ Օրբէլեանն բերդս 43 և գեղանս 1008. և յաւարտ պատմութեան իւրոյ, ի չորեքտասան գաւառս այսր աշխարհի ոչ Թուէ աւելի քան զ677 շէնս ընդ ամենն. որով և ինքն ինքեան ընդդիմախօսի ։ Թերևս այլք զլուծումն հակասութեանս գտցեն յաւերման Կապանի յերկոտասաներորդ դարուն. ես ևս ի նոյն կարծիս լինէի եթէ ոչ էր ի վեր հանեալ Օրբէլեանի զհնութիւն ցանկի շինիցն յառաջ քան զԹագաւորելն Սիւնեաց ։

8. Ցառաջն բերդաքաղաք կարևոր, արդ քակեալ իսպառ բաց ի փառաւոր եկեղեցւոյն Նուիրելոյ սրբոյն Վարդանայ Մամիկոնի, է ի ձախմէ Երասխայ ոչ հեռի ի Ջուղայէ. ուր ըստ աւանդելոյ երկրացւոյն սպատեցան սուրբ Նշխարք Վարդանանց

քաջէրժայիշատակ մարտիրոսաց Հայաստանի. եւ ամփոփեցան յեկեղեցւոջ աստ ։ ԶԱստապատն հանեն բնակիչք երկրին յատտ դիապատէ, որով եւ արդարացուցանեն ըստ իմիք զաւանդութիւնն ։

9. ԶԵրուսաղէմ ա՛ռ ի Խաչակրաց ոչ Խորազմն, որպէս կարծէ Օրբէլեան. այլ Սալահադին Քիւրդ ծնեալ ի Հայս յամի Տեառն 1137. եւ փայտակիր ի Դվին քաղաքի ըստ Միխայէլի Ասորւոյ. իսկ ըստ Աղեքսանդրու Մազասայ ծնեալ ի Տեկրետ Միջագետաց (Հոյակապ արք Արեւելից. Հ. Ա. եր. 236) ։ Իսկական անուն նորա էր Իւսուֆ-բեն-Էյուբ-Սալահ-էդ-Դին. որ եմուտ նախ ի ծառայութիւն Նուր-էդ-Դինի՝ աթաբէկին Ասորւոց, և ի տրիտուր մեծամեծ քաջագործութեանց իւրոց պատուեցաւ Մալէք-ննասեր (յաղթող իշխան) տիտղոսիւ. եւ առաքեցաւ յօգն Աթեդ-Լեդինիլ շահի Ֆատիմեան խալիֆային Եգիպտոսի ։ Յետ մահու Նուր-էդ-Դինի հալածեալ զԻսմայէլ-ել-Մալէք-էս-Սալեհ՝ ժառանգ նորա, ինքն տիրեաց Դամասկոսի եւ Հալէպի ի 1175. եւ յաղթեալ Խաչակրաց ի 1187 առ Տիբերիադայ ծովակաւ՝ գերիկալաւ զԳի Լուսինեան՝ արքայն նոցա, և ա՛ռ զԵրուսաղէմ, զԱսկաղոն, ըզ Պտողէմայիդ (Պտղոմայիս) կամ զԱքա ի նոյն ամի. եւ մեռաւ ի 1192 ։

10. Ընդ առասպելս գրել արժա՛ն է ապաքէն զկոտորածն Երուսաղէմի ի Սալահադնայ կամ, ըստ նորա, ի կարծեցեալ Խորազմայ ։ Սալահադին, ըստ վկայելոյ նոյն իսկ հռոմէական պատմագրաց, ոչ միայն ոչ եհեղ եւ ոչ կաթիլ մի արիւն յետ առ-

ման Երուսաղէմի. այլ եւ ազատութիւն ետ ամենայն քրիստոնէից երթալ ուր եւ ախորժեսցին եւ բազմաց ինոյանէ ինքն հոգայ զծախս ուղւոյն. եւ հրաման ետ հիւրատես ասպետայն կալ ի քաղաքին եւ զարմանել զհիւանդս: Այսպէս գրէ և Միխայէլ Ասորի. Ինչ տարբերութիւն ընդ Սալահադին մահմետական եւ ընդ քրիստոնեայ թագաւորս Խաչակրաց: Տե՛ս զայսմանէ l'Univers pittoresque. Asie. Գիրք Է. եր. 327-328.

11. Փարմանն որոյ պարսկերէնն է ֆերման եւ հայերէնն՝ հրաման, որք զնոյն երեւին ունել ստուգաբանութիւն, նշանակէ հրովարտակ արքայական: Իսկ մանչուր զոր չեղև մեզ գտանել ոչ իմեր եւ ոչ յայլ լեզուս, թուի լինել տարապարտ կրկնութիւն հրովարտակի կամ թէ ծանուցմ. մն, յայտարարութիւն:

12. Անուանի զօրագունդ տէրութեան Պարսից ի ժամանակի ճոխութեան Խաղնայի:

13. Լերինք Սիւնեաց որ ձգեալ զարեւմտեայ եզերբք ծովակին Գեղամայ երկայնին մինչ ի Սոմխէթ եւ դառնան առա ի կողմն Կարուց, լի են հանքօք պղնձոյ, երկաթոյ, կապարի, արծաթոյ, շապի եւս եւ ոսկւոյ. յորոց բազումք ի գործածութեան էին ի դարս առաջին. եւ թերեւս աստի գնայր իվաճառանոյս Տիւրոսի պղինձն ազնիւ յիշատակեալ բազում անգամ յԱստուածաշնչի յԵզեկիէլէ: Առ մեօք երկաթ հատանի ի Բօյան, Ղուշչի, Սէյդի և ի Ջօխադար. ի Կողբ (Խուլբ ի Խազախ գաւառի), ոսկի ի Դաշքեասան մերձ յԵլիսավեթօպօլ (Գան֊

ձակ) ի Բօլնիս և ի ձորն Աղստևոյ . կապար արծաթախառն յԱխտալայ, ի Տամբուլուտ (ի Սօմխէթ), չաղ ի Սեգլիս. եւ պղինձ ի Շամլուղ եւ յԱլավերդ, որ թուի լինել պղնձահանքն յիշատակեալ ի ի Ստեփաննոսէ Օրբէլեան , ի Ձորափոր գաւառին Գուգարաց առ ստորոտով Լալվար լերին, ոչ հեռի ի Սանահին վանից. որ եւ առնու զեօթներորդման ի մետաղաց աստի : Զհանքացս յիշատակեն նաև պատմիչքն Կիրակոս և Վարդան վարդապետք : Ի հանդիսին (էքսպօզիսիօն) Թիֆլիզոյ ի 1850 ամի, տեսի անձամբ զգեղեցիկ օրինակս մալաքիտի բերեալ յԱխտալյէ : Արդիւնք պղնձոյ հանքացս անցանեն ի տարին աւելի քան զ5,000 պուտ կամ 200,000 լիվր Գաղղիոյ : Ելանէ աստի նաեւ արծաթ կապարախառն :

14. Անուաֆրէ փոխի ի մեր լեզու Ոնոփրիոս. եւ է անուն յատուկ ղիւանապետի աթաբէկին Իվանէի Արղութեանց, որ ոչ բաւականացեալ դարձիւ անձին ի կրօնս Վրաց, դարձոյց նաեւ զվանքն Ախտալի առեալ ի Հայոց. ըստ որում այսպէս պատմէ Կիրակոս վարդապետ զայսմ Պղնձահանից. եր. 130. « Վարհամանեցու եւ Իվանէ՝ եղբայր Զաքարէի, եւ թաղեցաւ ի Պղնձահանքն , ի դուռն եկեղեցւոյն, զոր շինեաց ինքն՝ առեալ ի Հայոց Վրաց ի վանս արար » ։ Սմին իրի անտեղի է ամենեւին տարակոյսն Սարգիս վարդապետի Ջալալեան որ ի ճանապարհորդութեան իւրում ի մեծն Հայս. եր. 85. հարցանէ ասելով « այլ թէ իսկապէս Յունաց է թէ Հայոց (վանքն Ախտալի) չէ՛ յայտ » ։

15. Ստեփաննոս Օրբէլեան յետ արտայայտելոյ զյունագիտութիւն իւր . արդ ևս երևեցուցանէ զհմտութիւն Վրաց բարբառոյ շարելով մեր առաջի քանի մի պաշտօնական բառս այնր ազգի անիմանալիս եւ նոցա եւ մեզ միանգամայն . յորոց մարժուանն է վրացի հնչումն մարզպանի Հայոց, որոյ աղաւաղեալ ի բերանս Վրահայոց նախ ի մարծպան, ապա դրոշմեցաւ ի մարծուան, Ծիրամձղարն, ուղիղ եւս ժիճամժղուար , նշանակէ առաջնորդ , տեսուչ, մամբաւարն նշանակէ ստիկան , դէդէպուլ՝ աւագանի, նախարար , իսկ մամնաշաղէլն եւ ճղաւնդիդէլն չեղև մեզ հնար ստուգել : Ղատին եւ շեյխն գոլով բառք Արաբայ՝ առաջինն նշանակէ դատաւոր, երկրորդն՝ ցեղապետ :

16. Կամանթային, առանձին սեպհականութիւն, ստացուած յորում այլ ոք չունի մասն, եթէ չիցէ վրիպակ գրչի :

**17. Լաշայ մականուանի Գէորգ կամ Գէորգի Դ. որդի և ժառանգ Թամարայ Թագուհւոյ . իսկըզբան անդ մանկական արութեամբ լցեալ ընդարձակեաց զսահմանս տէրութեան ձեռնտուութեամբ զօրավարաց իւրոց Զաքարէ սպասալարի և Իվանէ աթաբէկի Հայկազանց. ի ծերութեանն կրեալ վիշտս բազում մեռաւ ի կսկծոյ թողեալ ժառանգ աթոռոյ իւրոյ զԴաւիթ Դ. որդի իւր :**

**18. Յերկոսին օրինակս մեր ոչ տեսաւ պատճէն կոնդակին. զանցառութիւնս այս այլուր ևս տեսանի :**

**19. Յօրինակս մեր, յայտ է թէ, յանուշադրութենէ գրչացն, տեղափոխեալ էին ինչ ինչ հատուածք**

գլխոյս, յետ եւ յառաջ եղեալ, զորս ըստ իմաստին ի կարգ ածեալ եդաք որպէս տեսանի ի տպագրեալն ։

20. Տոհմաբանութիւն Օրբէլեանց ընծայեցաւ յումպէտս Մեսրոբայ երիցու որ եկաց ի տասներորդ դարու. այլ վէպք յաջող և ձախող իրացն որոց դիպեցան ցեղս այս յերկոտասաներորդ և յերեքտասաներորդ դարս, մերժեն ինքնին զկարծիս այսպիսի ։ Այլ և այլ տարեգիրք և պատմութիւնք Հայոց և Վրաց զորս ունիմք ի ձեռին, չառնեն բնաւ ակնարկութիւն ինչ իցեղն Օրբէլեան, գաղթեալ ըստ Օրբէլեանի իբր 1000 ամօք յառաջագոյն քան զդար իւր ի Չինաց ։ Ի տեղիս տեղիս կարկատուն բանք հեղինակին, հակախօսութիւնք, չափազանց գովաբանութիւնք եւ անլուր քաջագործութիւնք ընծայեալ տոհմիս այսմիկ, զճառագովութեան իմն բերեն ցոյցս քան անաչառ պատմութեան. ուստի եւ ոչ զերծ ի կասկածանաց ։ Զոմանս ի բանից աստի ուղղելոց եմք վկայութեամբ մերև այլազգի պատմաբանից, զայլսն թողումք յընտրութիւն ընթերցողաց ։ Ի Գաղղիա հոյակապ գիտնականն Սէն-Մարտէն (J. Saint-Martin) ի գիրսն իւր անուանեալ Mémoires historiques et géographiques sur l'Arménie առաջին եղև որ ի 1819 ընծայեաց ի լոյս գաղղիական թարգմանութեամբ և բազմահմուտ ծանօթութեամբք հանդերձ զգլուխս զայս. որում հետևեցան Կեսար Ֆամէն, Բրոսսէ կրսեր (Brosset jeune) եւ այլք. ի Գերմանիա Կլափրօթ բազմահմուտն այլովք ոմամբք հանդերձ, ի գրելն զՎրաց խօսեցան

զՕրբէլեան տոհմէ ըստ Ստեփաննոսի Օրբէլեան թէ և ուղղելով միշտ զկամսոր եւ զակամայ վրէպս նորա ։ Յեղաքանութիւնն Օրբէլեան տպագրեցաւ ղառաջինն ի Մադրաս քաղաքի Հնդկաց յամի 1775 արդեամբք Եղիազարայ Շամիրեան իբրու Մեսրոբայ երկրու գործ և պատմութիւն Վրաց, ոչ զերծ ի խանգարմանց. զոր թարգմանեալ է Սէն-Մարտէն, չունելով իձեռին զօրինակ այլ, յետ կարծեցեալ ուղղագրութեան ։ Լակրօզ թարգմանեաց ի լատին զհատուած ինչ պատմութեանս ըստ օրինակին Յովհաննու Ակօլութոսի, որ վերստին տպագրեցաւ ի Սանկտ-Պետերբուրգ յամի 1810 ։ Յանցեալ ամի դէպ եղեւ ինձ տեսանել միւս եւս տպագրութիւն այսր ցեղաբանութեան ի Մոսկվայ, չառ կամ սակաւ տարբեր իմերոցս ։ Մեր օրինակք, յորոց զմին դաղափարեալ եմ ըստ բնագրոյն Տաթևոյ վանից, միւսն օրինակեալ ի գրատան սրբոյ Էջմիածնի, եւ երրորդն, որ ընծայեցաւ ինձ ի պատուական բարեկամէն իմմէ ի Գրիգորոյ Մարկոսեան Ջմիւռնացւոյ, լնուն զթերին Լակրօզի եւ Սէն-Մարտէնի եւ ուղղեն զվրիպակս ամենից ։ Ամենքին սոքա զհեղինակութիւն տոհմաբանութեանս Ստեփաննոսի Օրբէլեան ընծայեն, ընդ որս և ես, սոփեալ մանաւանդ իվերջաբանէն (որ պակասի յայլ ամենայն տպագիրս) յորում այսպէս խօսի հեղինակն « Եւ արդ՝ ո՞վ ընթերցողք՝ մի՛ վկի ոք պարսաւադէտ, որպէս թէ գիր ազգ յարգէ և պատուէ, եւ կամ կարծիք տարցի եթէ աւելի ինչ բանս յօդեալ պատուատեցաք ։ Վկայ է ինձ Տէր․ որ յիսկզբանէ

ճառիս մինչ ի կատարածն բազում ճշգիւ քննեալ գտաք զստոյգն, եւ զոր մեր ականատես էր եղեալ, ի բազմաց զսակաւն եւ զճշգրիտն եղեալ կարգեցաք աստ ։ Եւ եթէ զօտարաց ազգաբանութեանց և յիշատակութեանց, որք վաղ ժամանակօք անցին, փոյթ եղև մեզ, այլա ո՞րքան ևս առաւել խմն եւ խնոցն » ։

21. Արմազ (Արամազդ ի Վրաց) կոչի լեառն որ համբառնայ յեկից Մցխիթայի ի ձախմէ Արագվայ գետոյ ։ Զիք տարակոյս թէ Արմազ է կրճատեալն Արամազդայ կամ Որմզդի ի պաշտօն առելոյ ի Վրաց . յոր ակնարկէ նաև հայրն պատմագրութեան մերոյ Մովսէս Խորենացի, որ Բ. 86. այսպէս խօսի զսարէս « Եւ խսկոյն կործանեաց զամպրոպային պատկերն Արամազդայ, որ կայր մեկուսի ի քաղաքէն՝ գետոյն հզօրի ընդ մէջ անցանելով, զոր սովոր էին երկրպագել այգուն այգուն ի տանեաց իւրաքանչիւր զի հանդէպ նոցա երևէր » ։ Պղատոն Յօսելեան ի համառօտ պատմութեան եկեղեցւոյ Վրաց . եր. 24 յաւելու թէ Վիրք ի պաշտօն առեալ էին զԱրամազդ կամ զՈրմիզդ, զԶադէն, զՀայիմ եւ զԱփրոդիտէ ։ Ստրաբոն գիրք ԺԱ. եր. 500 եւ 501. դնէ ի մերձակայս Արմօզսիս անուամբ մայրաքաղաք Վրաց, զոր Պլին կոչէ Արմազդիս, որ թերևս նոյն իցէ զոր Վիրքն կոչեն Արմազի-ցիխէ (բերդ Արմազայ) այլ առանց որոշելոյ ճշգիւ զվայրն ։ Սէն-Մարտէն առ ի գտանել զտեղի բերդին Արմազայ յաւելու թէ Մցխիթայ « ոչ էր առ Արագվայիւ. այլ առ Կրով » . իսկ մեք որ բազմիցս յայց ելեալ եմք քաղաքին այնմիկ, կարեմք ա-

մենայն վստահութեամբ պնդել թէ սխալի Սէն-Մարտէն. և թէ Մցխիթայ մինչև ցամն 1850 էր ի խառնուրդս կամ ի դեղքային Կուր և Արագվայ գետոց :

22. Օրբէթ բերդն (ի Վրաց Օրբիսի), զորմէ ասէ Ստեփաննոս Օրբէլեան շինեալ Քարթլոսի ի լեառն Արմազ, ոչ է անդ. այլ ի Գուգարս ըստ Յովհաննու կաթողիկոսի, եւ ի Տաշիրս ըստ Ստեփաննոսի Ասողկայ. Գ. 30. ոչ ի ձախմէ Կուր գետոյ որ միշտ կոչեցաւ Քարթվէլ, Քարթլի, Սաքարթվելոյ, եւ խմէնջ Վիրք. այլ յաջմէ այնորիկ, ի Սոմխէթ կամ ի Հայս : Բերդս այս, յորմէ նախնիք Օրբէլեանց կոչեցան Օրբէթք կամ Օրբէլք, ասի թէ ի յետոց Շամշուտէ կամ Շամշուլդէ անուանեցաւ : Շուխլդէ, շուլդի, շոլդի բառքս Վրաց թէ եւ յոյժ մերձաւոր միմեանց հնչմամբ՝ տարբեր են սակայն նշանակութեամբ. իբր զի առաջինն նշանակէ նետ, երկրորդն՝ պարս կամ պարսետ, երրորդն՝ խարազան. իսկ սամի՝ երեք : Ծագրական իմն երևի ստուգաբանութիւնն երեք նետից զոր գիտունք դարուս բազում ջանիւք հանեցին ի բառէս. ըստ իս այլուր պարտ է որոնել զստուգաբանութիւն Շամշուտէի : Ի զօրանալ պետութեան Բագրատունեաց ի Հայս Աշոտ Ա. գրաւեաց զայս բերդ. յորմէ էանց առ Կորիկեանս. ի սոցունց էառ Բագարատ՝ արքայ Վրաց, յամի 1066. եւ ետ Օրբէլեանց եւ ապա՝ Արղութեանց (այսպէս կոչի իշխանական ցեղն Զաքարեայ սպասալարի ցայսօր ժամանակի) : Ի հնգետասներորդ դարու իշխէր անդէն Պեւգիանէ յՕրբէլեանց Հայոց. զորով բնակէին իբր 20,000 անձինք յազգէ մերմէ :

Լենկթիմուր եւ Ջհանշահ կոտորածս արարին սա-տէն ։ Այժմ խապառ աւերակ է . ուր եւ տեսանին հետք եկեղեցեաց եւ այլ շինուածոց ։

23. Խունան բերդ հնագոյն շինեալ ի խառնուրդս Կսխոյ ի Կուր, ի ծայր ցից քարի ի սահմանագլուխս Հայոց, Վրաց եւ Աղվանից և անկեալ փոփոխակի ընդ իշխանութեամբ երեցուն ազգացս ։ Առ որով է դաշտ ընդարձակ նոյնպէս Խունան կոչեցեալ ։ Վիրք կոչեն զայն Խունանի, եւս եւ Մտխվարիս ցիխէ (բերդ Կուր գետոյ) զոր Վախթանգ ժամանակագիր շինեալ ասէ ի Քարթլոսէ՝ նախնւոյն իւրեանց ։ Ցամին 1127 Իվանէ և Սմբատ Օրբէլեանք տիրեցին բերդիս յանուն արքային Վրաց . որ և անցեալ բազում անգամ ձեռաց ի ձեռս յամայութիւն դարձաւ . յորում և կայ ցայժմ ։

24. Ջիք առ Պարսս Խոսրով անուն թագաւոր Քէքաւուս կոչեցեալ ոչ յառաջ քան զՔրիստոս եւ ոչ զկնի . յապացոյց որոյ յառաջ բերել կարեմք մատենագիրս յոլով Յունաց, Հռոմայեցւոց, Քաղդէացւոց, Պարսից, Հայոց, և Արաբաց, զորս ածի ի հանդէս խստուցել գիրս ։ Յառասպելախառն պատմութեան ցեղին Կայանեան նշմարի Քայ-Քայուս ոմն (այլ ոչ Խոսրով) իբր 600 ամօք նախ քան զՔրիստոս յաջորդեալ Քայ-Քօբաբայ եւ յաղթեալ դիւաց Մաղանդարանի ձեռնտուութեամբ Ռոստամայ . ապա որդին իւր Սիավէք և Քայ-Խօսրու որ համարի Կիւրոսն Յունաց, առ որով եկաց Ջերդուշտ կամ Զրադաշտ մոգ ։ Իսկ այլ Խոսրով անուն թագաւորք Պարսից, են իցեղէ Սասանեան և նորա-

*գոյն ժամանակաւ, որպէս մեծն Խոսրով (531), Խոս֊րով Բ. (590) Խոսրով Գ. (622) ։ Ստեփաննոս ի պատմելն զկոտորած ազգին իւրոյ ի Վրաց յա֊մի 1178 յաւելու « Թէ ի գալստենէ Նոյա ի Ճենաց աշխարհէն մինչեւ ցայն վայր, թուի թէ աւելի քան զ1000 ամէր » ։ Ըստ որոյ եւ գալուստ Նախնւոյն Օր֊բէլեանց ի Վիրս համդիպի առ ժամանակօք ծննդեան Քրիստոսի, որով եւ յերեւան գայ հակախօսութիւն Օրբէլեանին ։*

25. *Թագաւորական կոչումն հնագոյն եւս երեւի ի Վիրս քան որպէս կարծէ Ստեփաննոս Օրբէլեան եւ այլք ի ժամանակագրաց Վրաց ։ Ցապացոյց ասացելոցս են նախ՝ դրամք նախնի թագաւորաց ազգին այնմիկ եւ վկայութիւնք հայ, յոյն եւ հռո֊մայեցի մատենագրաց. յորոց Մխիթար Անեցի տասն թագաւորս Վրաց թուէ նախ քան զՔրիստոս, եւ 24 նախքան զՄիհրան (յումմէ յանհմուտ արանց Մեր֊վան կոչեցեալ) որ հաւատաց ի Քրիստոս առ Սուրբ Լուսաւորչաւ մերով ։ Կոստանդիանոս ծիրանա֊ծին զարքայս Վրաց համարի ծնեալ յՈւրիայէ՝ կնոջէ Դաւթի. եւ Դեգին* (Desguignes), *Գիւլդենշտեգ* (Guldenstaedt's), *Կլապրօթ* (Klaproth) *եւ այլք թուեն 120 թագաւորս Վրաց յանուանէ, յորս երեւելի են Արտակ, Դաշի, Բագուր, Միհրան (Միրվան), Լա֊ւուրսափ, Վախթանգ, Փառնավազ, որ թագաւո֊րեաց իբր 300 ամօք նախ քան զՔրիստոս. եւ Աղերկի՝ մին ի յաջորդաց նորուն, որ բաժանեաց զՔարթվէլ (այսպէս կոչի Վրաստան առ բնակս երկրին) ի տէ֊րութիւնս Արմազելայ եւ Մցխիթայ ։ Իսկ Տանու֊*

տէր պատուանունն, որով կոչէ Օրբէլեանն զիշխանս աշխարհիս, է թարգմանութիւն մամասախլի բառին Վրայ ։

26. Ջիք Արբետոն անուն թագաւոր առ Պարսիկս, ոչ առ հինս, ոչ առ նորս. սմին իրի եթէ չիցէ այս աղճատեալն Փերիդոնի (Féridoun), զոր Վախթանգ ժամանակագիրն Աֆրեդոն կոչէ, մտացածին իմն համարելի է ։ Տե՛ս ի Տիեզերական պատմութեանն Կեսարու Կանտիւ. Հ. Բ. եր. 10 ։

27. Զաշխարհն Խալանդրայ եդ Ստեփաննոս Օրբէլեան ի Գլուխն ԿԵ ի դաշտին Խազրայ ասելով «յաշխարհն Խազրայ զոր այժմ Խփչախք կոչեն». որ գոլով ի հիւսիսոյ Կովկասու ձգի ընդ մէջ Դոն եւ Տերեկ գետոց և զկրկին ափամբք Վօլգայի, յայժմեան կայսերութեան Ռօ սաց ։ Իսկ արդ տեղափոխեալ զայն Նահանգ յարևելս կոյս տարեալ դնէ ի սահմանակցութեան կայսերութեան Ջինաց. եւ ձգի, ասէ «երկայնութեամբ մինչև ցՆմաւոն լեառն» (ի ժամանակի զօրանալոյ Թաթարաց. եւ ոչ յառաջն) ։ Եղիշէ յիշէ և ժողովուրդ ինչ Խալանդրացւոց, յորոց հանին Պարսք զՀոնս ի հինգերորդ դարու առ ի կռուել ընդ Աղվանից ։

28. Ի ժամանակի գաղթականութեան Ջինացս այսինքն յաւուրս թագաւորացն Պարսից Քայ-Քաւուսի եւ թոռին սորա Քայ-Խոսրույի այսինքն 600 ամօք յառաջ քան զՔրիստոս ոչ գոյր առ Ցոյնս ինքնակալութիւն. այլ գերման պետութիւնք բոլորովին անծանօթ դրացի ազգաց, թող թէ Ճենաց ։

29. Որպէս ասացաւ ի վեր անդր, բերդս այս ան-

ծանօթ էր նախնի Հայոց. իսկ ի Վրաց կոչեցաւ միշտ Օրբէլի և եղաւ ի սահմանս Քարթլոսի այսինքն է ի Քարթվէլ և ոչ ի սահմանս Հայոց. և ազգն Օրբէլեանց ոչ երբէք իշխեաց ի Քարթվէլ. որոյ կալուածք իսկզբանն է և այսր տեսանին ի սահմանս Հախբատայ վանիցն: Աւելորդ համարիմ այսուհետև ժամավաճառ լինել առ ի բացատրել կամ միաբանել զայսօրինակ հակասութիւնս:

30. Զի Լեխթայ՝ Լեխթիմայքն (Լեխթ-Իմեր) Օրբէլեանի Սէն-Մարտէն թարգմանէ ceux des Lezguis (Legkh'h) Lekhthisaïk'h, և զիմաստ բանի հեղինակին թիւրեալ կամ ոչ հասու լեալ միայն՝ հանէ ի Լեզկեաց զազգն Լեխթխայց: Օրբէլեանն, որպէս է տեսանել յայս հատած բանի, ի թիւ արկանէ ոչ զԼեզայի ազգս. այլ զոմանս յաւագագոյն տոհմից Վրաց զորօրինակ զՄէլթեուլսն, զՄէփիեուլսն, ըզՄրաջուլսն, զՋաւախուրսն, զԽախեցիսն (Կախս), ի կարգս որոց դասէ և զԼեխթիմայսն, ստուգաբանելով ըստ չափու հմտութեան իւրոյ զծագումն նոցա, ամին իբր սխալի Սէն-Մարտէն ի հանելն զԼեխթիմայսն ի Լեզկեաց: Լեխթ կոչէր լեառն որ բաժանէ ընդ Մինգրելիա և ընդ Իմերեթ, և բնակիչք յեռին գաւառս կոչեցան Լեխթ-Իմերք զորս Բագարատ արքայ բաժանեաց (1529) յերիս առաջնորդութիւնս, որ և բազում անգամ յիշատակի ի ժամանակագրութեան Վրաց տպեալ ի Brosset jeuneնէ. եր. 7 և 134: Սխալի դարձեալ Սէն-Մարտէն ի կարծելն թէ Հերխթամն ոչ էր անուն իշխանական տոհմի այլ պաշտաման. և բառս Հերխթամ ոչ ըստ նորա նշա-

նակէ prince (իշխան) այլ՝ ազգապետ կամ ժողովրդապետ ելեալ յերիս-ժողովուրդ. եւ ի թաւ-գլուխ բաւրից ։ Եթէ ի նախնումն լեալ իցէ առ Վ իրս տոհմ ինչ այսպէս կոչեցեալ, պատմութիւնք նոցա ոչ ինչ խօսին ։ Այսչափ ինչ գիտեմք իբրեւ ստոյգ, թէ յամի 510 կայսրն Յուստինիանոս կարգեաց զՕսն Ռոստով Հերիսթավ Կաանի յորում էին 37 աւանք, զոր յիշեն ընդ այլս նաեւ Güldenstaedt's et Bechreibourg, եր. 71. տպ. Կլապրօթի, նա եւ ի ժամանակագրութեան Վրաց. եր. 21, 34, 68, 84, իսկ եր. 18, 67, 79, 84, ոչ իբրեւ անուն պաշտաման յիշի Հերիսթավ. այլ իբր տոհմանուն, որպէս է տեսանել եւ առ մեօք զսերունդս այսր ցեղի նովին կոչմամբ ի Թիֆլիզ եւ այլուր բնակեալ ։

31. Վախթանգ ժամանակագիրն նա համարի ըզՓառնավազ առաջին թագաւոր Վրաց, որ չերեւի մեզ հաւանական. բայց եթէ համարիցի ոք զնա յայլմէ ճոխութեանց ։ Տե՛ս ի ծանօթութիւնն 25 ։

32. Քարթլիս ցխովրեբայն ոչ է ժամանակագրութիւն. այլ կենցաղ կամ պատմութիւն Վրաց. այլ թէ որոյ հեղինակի արարեալ իցէ զայն, ո[illegible]խոեմ ։ Գրականութիւն Վրաց յոյժ աղքատ է արդեամբք գրչի, մանաւանդ պատմականօք ։ Վախթանգայն եւ անանուն ժամանակագրութիւնն թարգմանեալ ի կրսեր Բրօսսէէ յետոյ են ժամանակաւ, եւ ոչ այնչափ ինչ հաւատարմութեան արժանիք. եւ որ առ իս գտանի ի լեզու հայկական, անանուն է եւ երրորդ մասամբ առասպելախօս, եւ գրեալ, որպէս երեւի, ի 12երորդ դարուն ։

**33.** Մխիթար Անեցի անուամբ պատմիչ յիշատակեալ նաև ի Վարդանայ Բարձրբերդցւոյ և յայլոց, չանկաւ երբէք ի ձեռս իմ. իսկ գաւազանագրութիւն Մխիթարայ Այրիվանեցւոյ, որ անդրանիկ է ժամանակաւ քան զՕրբէլեանն, ոչ ինչ խօսի զայսմ ցեղէ: ՅԱյրիվանեցւոյն ընդ այլ պատմագիրս յիշատակի նաև Մխիթար քահանայ, որ նոյն երևի ընդ յիշատակելոյն յՕրբէլեանէ,

34. Ի Թուին Հայոց 498 իշխէր ի Վանանդ կամ ի բերդին Կարուց Գագիկ որ, հայեցեալ ի փոքրկութիւն գաւառաց իւրոց, հազիւ թէ արժանի էր կոչման Թագաւորի, թո՛ղ թէ Շահանշահի, յոր անուն պերճացան իրաւամբ ոմանք իպսակաւորաց մերոց Բագրատունեաց Անւոյ:

35. Ծոխաբանութիւն Օրբէլեանին ոչ այնչափ յստուգութիւն իւրն, թուի, հայելորչափ ի պարծանս իւրոյ տոհմին: Հայաստան, որում յոյժ առատաբար բաշխեալ էր երկինք հանքս երկաթոյ ի պաշտպանութիւն ազատութեան աշխարհին, ի վաղուց անտի խոտորեալ ի շաւղաց առաքինութեան իւրոյ փառաւոր նախնեաց, զսուր եւ զգեղարդ փոխեալ էր ի խոփ և ի շղթայ և բազում անգամ աղաչանօք խնդրեալ ի Պարսիկ շահից ի բաց առնուլ զանձնիշխանութիւն իւր և տալ փոխանակ զլուծ գերութեան: Սմին իրի եղաշտք մերոյ աշխարհին եղեալ ի հերուն հետէ ասպարէզ քաջութեան մանկանց օտարաց: Ներկայ արշաւանքս Սալջուկեանց չէր նոր ինչ և ոչ իսկ հայէր ի ջնջումն Քրիստոնէութեան ըստ Օրբէլեանի. այլ առ խառանալ գեղանի հայրենիս յերկրի

**աստ նախ քան զժառանգելն զվերինն ։ Կեդրենոս՝ յոյն կրօնաւոր, եւ մատենագիր ժամանակակից, Մատթէոս Ուռհայեցի մերազնեայ, և Իբն-Ալաթիր** Արաբ ի Քամել-ալ-Թեվարիխ գիրսն իւր տարբերին բազմօք յՕրբէլեանէն ի վեր հանելով միանգամայն և զանհաւատարմութիւն նորա ։ Արդ ըստ նոցա նախ Խուտուլմիշ, հրամանաւ Տօղրուլ-բէկի, արշաւեալ ի Միջագետս, յիշխանութիւնս Արաբաց՝ հարաւ ի նոցունց, եւ ի յետս ընկրկեալ ընդ Վասպուրական ի Պարս կրեաց նեղութիւն անբաւ ի Յունաց որ անդ ։ Տօղրուլ-բէկ, առ ի խնդրել զվրէժ չարեացս առաքեաց զԹոռն իւր Հասան կամ Արսլան խուլն աւերել զՀայս. որ և սպանաւ և զօրն իւր կոտորեցաւ ։ Ահաւասիկ համառօտ զրոյցք արշաւանխս ։ Վեստն Ահարոն Բուլղար՝ կուսակալ Վանայ, տեսեալ զբազմութիւն Թուրքաց՝ ոչ համարձակեցաւ ելանել ի ճակատ, եւ ի ձեռն հրեշտակաց հրաւիրեաց զՎեստն Կատակալոն՝ իշխան Անւոյ, գալ ի թիկունս իւր ։ Երկոքին զօրավարքս միաբան խորհրդով որոշեցին լքանել զբանակ իւրեանց լի անհուն կարասեօք և պաշարօք և դարան գործել Թուրքաց, որք իբրև տեսին զբանակն անտէր՝ համարեցան զՅոյնս մատնեալ ի փախուստ, և ինքեանք զհետ եղեն անհոգութեամբ մեծաւ գործել կողոպուտ ։ Յոյնք, որ դիտէին զանկարգ հրոսակն Թուրքաց՝ ելին յորջից իւրեանց, և կարգաւորեալ մարտկօք վաղեցին ի վերայ ։ Արսլան եւ որք ընդ նմայն քաջք ամենայն Թուրքաց անկան ի սուր անողորմ. եւ սակաւք ոմանք մազապուր փախեան՝ ի լերինս Պարսկահայոց ապաստանեալ ։ Տօղ-

**ռուլ-բէկ Թէև յոյժ վշտացաւ ընդ կոտորած զօրուն** իւրոյ. այլ ոչ վհատեցաւ. և զհետ եղև կազմել բանակ նոր ի Դեյլիմայ, ի Կաբիրայ, ի Թուրքայ եւ ի Պարսից Խորասանի. եւ զօրավար նոցա կացուցեալ զԻբրահիմ-Ինալ՝ եղբայր իւր խորդ, առաքեաց ի Հայս յամի 1049: Կատակալան կամեցաւ խաղալ ընդդէմ թշնամւոյն և տալ ճակատ արտաքոյ սահմանաց կայսերութեան Յունաց. Ահարոն, ընդհակառակն, հայեցեալ ի սակաւութիւն գնդի քրիստոնէիցն՝ խորհուրդ ետ ամրացուցանել զքաղաքս աշխարհին Հայոց եւ նստեալ ի լերինս Վրաց խնդրել զօր ի կայսերէն, որ եւ հրաման ետ Լիպարտի դիմել յօգն զօրավարաց իւրոց:

36. Պատմիչք Յունաց, ըստ իմ գիտելոյ, ոչ խօսին ամենեւին զԿոմնենոսէն Տրապիզոնի, որ եկն յօգնութիւն Ահարոնի եւ Կատակալանայ. իսկ ի մերոյս Մատթէոս Ուռհայեցի ի 498 թուին Հայոց, և Սմբատ սպարապետ. եր. 66-67 ընդ այլս յիշատակեն զԳրիգոր Պահլաւունի Մագիստրոս (դուքս Միջագետաց), զԿոմնենոսն կոչեն Կամեն և զԼիպարիտն ասեն եղբայր Ռատին կամ Ռընատոին և Զօյատին ի Վրացի ազգէ, այլք և՝ Թագաւոր Ափխազաց, որ ոչ յիշի առ Օրբէլեանի: Իսկ° Կամենոս աղճատութիւն Կեկամենոս (այրեալ) մականուանն Կատակալանի, կամ Նիկեփոր Կոմնենն որ սակաւ մի յառաջն եկաց կառավարն Վասպուրականի, կամ Իսահակ Կոմնենն որ ի ժամանակին յայնմիկ էր ստրատոփեդարք կամ բանակապետ, որ յամի 1057 ել յաթոռ կայսերութեան Յունաց:

37. Դուքիթս այս էր արքայ Վրաց, եւ առաջին ըստ կարգի անուան. իսկ Գագիկն էր թագաւոր Հայոց Վանանդայ:

38. ԶՆիպարիտէս, զոր Ստեփաննոս կոչէ Օրբէլեան եւ ասէ մեռեալ ի ճակատուն, բազում են որ խօսին ի մերոց և յօտար մատենագրաց. և ամենեքեան համարին զնա մատնութեամբ Ցունաց զերի անկեալ ի ձեռս Թուրքաց: Մատթէոս Ուռհայեցի յաւելու թէ եկաց Նիպարիտն ամս երկու եւ կէս ի գերութեան և ապա ազատեալ դարձաւ ի Կոստանդնուպօլիս և անտի՝ յաշխարհ ծննդեան իւրոյ: Կեդրենոս՝ յոյն արեգայ, Աբու՛լ-Փարաջ Ասորի և Իբն-Ալաթիր զնոյն բան կրկնեն: Տե՛ս mémoires sur l'Arménie. Բ. եր. 209-218: Որոց վկայութիւն ընդունական թուի յայսմ մասին յաչս ողջամիտ քննչի քան թէ Ստեփաննոսին Օրբէլեան որ գիտէ մարտիրոս համդիսացուցանել զՆիպարիտ: Ըստ պատմելոյ Կեդրենոսի Բագարատ՝ արքայն Վրաց, առակեալ էր զկին Նիպարտի, որում վրէժխնդիր եղեւ սա նովին անարգանօք. և ապա միջնորդութեամբ կայսերն հաշտութիւն արարեալ՝ առեալ էր ի կալուած զՄոսքիկեան գաւառն. եւ Իվանէ՝ որդին իւր, կացուցեալ դուքս Տարօնոյ, որ եւ ի սակս չարագործութեանց իւրոց մատնիչ կոչեցաւ (տե՛ս Զամչ. պատմ. Հայոց. Բ. եր. 962-963: Սամուէլ Անեցի ի 1083 ամին ասէ ըզ Նիպարիտայ տանձկացեալ. իցէ՞ այս Նիպարիտս զորմէ է բանս կամ այլ ոք յազգէ սորա, այլում թողում ժամանակի և տեղւոյ:

39. « Իսկ ի զօրացն արքունի էառ զտասն հազար

այր » թարգմանէ Սէն-Մարտէն « il prit encore avec lui dix mille hommes de troupes arméniennes » զարքունին Հայոց բացատրեալ համարելով զայնս Գագկայ տուեալ և ոչ արքային Վրաց : Ցանկալի էր մեզ յոյժ գիտել զաղբիւրն գիւտոյս :

40. Յետ բազում անգամ պարծելոյ Սէն-Մարտէնի թէ սրբագրեալ է զբնագիր իւր, զխառնեցանն գրէ խարնեցան . ըստ որոյ ինքն ևս ոչ պակաս սըրբագրութեան կարօտ երևի քան նախորդն իւր :

41. Որդրու գիւղն, զոր պոռոտախօս յոյն աբեղայն Կեդրենոս անուանէ Osourtrou (*mémoires sur l'Arménie*, t. II, p. 204.) եւ զոր ունին մեր օրինակք պատմութեան Օրբէլեանի ողջ, պակասի առ Սէն-Մարտէնի, որոյ զանցառութիւնն կարի ծանր թուի իբրև անուան տեղւոյն ուր մղեցաւ նշանաւոր ճակատն ընդ մէջ Քրիստոնէից և Մահմետականաց :

42 և 43. Զջրտուս եւ զզինաքաղս Օրբէլեանի թարգմանէ Սէն-Մարտէն « qui leur semblaient être un fleuve débordé ou plutôt un seul amas d'armes » եւ չարաչար սխալի . իբր զի ջրտուք եւ զինաքաղք էին առանձին ջոկք ի բանակս Բիւզանդացւոց, առաջինքն կարգեալք ի մատակարարել զօրուն ջուր ի ժամ մարտին, երկրորդքն առ ի ժողովել զէնս անկելոյն ի մարտի :

44. Զճաւճ նիզակիկն թարգմանէ Սէն-Մարտէն petite lance, և սխալի . վասն զի ճօճ flexible կամ կակուղ բուն նիզակին նշանակէ, որպիսի են արդարև ցայսօր ժամանակի եղեգնեայ բունք նիզակաց Քրդաց :

45. Ջուկեկուռն Սէն-Մարտէն թարգմանէ dorée, որ նշանակէ ոսկեզօծ. եւ սխալի. իբր զի ոսկեկուռն ոչ այլ ինչ նշանակէ բայց եթէ d'or massif, կամ fait d'or massif.

46. ԶԼիպարիտն Ափխազայ գրէ Սէն-Մարտէն Լիպարիտ Տփխիսայ եւ սխալի. իբր զի յայնժամ Թիֆլիզ տակաւին էր ի ձեռս Տաճկաց եւ նուաճեալ ընդ իշխանութեամբ հայ թագաւորաց Կորիկէից. Զամչ. պատմութիւն Հայոց. Բ. եր. 873: Եւ թագաւորք Վրաց նստէին ի կողմանս Իմերեթիոյ եւ անուանէին հասարակապէս թագաւորք Ափխազայ. որպէս է տեսանել նաև ի mémoires sur l'Arménie. II. եր. 215 և 229. և Կեդրենոս Բ. եր. 718 և 761:

47. Ալփասլանն մատենագրաց մերոց է անշուշտ Ալփ-Արսլանն Սալջուկեան՝ եղբայր և յաջորդ Տողրուլ-բէկի, որ յետ առաջնորդութեամբ Թոխթգեն Թուրքմանի ողողելոյ արեամբ զԱղվանս, զՎիրս և զԱխալքաղաք, պաշարեաց և ա՛ռ զԱնի յամին 1064 ի Յունաց. եւ ի հարկի կացուցեալ զԿորիկէ՝ որդին Դաւթի անհողին ի Լօռի, և զԲագարատ՝ Ափխազաց, առնլով միանգամայն զառաջնոյն զդուստր և զերկրորդին զքեռ դուստրն իկնութիւն՝ դարձաւ յաղթական փառօք յԱսպահան հանդերձ Մէլիքշահ՝ որդւով իւրով և Նեզամ-Ալմուլկ վզուրկաւ:

48. Ո՞ւր էր վանքն Բեթանիա, ի Հայաստա՞ն թէ ի Վիրս. Օրբէլեանն միայն յիշէ զայն առանց ցուցանելոյ զտեղին. այլ պատմագիրք մեր լռեն զայնմանէ: Ես եւս հայեցեալ ի հանդամանս ԺԱ. դարուն ոչ միայն անհաւանական համարիմ զինա-

կեղն ցեղին Օրբէլեանց առ Օրբէթաւ ի Սօմխէթի որ էր առ հասարակ ընդ Կորիկեան Հայ թագաւորօք, նաև ոչ ընդունիմ ունել նոյա անդէն չիրիմ տոհմային : Յովսէփ-Նիկողայոս Դըլիզլ հրատարակեաց յամի 1766 զաշխարհացոյց ինչ Վրաստանի յորում տեսանի յարևմտից Թիֆլիզոյ Բետանիա անուամբ տեղի ինչ, զոր եւ Սէն-Մարտէն նոյնացուցանէ ընդ գերեզմանատան Օրբէլեանց :

49. « Ի ժամ ճաշոյն առանձին նստել ի բազմականացն » թարգմանէ Սէն-Մարտէն «dans les festins, ils avaient seuls le droit de se placer sur les lits» : Յայսմ և ի նման խանգարմունս իմաստից բնագրին Սէն-Մարտէն զթերութիւն հայագիտութեան իւրոյ չպարէ ինքնահնար գիւտիւք. վասնզի բնագիրն ոչ այլ իմաստս ընծայեցուցանէ աստանօր քան եթէ իշխանք Օրբէլեան յառանձին սեղանի ուտէին, որպիսի է ցայսօր ժամանակի սովորութիւն արքայից եւ արքայազանց Պարսից :

50. Յապացոյց ասացելոցս ի ծանօթ. 46 յիշեցուցանեմք աստանօր դարձեալ թէ մինչ ցԴաւիթ Նորոգիչն Թիֆլիզ ոչ էր առ Վրացիս. ուստի և Լիպարիտն չկարէր կոչիլ Լիպարիտ Տփղիսայ այլ Ափխազաց : Դաւիթ Նորոգիչն, զոր Սէն-Մարտէն կոչէ Բ. Frédéric Dubois de Montpéreux, ի ճանապարհորդութեան իւրում շուրջ զԿովկասաւ, և այլք կոչեն Գ. եւ ասեն զնմանէ թագաւորեալ ի 1089-ց1130 ամ Տեառն. ազատեաց զՎիրս ի լծոյ Պարսից եւ Թուրքաց եւ ապաստանեաց ի Կաբալա, ի Դարբանդ, ի Շիրվան, ի Սօմխէթ : Բնակիչք Անույ

ձանձրացեալ յայլազգի քաղաքացւոցն իւրեանց՝ ետուն կամաւ զքաղաքն ի ձեռս սորա ի 1124. Կլապրոթ բազում ինչ անստոյգ պատմէ զմանէ ։ Սա տարաւ ի Գանձակայ (Ելիսավեթօպօլ) զերկաթակուռ դրունս քաղաքին ի վանս Գենաթի յետ կործանման այնորիկ շարժիւ ։ Զայսմանէ խօսել ունիմ այլուր ։

51. Սէն-Մարտէն «զԱգարակն ի տեղի դարբասի» թարգմանէ «une plaine du côté de Darbas, դարաբասն առնելով յատուկ անուն և զԱգարակն՝ դաշտ, որ ոչ երբէք անց ընդ միտս Օրբէլեանին. մեք, ընդ հակառակն կարծեմք. թէ դարաբասն նշանակէր առ Հայս ԺԲ-ԺԳ դարուց պարզապէս ապարանք կամ պալատ. եւ իշխան իւրաքանչիւր, նաև Քահանայապետք Հայոց ունէին յայլ եւ այլ քաղաքս կամ աւանս զդարբաս իւրեանց ։ Ագարակն աւան թուի նոյն լինել որ յիշատակի յարձանագիրս Սանահնի. եր. 31. Ճանապարհորդութիւն ի մեծն Հայս. Սարգիս վ. Ջալալեանց ։

52. Դեմետրէ ել յաթոռ տէրութեան հօր իւրոյ յամի 1130, ընդարձակէ զսահմանս տէրութեան իւրոյ օժանդակութեամբ Օրբէլեանց, եւ ապա կրօնաւորեալ մեռանի ըստ Կլապրոթի ի1150, ըստ Սամուէլի անեցւոյ ի 1156, եւ ըստ Օրբէլեանի ի 1159 ։ Առ սովաւ Իվանէ Ապուլեթեանն քաջայեալ՝ հարկանէ զՓատլուն հանդէպ Անւոյ ի 1131 եւ սատարութեամբ հօր իւրոյ առնու զԴմանիս. հարկանի ի Կուզ Ամիրայէ ի 1136, եւ ի Խարասնգուրայ ի1145. եւ սպանանի ի Դեմետրէէ ի 1147 ։ Դեմե-

*տրէ եւս Հարկանէ զԽարասնգուր աթաբէկն ի 1131 եւ զՍալթուխն՝ սուլտան Կարնոյ, ի 1156 ի դուռն Անւոյ ։*

53. *Գենաթ որոյ ռամկականն է Գելաթի կամ Գելաթ, է մեծանուն վանք յիմերէթ առ կարմիրն կոչեցեալ գետակաւ յելից Քութայիս քաղաքի հանդերձ երիւք եկեղեցեօք, գրատամբ եւ չիրմօք թագաւորաց Վրաց ։ Ցոմանց համարի շինեալ սա ի Դաւթայ Նորոգողէ յելս մետասաներորդ դարուն, յայլոց՝ կանխագոյն քան զնա. կաթողիկէ եկեղեցին է նուիրեալ ամենասուրբ Կուսին, որոյ փառաւոր զմբէթն զարդարեալ է խներքուստ բիւզանդեան մուսինիւ յոսկի յատակի, ունելով պատկերս թագաւորաց ոմանց աշխարհին ։ Գամբայ, Փրեդերիկ Դիւբուայ դը Մօնպերեօյ, Կրսեռն Բրոսէ եւ այլ բազում արք հոյակապք միաբան վկայեն թէ երկաթի դուռն որ գտանի յայս մենաստան, բերեալ է ի Դարբանդայ ի ձեռն արքային Դաւթի Բ. ի դարձին յարշաւանաց իւրոց . այլ Բիոֆի տաուիւք արձանագրութիւն նորա և վկայութիւն ժամանակակից պատմագրին Հայոց Կիրակոս վ. Գանձակեցւոյ, ջրեն զկարծիս զայս և ակներև ցուցանեն թէ մեղկն այն երկաթի ոչ ի Դարբանդայ եկեալ է, ոչ ի Պարտաւայ եւ ոչ յԱնւոյ. այլ ուղղակի ի Գանձակայ յետ կործանմանն այնորիկ շարժիւ ։ Կարդասցուք նախ զարձանագիրն, որ է հետեւեալ թարգմանեալ ի Ֆրանսայ եւ հրատարակեալ ի 1836 ի Սանկտ-Պետերբուրգ՝ մայրաքաղաքի Ռուսաց ։ « Ցանուն Աստուծոյ ողորմածի եւ ամենաբարւոյ, Էմիր եւ*

Սէյդ փառաւոր Սաւէր՝ (Սվար) որդի էլ-Ֆազլի (Փատլուն) (զորոյ Աստուած պահեսցէ զտէրու-
թիւնն) տէր մեր, հրամայեաց մեզ շինել զդուրս ընդ
վերակացութեամբ իմաստնոյն Աբուլ-Փարաջի
Մուհամմեդի՝ որդւոյ Աբդուլլահի (որում տացէ
միշտ Աստուած յաջողութիւն) ։ Դուռս այս կռա-
նեցաւ իձեռն Իբրա(հիմի)՝ որդւոյ Օսմանայ, որ-
դւոյ Անգվէյհայ, դարբնի, յամին 455 (հիջրեթի) »։
Ըստ Գեհերիզատի աւասիկ եւ ազգաբանութիւն
Chavir-ben-el-Fazli յորմէ Հայք արարին Աբուլ-
Սվար. որ և էր իցեղէն Բենու-Շեդդադայ, կամ ըստ
մերոց, Շատատիկեան որոց իշխանութիւն համարի
տեւեալ ամս 128 (951-1076) ։

Մուհամմեդ-Բեն Շեդդադ իշխեալ յամին Հիջ-
րեթի 340 (951), Աբուլ-Հասան-Ալի Ա. Մեր-
զբան՝ եղբայր նորա. Ֆազլ (Փատլ) Ա. նոյնպէս
եղբայր Ալւոյ Ա. Աբուլֆետ Մուսա՝ եղբայր վեր-
նոյն. Ալի Բ՝ որդի Մուսայի. Նուշերվան՝ որդի
Ալւոյ Բ. Սավէր-բեն-էլ-Ֆազլի (Աբուլ-Սվար) յիշա-
տակեալն յարձանագրութեան. Ֆազլ Բ՝ որդի վեր-
նոյն. Ֆազլուն՝ (Փատլուն) որդի Ֆազլի Բ ։ Ցետ
արձանագրութեանս Դիւբուայ դը Մօնպերեօյ յա-
ւելու թէ ըստ Դերբէնդ-Նամէի (պատմութիւն
Դարբանդայ) ի ժամանակի շինութեան դրանս,
այսինքն է՝ ի միջոցի 1036–1064 ամաց, ի Դարբանդ
իշխէր ոչ Սավէր-բեն-էլ Ֆազլի. այլ Աբդ-ուլ-Մե-
լիք-բեն-Մանսուր-բեն-Մէյմուն. յետ որոյ Ջուջան
ամն խռովեաց զերկիրն ։ Շեդդադ կոչեցեալն ի
Ֆրահնայ է, անտարակոյս, Շատատիկեան ցեղն որ

ըստ Վարդանայ և Ուռհայեցւոյն տիրեցին ի Գան֊
ձակ սկսեալ ի մօտոյ ԺԱ.երորդ դարուն ցելս ԺԲե֊
րորդին, և բարձան ըստ Սամուէլի Անեցւոյ յամի 1190
յորում Բուզան՝ զօրապետն Մէլիք-շահի, կալեալ
զվերջին Փատլունն կամ Ֆադլուն՝ առաքեաց առ
արքայն Պարսից, և ինքն տիրեաց Գանձակայ: Չամչ.
ի պատմութեան Հայոց. Բ. եր. 1045. առեալ ի
Մխիթարայ Անեցւոյ՝ յիշատակէ զանուանս յիշխա֊
նաց այսր ցեղի, խմա զԱլ-Ազիզ (Ալի-Ազիզ), Պար֊
զուան (Մերզեբան), Լեշքարի Փատլուն (Ֆադլուն)
որ և տիրեաց սակաւ մի Դվնայ, Ղարաբաղի եւ
այլ մերձաւոր գաւառացն: Գիւրուայ ընդ վայր
թարթափի այսր անդր առ իգիւտ Աբուլսվար ան֊
ուան, զոր Սմբատայ սպարապետի (տպեալ իմէնջ)
եր. 54-55. տարեգիրքն ընծայեն Ապուսվար ան֊
ուամբ, եւս և Չամչ. պատմութիւնն Հայոց, Բ. եր.
873. 913. ըստ որոց Դաւիթ Անհողին՝ թագաւոր
Սօմխէթի եւ Աղվանից, եհար զՓատլուն ամիրայն
Գանձակայ յամի 989. և յամի 1036 զԱբուսվար (որ
տիրէր միանգամայն Դվնայ և Գանձակայ) : Իսկ
Կիրակոս վ. Գանձակեցի յաղագս յիշեալ դրանցն.
եր. 65. այսպէս խօսի «ի 588 (1040) թուականին
եղև շարժ սաստիկ. եւ կործանեցաւ քաղաքն
Գանձակ, եւ եկն թագաւորն Վրաց Դեմետրէ՝
հայրն Դաւթի եւ Գէորգեայ. եւ տարաւ զդրունս
քաղաքին յաշխարհն իւր». զոր եւ կրկնէ յեր. 116.
այսպէս խօսելով «ընդ աւուրսն ընդ այնոսիկ (1040)
եղև շարժ ահագին. և կործանեցաւ մայրաքաղաքն
Գանձակ... և եկն թագաւորն Վրաց Դեմետրէ. և

*յաւարի էառ զամենայն ինչսն. տարաւ եւ զդրունս քաղաքին յիւր աշխարհն» :*

54. *Ըստ Ստեփաննոսի Օրբէլեան, Կիրակոս վ. Գանձակեցւոյ. եր.* 94 *եւ Սամուէլի Անեցւոյ Գէորգ Գ. կամ Գէորգի, ըստ արտասանութեան Վրաց, էր եղբայր Դաւթի Գ. սակաւակեցի* (2 *ամ թագաւորեալ) որդւոյ Դեմետրեայ, եւ համարի նստեալ յաթոռ յամին* 1157 : *Զսա Կլապրոթ համարի որդի եւ յաջորդ Դաւթի Գ. եւ Սէն-Մարտէն ասէ թագաւորեալ յամի* 1150 : Ի 1161 *ամի իմուտս Օգոստոսի առ սա վերստին զԱնի եւ եհար զՍօքման Շահի-Արմէնն Խլաթայ (զոր Կլապրոթ վրիպեալ կոչէ Շահրիար՝ սուլտան Պարսից,) գերի վարեալ անձինս* 23,000 *եւ կոտորեալ զբազումս ըստ Միխայէլի Ասորւոյ և Սամուէլի :* Ի *հետեւեալ ամին առ սա զԴվին եւ գերեաց անձինս* 60,000 :

55. *Յաղթութիւնս այս նոյն է ընդ վերնոյն, եւ զոր ինչ Սամուէլ Անեցի՝ ականատես վկայ, Միխայէլ Ասորի և* Իբն-*Ալաթիր Գէորգեայ Գ. ընծայեն պանծալի քաջութիւնս, զնոյնս Ստեփաննոս Օրբէլեան իւրում ազգակցին* Ի*վանէի տայ. և պատճառն չէ տարակուսելի ինչ : Գտանի այլ իմն տարաձայնութիւն ընդ երեքին մատենագիրս. իբր զի երկոքին առաջինքն զթիւ զօրուն Շահի-Արմէնին Սօքմանայ հասուցանեն յ*80,000. *զոր կիսէ Օրբէլեանն իջուցանելով ի*40,000 : Ի*սկ յաղագս պատերազմին* Ի*վանէի ընդ Շէմս-էդ-Դինն Ելտկուզի եւ յաղթութեանն զոր կալաւ, ինքն միայն եւ Չամչեան Հ. Մ.*

խօսքին. իսկ այլ ամենայն պատմագիրք՝ քրիստոնեայ և մահմետական զընդհակառակն պատմեն. յորոց նախ Սամուէլ Անեցի ականատես գրէ թէ ի 1163 Ելտկուզն այրէ զԱնի 5,000 բնակչօք. հարկանէ զԳէորգի, և դառնայ բազում աւարաւ : Իբն-Ալաթիր, Միրխոնդ և Աբուլֆեդայ միաձայն պատմեն թէ. Շէմսէդ-Դին Ելտկուզ՝ աթաբէկ Ատրպատականի, յորժամ լուաւ զառումն Դվնայ ի Գէորգեայ՝ արքայէ Վրաց, ժողովեաց զօրս 50,000 եւ առեալ զԱսլան-շահ (խորդ որդին իւր), զՇահի-Արմէնն Խլաթայ (Սօքման), զԼարոյ Սնգուր՝ թագաւորն Մարաղայի, խաղաց յառաջ եւ եհար զԳէորգի եւ ի փախուստ դարձոյց յամին 1163 :

56. Վիրք զԳէորգեայ մեռեալ ասեն յամի 1171. Օրբէլեան թագաւորեալ ասէ անդր քան զ1178 ամն. և իսմին ամի ջնջեալ զազգ Օրբէլեանց ի Վրաստանէ, որ անհիմն երևի եւ առասպելք : Զամչեան Հ. Մ. ուսեալ ի Վարդանայ ինոյն վրիպակ անկեալ տեսանի. Պատմութիւն Հայոց. Գ. եր. 148 : Մեք եւ ոչ միայն ի 626 թուին Հայոց (1178 թուի Փրկչին) տեսանեմք զԻվանէ ճոխացեալ սպասալարութեան պաշտօնիւ ի Վիրս. այլ եւ ի 632 (1184), որպէս է տեսանել իմի յարձանագրայն Սանահնի վանաց, որ սկսանի այսպէս «ի թուին ՈԼԲ. ի թագաւորութեան Վրաց Գէորգէի ես Օրբէլեան Իվանէ սպասալարս, թոռն մեծին Իվանէ սպասալարին եւ որդի Սմբատայ սպասալարին, ըստ Նախնեաց սովորութեան եկի ուխտ Սանահին սուրբ Աստուածածնիս » եւ այլն : Ճանապարհորդութիւն ի Մեծն

Հայս. Սարգիս Վ. Ջալալեանց. եր. 30 ։ Ի հաս-
տատութիւն բանիս զայս եւս ոչ աւելորդ համարիմ
ի մէջ ածել թէ Իվանէս (զորմէ Օրբէլեան ասէ
սպանեալ ի Գէորգեայ յամի 1178) էր տիրապէս
որդի Սմբատայ, եւ սա որդի Իվանէի, որպէս է տե-
սանել ի պատմութեան Սիսական Նահանգին. եր. 125
եւ 128 ըստ մեր տպագրութեան ։ Այլ ոմն երևի
միւս Իվանէն զորմէ յամին 1147 սպանեալ ասէ Սա-
մուէլ Անեցին ի Դեմետրեայ ։

57. « Եւ Գէորգի կայ նստեալ ի Սախատէ » (որ
է անուն յատուկ եւ թուի լինել Սոմխէթ, կամ
Սակտրեոնի կամ Սխերթայ) Սէն-Մարտէն ոչ հա-
սու լեալ իմաստիցն՝ թարգմանէ այսպէս « Géorge
est sans force avec un petit nombre de parti-
sans. »

58. « ՅԱգարակն կոչեցեալ դարապասի » սա-
կաւ մի իվերոյ թարգմանէ Սէն-Մարտէն « dans la
plaine nommée Darbas ». աստ եւս « յԱգարակն
դարապաս » dans la plaine de Darbas. զԱգարակն
առեալ փոխան անդոյ. եւ զդարապասն որ է ապա-
րանք ըստ ոճոյ Օրբէլեանի, իբրեւ յատուկ անուն,
որ չէ այնպէս ։ Վասն զի զայս գիւղ բազում ան-
գամ նոյն հեղինակն կոչէ պարզապէս Ագարակ,
եր. 131 եւ այլուր ։ Ասացաք ըստ ոճոյ Օրբէլեանի,
որ եր. 177 այսպէս խօսի « վախճանի յիւրում դա-
րապասին յԱռիւայ » եւս եւ. եր. 190 « եւ տուն
դարապասի հայրապետին ». յորոյ յայտ է թէ բուն
անուն գեղջն ոչ էր դարապաս. այլ Առիւայ, Հոռմ-
կլայ. աստ եւս Ագարակ յոր անուն զտանին հա-

բիւրաւոր շէնք ի Հայս. ուստի եւ պարտ էր թարգմանել « dans son palais d'Agarak » : Զայսմանէ խօսելոյ եմք նաեւ այլուր : Զ·Քարթլիս Հերխաթավայ տե՛ս ի ծանօթ. թիւն 30 :

59. Օրբէլեանն պնդէ ստտանօրթէ Գէորգ Գ. առինուանել զԻվանէ Ամբատեանն կոչեալ ի թիկունս օգնականութեան զԽուպասար Խոփչախն, որում և ետ աւէ եր. 136. զմեծ մասն կալուածոց Օրբէլեանց կարգելով միանգամայն ի սպասալարութիւն Վրաց. այլ սակայն յարձանագրութեանց Սանահնի և այլ վանայն ուսանիմք թէ ի ՈԼ (1182), ի ՈԼԴ և ի ՈԼԶ ամին ամիր սպասալար տէրութեան Վրաց կարգեալ էր Սարգիս (Արղութեանց) եւ որդիք իւր Զաքարէ եւ Իվանէ : Տե՛ս եր. 31, 92 եւ 98. Ճանապարհորդութիւն ի Մեծն Հայս. Սարգիս վ. Ջալալեանց :

60. « Իվերայ բերդին խիսար (պաշարումն) աւուրս 25 » ընթեռնու Սէն-Մարտէն « ի վերայ բերդին Հիսար զաւուրս՝ 25 ». որ ոչ կարացեալ իմիտ առնուլ զիմաստ հեղինակին՝ պարգևէ Հայաստանի բերդ մի, զոր ի զուր խնդրէ ապա ի ծանօթութեանն ի ր առանց գտանելոյ երբէք : Դիւրին էր ապաքէն գիտել թէ խիսար որ նոյն է որ ինչ աղար, ոչ նշանակէր բերդ մի. այլ պարզապէս՝ պաշարումն, եթէ մտադրութեամբ ընթերցեալ էր զբանս հեղինակին : Որ եր. 131 պատմէ « զոր եւ լուեալ Իվանէի հորդեաց զամենայն ստացուածս իւր ի բերդն Տամշոյլտէ. յորում եւ կայր տուն գանձուց նոցա ի հին նախնեացն՝ լի անբաւ կարասեաւ. եւ կացոյց անդէն

թերդապահս... եւ ինքն առեալ զզօրսն եւ զմեծամեծ իշխանսն, որ առ Նմին եւ զԴեմնայն. եւ գնաց ի Լօռէ և ամրացաւ յոյժ... իսկ Թագաւորն Գէորգի եկեալ և ոչ գտաւ զնոսա յԱգարակին. ապա Նստեալ իվերայ բերդին (Տամշուլտի) խիստ զաւուրս 25. և էառ զնա և կոտորեաց զպահակսն. և էառ յաւարի զբազմութիւն գանձուց Նոցա եւ զամենայն ստացուածս. եւ եկեալ բանակեցաւ շուրջ զԼօռէիւ » : Յայսմանէ ակներև տեսանի թէ ոչ անդ եւ ոչ այլուր ոչ գոյր Հիսար անուն բերդ. ուստի և կարդալի էր խիստ կամ սլար :

61. « Ջհարկիքդ » ընթեռնու Սէն-Մարտէն « հանգիստդ » եւ թարգմանէ բնականաբար ի repos. մեր օրինակք ունէին հարկիք որ Նշանակէ պաշտօն, և լայնաբար՝ պատիւ, մեծարանք, որպէս և իմաստ թղթակցութեանն պահանջէ :

62. Առ Սէն-Մարտէնի պակասին կարեւոր տողքս « Եւ զԴեմնայն որ փեսայացեալ էր Իվանէի, ըմբռնեաց, եւ զաչսն եւ փորել եւ յերանայն յապաւել » :

63. Տե՛ս իծանօթութիւնն 56 :

64. « Որպէս զշուն հաչեն » ընթեռնու Սէն-Մարտէն « և ի զուր ասեն » զոր ի թարգմանութեանն խապառ այլայլէ գրելով այսպէս « mais ces discours furent vains, parce qu'on savait qu'ils étaient entièrement faux » փոխանակ գրելոյ que ces accusations sont entièrement fausses, et qu'ils (les accusateurs) aboient comme des chiens.

65. « Զորոց զրկողացն եւ զրկելոցն դատաստանն Աստուած տեսցէ յիւրում անաչառ դատաստանին » ընթեռնու Սէն-Մարտէն « զորոց զրկողացն եւ զրկելոց դատաստանն Աստուած գիտասցէ յիւրում անաչառ դատաստանին » իսկ թարգմանութիւնն անճոռնի ասէ « mais, au reste, Dieu jugera équitablement ceux qui les ont calomniés et ceux qui les ont trahis » փոխանակ զրկելոյ պարզապէս Dieu rendra sa justice aux exacteurs et aux dépossédés dans son impartial jugement.

66. « Եւ արեան պարտքն մեր զոր երևին զի զնոսա ընդ բռամբ ածից » ընթեռնու Սէն-Մարտէն « եւ արեանապարտքն մեր ուր երևին, զի զնոսա ածից ընդ բռամբ » որոյ թարգմանութիւնն բոլորովին հակառակ է նաև իւրոյ ընթերցուածոյն ։

67. ԶԳէորգեայ Գ. վախճանեալ ասէ ի թուին Հայոց 633 զոր Սէն-Մարտէն փոխարկեալ ի թիւ Փրկչին՝ դնէ ի 1184, զոր պարտ էր դնել ի 1185 ։ Կլապրօթ, Նեւգեննիոս եւ Վիրք, որպէս ասացաւ ի վեր անդր, դնեն զմահ թագաւորիս այսորիկ յամին 1171. Չամչեան Հ. Մ. երիւք ամօք զկնի, այսինքն յամին 1184 ։ Մեք եւս, զհետ գնալով արձանագրութեանն Սանահնի վանաց, համարիմք զնա համաձայն Ստեփաննոսի Օրբէլեան վախճանեալ յամին Հայոց 633 (1185) տե՛ս եր. 27. Ճանապ. ի Մեծն Հայս. Սարգիս վ. Ջալալեանց ։

68. Թամար՝ դուստր Գէորգեայ Գ. թագուհի Հաստ. Բ ։

մեծահամբաւ, իմաստուն եւ այրասիրտ, եղև արդարև փառք ազգին Վրաց․ որոյ յաջորդեալ հօր իւրում յամին 1185 յաթոռ թագաւորութեան ընդարձակեաց զսահմանս սյնորիկ յամենայն կողմանց, ելից զաշխարհ իւր քաղաքօք, վանորէիւք եւ այլ կարեւոր շինուածօք, բազմամարդացոյց եւ փարթամացոյց զժողովուրդ իւր, պաշտպան հանդիսացաւ գրականութեան եւ սիրելի եղև հպատակաց իւրոց Վրաց եւ Հայոց առհասարակ ։ Առ սովաւ ծաղկեցաւ Շոտ Ռուսթաւէլ, որ արար զպանծալի բանաստեղծութիւնն անուանեալ Մորթ ընձու ։

Երկոքին հայազգի իշխանազուն եղբարքն Զաքարէ եւ Իվանէ կոչեցեալ, որդիք մեծին Սարգսի Արղութեանց, որոց թոռունք այժմ Երկայնաբազուկ-Արղութեանց իշխանական պատուով ճոխացեալ բնակին ի Վիրս, եւ ազգականք նոյա Սարգիս եւ Զաքարէ յոյժ զօրավիգն եղեն է պատերազմունս թագուհւոյն Թամարայ․ եւ ամենայն յաղթութիւնք սորա գրեթէ ի ձեռս նոցա եւ զօրուն նոցա գործեցան, որպէս է տեսանել ի ժամանակակից պատմիչս ։ Ապերախտ Վրացիք ոչ պահեցին մեզ գէթ զթուական վախճանի նորա․ որոյ պետութիւնն կոչեցաւ ոսկի դար մատենագրութեան նոցա ։ Այլ սակայն յարձանագրութենէն Հարիճոյ սուրբ Աստուածածին եկեղեցւոյն տեսանեմք երկարեալ նորա իկեանս անդր քան զ1202 ամն, եւ տիրեալ ժամանակս սակաւ բովանդակ Ափխազիոյ, Իմերեթի, Քարթլէլի, Կախաց աշխարհին և լեռնագաւառայն Լոմկասու․ երկիցս եհար զԹուրքս և արշաւանս եդ

ի Տրապիզոն, ի Սինոպ, ի Պափղագոնիա եւ յայլ ծովեզերեայ քաղաքս Պոնտոսի ։ Պղատոն Յօսեւլեան ի համառօտ պատմութեան եկեղեցւոյ Վրաց զթագաւորութիւն Թամարայ դնէ ի 1174 եւ զմահն յառաջ քան զ1204 առանց ճշդիւ որոշելոյ զժամանակն ։ Իսկ Գէորգին, զորմէ ասէ Օրբէլեանն լինել որդի Ռուսաց թագաւորի (ո՞ր թագաւորի, յո՞րո՞ւմ աշխարհի), համարի որդի Անդրէասայ Բօղօլիւբսկւոյ (աստուածասէր), զոր թողեալ Թամար վերստին ամուսնացաւ ընդ Սօսլանայ զոր Հենրի Բրեններ կոչէ Դաւիթ ասելով զնա զուլ որդի իշխանին Օսից ։ Կլապրօթ յաւելու թէ էր նա իցեղէ Բագրատունեաց ։ Կիրակոս վ. Գանձակեցի. եր. 108. կոչէ զնա պարզապէս որդի Սօսլանայ ։

69. Զհերթն ընթեռնու Սէն-Մարտէն Հեր ոչինչ զմտաւ ածեալ թէ՝ այսու անուամբ ոչ գոյր յԱրճախ, ի սահմանս Զարեքի, Գանձակայ եւ Շամքորի այլ բերդ բայց եթէ Հերթ կամ Հերդ որ ունէր եւ գաւառ նոյնանուն. ուր ի նոյն ժամանակս աստանդական թափառէր կաթողիկոսն Աղվանից Ստեփաննոս ։ Կիրակոս վ. Գանձակեցի. եր. 105 ։

70. Զարաբերդն այժմեան է Ջրաբերդն առաջնոց (սակս պատեալ գոլոյ իջուրց), եւ է բերդ նշանաւոր եւ գլուխ նոյնանուն գաւառակին ի Ղարաբաղ, անկանի ընդ մէջ Խաչէն եւ Գարգառ գետոյ, ի հնումն կոչէր Միջնարճախ եւ փոքր Սիւնիք ։

71. Այսօրինակ երկիրք թէ եւ առեալ աւեն Վրաց ի ձեռաց Պարսից եւ Տաճկաց յամին 1212. սակայն ոչ աւան ի միում տարւոջ եւ ոչ իսկ միայնին ընդ

նոյա իշխանութեամբ երկար ժամանակս. վասնզի յետ սակաւուց տեսանեմք զբազումս յայնցանէ անկեալ վերստին ընդ իշխանութեամբ այլազգեաց եւ մանաւանդ Հայոց ։

72. « Չբղէն » կարդայ Սէն-Մարտէն խաբեալ ի մերձաւորութենէ Ղ եւ Չ տառից՝ Բղէն . եւ առանց միտ դնելոյ բնագրոյն իւրոյ յաւելու ի թարգմանութեան բանս որ ոչ տեսանին ի հայերէնն գրելով այսպէս « Ils firent la conquête de la province de Siounic, *avec celle des villes* d'Orodn, de Porodn, de Pzen, de Pargouchad ». Եւ սակաւ մի ստորև յառաջ կրաւորական բայէ « թէպէտ յայլ և այլ թուի առաւն » խաբեալ՝ հնարէ զաշխարհ իմն Առան անուն ասելով « et successivement de tout l'Arhan ».

73. Փահլաւան, ըստ Սէն-Մարտէնի, նշանակէ դիւցազն, քաջ. ըստ իս՝ ըմբշամարտ ի Պարսից լեզուի ։

74. Խզլ-Ասլան, ուղիղ եւս Խիզիլ-Արսլան, նշանակէ ի Թուրք լեզուին կարմիր առիւծ ։

75. Ռէոյ զոր Սէն-Մարտէն ընթեռնու Ըռէհու, է, որպէս յայտ է, Ռագէսն Սուրբ Գրոց և Արրիենոսի, եւ մայրաքաղաք հնոյն Պարսկաստանի (Իրակ-Աջեմի), ուր ծնաւ Հարուն-ալ-Ռաշիդ ։ Աւերակք սորա տեսանին տակաւին 5000 մետր հեռի ի Թէհրանայ յարեւելից հարաւոյ յորս Սիր Ռոբերտ Կեր Պորտեր ետես կործանեալ ապարանս, տաճարս, քարանձաւս և ի ծայր ժայռի միոջ զաշտարակ ինչ հանդերձ քիւֆի արձանագրով ։

76. « Վասն որոյ նեղեալ ի Պարսկացն եւ երկուցեալ ի հաւատոյն զի մի բռնադատեսցեն » պակասին առ Սէն-Մարտէնի ։

77. Առ Սէն-Մարտէնի փոխանակ « 30 կուղպակաց » գրի երեք կուղպակ » զոր եւ թարգմանէ « trois portes » փոխանակ գրելոյ trois boutiques. ըստ որում ընդ ամենայն արեւելս կուղպակ և կուղպականի նշանակեն խանութ ։

78. « Իմաստաւոր վայրսն » ընթեռնու Սէն-Մարտէն « իմաստաւոր վանսն » ։

79. Զայս բան վրիպակ գրչութեամբ եւ կետադրութեամբ ընթեռնու Սէն-Մարտէն գրելով « տայ եւ զայլ բազում գիւղօրէս, ի Վայոց ձոր զԿոտասն և զԽլառն. եւ զայլ գիւղս յոլովս ի Գեղարքունի. զՀամսարի եւ զայլ գիւղօրէս բազումս ի Կայեան ։ Նաև զԱղաստեւ իւր կերովն » ։

80. « Եւ զի նա եղև առաջնորդ առման Սիւնեաց եւ այլ բերդերոյն » ընթեռնու Սէն-Մարտէն « եւ զի նա եղև առաջնորդ առմանն Սիւնեաց, եւ այլ բերդօքն » յորում չտեսանին հետք հայերէն լեզուի կանոնաց ։

81. « Որպէս վերագոյն ասացաք » պակասի առ Սէն-Մարտէնի ։

82. « Եղաւ ի Նորավանս, ի դրան սուրբ Կարապետին » Սէն-Մարտէն ընթեռնու « եղաւ ի Նորավանս Սուրբ Կարապետին » ։

83. Զմահ Զաքարէ սպասալարին Օրբէլեանն դնէ ի ՈԿԱ թուին, զոր Սէն-Մարտէն դնէ ի 1212 թուին Փրկչի ։

Սոյնպէս եւ զՈՀՁ թուականն Հայոց յորում ասէ Օրբէլեանն վախճանեալ Իվանէ աթաբէկին, դնէ Սէն-Մարտէն ի 1227 ամին Փրկչին ։ Այսմ եւ ինձ կամք էին հաւատալ եթէ ոչ էր ընթերցեալ յարձանագիրս Դսեղի եկեղեցւոյն գրեալ ի թուին ՈՂՁ յորում ժամանակի ասէր տակաւին Իվանէ աթաբէկն ։ Տե՛ս Ճանապարհորդութիւն ի Մեծն Հայս. Սարգիս վ. Ջալալեան. եր. 112 ։

84. Այն է Մոհամմէդ Խորազմ շահ զորմէ գրեալ եմք ի ծանօթութեան 88. եւ եղեալ ըստ այլազգի պատմագրաց զսատակումն նորա ի կղզի ինչ Կասպիական ծովու ։ Բայց եւ այնպէս կարեւոր համարիմ իմէջ բերել եւ զոր ինչ գրէ զնմանէ ժամանակակից պատմիչն Կիրակոս վ. Գանձակեցի. ըստ որոյ. եր. 133. 135 յետ հարկանելոյ Ջէլալ-էդ-Դինի զՎիրս ի Կոտայս (ի սահմանս Երեւանայ) ա՛ռ եւ լուայ արեամբ զԹիֆլիզ, զԳանձակ եւ զՆախիջեւան. աստի դարձաւ ի Խլաթ և յաղթեալ Աշրաֆ սուլտանին ա՛ռ զկին նորա Թամթա (զդուստր Իվանէ աթաբէկի՝ եղբօր Զաքարիայ սպասալարի), Աստի չոգաւ եւ աւերեաց զգաւառս սուլտանին Իկոնիոյ Ալա-էդ-Դինի ։ Այսոցիկ այսպէս եղելոց՝ Աշրաֆն Խլաթայ եւ Քիամիլ՝ եղբայր իւր եւ իշխան Եգիպտոսի, աջակցութեամբ զօրացն Հայոց Կիլիկիոյ եւ Ալա-էդ-Դինին Իկոնիոյ խաղացեալ ընդ առաջ նորա՝ հարին զնա չարաչար եւ փախըստական արարին ի Մուղան, ուր ի նորոյ յարձակեալ ի վերայ նորա Թաթարաց հալածական արարին մինչ

ի սահմանս Ամիթ քաղաքի ուր եւ սպանաւ վիրացն արեանարբու ։

85. « Առանց սրոյ եւ զօրութեան նաև պատերազմի վիթեալք ընդ փրթուածս » ընթեռնու Սէն-Մարտէն « առանց սրոյ և զօրութեան, նա և պատերազմիւ երբեալք ընդ փրթուածս մեծ քարին ». որոյ հայերէն չգոլն բացայայտ տեսանի ։

86. « Եւ Լիպարիտն իւրայովքն գտեալ կածան մի՝ (նեղ ճանապարհ) գնայ » ընթեռնու Սէն-Մարտէն « Եւ Լիպարիտն իւրայնովքն գտեալ ի Կածանմիգնա » զոր և կարծէ թարգմանել այսպէս « Liparid, qui était avec les siens, le trouva à *Gadzanmikna* » փոխանակ գրելոյ թէ Liparit, avec les siens, se rendit chez lui par un sentier.

87. « Եկն և օձ թանձրադին որ եռայր յամանս և յանկողինս ի տուէ եւ ի գիշերի » զոր ընթեռնու Սէն-Մարտէն « եկն և օձ որ եռայր յամենայն տեղիս և յանկողինս ի տուէ և ի գիշերի »։

88. ԶՄուղալաց և զԹաթարաց մերայինքն բազում ինչ գրեցին, մանաւանդ ականատես ժամանակակիցքն Կիրակոս վ. Գանձակեցի, Վանական վ. Վարդան վ. Օրբէլեան Ստեփաննոս՝ մետրապօլիտ Սիւնեաց, Վահրամ Րաբունի, Սմբատ Սպարապետ և այլք, է որ ամենայն ճշմարտութեամբ, է որ ի կեղակարծ լրոյ եւ ի զրուցաց այլոց, զորոց զբանս տաղտկութիւն համարիմ ի մէջ բերել մի առ մի, եւ միոյն ստուգել կամ ջրել զմիւսն, նազի յոլովութիւն երկոցս չներէ ինձ ընդարձակագոյնս խօսել զազգէս ։

Սմին իւր համառօտախօսութիւնն վայելուչ դատեալ՝ այսչափ կարեւոր համարիմ գրել թէ Թաթար եւ Մուղալ ժողովուրդք անծանօթ էին տակաւին մատենագրաց Ժերորդ դարուն. եւ Մասուդի որ գրեաց զտիեզերական պատմութիւն իւր յ950 ամի, եւ Իբն-Հաուգալ աշխարհագիր ի խօսիլն զերից ծանուցեալ մասանց աշխարհի եւ զազգաց բնակելոց ի նոսա, չառնեն յիշատակ ինչ զսոցանէ : Մատենագիրս թուով 50 անցուցի ի հանդէս, եւ զամենեսին գտի զանազանեալս ի միմեանց կարծեօք զծագմանէ, զկնութենէ եւ զայլ կարեւոր հանգամանաց այսր ժողովրդեան, որում ճակատագրեալ էր կերպարանափոխս առնել զԱսիա եւ զԵւրոպիա խուռն միջոցի : Բայց եւ այնպէս ընդաղօտ տեղեկութիւնք ինչ զԹաթարաց նշմարին առ մատենագիրս Չինաց ութերորդ դարուն, որք եւ համարին զնոսա ի մեծ զերդաստանէ Մուղալաց եւ կոչեն Թաթ :

Յովհաննէս Գիւպլան դը Կարպին՝ առաքեալ յամին 1246 յԻննոկենտեայ Դ. Պապէն ի Խամալակ, առ խանն Թաթարաց, այսպէս խօսի զսոցանէ « է երկիր ինչ յարեւելս Մոնգալ (այսպէս կոչեն Եւրոպացիք զՄուղալս) կոչեցեալ, ուր բնակին ազգք չորեքին. առաջինն է Եքա (մեծ) Մոնգալ. երկրորդն՝ Սու (Ջրաբնակ) Մոնգալ, որք եւ կոչեն զինքեանս Թաթար յանուն գետոյն որ գնայ ընդ աշխարհ նոցա . Երրորդն՝ Մերկիտ . Չորրորդն՝ Մեկրիտ : Միաձեւ է տիպ կերպարանաց նոցա, եւ նոյն բարբառ է հասարակաց թէեւ տրոհեալ ի գաւառս գաւառս եւ ի պետութիւնս այլ եւ այլ » : Ապա յաւելու « յաչ-

**խարհին մեծ Մոնգալաց ծնաւ այր ոմն Ջինգիզ անուն... սա սկսաւ գոռալ ընդդէմ Սու Մոնգալաց** (Թաթարաց). եւ զի բազումք ի սոցանէ յարեալ էին ի նա, սպան զիշխան նոցա և նուաճեաց ընդ իւրև զԹաթարս ամենայն, զնոյն անցս անցոյց ընդ Մերկիտս և ընդ Մեկրիտս»: Այս ինչ և եթ է արժանի ուշադրութեան զի Մուղալք յետ նուաճելոյ զԹաթարս՝ առին զանուն նոցա, կամ թէ այսպէս կոչեցան յազգաց այլոց, թէև միշտ առելի եղև նոցա անունն այս, որպէս Թուրքացն՝ արդի Օսմանեանց: Յայս միտս է եւ Վահրամ Րաբունի որ եր. 220 եւ 222 յիշեալ զերևումն Թաթարաց՝ զիշխան նոցա կոչէ եր. 223 Մուղալ. և զզօրն՝ Թաթար. եր. 238:

Եթէ Մուղալք, եթէ Թաթարք վրանաբնակ էին եւ դուարած. կերակուր նոցա էր կաթն եւ զգեստն՝ բրդեղէն, զորս մատակարարէին առատաբար հօտք նոցա. գլուխք նոցա յաղթ և տձև, աչկունքն ի փոս, գոյնք մորթոյ նոցա գորշ և մէջքն՝ կուզ: Տէմուչին (Ջինգիզ-Խան) ծնաւ յամի 1162 կամ 1164 ի Բլուն-Խուլդուկ գաւառին Մուղալաց առ Կերլոն գետով, արտաքոյ մեծի որմոյն Ջինաց. անուն հօր իւրոյ էր Պիւսուկայ, հաւուն՝ Բուսանգիր, որ և իշխէր 40,000 երդից Մուղալաց: Միանգամ և երկիցս յաղթեալ ի Տանղուտաց փախեաւ առ Ունգ՝ իշխանն Կերայտաց, որ նստէր ի Ղարա-ղօրում. որում և փեսայացաւ: Յամին 1189 եհար և նուաճեաց զապստամբեալ Մերկիտսն, Տանղուտսն եւ Նայմանսն. ապա դարձաւ և կալաւ զընադաւառ իւր զՆերօն-Կայեաց: Ի 1202 դրգռեցաւ մեծ պատերազմն ընդ մէջ Կե-

րայտայ և Մուղալայ. և Ունգ պարտեալ ի Տէմուչինայ՝ սպանաւ ըստ Աբու-Կայեր՝ պատմագրի Թուրքաց, յիշխանէն Նայմանայ ի Տայանկայ։ Ընդ լո՛ր եղեւնագործութեանս Տէմուչին խաղաց ընդդէմ սպանչին և զինակից Թաթարացն. և առ Ալտայ գետով մղեաց զմարտն արիւնահեղ, ուր անկաւ Տայանկ ամենայն Նայմանօք հանդերձ։ Յետ մեծի յաղթութեանս Տէմուչին կալաւ զՂարա-Ղորում և զարևելեան Մուղալս և պսակեցաւ առաջի համախումբ պատգամաւորաց Մուղալաց. եւ կոչեցաւ ի Բէն-Թանգրի Շամանայ (քրմ) Լամայեան կեշտի, Ջինգիզ-Խան (խան խանից)։ Այսպէս ի հասակի 52 ամաց ճարտարութեամբ իւրով եւ քաջութեամբ կացուցեալ գերագոյն իշխան Մուղալաց, ձեռն էարկ այնուհետև տիրել այլոց Թաթարաց, որ բաժանեալ կցեղս և ի խօսս այլ և այլ՝ ունէր և գիր սեպհական և հմուտ էր սակաւիկ մի գիտութեանց, մանաւանդ ցեղն Ույղուրայ (Փոքր Բուխարա)։ Որոց իշխանն Իդիւկուտ՝ ի լո՛ր համբաւոյ արշաւանաց Ջինգիզ-Խանի փութացաւ ընդ առաջ նորա յանձն առնել զհպատակութիւն։ Աստի դիմեաց յերկիրն Տանղուտի, զոր եւ ի հարկի կացուցեալ՝ արշաւեաց ապա ի ներքին Ջինս, ուր թագաւորէր հարստութիւնն Նիւզեաց ի Խաթայ ի բաց վտարեալ զԹաթարս Խիթայ, եւ տիրեալ մեծի որմոյն՝ դարձաւ յամին 1209 ի Ղարա-Ղորում։ Ի 1224 Սոնղուկայ՝ սպասալարն Ջինգիզ-Խանի, խաղաց մարտիւ ընդդէմ Խաթային հիւսիսոյ և առեալ զՊէկին մայրաքաղաք հիմն ի վեր տապալեաց։

Նասեր՝ խալիֆայն Բաղդադայ, զարհուրեալ յարշաւանաց Մեհմետ Խորազմ-Շահին, աղաչեաց զպաշտպանութիւն Ջինգիզ-Խանի, որ յառաջ քան զմիւսն ի պատերազմ առաքեաց առ հաւատարիմ լրտեսել զերկիր Խորազմին, ի քաղաքն Օթրար առ Սիհոնիւ (Օքսուս և Ամու Դարիա). ինքն ևս ժողովեալ ի 1218 ամի զօր 700,000 արանց պատերազմողաց ի Ներոնեաց, ի Կերայտաց, ի Խալմուղաց, եւ առեալ ընդ ինքեան հնգետասան որդիս իւր եւ խորհրդականս երևելիս ի Ջինաց, յԱրաբաց, ի Պարսից և յԱսորւոց անց ընդ Կօբի և ընդ Բլուր և յարձակեցաւ ի Խորազմ: Մեհմետ Խորազմ-Շահն որ տիրէր յայնմ ժամանակի Խորազմի, Մեծ Բուխարայի (Սողդեան), Խորասանի և կիսոյն Պարսից, անցեալ ի գլուխ 400,000 զօրաց ժողովելոց ի 20 ազգաց, խաղաց ընդ առաջ Մուղալաց: Յառաջնում ճակատի, ոչ հեռի յՕթրարայ, հեղաւ արիւն բազում. և խրոխտն Մեհմետ յետս նահանջեցաւ: Ապա առաքեաց Ջինգիզ-Խան յորդւոց իւրոց զՕգտայ 200,000աւ ունել զՕթրար, զՏուլի՝ յաշխարհն Կիրկիզաց, և զայլս ի Հայս եւայլուր: Ինքն ևս 200,000աւ խաղաց ի վերայ Բուխարայ եւ Սմրղանդ քաղաքաց, զորս առեալ տապալեաց յամին 1220: Եւ գոռոզն Մեհմետ յետ կործանման աթոռոյ իւրոյ ողորմ տեսակաւ մեռանէր ի կղզւոջ Կասպիականին. որոյ որդին Ջելալ-էդ-Դին խմբեալ գունդ մի քաջաց՝ ի մտի եդ դիմագրաւ լինել հեղեղին Մուղալաց. այլ ի զուր. վասն զի մի զկնի միոյ առին նոքա և աւերեցին զԲախլ (մայրաքաղաք հնոյն Բակտրիոյ), ընդ

Ֆարղանահ, զՈւրկենջէ, զՏալկան, զԲամիան, ըզ Հերատ, զԱւդրաբ այլովք հանդերձ : Եւ ապա առաքեաց Ջինգիզ-Խան զոմանս ի զօրավարաց իւրոց ի հնազանդեցուցանել զհիւսիս Կովկասու (հարաւային Ռուսիա), զՀայս, զՎիրս եւ զԱտրպատական. զայլս՝ առի րոլորել զյաղթութիւն Պարսից. և ինքն դարձ արար ի Ղարա-Ղորում ի 1224. եւ մեռաւ ի 24 Օգոստոսի 1227 ամի յաշխարհին Չինաց յետ հեղլոյ զարիւն հինգ կամ վեց միլիօն մարդկան եւ ապականելոյ զաշխարհս բազում և ջնջելոյ քաղաքս անթիւ : Սա նախ քան զմահ իւր բաժանեաց զտէրութիւն իւր չորից որդւոց իւրոց : Տուշի՝ անդրանիկն իւր մեռեալ գոլով, Բաթու՝ որդին նորա, կայուցաւ իշխան արեւմտեայ աշխարհային Կասպից կամ Խփչաղայ, և ցեղ սորա ժառանգեաց զՂրիմ մինչև ցամն 1783. Ջաղաթայ կալաւ զՈւզբէկս, զԹուրքաստան և զՏրանսոքսիան. Ոգտայ կայուցաւ մեծ խան կամ կայսր Մուղալ-Թաթարաց. Տուլի առ զԽորազմ, զՊարս եւ զՀայս : Ժառանգորդք Ջինգիզ-Խանի տիրեցին նաև ամս 300 ի Չինս : Հուլագու՝ որդին Տուլի խանին, առ զԲաղդադ յամի 1256 եւ եբարձ զխալիֆայութիւնն : Եւ Ղազան խան՝ վեցերորդն ի յաջորդս նորա, հաւատացեալ ի Մահմետ անուանեցաւ Մահմուդ : Ջինգիզ-Խան կամ առ խորին տգիտութեան կամ քաղաքական նկատմանց սակս եկաց զամենայն աւուրս իւր անկրօն. սակայն և բազումք ի յաջորդաց իւրոց, թէև թաղեցաւ ըստ ծխի Մահմետականաց : Տե՛ս պատմութիւն մեծին Ջինգիզ-Խանին par Petit de la Croix.

եր. 170. D'Herblot. Bibliothèque orientale. եր. 382. Les hommes illustres de l'Orient. par Alexandre Mazas. Բ. եր. 68 :

89. Թաթարայն ժահադիմութիւն յառաջս գոլով և յերկեղուկս առ ազգս ամենայն, աւելորդ համարիմ ի մէջ բերել աստէն ապացոյցս առ հերքումն կար-ծեաց Օրբէլեանի որ կամ ի շնորհուկս տէրանց իւրոց կամ առ խակութեան ճաշակին իւրոյ ի գեղապանու-թեան կոչէ զնոսա « պատկերով յոյժ գեղեցիկս » : Բայց և այնպէս ոչ ինչ արգելու մեզ ի մէջ ածել՝ և զոր ինչ գրէ յայսմ մասին Կիրակոս վ. Գանձա-կեցի, որ եր. 160 այսպէս խօսի զնոցանէ « էին տես-լեամբ կերպարանաց դժոխատեսք եւ ահագնաչուք, մօրուս ոչ ունելով բայց սակաւ ոմանց թուելով մազս ունելով ի շուրթն կամ ի կզակին. ակն նեղ » : Յաւե՛լ յայս թէ քիթ նոցա էր տափարակ, ոսկերք քներա-կացն ցից ևայլն : Թէև տգեղագոյն ցեղս յանցանել ժամանակաց խառնեալ ի Կովկասեան ցեղս՝ սակաւ մի բարւոքացաւ. այլ տիպն թաթար յայտնի է ցայժմ ևս :

90. Զայսմանէ խօսեցեալ եմք յ88 ծանօթութեան. անդ առաքեմք զընթերցողս մեր :

91. Զահան զոր Պարսք Ջեհուն կոչեն (ի հնումն Օքսուս), նոյն է ընդ Ամու Մօրանի ի լեզու Թաթա-րաց որք զգետն մօրան ասեն. (զոր դրաշարքն մեր անուշադրութեամբ ամուր կարդացին և շարեցին) : Յայս ասկս սխալի Օրբէլեանն որ զմի գետն յերկուս բաժանէ. իսկ եթէ Ջահան անուամբ զՍիհուն իմա-

նայ. այնուհետեւ մրիպակին արարօղք մնին օրինակօղքն ։

92. Այսինքն է Դամեղան, մի յերեւելի քաղաքաց Տէրութեան Խորասմին, զոր առ Ջինգիզ-Խան ։

93. « ԶԴիարբաքն որ է Ասորեստան » ընթեռնու Սէն-Մարտէն « զԴիարպէքիր, զԱսորեստան » ։ Ինձ թուի թէ առ Օրբէլեանիւ թերեւս Տիգրանակերտ համարեալ էր մայրաքաղաք Ասորեստանի. ուստի եւ այսպէս կոչեցեալ ։

94. Սէն-Մարտէն կից ընթեռնու զայս անուն եւ գրէ « Դաստղանն » ։

95. Ի գիրս Հայոց այս անուն գրի Հուլաւու ղան. իսկ յԵւրոպայւոյ Հուլագու-Խան, որ զառաջինն թագաւորեաց ի Մուղալաց ի վերայ Պարսից. եւ մեռաւ յամին 1165 ի սահմանս Մարաղայի, յւրում ձմերանոցի ։

96. « ԶՊալպաքն որ է Արեգ » ընթեռնու Սէն-Մարտէն « զԲալբաք եւ ըստ այլազգեաց Պալպէք. կամ Իլիու քաղաքն որ է Հելիուպօլիս՝ այսինքն Արեգ քաղաք ». ի բաց թողեալ զաւելորդ կրկնութիւնս Սէն-Մարտէնի՝ խօսեսցուք սակաւ մի զքաղաքէս ։ Էր սա մի ի հնագոյն քաղաքաց Խորին Ասորւոց ։ Երկրացիք կոչեցին զայն Բաալբեգ զոր Յոյնք թարգմանեցին ի լեզու իւրեանց Հելիօ-պօլիս կոչելով, Հայք եւ՝ Արեգ քաղաք, որ է քաղաք արեւու. վասն զի անդ կանգնեալ էր չքեղ տաճար արեւու ի մարմարիոնէ որոյ աւերակք ի զարմանս կրթեն տակաւին զուղեւորս ։ Կարմաթ.ք այրեալ աւերեցին զայն յ912

ամի, որ հազիւ սակաւիկ մի ոգի առեալ՝ վերստին առաւ և գերեցաւ ի Յովհաննիսէ Ջմշկկայ ։

97. Ուղուր, որպէս ասացաւ ի ծանօթ. 88, էր ցեղ Թաթարաց եւ ունէր գիր առանձին զոր ընկալան յետոյ Մուղալք ։ Ձլեզուն Ուղուրաց Սէն-Մարտէն ի *Mémoires sur l'Arménie*. II. եր. 275. համարի Թուրքաց թէև Ուէչիղ-էդ-Դին հաւաստարմացուցանէ. թէ Մանգու-խան ունէր առ իւր դատենադպիրս որ գրէին զհրովարտակս իւր ի լեզուս Պարսից, Չինաց, Տիբետաց, Տանղուտաց և Ուղուրաց ։

98. Լեզուք Մուղալաց եւ Թաթարաց համարին ընդհանրապէս իբրև խումբ իմն բարբառոյ ։ Ըստ Մալտը-Բրեօնի. Տիեզ. աշխարհագր. Ա. եր. 570-571. լեզուք Թաթարաց, Բուխարաց և Օսմանեան Թուրքաց են ի միոջէ գերդաստանէ, յորում դտանին արմատք յոլով Գերմանաց լեզուի. իսկ Մուղալացն լեզու ճոխ է ձայնաւորօք և դաշնակաւոր բառիւք ։

99. « Եւ էր ածեալ զրոամբ զփոքրիկ թագաւորն Սոնաց զԴաւիթ » ընթեռնու Սէն-Մարտէն « Եւ էր ածեալ զրոամբ զփոքրիկ թագաւորն Սւնեաց զԴաւիթ » ։ Զայս կրկնէ եւ յԱ. հատորին եր. 213. համարելով այսպէս զԴաւիթ ոմն թագաւորեալ ի Սիւնիս ի 1251 ։ Յայս վրիպակ տեսանի անկեալ եւ բազմահմուտն Ջամչեան Հ. Մ. որպէս է տեսանել ի պատմութեան Հայոց. Գ. եր. 245 ։ Աոիթ սխալանացս ոչ այլ ինչ է, ըստ իս, բայց եթէ մերձաւորութիւն հնչման Սոնաց և Սիւնեաց, յորմէ մարթ էր խորշիլ նոցա եթէ դոյզն ինչ մտադրութեամբ ընթեռնուին զՕրբէլեանն եւ զԿիրակոս վ. Գանձակեցի ։

Ակսցուք նախ յՕրբէլեանէն ։ Սա ի պատմութեան նահանգին Սիսական (ըստ մեր տպագրութեան) եր. 39-46 եւ 61-65. խօսի զթագաւորելոյ ցեղին Սիւնեաց ի Բաղս, ապա եր. 76 « զբնաջինջ սպառմանէ այնր թագաւորութեան . եւ զվախճանէ Սիսական ազգի » որ եւ եր. 82 այսպէս աւարտաբանէ « Ահա զայսօրինակ բարձաւ տէրութիւն Սիւնեաց և Բաղաց . և եղև վախճան տոհմին Սիսակայ և Նախարարութեան Սիւնեաց . քանզի ամենայնքն որ կային յառաջագոյն յաւուրս Սմբատայ և Սահակայ՝ իւրաքանչիւրքն՝ էր որ անզաւակ մնացին, եւ էր որ կխորեայ փոխեցան, էր որ սպանան եւ գերեցան . եւ մնացեալ էին միայն այս Գրիգոր եւ Սմբատ որք այսու օրինակաւ բարձան » ։

Յետ գիտելոյ մեր զկատարած տէրութեան Բաղաց և Սիւնեաց յամին 1167, մատիցուք արդ ի տեսութիւն բանից նոյն Օրբէլեանի որ զԴաւիթն այն ցուցանէ լինել յօտար աշխարհէ, վասն զի ի տալ նորա զգոհարն ցԹանկրէդուլն ասէ « եթէ ես ի դուրս գամ եւ թագաւորեմ իմոյ աշխարհիս . առ իս բերցես. եւ տամ քեզ երկիր եւ քաղաք զոր դու խնդրես . ապա թէ ոչ եղանեմ ես ի Սոնաց աշխարհէն. այդ քեզ լիցի ։ Եւ ինքն անցեալ գնաց և եմուտ յամուր և յանձուկ աշխարհն Սոնաց. և այլ ոչ եղ անտի մինչև մեռաւ անդէն » ։ Եթէ ըստ Չամչեան Հ. Մ. և Սէն-Մարտէնի Դաւիթս այս էր Սիւնեաց թագաւոր, եւ բանտարկեալ յիւրում աշխարհի՝ զիա՞րդ ապաքէն կարէր փախչել ի Սիւնեաց ի Սիւնիս, որ յայնմ ժամանակի բոլորովին նուաճեալ էր ի Թաթարաց ։ Բայց և այսու

**ոչ բաւականացեալ՝ ի մէջ առից և զժամանակակիցն** Կիրակոս վ. Գանձակեցի. ըստ որոյ եր. 170 երկու-էին զայսու ժամանակաւ Դաւիթ անուն թագաւորք Վրաց, մին որդի Ռուսուդանի, եւ փախուցեալ առ Սոնս (ըստ Վրաց՝ Սուանեթ) միւսն՝ պոռնկորդի Լա-շայ Գէորգիի որ օծաւ ի Մցխիթայ ձեռնտուութեամբ Հայոց։ Սոնաց աշխարհն, որ կոչի յայժմ նովին անուամբ է յիշատակեալն ի Ստրաբոնէ. եր. 79 եւ 477. Ավան եւ ի Վրացի ժամանակագրէն Սուանեթ անուամբ, և է անձուկ և անուր ձգեալ զեզերբք Ենկուր և Ցղենիս ծղալի գետոց, ի խոխում Կովկասու ի հա-րաւոյ, ըստ մասին հպատակ Գաղեան իշխանին Մինգրելիոյ, ըստ մասին՝ ազատ. Թիւ ամենեցուն նո-ցա հասանէ յ30,000. հոգիս։ Ինքեանք զինքեանս կոչեն Շնաւ (Chenau), սերեալ են ի Վրաց, ունին բարբառ խառն, և բաժանին ի մեծ և ի փոքր Լիխ-վայս և ի Լեչխում։

Կիրակոս. եր. 187-188 պատմէ զիշխանանալն Բաչուին, զամրանալն Ռուսուդանի յանձաւս Սուա-նեթի, զթագ կապելն Դաւթի՝ որդւոյ իւրոյ, զառա-քելն զնա առ Բաթու, եւ սորա առ մեծ խանն. Ըզ սրտմտութիւն Բաչուին ընդ ապաւինիլն Ռուսու-դանի առ Բաթուն, զթագաւորեցուցանելն զմիւս Դաւիթ՝ (որ է Դ. ըստ կարգի անուան ի թագաւորս Վրաց) պոռնկորդի Լաշայ Գէորգիի, զառաքումն սորա առ մեծ խանն, եւ զօրհնութիւն այսորիկ. ըստ որոյ Լաշայեան Դաւիթն թագաւորելոց էր ի Թիֆլիզ, և Ռուսուդանեանն նստեալ ի Սուանեթ սպանելոց էր մահու նորա։ Այսպ. եր. 190. զկալա-

նաւորիլն Դաւթի Լաշայեան, զանարգանսն որոց տարաւ. և եր. 234-236 զփախուստ նորա յամուրսն Սուանեթոյ ապստամբեալ ի Թաթարաց : Եւ զայս ամենայն հաւաստէ Կիրակոս վ. լեալ յաւուրս Մանգու-խանին յար և նման Օրբէլեանին. որով և տեղի տան ամենայն տարակոյսք, և ուրուական թագաւորն Սիւնեաց լինի արգեամբ թագաւոր Վրաց :

100. Ըստ Ռաշիդ-էդ-Դինի կոչի աս Մանկկախան. էր անդրանիկ որդի Տուլի խանի եւ յաջորդ Գույիւկի. մեռաւ յամին 1257 թագաւորեալ ամս 8 : Սէն-Մարտէն յաւելու թէ ապիտակն ասի մուղալերէն չաղան, եւ արծաթն՝ օլետերէն մոնգգուն. յորմէ կարծէ յառաջ եկեալ մանգուն զոր մողալագիտաց թողում դատել ինձէն խոստովանեալ զանգիտութիւն :

101. Սխալի Օրբէլեանն համարեալ զՄանգուխան որդի Գույիւկ խանի որում յաջորդեցաւ միայն, գոլով, որպէս ասացաւ ի 100 ծանօթութեանն, անդրանիկ Տուլի խանին :

102. Գրի և Ղարա-Ղորում, ի Սէն-Մարտէնէ՝ Կարակորում, և ի Կիրակոս վ. Գանձակեցւոյ՝ Ղարու-ղրում ի սահմանս Ղատիոյ. եր. 135, որ եւ էր նախ մայրաքաղաք Ունգ իշխանին Կերայտաց, որպէս ասացաւ ի ծանօթութեանն 88 : Դիրք քաղաքիս ոչ է տակաւին ճշդիւ ծանուցեալ, թէև ըստ Աբել-Ռէմիւզատի դնի ի ձախմէ Որգոն գետոյ, և շինեալ ըստ Ռաշիդ-էդ-Դինի ի Հոքթայ խանէ :

103. « Եւ զի քրիստոնեայ էր օրինաւոր Մանգուղանն » թարգմանէ Սէն-Մարտէն « Mongou-khan

était pieux » որ չէ հարազատ իմաստ բնագրին. զի Օրբէլեանն զհաւատոյ խանին խօսի և ոչ զգործոց նորին. սակայն թողեալ զայս ի մի կողմն՝ քննեսցուք սակաւիկ մի եւ զհաւատս Մուղալ թագաւորաց: Ի 88 ծանօթութեան տեսաք թէ Ջինգիզ-Խան՝ հիմնադիրն ահագին պետութեանս Թաթարաց, եկաց և մեռաւ անկրօն և թողեցաւ ըստ ծխի Մահմետականաց: Ի բազմաց հետէ յիշատակ լինի յայլ և յայլ պատմագիրս զառաքելութենէ Նեստորականաց առ Թաթարս, Ղալմուխս, Կիրկիզս, Մուղալս եւ այլ խուժս հիւսիսոյ, եւ զկնի՝ քարոզչաց Մահմետեան դենի. սակայն, որպէս երևի յիրաց ազգացս, ոչ Նեստորականութիւնն նախ և ոչ Մահմետականութիւնն զկնի զօրեցին արմատանալ երբէք առ վայրենիս այսոսիկ, որք ընդ դարս յոլովս ընդգրկեալ պաշտեցին զՇամանութիւն և զԼամանութիւն՝ կրկին միժածս Բուդդայութեան հանդերձ անհեդեդ դրօշելօք կերովք եւ ծանրաբեռնեալ ամենայն սնապաշտութեամբ, որպէս է տեսանել և առ մեօք, թէև մահմետականութիւն թևակոխէ յանցեալ դարէ հետէ զօրանալ առ նոսա:

Արիւնահեղ պատերազմք Թաթարաց ընդ մահմետական Խորազմեանց, Պարսից եւ Տաճկաց, անխտրութիւն նոցա ընդ կրօնս հպատակեալ ազգացն, խորամանկ քաղաքականութիւն նոցա եւ թերևս ընդաղօտ ծանօթութիւն քրիստոնէութեան և արարողութիւնք ինչ ուսեալ ի Նեստորականաց, համբաւեցին զնոցանէ իբրև զքրիստոնէից. յորմէ խաբեցան առ հասարակ, որպէս Օրբէլեանն ի Սիւնիս, նոյնպէս

Լիւդովիկ Թ. ի Գաղղիա և պապքն ի Հռոմ: Այլ պատճառ այսր ամենայնի էր, որպէս ասացաւ ի վերոյ, կամ առ ի դիւրաւ շահիլ զբարեկամութիւն քրիստոնէից կամ դոյզն ինչ խմորումն նոցա Նեստորականութեամբ որ չէ ընդհատ ինչ ի Մահմետականութենէ: Սմին իրի և Ռուբրիք (Rubriques) առաքեալ յարքայէն Գաղղիոյ ի Լիւդովիկայ Թ. առ Մանգու խան, առ ի քարոզել նմա զքրիստոնէութիւն, ամենայն ուրեք ծաղրեցաւ. և ապարդիւն յետս դարձաւ: Տե՛ս Աշխարհագրական և պատմական Բառագիրքն Դէզօբրիի և Բաշլէյի. Բ. եր. 2348: Ըստ այսմ և Յովհաննէս Դիւբլան դը Կարբի եւ այլ կրօնաւորք առաքեալք ի պապէն Իննոկենտեայ Դ. ի Թաթարստան յամին 1246 առ ի քարոզել նոցա զՀռոմէականութիւն: Զասացեալս ցուցանեն նաև զազանական կոտորածք քրիստոնէից, աւերածք աշխարհաց նոցա և աշտարակք կանգնեալ ի գլխոց նոցա, որք առաւել քան զչափն յայտնի կացուցանեն թէ ոչ գոյր ի նոսա ամենևին ոչ յիշխանս և ոչ խոսկականս նշմարանք ինչ քրիստոնէութեան: Կիրակոս վ. Գանձակեցի, իբրև ականատես վկայ, լաւ ևս նկարագրէ զսուտ քրիստոնէութիւն բարբարոսացս, որ եր. 160. այսպէս խօսի զնոցանէ « որչափ եւ կամէին՝ կանայս առնէին.... ուր եւ հանդիպէին այլազգեաց՝ անխտիր խառնակէին.... պաշտօն ինչ ոչ գոյր առ նոսա կամ երկրպագութիւն. բայց սաէպ զանուն Աստուծոյ յիշէին յամենայն իրս. (յայսմ սխալի Կիրակոս. իբր զի թանգրի բառն նշանակէր երկինք եւ ոչ Աստուած) զայս թէ զինէն Աստուծոյ զոհանային եւ կամ թէ

զայլ ումն Աստուած կոչէին, մեք ոչ գիտեմք. եւ ոչ իմբեանք եւս»․ դարձեալ՝ եր. 117-118 «ի ՉԿԹ թուականին... յանկարծակի... յոլով գունդք զօրաց Թաթարաց... եկեալ յաշխարհն Աղվանից՝ գալ անցանել յաշխարհս Հայոց եւ Վրաց. եւ զոր ինչ գտանէին ի ճանապարհին՝ զամենեսեան սրոյ ճարակ տային՝ զմարդ եւ զանասուն, մինչեւ զշունս անգամ... եւ համբաւ սուրեալ գայր զնոցանէ թէ մոգք են եւ քրիստոնեայք հաւատովք, եւ նշանագործք. եւ եկեալ են ի վրէժխնդրութիւն քրիստոնէից որ ի բռնութենէ Տաճկաց. եւ ունին եկեղեցի վրանաւ եւ խաչս սքանչելագործ... եւ այսպիսի սուրեալ համբաւոք լցաւ աշխարհս մեր. վասն այսորիկ ոչ ամրացան բնակիչք աշխարհիս. մինչեւ երէց մի աշխարհական առեալ զժողովուրդ իւր՝ խաչիւք եւ բուրվառիւք մոմեղէնս վառեալ՝ ընթացաւ ընդ առաջ նոցա, եւ նոցա սուր ի վերայ եդեալ կոտորեցին զնա հասարակ» եայլն: Չինքնակալս Թաթարաց կշռեալ արարօք զօրաց եւ զօրապետաց նոցա՝ վատթարագոյն քան զանհաւատս տեսանեմք :

104. «Ռէշիդ-էդ-Դին գրէ արքաուն :

105. «Ըստ Ռէշիդ-էդ-Դինի առ Սէն-Մարտէնի, էր սա դուստր Ջակեմբոյի՝ եղբօր Վանք խանի՝ արքային Կերայտաց, եւ կոչիւր Սիւրկուխեթնի-Բիքի :

106. Ըստ Սէն-Մարտէնի զպատուանունս զայս Մուղալք Եչան, եւ Մանչուք՝ Եչէն կոչեն :

107. Կիրառութիւն փայիզայ ապահովագրոյ ի Չինաց երեւի անցեալ առ Մուղալս ըստ Սէն-Մարտէնի. առ որս այսպիսի տախտակք կոչէին փայի :

108. *Համառօտապէս ի կիր առ Ռուսս, առ Պարսիկս, առ Արաբս եւ առ Թուրքս, նշանակէ հրաման ։*

109. « *Եւ այնպէս մեծաշուք ճոխութեամբ դարձաւ այսրէն՝ բերեալ և ընդ ինքեան այր ի դրանէ արքունի* « *Սէն-Մարտէն ընթեռնու* « *եւ այնպէս մեծաշուք ճոխանւայր յարքունի* » *որ տարբերի ի մերոյն և ոչ իսկ ընծայէ իմաստ ինչ ։*

110. « *Չփողահանսն* » *որ է հանք արծաթոյ եւ կապարի ի Վայոց ձոր, Սէն-Մարտէն ընթեռնու* « *փոշահանսն* » *որ նշանակէ և ոչ ինչ ։*

111. « *Զպասղազն* » *մեր ընթեռնու Սէն-Մարտէն* « *պասխաղ* » *եւ թարգմանէ* lieutenant *հակառակ մտաց հեղինակին . այս բառ է պարսկական . և գրի բազու խասա, որ նշանակէ քննիչ, վերահասու ։*

112. *Սեւինճ բէկ ոմն և Տարափաղին՝ դիւան այսր աշխարհի* » *ընթեռնու Սէն-Մարտէն* « *Սեւինճ բէկ եւ Տարափաղին ի դիւանին այսր աշխարհի* » *մոռացեալ թէ Օրբէլեան դիւան բառիւ ցուցանել կամի ոչ զատեանն այլ զատենակալն ։ Տարափաղինն է աղաւաղութիւն Տէրիֆ-էդ-Դինի, որ էր տեղակալ Արղունի, որ թէև զերծաւ յարդար պատուհասէ Մանգու խանին միջնորդութեամբ Սմբատայ . այլ ըստ Կիրակոս վ. Գանձակեցւոյ, էր այր անօրէն և եղեռնագործ ։*

113. « *Ոչ գիտէր Արղունն եթէ որով պատուեսցէ զՍմբատ* » *ընթեռնու Սէն-Մարտէն* « *ո՛չ գիտէր Արղունն՝ թէ որով սիրով և պատուով պատուեսցէ զՍմբատ* » *որ տարբերի ի մերոյն ։ Ընդ մէջ* 113 *եւ*

119 ծանօթութեանց պատահեցաւ ակամայ վրիպակ ի բնագրին, զոր յայտ արարեալ աստ ի գիտութիւն ընթերցողաց՝ հայցեմ ներողութիւն ։

119. Սէն-Մարտէն « աստ և անդ մակրայն առեալ ի տեղի անդաստանի » թարգմանէ « il abandonna... quelques bourgs et quelques champs » փոխանակ գրելոյ « il abandonna par-ci par-là quelques villages et quelques fermes ».

120. Մայրափայտն յայտնի է և անկարօտ մեկնութեան. իսկ սնոպարն, զոր Սէն-Մարտէն ընթեռնու զնոպար կամ նոպար, թուի լինել թաթար լեզուաւ տեսակ մի մայրի ծառոյ ։

121. Ջղատն դաշտն (Ալա դաղ) Հ. Ղ. Ինճ. ի Ստորագրութեան հին Հայաստ. եր. 267. ընթեռնու Գառնւոյ դաշտ եւ դնէ առ Գառնեաւ, ուր չիք այնպիսի ինչ ։ Ռէշիդ-էդ-Դին և այլ արաբացի և պարսիկ պատմագիրք զդաշտն Մուղանայ կոչեն Նա եւ Ալադաղ ։ Ի սոյս կարծիս է և Հ. Ղեւոնդ վ. Ալիշանեան՝ հեղինակն Տեղագրոյ Հայոց մեծաց ։ Բայց գիտել արժան է զի Հուլագու արար մեծամեծ շինութիւնս եւ կանգնեաց աշտարակ աստղաբաշխական առ ծովակաւն Մարաղայի. որ եւ եկաց եւ մեռաւ անդէն ։

122. Բերքայ կամ Բերքէ էր, ըստ Ռէշիդ-էդ-Դինի, չորրորդ որդի Տուշիի՝ անդրանկանն Ջինգիզխանի ։ Յետ մահուան Բաթույի՝ եղբօր Բերքայի, որդիք նորա Սարդախն եւ Ուլուղչի սակաւօրեայք եղեալ միմեանց յաջորդեցին. յետ որոյ Թագաւո-

րեայ Բերքայ՝ որդի Բաթույի, ի վերայ Խփչաղաց յամին 1254 և մեռաւ ի 1266 առ Տերեկ գետով :

123. Սակաւ ինչ տարբերութիւնք երևին ընդ բուն արձանագրութիւնն փորագրեալ ի սիւն եկեղեցւոյն Տաթևայ և ընդ որ գտանի ի պատմութեան Ստեփաննոսի Օրբէլեան : Ըստ այսմ բուն արձանագիրն ունի « իշխող էի » : Այլ տարբերութիւնք արձանին են « տուի... Շնհէր իւր սահմանովն, լերամբ և դաշտիւ » անդ պակասին. « և ի Խոտագետ և ի Խոտ զմեր ձեռատունկ այգին, և զՑուր » . դարձեալ՝ յարձանագրին է « և ի Բորտի... և եպիսկոպոսք տեղւոյս Տէր Հայրապետ... վասն մեր... աւագութիւն... Ժամ հարամ... եւ են վկայք... արք եպիսկոպոս Նորավանից... :

124. Յարձանագրին դնին գիւղք չորս . թէև ի թուելն խառնիւ երևին դարձեալ վեց . այսինքն, Շնհէր, Խոտ, Ցուր, Հարժիս, Բորտի, Քեթիվան :

125. Փեղամբարն, որպէս յայտ է, ոչ է հայերէն . այլ պարսկերէն, առ որս գրի փէյղամբէր և նշանակէ պատգամաբեր . սոյնպէս և ապիզարն առ Պարսիկս է ոճ նզովից :

126. Սէն-Մարտէն ընթեռնու « Ապաղանին » . գրի և Աբակա-ղան , էր սա որդի Հուլաւույի և եղև թագաւոր արդարակորով և խաղաղասէր . եղ յաթոռ իշխանութեանն յամին 1264 և մեռաւ ի 1281 : Փոյթ կալաւ զբարգաւաճանաց ժողովրդեան իւրոյ և վանեաց զյարձակումն Թաթարաց ի Խորասան : Սակս ամուսնութեան իւրոյ ընդ դստեր Միքայէլի

*Պալէօլոգի եւ յաճախակի յարաբերութեանցն ընդ Թագաւորաց Եւրոպիոյ համբաւեցաւ սա իբր հաւատացեալ ։*

127. « *Ցանձնէ զնա Արղունին եւ Սահիպին* » Սէն-Մարտէն ընթեռնու « *հանէ զնա Արղունին և Սահիպին* » *որ ոչ ինչ նշանակէ ի հայերէնն. զոր պատշաճ վարկաք յայտ առնել ընթերցողաց ։*

128. « *Բարձրացուցեալ* » *պակասի առ* Սէն-Մարտէնի. *ուստի և իմաստն կաղայ ։*

129. « *Կորուսանել* » Սէն-Մարտէն *ընթեռնու ներհակ իմաստին* « *կործանել* » ։

130. « *Եւ գտանէր սատակեալ զՌուսուդան* » *թարգմանէ* Սէն-Մարտէն « il parvint à faire périr Rhousoutan, *հակառակ մտաց հեղինակին որ կամէր ասել* de retour chez soi, il trouva Rhoussoudan morte: *Դարձեալ՝ զԽաւանողն ընթեռնու Խոյանողն ։*

131. « *Զլցեալն* » *գրէ* Սէն-Մարտէն « *ընանեցեալ* » *ըստ ոճոյ աշակերտելոյն Փռոփագանդային Հռոմայ ։*

132. « *Եւ զի այր ուժեղ եւ սրտեայ եւ պատերազմող էր, եւ հասակաւ ահարկու, յամենայն պատերազմունս յոր և երթայր մեծամեծ քաջութիւնս եւ անպարտելի զօրութիւնս ցուցանէր* » Սէն-Մարտէն *ունի* « *եւ զի այր ուժեղ՝ սրտեայ, եւ պատերազմօղ էր. եւ հասակաւ ահարկու յամենայն պատերազմունս ։ Ցոր եւ երթայր մեծամեծ յաղթութիւնս առնէր. եւ անպարտելի զօրութիւնս ցուցանէր.* » ։ *Ըստ այսմ է եւ թարգմանութիւնն ։*

133. « Որ էր որդի Դաւթի թագաւորին, որ պատկառեալ ի 719 թուականին » Սէն-Մարտէն ընթեռնու « որ էր որդի Դաւթի թագաւորին. և այս էր յամի Տեառն 1270 » փոփոխելով ամենայն ուրեք (ինքն կամ նախորդ իւր) զհայ թուականն ի Քրիստոսին ։

134. Թագուդար, ըստ Ռէշիդ-էդ-Դինի եւ Աբուլֆարաջի, էր եղբայր Աբաղայի, եւ եօթնեբորդ յորդւոց Հուլագույի ։ Ի տաճկանալն կոչեցաւ Ահմադ. եւ յաթոռն յամի 1282. եւ գահավէժ լեալ յետ ամաց երկուց սպանաւ յորդւոց եղբօր իւրոյ Խունխուրտայ (Ղան զրաթայի) ։

135. Սա ինքն է Խայադ-էդ-Դին-Քայ Խոսրով Ղլիճ-Արսլան՝ որդի Ռօքն էդ-Դին սուլտանի Իկոնիոյ, որ ըստ Ռէշիդ-էդ-Դինի սպանաւ յԵզնկայ քաղաքի յամին 1284 կամ 1285 ։

136. « Զոր հանեալ ի բանտէ կապանացն թագաւորեցուցին » ընթեռնու Սէն-Մարտէն « զոր հանեալ ի բանտէ կապանացն թագաւորեցին » որ արտաքոյ է կանոնաց հայերէն լեզուի ։

137. Յետ անկման Թագուդարայ Խօջայ-Շէմսէդ-Դին-Սահիպ-Դիւանն փախեաւ ի Լարիստան եւ կալեալ կոտորեցաւ եղև յամի 1284 յետ վարելոյ զվէզիրութիւնն ամս 20 ։

138. Ըստ այսմ հաշուոյ ժամանակ ձեռնադրութեան Ստեփաննոսի Օրբէլեան յեպիսկոպոսութիւն Սիւնեաց համարի ամն 1287. յորում Կոստանդին Բ. յառաջին անգամն ել յաթոռ հայրապետ-

տութեան Հայոց, որ եւ ընկեցեալ յետ երից ամաց՝ միւսանգամ հայրապետացաւ յամին 1307, յոր եկաց այլ եւս ամս 16 ։

139. Յամին 1287 յորում ձեռնադրեցաւ Ստեփաննոս Օրբէլեան յեպիսկոպոսութիւն, Սիւնիք բաժանեալ էր յայլ եւ յայլ առաջնորդութիւնս. և արքեպիսկոպոսքն Հայրապետ եւ Յովհաննէս նըստէին ի Տաթեւ, Սարգիս և Գրիգոր ի Վայոց ձոր, և այլք՝ այլուր, յոյր սակս յուզեցան ի միջի վրդովք բազումք ։

140. Երեքին հետեւեալ տողքս « զգեցուցանեն նմա զհայրապետական զգեստն ոսկեթել հիւսուածով. եւ դնեն թագ պատուական ի գլուխ նորա. զայս կաթողիկոսն » պակասին առ Սէն-Մարտէնի ։

141. « Իսկ ի գալ նորա » Սէն-Մարտէն ընթեռնու « իսկ ի գնալ նորա » որ է բոլորովին հակառակն, իբր զի որպէս տեսանի անդ, մատենագիրն պատմէ զդարձ Ստեփաննոսի Օրբէլեան ի Կիլիկիոյ ի Սիսական, առ հայր իւր ։

142. Դեմետրէս այս՝ որդի Դաւթի Սօսլանայ, ել յաթոռ տէրութեան Վրաց յամին 1272 եւ սպանաւ ի 1289 ի դաշտին Մուղանայ հրամանաւ Արղուն խանի ։

143. « Յիւրում ձեռակերտ գամբարանին » ընթեռնու Սէն-Մարտէն « յորոյ ձեռակերտ դամբարանին » որ սրբագրութեան պէտս ունի ։

144. Սա ինքն է Յովհաննէս Օրբէլեան որ յետ մահու Ստեփաննոսի եկաց յառաջնորդութիւն

Սիւնեայ վարելով միանգամայն եւ զտէրութիւնն աշխարհական. արար սա թուղթս եւ ճառս աստուածաբանական, հետեւեալ շաւղաց Նախորդին իւրոյ. յոյր սակս եւ ատելութեան Հ. Մ. Չամչ. արժանացաւ որպէս եւ Նախորդն իւր ։

145. Սկսեալ « յԵւ արդ ո՞վ ընթերցողք » բանէ մինչ ցվերջն պակասի առ Սէն-Մարտէնի ։

146. Սա ինքն է Կոստանդին Բ. ի Կատուկէ, օծաւ յամին 1287. և յետ կալոյ ամս երիս յաթոռ հայրապետութեան Հայոց՝ աքսորեցաւ ի սակս գժտութեան արքային Հեթմոյ Բ ։ Վերստին կալեալ զաթոռն ի 1307 ամի, և կացեալ ցամն 1323 մեռաւ ի պարարտ ծերութեան ։

147. Հռոմկլայ ոչ առաւ յԱլփւոյ որ յԱրաբացւոց Սայիֆ-էդ-Դին-ալ-Ալֆի կոչի. այլ ի Մալէք-ալ-Աշրեֆ Սալահ-էդ-Դինէ, յամին 1292 ։ Տե՛ս պատմութիւն Մամելուկաց Եգիպտոսի արարեալ ի Թագիմ-էդ-Դին-Ահմեդ-Մակրիզիէ ։

148. ԶԱնտիոք ա՛ռ Բիբարս կամ Բէյբարս սպանիչն Կուտուզի. որ նախ՝ դաշնակցութեամբ Քրիստոնէից եհար զԿերբուղայ՝ զօրապետն Հուլագուխանի, և ապա ստեալ դաշին իւրոյ ա՛ռ ի նոցանէ ըզ Գարագ, զՍեֆեդ, զՅաֆայ և զԱնտիոք յամի 1260 կոտորեալ ինմա 17,000 անձինս և գերեալ 100,000 ։

149. Տրապօլիս կոչի յԵւրոպացւոց Տրիպօլի, է քաղաք հնոյն Փիւնիկիոյ առ Միջերկրականաւ, առաւ ի Խալիլ-Աշրաֆայ՝ սուլտանէն Եգիպտոսի ։

150. « Կորնթացւոց քաղաքն Աքայիս « ո՛չ է

յԱսորիս կամ ի Պաղեստին. այլ ի Յունաստան.
ուր ոչ գոյր Կորնթացւոց քաղաք. այլ Կորնթոս քա֊
ղաք, յանուանակից կրճի, որոյ ներքին բերդն կոչէր
Ակրոս-Կորնթոս ։ Աքայիա կոչէր բոլոր Յունաս֊
տան ընդ կայսերութեամբ Հռոմայեցւոց, եւ յա֊
ռաջն փոքրիկ աշխարհ ինչ Յունաստանի հանդերձ
12 քաղաքօք յարեւմտից Պեղոպոնէսի ։ Իսկ քա֊
ղաքն, զորմէ բանս է, ի հնումն կոչէր Պտողէ֊
մայիս, ի միջին դարու՝ Աքր, Աքեայ կամ Սէն-
Ժան դ'Աքր, ոչ հեռի ի Կարմեղ լեռնէ, ուր
ապաստանեալ էին երեւփոխանք Թագաւորացն
Նապլի, Կիպրոսի, Գաղղիոյ, Անգղիոյ, Պապին,
Պատրիարքն Երուսաղէմի, իշխանն Անտիոքայ,
երեքին զինուորական կարգք Խաչակրաց եւ ժողո֊
վուրդ բազում Վենետկեցւոց, Գենովայեցւոց, Պիզա֊
ցւոց, Հայոց, Մուղալաց եւայլն, ամենեքին վառեալ
հակառակութեամբ և նախանձու ընդդէմ միմեանց ։
Խալիլ-Աշրաֆ յետ երկամսեայ պաշարման առ
Պտողէմայիս ի 16 Յունիսի 1291 ամի և ի սուր անխը֊
նայ կոտորեաց զապաստանեալսն ի նմա ։

151. Բազում անգամ խօսեցեալ եմ զիրաց
կարգացս եւ բացատրեալ զպաշտօն եւ զպարտա֊
ւորութիւնս նոցա ։ Կարեւոր համարիմ սակայն յա֊
ւելուլ աստանօր թէ գլխովին անհիմն է չարախօ֊
սութիւն Ստեփաննոսի Օրբէլեան ընդդէմ Օսպի֊
տալիէ (զորս ըսպիթալու կոչէ) ասպետացն վասն զի,
որպէս երեւի ի Տիեզերական պատմութենէ Կեսա֊
րու Կանտիւ, ԺԲ. եր. 388. ի ժամանակի պա֊
շարմանն նոքա սաստկագոյնս կռուեցան քան այլք.

եւ յետ առման Պտողէմայիսայ, հազիւ թէ 16 անձինք մազապուր զերծեալ՝ ապրեցան ի Կիպրոս ։

152. Գրի եւ Պեհեսնի, բերդագիւղ երրորդ Հայոց, ոչ հեռի յԱռաբան գետոյ. արդ Բեսն կոչի ։

153. Անհրիմն է ամենեւին զրոյցս իմասին հաստատելոյ Գրիգորի Վկայասիրի զաթոռ հայրապետութեան Հայոց ի Հռոմկլայ. առ որով եւ նա ինքն Ծովքին տակաւին ոչ տիրէր այնմիկ. ուստի եւ ոչ կարէր վաճառել զայն կաթողիկոսաց մերոց ։ Գրիգոր Վկայասէր, որպէս յայտ է, օծաւ ի Ծամնդաւ ի 1071. եկաց յԱնի ի 1074, անց յԵգիպտոս ի 1076, ի Կոստանդնուպօլիս ի 1082. եւ հանգեաւ ի Ռապան ի 1105 ։ Ապա Գրիգոր Գ. Պահլաւունի օծեալ կաթողիկոս ի 1113. եւ նստեալ ժամանակս ինչ ի Ծովք դղեկի, գնեաց ի կնոջէն Ծովքինի զդղեակն Հռոմկլայ ի 1147. ուր եւ նստաւ ինքն եւ յաջորդք իւր մինչև յառումն այնորիկ յԱշրեֆայ՝ սուլտանէ Եգիպտոսի, յամին 1192 ։

154. Նեստոր անուն կաթողիկոս Ասորւոց անծանօթ է ի գիրս մեր. եւ չկարէ լինել մի ի յաջորդացն Միխայէլի Ասորւոյ՝ բարեկամին և թղթակցին մերոյն Ներսիսի Շնորհալւոյ, վասն զի ի յիշատակարանի գրոյն պատմութեան (թարգմանեալ ի Հայ յամի 1248) Միխայէլի, որ համարի վախճանեալ ի 1199 ամի, յիշատակի յաջորդն իւր մօր Իգնատէ անուն որ եւ չկարէր բնականաբար կոչիլ Նեստոր ի սակս մեծի ատելութեանն որ ընդ Յակոբիկ եւ Նեստո-

բեան Ասորխ ։ Իցէ՞ Նեստորս այս պատրիարքն Նեստորական հերետիկոսաց, որ նստէր ի Մարաղայ, առ որում օթեւանս կալաւ նաեւ արքային մեր Հեթում Բ. յորժամ գնաց ի տեսութիւն Ղազան խանին ։

155. Ելեալ ի լատին կամ յոյն sella բառէն, նշանակէ աթոռ կամ գահ. եւ փոխաբերաբար՝ առաջնորդութիւն կամ թէմ ։

156. Յօրինակաց մերոց երկուքն ունէին քսսել կարծիս իմն տալով թէ իցէ բառ հայկական, որ ոչ գտաւ ի բառագիրքն հայկազեան ։ Թերեւս նշանակէ քսել այսինքն խօսիլ յունկն այլոյ. ըստ որում ունիմք եւ յաշխարհիկ լեզուն մեր քսփսել, քսփսող որ նշանակէ ճառել յունկն ուրուք, որպիսի է եւ սովորութիւն խորհրդականաց ասիական ժողովրդոց ։ Իսկ երրորդն ունէր ուսել այսինքն ուս ընդ ուս կանգնել, որպիսի է առ Յոյնս սովորութիւն եկեղեցականաց, որոց ի ժամ պատարագին մերձ կացեալ միմեանց կատարեն զխորհուրդ սրբոյ հաղորդութեան յորժամ պատարագէ արքեպիսկոպոսն կամ պատրիարք նոյա ։

157. Աւետումն ամենասուրբ Կուսին կամ Աւետիքն է ի թուոյ անշարժ տօնից եկեղեցւոյ մերոյ. եւ պաշտի անխափան յ7 Ապրիլի եւ ոչ ի 6ն ։

158. Աւանդութիւն խթմանն առ մեզ եւ եթ պահեալ տեսանի՝ յայլ քրիստոնեայս գոլով անհետացեալ ։ Թէ եւ բաղում խոյզ և խնդիր արարի իմատեանս եկեղեցւոյ, ոչ կարացի գտանել ոչ

զսկզբնաւորութիւն այնորիկ , ոչ զսահմանադիրն եւ ոչ զժամանակն յորում մուտ կալաւ առ մեզ սովորութիւնս այս ։ Այս ինչ անտարակուսելի է թէ ոչ է այն նորամոյծ. եւ զսկիզբն այնորիկ խնդրելի է յերկրորդ կամ յերրորդ դարս քրիստոնէութեան ։ Վասն զի պահք Նախահաւատ քրիստոնէիցն յերկրորդ եւ յերկրորդ դարս՝ յաւուրս չորեքշաբաթու եւ ուրբաթու տունջենական էին, այսինքն սկսեալ յառաւօտէ տեւէին ցիններորդ ժամն երեկոյի, յորում պահեցողքն խթէին ի կերակուր ։ Հաւանական է կարծել թէ յետ ժամանակաց, յորժամ տունջենականն փոխեցաւ յամբողջական, եւ յաւելան շաբաթապահք եւ քառասնորդականն, այնուհետեւ խթումն պահեցաւ ճրագալուցից Ծննդեան եւ Յարութեան՝ երկուց մեծախորհուրդ տօնից Հաւատոյ մերոյ ։ Տե՛ս Գծագրութիւն պատմութեան եկեղեցւոյ. Իննոկենտեայ վարդապետի. Գ. Ա. եր. 33-34. (ի Ռուս) ։ Զարմանալի է արդա՛րեւ տեսանել ի Մաղակեան աաայեալ հատածին Ռուսաց զմեր սովորութիւն խթման. Թէ եւ ազգն այն, որպէս յայտ է, ըստ մեծի մասին յունականին զհետ երթայ կարգաց եւ կրօնից ։

159. Հեննոտիկոն է բառ յունական, որ եւ գրի Հէնեոտիկոն, էր հրովարտակ միաբանութեան զոր եհան յամին 482 կայսրն Զենոն ի խնդրոյ Ակակիոսի՝ հայրապետին Կոստանդնուպօլսի, առ ի հաշտեցուցանել զՔաղկեդոնականս ընդ ոչ Քաղկեդոնականաց. որ ծնաւ նորանոր չփոթս ։

160. Արկին հատածքս վարդապետական բանից

Սրբոյն Գրիգորի Սքանչելագործի եւ Աթանասի Աղեքսանդրիոյ, չարայարեալք ի վերջէ ձեռնարկին զոր արեւելեան եկեղեցականք եւ աշխարհականք առաքեցին առ Գրիգոր Է. Անաւարզեցի, թարգմանեալ երեւին ի յետնոց կարի խակ եւ աղաւաղ ոճով, կամ թէ այլայլեալ ի կռուասէր անձանց: Մեք տպեցաք զայնս որպէս եւ էին ի մեր օրինակս. եւ զի չունէաք առ մեզ ի պանդխտութեան աստ զամբողջ գիրս Գրիգորի Սքանչելագործի կամ Աթանասի, ոչ կարեմք ասել ինչ զվաւերականութենէ կամ զանհարազատութենէ այնոցիկ: Այսու ամենայնիւ ո՛չ զանց արասցուք դնել աստէն զհատուած մի Աթանասի զոր օրինակեցաք ի դպրոցին Սկիւտարի յամին 1851. ի լինելն մեր ի Կոստանդնուպօլիս. որ եւ է այսպէս «խոստովանիմք զՈրդին Աստուծոյ, նախ քան զյաւիտեանս, մշտնջենաւոր ծնեալ ի Հօրէ. իսկ ի վերջին աւուրս, վասն մերոյ փրկութեան ի Մարիամայ ծնեալ ըստ մարմնոյ, որպէս աստուածազան Առաքեալն ուսուցանէ ասելով «յորժամ եկն լրումն ժամանակաց, առաքեաց Աստուած զՈրդին իւր որ եղեւ ի կնոջէ» . և գոլ զնոյն Աստուած եւ Որդի Աստուծոյ ըստ հոգւոյ . իսկ որդի մարդոյ ըստ մարմնոյ . ոչ երկուս բնութիւնս, զմին երկրպագելի եւ զմին աներկրպագելի. այլ մի բնութիւն Աստուծոյ Բանին մարմնացելոյ, եւ երկրպագեալ հանդերձ մարմնով իւրով միով երկրպագութեամբ. այլ եւ ոչ երկուս որդիս » եւ այլն: Զհամեմատութիւն կրկին թարգմանութեանցս այլոց թողեալ՝ մեք ի դրադրումն մեր փութասցուք:

161. Արղուն թագաւորեաց ի Դաւրէժ յամէ 1284 ց 1291, սպանեալ զհօրեղբայր իւր զԹագուդար (Թաքօդօր), որ եւ տաճկացեալ կոչեցաւ Ահմէդ խան, փոխեաց զկրաւոնսն ի մզկիթս և դառն հալածանս յարոյց ի վերայ քրիստոնէից. Բռնաւ՝ սիրելին իւր, տնտեսեաց զպետութիւնն ընդ նմա ։ Յետ սպանման սորա եկաց ի նոյն գործ մեծիմաստն Սաադ-էդ-Դօլայ Հրէայն, ընդդէմ որոյ նախանձու գրգռեալ մեծամեծաց տէրութեանն՝ զնա եւս սպանին յամին 1290 ։

162. Բուն անուն սորա էր Սաադ-էդ-Դօլայ, և էր ազգաւ Հրէայ, բարեկամ քրիստոնէից եւ ատելի մահմետականաց ։ Եկաց վէզիր Արղա խանին, իմաստութեամբ տնտեսեաց զՊարս, զԱրաբիա, զՀայս, զՎիրս եւ զԱսորիս, և սպանաւ յամի 1290 ի Մահմետականաց ։

163. Բայտու խան էր թոռն Հուլագու խանին, եւ թագաւորեաց ամիսս ինչ միայն յետ սպանանելոյ զնախորդնիւր զՂայ ղաթու խան ։ Ինքն եւս յետ սակաւուց գահավէժ եղև, եւ սպանաւ ի Ղազան-խանէ՝ յորդւոյ Արղունի ։

164. Տախտն իլեզու Թուրքաց նշանակէ գահ թագաւորութեան ։

165. Քեղաթուն, զոր այլք կոչեն Կայ-Կաթուն, էր եղբայր Արղունի. որ սպանաւ յամին 1294 ։

166. Այսինքն է դրամաթուղթ, մուծեալ նախ առ Չինս ի Ջինգիզ-խանեանց, զոր Քեղաթուն, յետ սպառելոյ զգանձս պետութեան իւրոյ ի շռայլութիւնս կամեցաւ մուծանել առ հպատակս իւր.

**որոյ վասն եւ հակառակութիւն կրեալ՝ կորոյս զա-**
թոռ իւր եւ զկեանս յամին 1294 :

167. Անորոշ բանք Օրբէլեանին կարծիս տան ըն-թերցողաց թէ դաշտն Արամայ էր յայս կոյս գետոյն Երասխայ, ի սահմանս Հայաստանի, զոր չեղեւ մեզ գտանել թէ եւ բազում խնդիր արարաք : Իցէ՞ այս դաշտն Արուանայ (Շիրվանայ) կամ Աալայ քա-ղաքին Տաբարիստանայ :

168. Ղազան-խան կալաւ զաթոռ Մուղալայն Պարսից յետ սպանանելոյ զԲայտու խան. եւ աշա-կերտեցաւ մահմետեան դենի սադրեալ ի Նաւրու-զէ՝ վէզիրէ իւրմէ, և 100,000 Թաթարք ընդ նմա : Փոյթ կալաւ կարգաւորել զտէրութիւն իւր, եդ չափս եւ կշիռս, ջնջեաց զյելուզակս, եւ կացոյց սուրհանդակս : Ի մտի եդ ասպատակել ի մեծ խա-նէն Թաթարաց եւ վանեաց զյարձակումն նոցա յամին 1296 : Ապա արշաւանս եդ ի Միջագետս և յԱսորիս և կալաւ զՀալէպ, զԵմէս, զԴամասկոս. ամենայն ուրեք անթիւ չարիս հասուցանելով Քրիս-տոնէից, քակելով ամենայն ուրեք զտաճարս նոցա. այս-պէս և զկռապաշտից և կրակապաշտից կռատունս եւ կրակատունս եւ կանգնելով մզկիթս ի տեղի : Եգիպտացիք զօրաժողով լեալ յարձակեցան յԱսո-րիս եւ տիրեցին ամենայն քաղաքացն եւ գաւառաց Ղազանի, որ ի կսկծոյ սրտին մեռաւ յամին 1304 ի 13 Մարտի :

169. Այս անձն թուի նոյն լինել զոր Վիրք Խուլթօ խան կոչեն և Կլափրօթ՝ Խանչաթու խան :

170. Նաւրուզն Պարսից լեզուին որ արդարեւ

ի մեր լեզուն թարգմանի նաւասարդ, էր վէզիր Ղազան խանին, եւ այր յաղթօղ ի պատերազմի ։ Սա է որ յաղթեաց զօրաց մեծ խանին Թաթարաց յամին 1296. եւ ինքն ապստամբութեան աղագաւ սպանաւ ։

171. Մարաղայ է քաղաք հին Ատրպատականի յեզերց ծովակին Ուրմիոյ. ուր նստան ոմանք ի խանից Թաթարաց ։

172. Կաթողիկոսարանն Մարաղայի ոչ էր Ասորւոց ուղղափառաց. այլ Նեստորականաց ։ Ծխոթութիւն իմն տեսանեմ յոճ բանիս, և ի տեղի Բայտույի արժան համարիմ կարդալ ամենայն ուրեք Ղազան. վասնզի այն ամենայն չարիք յաւուրս սորա գործեցան ։

173. Նոր իմն է գրոյցս, եւ արժանի տեղեկութեան. ըստ որում անծանօթ է ամենայն պատմագրաց մերոց, եթէ Օրբէլեանն արքայի անուամբ զՀեթում իմանայ, որոյ, տուեալ ասէ, զքոյր իւր կնութեան Խութլուշահ՝ զօրապետին Ղազան խանի ։

174. Հրէ, որպէս եւ ասացաք յառաջագոյն, էր հին քաղաք Վրկանաց եւ ոչ անդր քան զՄավր որ էր մայրաքաղաք Խորասանի ։

175. Մավր, զոր Պարսիկք և Եւրոպացիք Մեվր կոչեն, էր մայրաքաղաք Խորասանի, ուր թաղեցաւ Ալփ-Արսլանն Սալջուկեան ։

176. Նշաւուր է աղաւաղեալն Նիշապուրի՝ (Նիշապուհ) նշանաւոր ի պատմութեան մերում տխուր

յիշատակաւ կապանաց եւ չարչարանաց սուրբ քահանայից մերոց եւ նախարարաց յամին 454 յանօրէնն Յազկերտէ, եւ է քաղաք յաշխարհին Պարթեւաց : Աստ նստան առ ժամանակ մի Սալջուկեան սուլտանք Պարսից, ուր եւ ծաղկեցան բանաստեղծք յոլով, ընդ որս եւ Շէյխ Ֆէրիդ-էդ-Դին Աթար : Թիւ բնակչացն է 2,000 երդ :

177. Մէթեուլէթ է Օսստան Վրաց կամ ձորն Արագվայ գետոյ ի ծործորս Կովկասու ընդ մէջ Փշաւաց եւ Խեւսուրաց, եւ ոչ կարի հեռի ի բերդաշինէն Մուխրանայ :

178. Ոչ պարծիմք գիտել զՎրաց լեզու, որպէս Օրբէլեանն նկրտի հմուտ այնմ երեւեցուցանել զանձն. բայց եւ այնպէս՝ հանդերձ մերով կիսակատար գիտութեամբ համարձակիմք պնդել թէ Մուղէ-Նախէ ոչ երբէք նշանակէ առ նոսա ե՛կ եւ տե՛ս : Ե՛կ ասի ի լեզուին Վրաց մօռի և ոչ մուղէ որ թուի ելեալ ի մուխի բառէ Վրաց, եւ նշանակէ կաղնի : Գոյ ի Թրիալեթ գաւառի այլ իմն բերդագիւղ կոչեցեալ Մօխի կամ Մօկխս :

179. Չիք աշխարհ Բերքայեանց ոչ առ հինս, ոչ առ նորս : Թաթարք արշաւեցին զառաջինն ի հիւսիսոյ կողմն Կովկասու յամին 1223. եւ յաղթեալ Ռուսաց ի ճակատուն Կալիզայ՝ դարձան յետս : Յետ երեքտասան ամաց (1237) Բաթու միւսանգամ արշաւանս եդ յաշխարհն յայն, եւ կոչեալ զանձն խան Խփչաղայ, բնակութիւն կալեալ առ Վօլգայիւ ուր եւ շինեաց զքաղաքն Սարայ : Ապա խաղացեալ մարտիւ պատերազմի յաշխարհս Բաշկիրաց, Կու-

մանայ, Բուլղարայ,, Լեհայ, Հունգարայ և Ռուսաց ա՛ռ և աւերեաց զՄոսկվայ, զԿիեվ, զԿրակովի և զայլ երևելի քաղաքս եւ ի հարկի կացոյց զբնակիչսն : Աստի Ալէյքան խան՝ եղբայր Բաթույի, առեալ ընդ ինքեան 15,000 գերդաստանս Մուղալայ, չոգաւ եւ տիրեաց աշխարհին Սիբերիոյ. որոյ սերունդք իւր թագաւորեցին ի Տօբօլսք ամս 300 : Բերքէ՝ որդին Բաթույի, ժառանգեաց զաթոռ հօր իւրոյ (1263), ետ մեծամեծ ճակատս ի հարաւոյ եւ ի հիւսիոյ Կովկասու. եւ ի հարկի կացոյց զամենայն իշխանս Ռուսաց : Թոռունք Բաթույի թագաւորեցին յաշխարհի անդ Խփչաղ անուամբ (այլ ոչ Բերքայեանց) ցամն 1463 : Եւ ի ժամանակին յորում Ռուսք փորձ փորձեցին թօթափել յանձանց զանարգ լուծն հպատակութեան, տէրութիւն Խփչաղ Թաթարաց բաժանեալ էր 1. ի Խանութիւն Նողայ-Թաթարաց ընդ մէջ Դօն և Դնիեստր գետոյ. 2. ի Խանութիւն Աստրախանի ընդ մէջ Կովկաս լերին եւ Դօն եւ Վօլգայ գետոյ. 3. ի Խանութիւն Խփչաղի ընդ մէջ Ուրալի եւ Վօլգայի. 4. ի Խանութիւն Ղազանի ընդ մէջ Սամարայի և Վեատկայի. 5. ի Խանութիւն Ղրիմ Թերակղզւոյ. որոց ամենեցուն տիրեցին Ռուսք :

180. Նօղայ (Նուխայ առ Օրբէլեանի) ըստ ոմանց էր թոռն Ջինգիզ-Խանի, ըստ այլոց՝ իշխան Թուրքմանաց, որ ի սադրելոյ Բիբարսի եւ Միքայէլ Պալէօլոգի՝ աներ իւրոյ, գլուխ ամբարձեալ ընդ դէմ խանին Խփչաղաց՝ թագաւորեաց յափն սեաւ ծովու, ի հարաւային Ռուսիա : Առ Ղուքան դե֊

տով Թախառին յայսօր ժամանակի 30,000 դերդաստանք Նօղայ Թաթարաց ։ Իսկ Սարդախն, որպէս յայտ է, էր որդի Բաթույին, եւ ոչ թոռն ։

181. Մուխրան է բերդաքաղաք Քարթվէլի առ Կուր գետով՝ հաւասար հեռաւորութեամբ ի Մցխիթայէ և ի Գօրուայ ։ Անուն քաղաքաւանիս, կարծի, յառաջ եկեալ յանուանէ մուխի (կաղնի) ծառոյ, որք անբաւ առատութեամբ բուսանին ի շրջակայս այնորիկ ։ Յամին 1513 Կախք եւ Քարթլք արարին աստէն արիւնահեղ պատերազմ ։ Լալա փաշայ առ զայն յամին 1578 ։ Ի 1479 պատերազմեցան առ քաղաքաւս Մահմադ փաշայ եւ Սիմէօն՝ արքայ Վրաց ։

182. Իննոկենտ Դ. առաջին եղեւ ի պապս, որ եդ ի մտի ածել ի հաւատս զԹաթարս. մանաւանդ յորժամ լուաւ թէ Թագաւորէ առ նոսա քահանայ ոմն Յովհաննէս անուն, կեղծեալ ի Նեստորականաց ։ Որ եւ ի ժողովին Լիօնի (1245) որոշեաց առաքել զկրօնաւորսն Լաւրանտ ի Փօրդուգալէ, զՅովհաննէս ի Կարբոյ եւ զԲենուա ի Պօլօյնէ առ Բաթու բանակեալ առ Վօլգայիւ, և այլ եւս երիս այսինքն զՍիմոն, զԱղեքսանդր և զԱլբերտ Ասկեղինօ ի Հայաստան, առ Բաչու Նուին. որք յապուշ կրթեցան յորժամ լուան թէ պապն ոչ գիտէ տակաւին թէ է նոցա մեծ խան որդի երկնից անուանեալ ։ Եւ յետս դարձուցին զեկեալսն ։ Սուրբն Լույիս՝ արքայ Գաղղիոյ, առաքեաց (1247 և 1255) զԱնդրէ եւ Ռուբրիք կրօնաւորսն հանդերձ մասամբ կենաց փայտին յորդորելով զՄանգու խան ի քրիստո-

**նէութիւն ։ Ցուցրիք պատմէ՝ թէ տեսս զՄանգու** խան եւ զխրան չուրջ պատեալ ի Բուդդայեան, ի Մահմետական եւ ի Նեստորական քարոզչաց յու֊ րոց խւրաքանչիւր ոք ջանայր որսալ զնա յիւր աղանդ, որ եւ յաւելու թէ « եթէ Աստուած տայր ինձ շնորհս հրաշից, որպէս Մովսէսի ի նախնի դարս, թերեւս ածէի զնա ի հաւատս » ։ Աբաղայ խան, յաջորդն Հուլագու խանի, միշտ պաշտեաց զկուռս թէեւ առ ի զդէմ ունել Եգիպտոսի Մահմետականացն ցան֊ կացաւ դաշնակից լինել քրիստոնէից ի ձեռն Գրի֊ գորի Թ ։ Կուբիլայ խան հարկեաց զխրան ընդու֊ նիլ զկեշտն Լամայեան ։ Պապն առ ի ստուգել զսուտ համբաւ քրիստոնէութեան Թաթարաց առա֊ քեաց ի նորայ, յամին 1278 քարոզիչս հինգ ի կարգէ « կրսեր եղբարց ». որոց առաքելութիւնն ըստ առաջնոյն ապարդիւն եղև ։ Ահմէդ՝ եղբայր Աբա֊ ղայի, (1282) յայտնապէս աշակերտեցաւ Մահմետի, եւ քակել ետ զեկեղեցիս քրիստոնէից ։ Արղուն՝ յաջորդն Ահմետի, զբաղեալ ի մարտ պատերազմի ընդդէմ Եգիպտոսի, եւ կարօտ ձեռնտուութեան քրիստոնէից, դիւր արար նոցա ի տէրութեան իւ֊ րում, հրաման տալով կանգնել զաւերեալ եկեղե֊ ցիս. եւ պապքն՝ Ոնորիոս Դ. եւ Նիկողայոս Դ. ի նորայ առաքեցին քարոզիչս առ նոսա ։ Կանջա֊ տու պաշտպան եկաց մահմետականաց, եւ հալա֊ ծեաց զքրիստոնեայս ։ Բայթու ընդ հակառակս վա֊ րեցաւ. եւ Ղազան վերստին նորոգեաց զհալածումն քրիստոնէից թէ եւ սակաւ մի դիւր արար նոցա յորմէ հետէ ամուսնացաւ ընդ դստեր արքային մե֊

րոյ Հեթմոյ Բ ։ Ահա նկարագիր համառօտ ուրուական քրիստոնէութեան Թաթարաց զորմէ այսպէս պարծանօք խօսի Օրբէլեանն ։ Թերեւս ոչ ոք այնչափ բաղձայր տեսանել զկրօն մեր ի ծաղկի առ նոսա, որպէս ես . յորմէ մեծամեծ բարեաց ակն ունել մարթ էր ազգի մերում . այլ զի ոչ արժանացան նոքին տիրապէս երկնապարգեւ շնորհացս, մի խնդասցուք եւ մեք յուսով սնոտի ։ Տիեզ. պատմ. Կեսար Կանտու. ԺԱ. եր. 334-366 ։ Այս ինչ եւ եթ մնայ իբրեւ ճշմարտանման աւանդութիւն թէ Նեստորականք քարոզեցին ոչ միայն առ նոսա . այլ նաեւ առ Չինս սկսեալ յամէ Փրկչին 635 . որոց յիշատակարանք գտան ապա ի Յիսուսականաց ։

183. ԶՍիրչաղն ոչ ճանաչեմք, եթէ չիցէ սա Գենովացին Բիսկարել դը Ձիզոլֆ, որ դեսպանութեամբ եկն յԱրղունէ առ արքայս Գաղղիոյ եւ Անգղիոյ ։ Իսկ որդին Արղունի, որ արդարեւ մկրտեցաւ, եւ անուանեցաւ Թէոդոսիոս կամ Խարբանդայ, կոչի յԵւրոպացւոց Ալջապտու կամ Օլգայտու, որ եւ նամակագիր եղեւ առ արքայն Գաղղիոյ յամի 1306 ի Մարաղայէ . որ պահի ցայժմ յարքունի գրատան ։ Խարբանդայս յետ սակաւուց տաճկացաւ . եւ այնուհետեւ գնալով գնաց եւ վատթարացաւ տէրութիւն Թաթարաց յԱտրպատական մինչեւ բոլորովին բարձաւ ։

184. Զբարամն համարիմ ելեալ ի յոյն բրաքս բառէ, յորմէ ծնանի եւ (bras) բրաչ գաղղիականն . նշանակէ բազուկ ։

185. Յաւուրս Ստեփաննոսի Օրբէլեան, այն է

յելս երեքտասաներորդ դարուն զատուցեալ վիճակք Վայոց ձորոյ եւ Սիսականի, կամ լաւ եւս՝ Նորավանից եւ Տաթեւոյ միացան առ ժամանակ մի. եւ ապա վերստին բաժանեցան յորում են եւ ցայսօր ժամանակի ։

186. Զկնի Յովսեփայ Ա. Սիւնեցւոյ զաթոռ սուրբ Լուսաւորչին կալաւ ոչ Գիւտ. այլ Մելիտէ Մանազկերտցի ամս 5, զորով զանց առնու Օրբէլեան ։

187. Գիւտ ոչ յաջորդեաց, ըստ Օրբէլեանի Յովսեփայ Ա. Սիւնեցւոյ. այլ Մովսիսի Ա. Մանազկերտցւոյ ։

188. Տողք ինչ պակասէին յօրինակս մեր.

189. Ի պատմութեան Սիսակայ նահանգին Օրբէլեանն միշտ թուէ երկոտասան գաւառս ։ Իսկ աստանօր ինքն կամ այլ ոք ի յաջորդաց իւրոց զթիւ նոյին հանէ ի 14. որ, որպէս երեւի, չէր յաւելուած ինչ արտաքուստ. այլ նոր բաժանումն գաւառաց նոյնոյ աշխարհի ։

190. Արարատի թիւքն ցուցանեն զորքանութիւն մարզանից ցորենոյ զոր չէն իւրաքանչիւր իբր գաւազանապտուղ, եւ նոյնքան դահեկան (փանահարատ) որ է կէս դուան իբր ապրուահարկ, տայ ամի ամի Տաթեւոյ վանիցն ։

191. Հաբանդ կամ Աբանդ, որպէս անուանք գիւղօրէից Տեղոյ, Գորուոյ, Խնձորեսկայ եւ այլոց յայտ առնեն, ձգէր զաջոյ ափամբ Հագարւոյ եւ ըզձախոյ Որոտան կազմելով իբր դելթա ի խառնուրդս

նոցա. եւ համօրիւր արեւելեան հիւսիսի սահման Սիսականի. ուր իշխեաց առ ժամանակ մի Հայկազունի ճիւղն Սիսակեանց ։

192. Տարակարգութիւն եպիսկոպոսաց Սիւնեաց, որ թուի արարեալ զկնի 1830 ամի, ոչ է ամբողջական իմն եւ է առանց տարեթուոյ որ յոյժ դժուարին գործէ գիտել զժամանակ յաջորդելոյ նոցա միմեանց սկսեալ ի չորեքտասաներորդ դարէ անտի ցաւուրս մեր ։ Ի 1837 ամի տնօրէնութեամբ Սինհոդոսի սրբոյ Էջմիածնի բարձաւ պատիւ արքեպիսկոպոսութեան Սիւնեաց եւ արկաւ այլովք հանդերձ գաւառս ընդ անմիջական տնտեսութեամբ կաթողիկոսին, որոյ տեղակալ արքեպիսկոպոսն նստի յԵրեւան. եւ Տաթեւոյ վանքն եղեւ աթոռ փոխանորդի. ուր եւ ինձ վիճակեցաւ կեալ տեղապահութեամբ ամս ինչ ։



Paris. — Imprimé par E. Thunot et Cᵉ, rue Racine, 26.

մանայ, Բուլղարայ,, Լեհայ, Հունգարայ և Ռուսայ ա՛ռ և աւերեաց զՄոսկվայ, զԿիեվ, զԿրակովի և զայլ երևելի քաղաքս եւ ի հարկի կացոյց զընակիչսն ։ Աստի Սէյբան խան՝ եղբայր Բաթույի, առեալ ընդ ինքեան 15,000 գերդաստանս Մուղալայ, չոգաւ եւ տիրեաց աշխարհին Սիբերիոյ. որոյ սերունդք իւր թագաւորեցին ի Տօբօլսք ամս 300 ։ Բերքէ՝ որդին Բաթույի, ժառանգեաց զաթոռ հօր իւրոյ (1263), եւ մեծամեծ ճակատս ի հարաւոյ եւ ի հիւսիոյ Կովկասու. եւ ի հարկի կացոյց զամենայն իշխանս Ռուսաց ։ Թոռունք Բաթույի թագաւորեցին յաշխարհի անդ Խփչաղ անուամբ (այլ ոչ Բերքայեանց) ցամն 1463 ։ Եւ ի ժամանակին յորում Ռուսք փորձ փորձեցին թօթափել յանձանց զանարգ լուծն հպատակութեան, տէրութիւն Խփչաղ Թաթարաց բաժանեալ էր 1. ի Խանութիւն Նողայ-Թաթարաց ընդ մէջ Դօն և Դնիեստր գետոց. 2. ի Խանութիւն Աստրախանի ընդ մէջ Կովկաս լերին եւ Դօն եւ Վօլգայ գետոց. 3. ի Խանութիւն Խփչաղի ընդ մէջ Ուրալի եւ Վօլգայի. 4. ի Խանութիւն Ղազանի ընդ մէջ Սամարայի և Վեատկայի. 5. ի Խանութիւն Ղրիմ Թերակղզւոյ. որոց ամենեցուն տիրեցին Ռուսք ։

180. Նօղայ (Նուխայ առ Օրբէլեանի) ըստ ոմանց էր թոռն Ջինգիզ-Խանի, ըստ այլոց՝ իշխան Թուրքմանաց, որ ի սադրելոյ Բիբարսի եւ Միքայէլ Պալէօլոգի՝ աներ իւրոյ, գլուխ ամբարձեալ ընդդէմ խանին Խփչաղաց՝ թագաւորեաց յափին սեաւ֊ծովու, ի հարաւային Ռուսիա ։ Առ Ղուբան գե֊

տով թափառին ցայսօր ժամանակի 30,000 դերդաստանք Նօղայ Թաթարաց ։ Իսկ Սարդախն, որպէս յայտ է, էր որդի Բաթույին, եւ ոչ թոռն ։

181. Մուխրան է բերդաքաղաք Քարթվէլի առ Կուր գետով՝ հաւասար հեռաւորութեամբ ի Մցխիթայէ և ի Գօրուայ ։ Անուն քաղաքաւանիս, կարծի, յառաջ եկեալ յանուանէ մուխի (կաղնի) ծառոյ, որք անբաւ առատութեամբ բուսանին իշրջակայս այնորիկ ։ Յամին 1513 Կախք եւ Քարթլք արարին աստէն արիւնահեղ պատերազմ ։ Լալա փաշայ ա՛ռ զայն յամին 1578 ։ Ի 1479 պատերազմեցան առ քաղաքաւս Մահմադ փաշայ եւ Սիմէօն՝ արքայ Վրաց ։

182. Իննոկենտ Դ. առաջին եղեւ ի պապս, որ եդ ի մտի ածել ի հաւատս զԹաթարս . մանաւանդ յորժամ լուաւ թէ Թագաւորէ առ նոսա քահանայ ոմն Յովհաննէս անուն, կեղծեալ ի Նեստորականաց ։ Որ եւ ի ժողովին Լիոնի (1245) որոշեաց առաքել զկրօնաւորսն Լաւրանտ ի Փօրդուքալէ, զՅովհաննէս ի Կարբոյ եւ զԲենուա ի Պօլօյնէ առ Բաթու բանակեալ առ Վօլգայիւ, և այլ եւս երիս այսինքն զՍիմոն, զԱղեքսանդր և զԱլբերտ Ասկեղինօ ի Հայաստան, առ Բաչու Նուին. որք յապուշ կրթեցան յորժամ լուան թէ պապն ոչ գիտէ տակաւին թէ է նոցա մեծ խան որդի երկնից անուանեալ ։ Եւ յետս դարձուցին զեկեալսն ։ Սուրբն Լոյիս՝ արքայ Գաղղիոյ, առաքեաց (1247 և 1255) զԱնդրէ եւ Ռուբրիք կրօնաւորսն հանդերձ մասամբ կենաց փայտին յորդորելով զՄանգու խան ի քրիստո֊

նէութիւն ։ Ռուբրիք պատմէ՝ թէ ետես զՄանգու խան եւ զիւրան շուրջ պատեալ ի Բուղդայեան, ի Մահմետական եւ ի Նեստորական քարոզչաց յորոց իւրաքանչիւր ոք ջանայր որսալ զնա յիւր աղանդ, որ եւ յաւելու թէ « եթէ Աստուած տայր ինձ շնորհս հրաշից, որպէս Մովսիսի ի Նախնի դարս, թերեւս ածէի զնա ի հաւատս » ։ Աբաղայ խան, յաջորդն Հուլագու խանի, միշտ պաշտեաց զկուռս թէեւ առ ի զդէմ ունել Եգիպտոսի Մահմետականացն ցանկացաւ դաշնակից լինել քրիստոնէից ի ձեռն Գրիգորի Թ ։ Կուբիլայ խան հարկեաց զիւրան ընդունիլ զկեշտոն Լամայեան ։ Պապն առ ի ստուգել զսուտ համբաւ քրիստոնէութեան Թաթարաց առաքեաց ի Նորոյ, յամին 1278 քարոզիչս հինգ ի կարգէ « կրսեր եղբարց ». որոց առաքելութիւնն ըստ առաջնոյն ապարդիւն եղեւ ։ Ահմէդ՝ եղբայր Աբաղայի, (1282) յայտնապէս աշակերտեցաւ Մահմետի, եւ քակել ետ զեկեղեցիս քրիստոնէից ։ Արղուն՝ յաջորդն Ահմետի, զբաղեալ ի մարտ պատերազմի ընդդէմ Եգիպտոսի, եւ կարօտ ձեռնտուութեան քրիստոնէից, դիւր արար նոցա ի տէրութեան իւրում, հրաման տալով կանգնել զաւերեալ եկեղեցիս. եւ պապքն՝ Ոնորիոս Դ. եւ Նիկողայոս Դ. ի Նորոյ առաքեցին քարոզիչս առ նոսա ։ Կանջատու պաշտպան եկաց մահմետականաց, եւ հալածեաց զքրիստոնեայս ։ Բայթու ընդ հակառակս վարեցաւ. եւ Ղազան վերստին նորոգեաց զհալածումն քրիստոնէից թէ եւ սակաւ մի դիւր արար նոցա յորմէ հետէ ամուսնացաւ ընդ դստեր արքային մե-

րոյ Հեթմոյ Բ ։ Ահա նկարագիր համառօտ ուրուական քրիստոնէութեան Թաթարայ զորմէ այսպէս պարծանօք խօսի Օրբէլեանն ։ Թերեւս ոչ ոք այնչափ բաղձայր տեսանել զկրօն մեր ի ծաղկի առ նոսա, որպէս ես . յորմէ մեծամեծ բարեաց ակն ունել մարթ էր ազգի մերում . այլ զի ոչ արժանացան նոքին տիրապէս երկնապարգեւ շնորհացս, մի՛ խնդասցուք եւ մեք յունայն սնոտի ։ Տիեզ. պատմ. Կեսար Կանտու. ԺԱ. եր. 334-366 ։ Այս ինչ եւ եթ մնայ իբրեւ ճշմարտանման աւանդութիւն թէ Նեստորականք քարոզեցին ոչ միայն առ նոսա . այլ նաեւ առ Չինս սկսեալ յամէ Փրկչին 635 . որոց յիշատակարանք գտան ապա ի Յիսուսականաց ։

183. ԶՍիրչաղն ոչ ճանաչեմք, եթէ չիցէ սա Գենովացին Բիսկարել դը Ջիզոլֆ, որ դեսպանութեամբ եկն յԱրղունէ առ արքայս Գաղղիոյ եւ Անգղիոյ ։ Իսկ որդին Արղունի, որ արդարեւ մկրտեցաւ, եւ անուանեցաւ Թէոդոսիոս կամ Խարբանդայ, կոչի յԵւրոպացւոց Ալճապտու կամ Օլգայտու, որ եւ նամակագիր եղեւ առ արքայն Գաղղիոյ յամի 1306 ի Մարաղայէ . որ պահի ցայժմ յարքունի գրատան ։ Խարբանդայս յետ սակաւուց տաճկացաւ . եւ այնուհետեւ գնալով գնաց եւ փատթարացաւ տէրութիւն Թաթարայ յԱտրպատական մինչեւ բոլորովին բարձաւ ։

184. Զբարամն համարիմ ելեալ ի յոյն բրաքս բառէ, յորմէ ծնանի եւ (bras) բրա. գաղղիականն, նշանակէ բազուկ ։

185. Յաւուրս Ստեփաննոսի Օրբէլեան, այն է

յելս երեքտասաներորդ դարուն զատուցեալ վի֊
ճակք Վայոց ձորոյ եւ Սիսականի, կամ լաւ եւս՝ Նորավանից եւ Տաթեւոյ միացան առ ժամանակ մի. եւ ապա վերստին բաժանեցան յորում են եւ ցայսօր ժամանակի ։

186. Չկնի Ցովսեփայ Ա. Սիւնեցւոյ զաթոռ. սուրբ Լուսաւորչին կալաւ ոչ Գիւտ. այլ Մելիտէ Մանազկերտցի ամս 5, զորով զանց առնու Օրբէլեան ։

187. Գիւտ ոչ յաջորդեաց, ըստ Օրբէլեանի Ցովսեփայ Ա. Սիւնեցւոյ. այլ Մովսիսի Ա. Մանազկերտցւոյ ։

188. Տողք ինչ պակասէին յօրինակս մեր.

189. Ի պատմութեան Սիսակայ նահանգին Օրբէլեանն միշտ թուէ երկոտասան գաւառս ։ Իսկ աստանօր ինքն կամ այլ ոք ի յաջորդաց իւրոց գթիւ նոցին հանէ ի 14. որ, որպէս երեւի, չէր յաւելուած ինչ արտաքուստ. այլ նոր բաժանումն գաւառաց նոյնոյ աշխարհի ։

190. Արարայի թիւքն ցուցանեն զորքանութիւն մարզանից ցորենոյ զոր չէն իւրաքանչիւր իբր գաւազանապտուղ, եւ նոյնքան դահեկան (փանահարատ), որ է կէս դուան իբր ապուահարկ, տայ ամի ամի Տաթեւոյ վանիցն ։

191. Հաբանդ կամ Աբանդ, որպէս անուանք գիւղորէից Տեղոյ, Գորոււոյ, Խնձորեսկայ եւ այլոց յայտ առնեն, ձգէր զաջոյ ափամբ Հագարւոյ եւ ըզ ձախոյ Որոտան կազմելով իբր դելթա ի խառնուրդս

նոցա. եւ համարիւր արեւելեան հիւսիսի սահման Սիսականի. ուր իշխեաց առ ժամանակ մի Հայկազունի ճիւղն Սիսակեանց ։

192. Շարակարգութիւն եպիսկոպոսաց Սիւնեաց, որ թուի արարեալ զկնի 1830 ամի, ոչ է ամբողջական իմն եւ է առանց տարեթուոյ որ յոյժ դժուարին գործէ գիտել զժամանակ յաջորդելոյ նոցա միմեանց սկսեալ ի չորեքտասաներորդ դարէ անտի ցաւուրս մեր ։ Ի 1837 ամի տնօրէնութեամբ Սիւնհոդոսի սրբոյ Էջմիածնի բարձաւ պատիւ արքեպիսկոպոսութեան Սիւնեաց եւ արկաւ այլովք հանդերձ գաւառս ընդ անմիջական տնտեսութեամբ կաթողիկոսին, որոյ տեղակալ արքեպիսկոպոսն նստի յԵրեւան. եւ Տաթեւոյ վանքն եղեւ աթոռ փոխանորդի. ուր եւ ինձ վիճակեցաւ կեալ տեղապահութեամբ ամս ինչ ։



Paris. — Imprimé par E. THUNOT ET C<sup>e</sup>, rue Racine, 26.

